# ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ

# ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԾԱԳՈՒՄԸ

Ամէն բան փորձեցէք , բարին ամուր բռնեցէք :
Ա. Թես. Ե. 21 :



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ Ճ. ԱՐԱՄԵԱՆ

1880

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ Ա



## ԳԼՈՒԽ Բ



## ԳԼՈՒԽ Գ

## ԳԼՈՒԽ Դ



## ԳԼՈՒԽ Ե

## ԳԼՈՒԽ Զ

## ԳԼՈՒԽ Ը

Զ.



## ԳԼՈՒԽ Թ

## ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԳԼՈՒԽ ԺԲ



(Շարունակութիւն)

3. Բնական գիտութիւնք կը հերքե՞ն Սուրբ Գիրքը։



ա. Բնական գիտութիւնք չեն ցուցներ թէ բնական օրէնք և զօրութիւնք որ կան՝ հարկաւոր կամ բացարձակ են, և ոչ թէ կամ [illegible] անայլայլելի ։

բ. Բնական գիտութիւնք չեն ցուցներ թէ Աստուած երբ այս աշխարհս ստեղծեց, թէև ուզէր՝ չէր կրնար զայն այժմու բնական օրէնքներէն և զօրութիւններէն տարբեր օրինաց և զօրութեանց ներքև դնել ։

գ. Բնական գիտութիւնք չեն ցուցներ թէ արդէն բնական օրէնք և զօրութիւնք այնպէս ամբողջ են որ ներելի չէ ուրիշ նպատակի համար կեցնել կամ փոփոխել անոնց ներգործութիւնը ։

դ. Թէև ենթադրենք թէ նիւթական աշխարհի արդի օրէնքներն անայլայլելի են, փաստերն բնական գիտութեան չեն ցուցներ թէ Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքները կ'եղծանեն կամ կը ջնջեն կամ կը խանգարեն այն օրէնաց մին ։ 155—161

Թէ բնական գիտութիւնք կը հերքե՞ն Հին կտակարանը, այս խնդիրն ուղիղ լուծելու համար հարկ է Հին կտակարանն եւ բնութիւնը միանգամայն ուղիղ մեկնել ։

Սուրբ գիրքը դժուարաւ կը մեկնուի, քանզի, ա. Սուրբ գիրքը կը բաղկանայ այլեւայլ տեսակ գիրքերէ . բ. Կը խօսի շատ խորին նիւթերու եւ բարձր ճշմարտութեանց վրայ . գ. Քիչ խօսքերով շատ բան կը հասկցնէ . դ. Գրուած է ամէն տեսակ մարդոց թէ՛ ուսելոց եւ թէ՛ անուսից համար. ե. Սուրբ գիրքը մեկնող մարդիկ իրենց յատուկ կարծիքներն եւ տեսութիւններն ունին, եւ երբեմն միտեալ են այնպէս մեկնել Սուրբ գիրքը որ համաձայն ըլլայ իրենց կարծեաց եւ տեսութեանցը ։ 161—166

Բնութիւնը դիւրաւ չի մեկնուիր, վասն զի, ա. Շատ ընդարձակ է . բ. Բնութեան մէջ կան բաներ յորոց ոմանք այնպէս հեռու են, ոմանք ալ այնպէս մանր են՝ որ աչքով չեն տեսնուիր . գ. Բնութիւնը մեկնելու համար պէտք է գիտնալ նիւթական աշխարհի ոչ միայն այժմու այլեւ անցեալ վիճակը . դ. Բնութիւնն ալ իր սքանչելիքն եւ գաղտնի զօրութիւններն ունի . (ե) Բնութեան մեկնիչ-

## ԳԼՈՒԽ ԺԳ

## ԳԼՈՒԽ ԺԴ



## ԳԼՈՒԽ ԺԵ

## ԳԼՈՒԽ ԺԶ

## ԳԼՈՒԽ ԺԷ

## ԳԼՈՒԽ ԺԸ



## ԳԼՈՒԽ ԺԹ

## ԳԼՈՒԽ Ի



## ԳԼՈՒԽ ԻԱ

## ԳԼՈՒԽ ԻԲ

# ԳԼՈՒԽ ԻԴ

ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ 396—401



ՎՐԻՊԱԿ

| Էջ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 234 | 30 | Ցինհթէ | Կէօթէ |



# ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ

# ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԾԱԳՈՒՄԸ



## ԳԼՈՒԽ Ա.

### ԿԱՐԵՒՈՐ ԽՆԴԻՐ ՄԸ

*Իբր ութեւտասն դար առաջ Հռոմայեցի կայսերք իրենց իշխանութիւնը տարածեցին բոլոր քաղաքակրթեալ աշխարհի վրայ, այնպէս որ անոնց տէրութիւնը հասաւ իր զօրութեան վերջին ծայրը։ Այս ժամանակը որուն վրայ կը խօսինք՝ մտաւորական զարգացման կողմանէ նշանաւոր էր։ Կիկերոն կ'ըսէ թէ ուրիշ որեւիցէ ժամանակի մէջ այնչափ երեւելի անձինք երեւած չեն որչափ երեւեցան իր դարուն մէջ։ Արդարեւ այն ժամանակը Հռոմէական մատենագրութեան ոսկեղէն դարն էր, բայց նաեւ բարուց ապականութեան կողմանէ նշանաւոր դար էր։ Նոյն իսկ այն դարուն մատենագիրք յայտնի կը նկարագրեն իրենց ժամանակին բարուց ապականութիւնը։ Յոբնալ կ'ըսէ թէ այն դարուն մարդոց մոլութիւններն եւ ոճիրներն այնչափ շատ էին, որ ապագայ սերունդք չէին կրնար նոր մոլութիւն եւ նոր ոճիր աւելցնել անոնց վրայ։ Արդի պատմիչք կը հաստատեն զայս։ Ռընան կ'ըսէ. «Մո–*

լեգնութիւնը եւ անգթութիւնը կը տիրէին, եւ ճշմարիտ դժոխք ըրած էին զՀռոմ։»

Հռոմէական պետութեան փառաց, մտաւորական յառաջադիմութեան եւ քաղաքական ապականութեան այն դարուն մէջ այն պետութեան անշան մէկ գիւղը ծնաւ մանուկ մը որ Յիսուս կոչուեցաւ։ Այս մանկան մայրն անոր ծննդեան պարագաներուն նկատմամբ զարմանալի բաներ կը պատմէր, բայց մարդիկ առհասարակ զանի հիւսան մը որդին կը համարէին։ Այս մանուկն իր երիտասարդութեան ժամանակ հիւսնութեան պարապեցաւ, եւ, ինչպէս կը վկայեն անոր դրացիք, անուս էր (Մարկ. Զ. 3, Յովհ. Է. 15)։ Երբ 30 տարուան եղաւ, սկսաւ այցելութիւն ընել իր հայրենեաց գիւղերուն, եւ ժողովուրդք կրթել։ Զարմանալի բաներ կ'ըսէր իր անձին եւ իր գործին վրայ։ Ոմանք հաճութեամբ մտիկ կ'ընէին անոր խօսքը, ուրիշներն արհամարհանօք կը վարուէին անոր հետ. ոմանք ալ մահու չափ կը հալածէին զանի։ Անոր քարոզութեան ժամանակն այնչափ կարճ եղաւ, որ ըստ մարդկային տեսութեան կարելի չէր մեծ գործ կատարել այնչափ կարճ միջոցի մէջ, վասն զի երեք տարի եւ քանի մ'ամիս միայն ժամանակ ունեցաւ կրթելու ժողովուրդը, եւ այնուհետեւ խաչի վրայ մատնուեցաւ։

Արդ, ինչ կրցաւ ընել այն մարդն որոյ ծագումն այսպէս խոնարհ էր, որոյ առաջին պարագաներն այսպէս աննպաստ էին, եւ որոյ կեանքն այնչափ կարճ եղաւ։ Այս խոնարհ եւ աննշան մարդն ինչ ազդեցութիւն ըրաւ այն մեծ տէրութեան վրայ որ

իր փառքովը լեցուց բոլոր աշխարհ, եւ որուն դէմ դնելու կարող զօրութիւն մը չկար երկրի վրայ։ Նազովրեցի Յիսուսին կեանքն եւ քարոզութիւններն ինչ տպաւորութիւն ըրին այն ընդարձակ պետութեան ապականեալ բնակչաց վրայ։ Անաչառ պատմութիւնը թող պատասխան տայ այս հարցման։

Հռոմայեցի կայսրը Յուլիանոս, որ իր թագաւորութեան բոլոր ժամանակին ի զուր ջանաց կործանել Քրիստոնէական հաւատքը, երբ կը մեռնէր, աչուըները դէպ երկինք վերցնելով ըսաւ. «Յաղթեցիր, ով Գալիլեացի։» Անուանի Գաղիացի պատմագիրը Կիզոյ կը ցուցնէ թէ Քրիստոսի Աւետարանը «տիրեց Յունաստանի, Հռոմի եւ բարբարոս Եւրոպայի» Քրիստոնէութիւնն, իբրեւ թումբ, կեցուց մոլութեանց սոսկալի հեղեղը որ քաղաքակրթեալ աշխարհը կ'ողողէր։ Հանեց աշխարհս բարուց այն ապականութենէն զոր յիշել իսկ ամօթ է։ Երբ Հռոմէական պետութիւնն իր ապականութեամբը տկարացեալ ինկաւ հիւսիսային երկիրներուն բարբարոս ցեղերուն արշաւանաց եւ յարձակմանց ներքեւ, Քրիստոնէութիւնը միայն կարող եղաւ ընկերութեան շէնքը պահել անկործան, եւ նախնի քաղաքակրթութեան պտուղները պահպանել։ Շիլլինկ անուն Գերմանացի փիլիսոփային պէս Քրիստոսի աստուածութիւնն ուրացողք անգամ կ'ընդունին թէ անցեալ պատմութեան մէջ նշանաւորագոյն եւ աշխարհիս վրայ առաւելագոյն ազդեցութիւն ընող դէպք՝ Քրիստոսի յաշխարհ գալուստն է։

Յիսուսի ապրելէն եւ մեռնելէն հետէ ութեւտասն դար անցաւ։ Այն ատենէն մինչեւ ցարդ

ինչ զարմանալի բաներ պատահեցան ։ Այն ատենէն ի վեր աշխարհ մտաւորական, ընկերական եւ ազգային ինչ մեծ յեղափոխութիւններ կրեց ։ Յոյն փիլիսոփայից հռչակաւոր դպրոցներն շատոնց գոցուեցան ։ Հռոմայեցւոց տէրութեան փառքը շատոնց շիջաւ, բայց Քրիստոնէութիւնը տեւեց այս ութեւտասն դարուց մէջ ։ Այնչափ զարմանալի փոփոխութեանց մէջ Քրիստոնէութիւնը միայն մնաց անվթար ։ Հին տէրութեանց եւ կրօնից աւերակաց մէջ Քրիստոնէութիւնը միայն անկործան մնաց ։ Քրիստոնէութեան ծագման ատեն աշխարհի տիրող մեծամեծ զօրութիւններն անցան գացին, եւ Քրիստոնէութիւնը միայն, իբրեւ կենդանի զօրութիւն, ազգաց եւ անհատից վրայ իր ազդեցութիւնը կը շարունակէ ։ Քրիստոնէութիւնը տեսաւ բուռնիլ եւ անկիլն այն մեծամեծ թագաւորութեանց որ հիմա գրեթէ բոլոր աշխարհը կը կառավարեն ։ Քրիստոսի կրօնքն այս տէրութեանց սովորութիւններուն, օրինաց եւ սահմանադրութիւններուն վրայ այնպէս ազդեցութիւն ըրած է, որ արդի նշանաւոր պատմիչներէն շատերը, ինչպէս Կիզոյ եւ Ֆրանուա, կը խոստովանին թէ արդի քաղաքակրթութիւնը Քրիստոնէութեան արդիւնք է ։ Քրիստոնէութիւնը դեռ այսօր կայ ։ Քրիստոնէութիւնը դեռ այսօր անպարտելի զօրութիւն է միլիոնաւոր անձանց սրտերուն եւ վարուց մէջ ։ Քրիստոնէութիւնը մինչեւ ցայսօր աղբիւր է ուրկէ կ'առնէ արդի քաղաքակրթութիւնն իր բարձր գաղափարներն եւ իր մարդասիրական վսեմ սկզբունքները ։ Քրիստոնէութիւնը մինչեւ ցայսօր աղբիւր է ուստի կ'առնեն միլիոնաւոր մարդիկ հո-

գեւոր զօրութիւն կենաց պատերազմին մէջ անընկճելի ըլլալու, մխիթարութիւն՝ փշտաց մէջ, եւ յոյս՝ մահուան ժամուն ։

Երբ այս բաները կը նկատենք, հարկ կ'ըլլայ մեզ՝ հարցնել թէ ով էր Նազովրեցին Յիսուս ։ Ոչ ոք կրնայ ուրանալ թէ Յիսուս անուն մէկն ապրեցաւ աշխարհի վրայ, նաեւ ոչ ոք կրնայ ուրանալ թէ Յիսուս առանց հարստութեան, առանց պատուոյ եւ աստիճանի, առանց հզօր բարեկամներու եւ դաշնակիցներու, յեղափոխեց զաշխարհ իր թագաւորութիւնը հաստատելով միլիոնաւոր մարդոց սրտերուն մէջ, եւ թէ բազում դարերէ հետէ ամենէն աւելի լուսաւորեալ եւ քաղաքակրթեալ ազգեր եւ ժողովուրդներ անոր հետեւող եղած են ։

Ուրեմն, ո՞վ էր Յիսուս Քրիստոս ։ Եթէ ընդունինք թէ Յիսուս արդարեւ էր որդի Աստուծոյ ինչպէս ինք ըսաւ, անցեալին եւ ներկային մէջ անոր զարմանալի ազդեցութիւնը տարօրինակ չի թուիր մեզ ։ Իսկ եթէ, ընդհակառակն, ուրանանք ինչ որ Յիսուս ըսաւ իրեն համար, անկարելի է բացատրել անոր ազդեցութիւնն ազգաց եւ անհատից վրայ, եւ անցեալ ութեւտասն դարերու քաղաքակրթեալ աշխարհի պատմութիւնը կ'ըլլայ առեղծուած մը զոր ոչ ոք կրնայ լուծել ։

Արդ, Քրիստոս, ինչպէս ինք կ'ըսէր, արդարեւ որդի Աստուծոյ էր թէ ոչ ։ Քրիստոնէութիւնը զոր Յիսուս հիմնեց Աստուծոյ թէ մարդու գործ է ։

Այս խնդիրը շատ կարեւոր է ։ Առողջ մտքի տէր մարդ չի կրնար ուրանալ թէ այս խնդիրն սոսկ իբրեւ պատմական խնդիր զգուշութեամբ քննուելու ար-

ժամն է, վասն զի Քրիստոնէութիւնը դարերէ ի վեր պատմութեան մէջ մեծագոյն զօրութիւններէն մին եղած է ։ Քրիստոնէութիւնն, ինչպէս ըսինք, մեծ ազդեցութիւն ըրած է ոչ միայն անհատներու բարուց վրայ, այլ եւ ազգերու աճման եւ բարգաւաճման վրայ ։

Հիւմ, Անգղիացի պատմիչը, թէպէտ անհաւատ էր, ստիպուեցաւ խոստովանիլ թէ Անգղիա իր ազատ հաստատութեանց եւ օրինաց համար պարտական է այն մարդոց որոնց բարքը շտկուած էր Քրիստոսի Աւետարանով ։

Մաքօլէ, ուրիշ համբաւաւոր Անգղիացի պատմիչ մը, միջին դարուց վրայ խօսելով, եկեղեցին կը նմանցնէ տապանի մը, որ խաւարին եւ մրրկալից ժամանակ պահեց այն սերմերը որոնցմէ բուսաւ աւելի մեծ եւ աւելի վսեմ քաղաքակրթութիւն մը ։

Պանքրօֆթ, ամենէն երեւելի Ամերիկացի պատմիչը, բացայայտ կը ցուցնէ թէ Ամերիկա իր ազգային հաստատութիւններուն եւ օրէնքներուն համար պարտական է Քրիստոսի Աւետարանին ։ Նոյն բանը կրնայ ըսուիլ նաեւ ուրիշ լուսաւորեալ եւ քաղաքակրթեալ ազգաց համար ։

Ուստի, Քրիստոնէութեան ծագումը մեծապէս կարեւոր խնդիր է անոնց համար որ կ'ուզեն քննել թէ ինչ պատճառներու ազդեցութեամբ յառաջ եկաւ արդի քաղաքակրթութիւնը ։ Ամէն խոհական պատմիչ հարկաւ պիտի քննէ Քրիստոնէութեան ծագումը ։

Բայց Քրիստոնէութեան ծագումը լոկ պատմական խնդիր չէ, այլ կարեւոր խնդիր է մանաւանդ այս

դարուս մէջ, վասնզի Քրիստոնէութիւնը ոչ միայն անցեալ դարերու պատմութեան մէջ յիշուելու արժանի դէպք է, այլ դեռ կայ, եւ իր ապացոյցներովն արժանի է վստահութեան եւ ընդունելութեան այս դարուս մարդոց :

Քրիստոնէութեան ծագման խնդիրը նաեւ ոչ միայն ընդհանուր ուշադրութեան եւ հետաքրքրութեան արժանի է; այլեւ մանաւանդ իւրաքանչիւր անձի վերաբերեալ խնդիր է, քանզի Քրիստոսի Աւետարանը որ հիմն է Քրիստոնէական հաւատոյ՝ կը խօսի ոչ այնչափ ազգերու, որչափ իւրաքանչիւր մարդու : Քրիստոնէութեան գլխաւոր նպատակն է ազատել իւրաքանչիւր մարդ մեղաց ապականութենէն եւ արդար Աստուծոյ դատապարտութենէն : Քրիստոնէութիւնը կը յայտնէ թէ ուստի է մարդուս ծագումը, իւրաքանչիւր անհատ ինչ պարտքեր ունի, եւ ինչ բանի սահմանուած է : Կը քարոզէ մարդուս հոգւոյն անմահութիւնը, կը հաստատէ թէ որեւիցէ մարդու հանդերձեալ բաժինը պիտի ըլլայ կամ յաւիտենական երանութիւն կամ յաւիտենական թշուառութիւն : Իբր Աստուծոյ ձայն կը խօսի մեզի թէ ինչ ընել պարտինք յաւիտենական թշուառութենէն ազատելու եւ անվախճան երանութիւնը ժառանգելու : Կը յայտնէ աշխարհի զՔրիստոս իբրեւ միմիայն եւ ամենաբաւական Փրկիչ մեղաւորաց : Կը հաստատէ թէ այս Փրկիչը բոլորովին կարող է ապրեցնել բոլոր անոնք որ կ'ընդունին զանի հաւատով, եւ թէ չկայ ուրիշ մը որոյ ձեռքով մեղքէ փրկուիլ հնար է :

Ուստի, յայտնի է որ, եթէ Քրիստոս արդարեւ

որդի Աստուծոյ եւ յաստուածութեան զրկուած Փրկիչ է, ինչպէս ինք կ՚ըսէր, ամէն մարդու մեծապէս կարեւոր է գիտնալ այս բանը։ Եթէ Քրիստոնէութիւնն ստուգիւ Աստուծմէ է, մեզի համար վտանգաւոր է երկբայիլ անոր Աստուծմէ ծագած ըլլալուն վրայ, եւ յաւիտենական մահ է մերժել անոր աստուածային վարդապետութիւնները։

Արդ, Քրիստոնէութիւնն Աստուծմէ՞ է։

Ահա այս է ամենէն կարեւոր խնդիրը զոր պարտինք զգուշութեամբ քննել։

Իցի՛ւ թէ ամէնքս ալ կարող ըլլայինք օգնութեամբն Աստուծոյ շիտակ լուծել այս խնդիրը։



# ԳԼՈՒԽ Բ.

## ԱՅՍ ԽՆԴԻՐՆ Ի՞ՆՉՊԷՍ ԼՈՒԾՈՒԵԼՈՒ Է

*Աշխարհիս վրայ կան շատ կրօնքներ որ կը պնդեն թէ Աստուածմէ են ։ Միթէ կարելի՞ է ասոնց բոլորն ալ իբրեւ ճշմարիտ ընդունել ։ Անկարելի է , քանզի այս այլեւայլ կրօնից հիմնական վարդապետութիւնները բոլորովին հակառակ են իրարու ։ Ասոնց մէջ կան տարբերութիւններ որ ոչ թէ երկրորդական այլ հիմնական են . ուստի եւ անհնար է որ իրարմէ այսպէս տարբեր վարդապետութիւններ յառաջ եկած ըլլան միեւնոյն աղբիւրէ , այսինքն միմիայն ճշմարիտ Աստուծմէ ։ Եթէ այս կրօնքներէն մին Աստուծմէ է , միւսները չեն կրնար Աստուծմէ յառաջ եկած ըլլալ ։ Եթէ Պուտտայականութիւնը ճշմարիտ է , ապա Քրիստոնէութիւնը սուտ է . իսկ եթէ Քրիստոնէութիւնը ճշմարիտ է, ապա Պուտտայականութիւնն եւ Պրահմինականութիւնն եւ ուրիշ կրօնքներ սուտ են ։*

*Չէ պարտ կարծել սակայն թէ , եթէ շատ կրօնքներէն միայն մին ճշմարիտ է , միւս կրօնքներուն մէջ ինչ եւ իցէ ուղիղ վարդապետութիւն եւ օգտակար բարոյական սկզբունք չեն գտնուիր․ ընդհակառակն , կ'ընդունինք թէ բոլոր կրօնքներուն մէջ կան քիչ շատ բարոյական եւ օգտակար վարդապետութիւնք եւ սկզբունք ։ Բայց եւ այնպէս այլ եւ այլ կրօնքնե-*

րու մէջտեղ կայ այնպիսի մեծ եւ հիմնական տարբերութիւն եւ հակասութիւն, որ եթէ անոնցմէ մին Աստուծմէ է, միւսները չեն կրնար Աստուծմէ ծագում առած ըլլալ. ապա յայտնի է թէ աշխարհիս վրայ շատ սուտ կրօնքներ կան ։

Որովհետեւ այս այսպէս է, պէ՞տք է ուրեմն որ բոլորն ալ իբրեւ սուտ մերժենք . որովհետեւ այսչափ կրօնքներ յանիրաւի կը պնդեն թէ Աստուծմէ ծագում առած են, միթէ հետեւցնելո՞ւ ենք թէ Աստուծմէ ծագում առած կրօնք բնաւ չկայ ։ Այսպիսի հետեւութիւն մը բոլորովին ընդդէմ է բանականութեան ։ Որովհետեւ աշխարհիս վրայ շատ կեղծ դրամներ կը գտնուին, չի հետեւիր թէ ճշմարիտ դրամ ամենեւին չկայ ։ Որովհետեւ փիլիսոփայական սխալ դրութիւններ շատ կը գտնուին, չի հետեւիր թէ ճշմարիտ փիլիսոփայական դրութիւն ամենեւին չկայ ։ Ըստ այսմ օրինակի ոչ ոք կրնայ ուղղութեամբ հետեւցնել թէ, որովհետեւ շատ կրօնքներ սուտութեամբ կը պնդեն Աստուծմէ տրուած ըլլալ, ապա եւ ոչ մին Աստուծմէ տրուած է ։

Բայց որովհետեւ այսչափ շատ սուտ կրօնք կան յաշխարհի, պարտինք զգոյշ ըլլալ երբ անոնցմէ մին պիտի ընդունինք իբրեւ ճշմարիտ ։ Պարտինք խնդրել թէ բոլոր կրօնքները կ՚ընծայե՞ն աստուածապարգեւ ըլլալու ապացոյցներ . եւ յետ քննելոյ զայնս խնամով եւ անաչառ, պարտինք մերժել այն կրօնքները որոնց աստուածատուր ըլլալուն բաւական փաստ չկայ, եւ ընդունել այն կրօնքը միայն՝ որ աստուածապարգեւ ըլլալու անժխտելի ապացոյցներ կ՚ընծայէ ։ Այս կերպով միայն կրնանք ապահով ըլլալ թէ անսուտ եւ

յիմարական նախապաշարումէ եւ թէ յամառ եւ անմիտ անհաւատութենէ ։

Քրիստոնէութիւնը չունի իրաւունք քննութենէ բացառութիւն պահանջելու ։ Արդարեւ Քրիստոնէութիւնը կը պնդէ թէ աստուածատուր կրօնք է , բայց միւս բոլոր կրօնքներն ալ նոյնպէս կը պնդեն ։ Արդարեւ մենք մեր նախահայրերէն ընդունած ենք Քրիստոնէութիւնն իբրեւ ճշմարիտ կրօնք , եւ մեր սովորութեանցն յարգած ենք զայն իբրեւ աստուածային կրօնք , բայց Բուդդայականք եւ Մահմետականք ալ նոյնը կ'ըսեն իրենց կրօնքին համար ։ Ուրեմն , պարտինք զՔրիստոնէութիւնն ալ արկանել ընդ անաչառ քննութեամբ , եւ անոր աստուածային ծագման վերաբերեալ փաստերը մանր ի քննին առնուլ ։ Եթէ անբաւական կը գտնենք անոր փաստերը , պարտինք իբրեւ բանական մարդիկ մերժել զայն , բայց եթէ այն փաստերը բաւական կը գտնենք , պարտինք ընդունիլ զայն իբրեւ աստուածատուր կրօնք ։

Եթէ ոք առարկէ ըսելով թէ , որովհետեւ շատ դարեր անցած են յորմէ հետէ Քրիստոնէութիւնն հաստատուած է , այլ եւս կարելի չէ քննել անոր ծագումը , եւ ստուգել թէ Քրիստոնէութիւնն է արդարեւ աստուածատուր կրօնք , այս առարկութեան պատասխանելով կ'ըսենք թէ , Քրիստոնէութեան ծագման , տարածման եւ ներկայ վիճակին պարագաներն այնպէս են , որ հարկաւ բաւական ապացոյցներ գտնուելու են Քրիստոնէութեան աստուածային ծագումն հաստատելու համար ։

Քրիստոնէութիւնն ուրիշ կրօնքներու պէս չհաս-

տատուեցաւ նախապատմական եւ առասպելական դարերու մէջ որ հիմա անթափանցելի մթութեան մէջ են, այլ Քրիստոնէութիւնը հաստատուեցաւ աշխարհիս լուսաւորեալ եւ քաղաքակրթեալ մէկ դարուն մէջ։ Նաեւ Քրիստոնէութիւնը նախ չքարոզուեցաւ բարբարոս եւ վայրենի ժողովրդեան մը որ անոր ծագման հետքերը եւ պարագաները պահպանելու անփոյթ գտնուէր, այլ Քրիստոնէութիւնը նախ հաստատուեցաւ աշխարհիս հռչակաւորագոյն քաղաքներէն միոյն, այն է Երուսաղէմի մէջ, եւ քանի մը տարի ետքը քարոզուեցաւ Հռոմ, Կորնթոս, Աթէնք եւ ուրիշ երեւելի քաղաքներ։

Քրիստոնէութիւնը կը պնդէ թէ հաստատուեցաւ նորանշան եւ զարմանալի դէպքերով, որ կատարուեցան ոչ թէ ծածուկ տեղ կամ քանի մը բարեկամաց առջեւ միայն, այլ հրապարակաւ եւ թշնամեաց առջեւ, եւ քանի մը տարիներու միջոցին։

Որովհետեւ այս այսպէս է, կարող ենք քննել պատմական հիմը որոյ վրայ կը կենայ Քրիստոնէութիւնը։ Կրնանք քննադատութեան բովէն անցունել Աւետարանները որ այն զարմանալի դէպքերը կը պատմեն։ Կրնանք եւ պարտինք ուրիշ պատմական գիրքերու պէս անաչառ քննել Աւետարանները, եւ այսպէս կրնանք որոշել թէ կա՞ն բաւական զօրաւոր ապացոյցներ որ կը հաստատեն Քրիստոնէութեան աստուածային ծագումը։

Աւետարանները քննելով կրնանք որոշել թէ անոնց վաւերականութեանց մէջ կա՞յ բան մը որ հակասական է ապացուցուած եւ ընդհանուր ընդունուած որ եւ իցէ ճշմարտութեան։

Աւետարանները քննելով կրնանք հասկնալ թէ անոնք ի մարդկանէ յօրինեալ հասարակ գիրքեր են, թէ Աստուծոյ ներշնչութեամբ գրուած ըլլալու նշաններ ունին։ Կրնանք քննել թէ Աւետարանները որպիսի եւ որչափ ընդարձակ ազդեցութիւն ունեցած են, եւ ութևտասան դարուց մէջ Աւետարաններուն աշխարհի վրայ թողած ազդեցութիւնն հետազօտելով կրնանք որոշել թէ արդարեւ այն գիրքերը գերբնական ծագում ունին թէ ոչ։ Նաեւ կրնանք յանձինս մեր ստուգել Աւետարանին աստուածային ծագումը յետ ընդունելոյ զայն ի սրտէ, եւ այսպէս կրնանք համոզուիլ թէ Քրիստոնէութիւնը սնոտի նախապաշարում է թէ աստուածային զօրութիւն ազատելու զմարդիկ մեղաց գերութենէն եւ ապականութենէն։

Քրիստոնէութեան Հիմնադիրն իսկ չպահանջեց ի մարդկանէ հաւատք առանց քննութեան։ «Թէեւ ինձի չէք հաւատար,» ըսաւ, «գոնէ գործքերուն հաւատացէք» (Յովհ. Ժ. 38)։ Եւ Պօղոս առաքեալ կ՚ըսէ. «Ամէն բան փորձեցէք, բարին ամուր բռնեցէք» (Ա. Թես. Ե. 21)։ Արդ, Քրիստոնէութիւնը չի պահանջեր մենէ ընդունել զայն առանց ապացոյցներ տեսնելու թէ արդարեւ յաստուածուստ ծագեալ է։ Եթէ Քրիստոնէութեան ապացոյցներն անբաւականներ են, մերժենք զնա իբրեւ սնապաշտութիւն. իսկ եթէ այն ապացոյցները բաւական համոզիչ են, ի սրտէ եւ շնորհակալութեամբ ընդունինք Քրիստոնէութիւնն իբրեւ աստուածային յայտնութիւն։ Ապա յայտնի է թէ այս խնդիրը, թէ Քրիստոնէութիւնն Աստուծմէ է, պարտի որոշուիլ ապացոյցներով։

Բայց յառաջ քան ձեռնարկել մեր քննել ապացոյցները, հարկ է յիշեցնել ընթերցողաց թէ, ուղիղ ճամբով եւ վայելուչ ոգւով արժան է սկսիլ այս քննութիւնը։ Ով որ պատուհանի մը ապակիին ետեւէն կը նայի, կրնայ ամէն բան տեսնել ինչպէս է՝ եթէ մաքուր եւ ջինջ է ապակին։ Այսպէս անկեղծ եւ անաչառ միտքը միայն կրնայ ուղիղ դատել Քրիստոնէութեան ապացոյցները։

Միջին դարուց երեւելի պատմիչը Հալլամ իր ընթերցողաց մասնաւոր ուշադրութիւնը կը հրաւիրէ այն կամակոր յամառութեան որով մարդիկ երբեմն կ'ընդդիմանան ամենէն զօրեղ ապացոյցներու, երբ այս ապացոյցները հակառակ են անոնց կրից կամ նախապաշարմանց։ Պատմութեան մէջ այսպիսի շատ օրինակներ կան։

Կրնայ ըլլալ որ բաւական զօրեղ ապացոյցներ գտնուին Քրիստոնէութիւնը հաստատելու, բայց եւ այնպէս մարդիկ չհամոզուին անոր ճշմարտութեանը, վասն զի խնդիրը չեն քններ վայելուչ ոգւով։ Կրնան սխալիլ հարեւանցի ոգւով մէկդի թողլով խնդիրն իբրեւ անկարեւոր եւ հետաքրքրութեան անարժան, կամ անհամբերութեան ոգւով ջանալով հասկնալ Քրիստոնէութեան խորհուրդները որ քան զմարդկային միտս վեր են, եւ կամ նախապաշարեալ ոգւով չուզելով ի քնին առնուլ բոլոր ապացոյցները։

Որպէս զի կարող ըլլանք այս կարեւոր խնդիրը ճշդիւ լուծել, պարտինք նախ քան զամենայն քննել զայն ողջամիտ ոգւով։ Պարտինք ճանչնալ անոր կարեւորութիւնը եւ պատրաստ ըլլալ տալ անոր ինչ ուշադրութիւն որ պէտք է խնդրոյն ճշդիւ լուծմանը

համար : Պարտինք փութով եւ ուշի ուշով ջանալ գիտնալ ճշմարտութիւնը , եւ պատրաստ ըլլալ ի գործ դնել ինչ ջանք որ պէտք է ճշմարտութիւնը գտնելու :

Պարտինք նաեւ այս խնդիրը քննել խոնարհ ոգւով : Արարիչը մարդոց պարգեւած է մտաւորական կարողութիւններ , եւ պէտք է որ այս կարողութիւնները գործածուին այս խնդրոյն քննութեան համար : Սակայն մարդոց մտաւորական կարողութիւնները անհամասար են , եւ բաւական չեն կատարելապէս հասկնալու եւ բացատրելու բոլոր ճշմարտութիւնները : Անցեալ դարուց մէջ Սոկրատայ , Պղատոնի , Պագոնի , Բասգալայ եւ Նեւդոնի պէս նշանաւոր մարդիկ հասկցան եւ զգացին իրենց մտաւորական տկարութիւնը : Սոկրատ սովոր էր ըսել . Ես միայն գիտեմ որ բան չեմ գիտեր : Պագոն , որ արդի փիլիսոփայութեան հայր կը կոչուի , կ'ըսէ թէ մարդիկ գիտութեան թագաւորութիւնը մտնելու են այնպէս՝ ինչպէս Քրիստոս ըսաւ թէ մտնելու են երկնից թագաւորութիւնը , այսինքն փոքր մանուկներու պէս : Բնական աշխարհի օրինաց երեւելի հետազօտիչը , Նեւդոն , կը նմանցնէր զինք փոքր տղու մը որ քանի մը խիճ ժողված է ծովուն եզերքը , մինչ անոր առջեւ կայ գիտութեան անսահման ծով մը , որ դեռ ճանչցուած եւ քննուած չէ :

Քրիստոնէութեան ծագման խնդիրը քննելու ատեն պարտինք ունենալ Սոկրատայ եւ Պագոնի՝ խոնարհ ոգին : Աշխարհս ուր կ'ապրինք՝ լի է գաղտնեաց , որս կատարելապէս մեկնելու անկարող եղած են ամենէն հանճարեղները ի մարդկանէ : Ի՞նչ մեծ

գաղտնիք է կենաց գաղտնիքը։ Ո՞վ կրնայ հասկնալ տնկոց, անասնոց եւ մարդոց կեանքը. ո՞վ կրնայ հասկնալ թէ հոգին ինչպէս միացած է մարմնոյն հետ։ Ոչ ոք։ Ուստի եթէ բնական աշխարհի մէջ այսչափ անիմանալի գաղտնիք կան, զարմանալու չենք, երբ բարոյական եւ հոգեւոր աշխարհի մէջ ալ գաղտնիք կ'ելլեն մեր առջեւ։

Արդ, որովհետեւ կարող չենք լուծել նոյն իսկ բնութեան բոլոր գաղտնիքը, չմտաբերենք քննել Քրիստոնէութիւնը սա մտօք յուսով թէ կարող պիտի ըլլանք բոլոր դժուարութիւնները փարատել եւ ամէն գաղտնիք լուծել։ Մանաւանդ պարտինք խորհիլ թէ աստուածային յայտնութեան մը մէջ գըտնուելու են շատ բաներ որոնց չենք կրնար հասու ըլլալ մեր սահմանաւոր կարողութիւններով։ Ուստի պարտինք քննել այս խնդիրն այն խոնարհ ոգւով որ ամէն ճշմարիտ փիլիսոփայութեան, ինչպէս նաեւ ամէն ճշմարիտ կրօնքի ոգին է։

Պարտինք քննել այս խնդիրն անկեղծ եւ անաչառ ոգւով։ Կան մարդիկ որ ուշադրութեամբ միայն կ'ըննեն ինչ որ կրնայ ըսուիլ Քրիստոնէութեան դէմ։ Անյագ փափաքանօք կը կարդան Քրիստոնէութեան դէմ գրուած գիրքերը, եւ իրենց միտքը կը պահեն ամէն առարկութիւն որ կրնայ յարուցուիլ Քրիստոնէութեան դէմ։

Արդարեւ աղէկ է որ խոհական մարդիկ ուշադրութեամբ քննեն այն փաստերը զոր թշնամիք մէջ կը բերեն Քրիստոնէութեան աստուածային ծագումն հերքելու։ Սակայն կան շատեր որ Քրիստոնէութեան թշնամիներուն առարկութիւնները միայն կարդալ

եւ լսել կ'ուզեն, եւ չեն քններ թէ արդեօք այն առարկութիւններն արդէն հերքուած են թէ ոչ. չեն ուզեր նկատել այն ապացոյցներն որ ի նպաստ են Քրիստոնէութեան: Ի՞նչպէս կարելի է այսպիսի մարդոց ուղիղ որոշել եւ լուծել Քրիստոնէութեան ծագման խնդիրը: Անկեղծ եւ անաչառ չեն իրենց քննութեան մէջ. չեն ուզեր երկու կողմն ալ նայիլ: Մենք զգուշանալու ենք այսպիսի նախապաշարումներէ, եւ քննելու ենք խնդիրն անկեղծ եւ անաչառ ոգւով, այսինքն Քրիստոնէութեան թէ ի նպաստ եւ թէ ընդդէմ բոլոր փաստերն եւ ապացոյցները լսելու պատրաստ եւ յօժար ոգւով:

Քրիստոնէութեան ծագման խնդիրը քննելու ատեն պարտինք ունենալ մանաւանդ բարեպաշտ ոգի. քանզի այս խնդիրը ոչ թէ տեսական, այլ գործնական խնդիր է. մեր ներկայ պարտուց վերաբերեալ խնդիր է:

Կան մարդիկ որ զիրենք ողջամիտ կը կարծեն, բայց իրենց կրից բռնութեան ներքեւ են. այսպիսի մարդիկ որչափ ուսեալ եւ սրամիտ ըլլան, չեն կրնար անաչառ քննութիւն ընել այս խնդրոյն վրայ: Քրիստոնէութիւնը խստիւ կը դատապարտէ այսպիսեաց ընթացքն, ուստի եւ անոնք յամառութեամբ կը հակառակին Քրիստոնէութեան: Քրիստոնէութեան դէմ են, վասն զի Քրիստոնէութիւնն անոնց դէմ է: Ամէն ջանք ի գործ կը դնեն ապացուցանել թէ Քրիստոնէութիւնը սուտ է, ուստի եւ որչափ հզօր փաստեր բերուին, դարձեալ կարելի չէ համոզել զանոնք Քրիստոնէութեան ճշմարտութեան վրայ: Աղէկ միտ դնել պէտք է Յիսուսի սա խօսքին.

կ'ուզէ անոր կամքը ընել ,» այսինքն Աստուծոյ կամքը , « պիտի գիտնայ այս վարդապետութեանս . համար թէ արդեօք Աստուծմէ՞ է՝ թէ ես ինքիրմէս կը խօսիմ » (Յովհ. է. 17) ։ Որչափ որ արդէն գիտենք ճշմարտութիւնը , ընդունինք զայն , անոր համեմատ գործենք եւ անոր համեմատ վարուինք ։ Եթէ այսպէս ընենք, Աստուած աւելի պիտի լուսաւորէ զմեզ, եւ աւելի պիտի յայտնէ մեզ ճշմարտութիւնը։ Աստուած կը սիրէ ճշմարտութիւնը , կը սիրէ նաեւ զանոնք որ կը փնտռեն ճշմարտութիւնը ։ Աստուած մոլորութեան եւ խաւարի մէջ կը թողու զանոնք միայն որ անօրէնութեան յօժարելով կը սիրեն ստութիւնն առաւել քան զճշմարտութիւն , քանզի կ'ախորժին անիրաւութենէ ։



## ԳԼՈՒԽ Գ.

### ՄԻԹԷ ԱՆԿԱՐԵԼԻ ԿԱՄ ԱՆՀԱՒԱՏԱԼԻ ԿԱՄ ԱՆՀԱՒԱՆԱԿԱ՞Ն Է ԹԷ ԱՍՏՈՒԱԾ ՄԱՍՆԱՒՈՐ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ ՏՈՒԱԾ ԸԼԼԱՅ ՄԱՐԴՈՑ

Այս խնդրոյն վրայ փիլիսոփայական շատ տեսութիւններ եղած են, եւ թէ բանաւոր թէ անտեղի առարկութիւններ հրատարակուած են։

Ոմանք պնդած են թէ անհնար է որ Աստուած մասնաւոր յայտնութիւն մը տուած ըլլայ մարդոց։

Այլք ընդունելով թէ Աստուած կարող է մասնաւոր յայտնութիւն տալ մարդոց, ըսած են թէ կարելի չէ որ այսպիսի յայտնութեան մը տրուած ըլլալը հաստատելու բաւական զօրաւոր փաստեր գտնուին, եւ թէ՝ թէեւ Աստուած այսպիսի յայտնութիւն մը տուած ըլլայ, մարդիկ չեն կրնար ըստուգիւ գիտնալ եւ համոզուիլ թէ այն յայտնութիւնն արդարեւ Աստուծմէ տրուած է։

Այլք ընդունելով թէ աստուածային յայտնութիւն մը հաստատելու բաւական զօրաւոր ապացոյցներ կրնան տրուիլ, պնդած են թէ հաւանական չէ թէ այնպիսի յայտնութիւն մը արդարեւ տրուած է, ուստի շատ կասկածանօք կ'ընդունին ինչ փաստ որ մէջ կը բերուի աստուածային յայտնութիւն մը հաստատելու համար։

Կան սակայն ուրիշ շատ հանճարեղ մարդիկ որ կ'ընդունին թէ կարելի եւ հաւատալի է որ Աստուած

մասնաւոր յայտնութիւն մը տուած ըլլայ մարդոց, եւ մարդկային ազգին բոլոր պարագաներն ի քնին առնելով կ'ըսեն, թէ անհաւանական չէ թէ այսպիսի յայտնութիւն մը արդէն Աստուծմէ տրուած է մարդոց։ Այսպէս ըսողները պատրաստ են անաչառ քննել Քրիստոնէութեան աստուածային ծագման ապացոյցները։

Հարկ չէր այսպիսի փիլիսոփայական տեսութիւններով ժամանակ կորսնցնել, վասն զի այսպիսի տեսութիւնք խնդիրը չեն կրնար լուծել։ Լաւագոյն էր մէկէն սկսիլ քննելու սա պատմական խնդիրը, թէ արդարեւ տրուած է այնպիսի յայտնութիւն մը։ Սակայն մարդիկ պատրաստ եւ յօժար եղած չեն Քրիստոնէութեան ծագումը քննելու սկսիլ այս պատմական խնդիրը քննելով։ Ոմանք ջանացած են Քրիստոնէութեան աստուածային ծագման խնդիրը լուծել ոչ ըստ վկայութեան պատմութեան զոր քննութեան առնել չեն ուզեր, այլ ըստ անհիմն կարծեաց եւ խորհրդոց իւրեանց։ Բայց այս մարդիկ ալ համաձայն չեն իրենց մէջ։ Ոմանք կը հաստատեն ինչ որ այլք կը ժխտեն, բայց ամէնքն ալ միաբան են յայսմ որ կ'ուզեն սահման դնել Աստուծոյ իմաստութեան յայտնութեանը, եւ անոր զօրութեան ներգործութեանը։ Ամբարտաւանութիւնը որով սխալական մարդիկ երբեմն կը խօսին կամ կը վարդապետեն այս նիւթին վրայ՝ արդարեւ զարմանալի է։ Ոմանք որպէս թէ կ'ուզեն խորհրդական ըլլալ Աստուծոյ եւ անոր ճամբայ ցուցնել թէ ինչպէս գործելու է։ Որպէս զի մեր միտքը փիլիսոփայական կոչուած այսպիսի անհիմն փաստաբանութիւններով

եւ խօսքերով չնախապաշարուի Քրիստոնէական հաւատոյ ապացոյցներուն դէմ, հարկ է համառօտիւ քննել փիլիսոփայից առարկութիւններէն ոմանք, հասկընալու համար թէ որչափ անհիմն են անոնք ։

Ոմանք կ՚ըսեն թէ անհնար է որ Աստուած մասնաւոր յայտնութիւն մը տուած ըլլայ մարդոց ։ Ինչո՞ւ համար անհնար է ։ Այսպէս ըսողներէն խնդրելու ունինք ապացոյց պահանջելու ի հաստատութիւն իրենց խօսքերուն, վասն զի «Անհնար է» ըսել միայն բաւական չէ, պէտք է ապացուցանել անհնարութիւնը ։ Ապացոյց ունի՞ն ։ Ապացուցանելու համար թէ մասնաւոր աստուածային յայտնութիւն մը անհնար է, հարկ է նախ ցուցնել թէ Աստուած անկարող է տալ այնպիսի յայտնութիւն մը, կամ թէ մարդիկ անկարող են այնպիսի յայտնութիւն մը ընդունել Աստուծմէ ։

Կա՞յ փաստ մը թէ Աստուած անկարող է մասնաւոր յայտնութիւն մը տալ մարդոց ։ Այսպիսի փաստ մը չկայ ։ Երկրաւոր ծնողք կրնան իրենց կամքը յայտնել իրենց զաւակներուն, եւ ո՞վ կրնայ պնդել թէ երկնաւոր Հայրը չունի այն կարողութիւնը զոր երկրաւոր հարք ունին ։ Ոչ ոք ։ Երկրաւոր թագաւորք կրնան իրենց հրամանները հրատարակել իրենց հպատակներուն, եւ կրնան իրենց կամքն յայտնել անոնց, եւ ո՞վ կրնայ ցուցնել թէ թագաւորաց Թագաւորին կարողութիւնը նուազ է քան զնոսայն ։ Ո՞վ կրնայ ըսել թէ ամենակալն Աստուած, թէեւ ուզէ, չի կրնար իր կամքը յայտնել իր հպատակներուն ։ Ոչ ոք, որ կը հաւատայ թէ կայ ամենակարող եւ ամենիմաստ Աստուած մը ։

Նաեւ ո՞վ կրնայ ցուցնել թէ մարդիկ անկարող են յայտնութիւն մը ընդունել Աստուծմէ ։ Ինչ ապացոյց կայ այսպէս կարծելու ։ Եթէ մարդիկ փայտի եւ քարի մէջ անշունչ կամ անասնոց մէջ անբան ըլլային , անկարող կ'ըլլային այսպիսի յայտնութիւն մը ընդունել Աստուծմէ ։ Բայց մարդիկ ոչ անշունչ են , եւ ոչ անբան . ընդհակառակն , զարդարեալ են մտաւոր եւ բարոյական կարողութիւններով ։ Ուրեմն , ո՞վ կրնայ հաստատել թէ մարդիկ անկարող են ընդունել եւ հասկնալ բարոյական եւ հոգեւոր ճշմարտութիւններ , որ անոնց հաղորդուած են աստուածային յայտնութեամբ ։ Ո՞վ կրնայ ապացուցանել թէ մարդիկ որ այնպէս հանճարեղ են արարածոց վերաբերեալ բաներ սորվելու՝ կարող չեն սորվիլ Արարչին վերաբերեալ բաներ ։ Մարդիկ որ այնչափ զարմանալի հմտութիւններ կը ստանան բնական աշխարհի օրինաց վրայ , միթէ անկարո՞ղ են նաեւ հոգեւոր աշխարհին օրինաց վրայ հմտութիւններ ստանալու ։ Վերջապէս , ո՞վ կրնայ ըսել թէ մարդիկ որ կարող են իրենց հեռաւոր բարեկամներէն եւ ծանօթներէն տեղեկութիւն ստանալ , անկարող են հրաման մը կամ պատուէր մը ընդունել իրենց երկնաւոր Հօրմէն ։ Փիլիսոփայք որ բոլոր այս բաներն ապացուցանել կը խորհին՝ արդարեւ շատ դժուարին գործի մը կը ձեռնարկեն ։

Ճշմարիտ է որ Աստուած անսահման է , եւ մարդիկ՝ սահմանաւոր . եւ անտարակոյս սահմանաւոր մարդոց անհնար է բովանդակ հասու ըլլալ անսահմանին Աստուծոյ կամ գիտնալ անոր վերաբերեալ ամէն բան ։ Բայց ուրիշ բան է կատարելապէս ճանչ-

նալ զԱստուած , եւ բոլորովին ուրիշ բան է անոր վրայով ճշմարիտ տեղեկութիւն մը ունենալ ։ Անենեւին փաստ չկայ թէ Աստուած չի կրնար հաղորդել մարդոց այնչափ տեղեկութիւն որչափ պատշաճ կը թուի անոր կատարեալ իմաստութեանը. չկայ նաեւ փաստ թէ մասնաւոր եւ բարոյական կարողութիւններով զարդարեալ մարդը կարող չէ աստուածային յայտնութիւն մը ընդունել եւ օգուտ քաղել անկէ ։

Սակայն այլք կ'ըսեն թէ անհաւատալի է որ մասնաւոր յայտնութիւն մը տրուած ըլլայ մարդոց ։ Ի՞նչպէս անհաւատալի է, եւ ինչու համար անհաւատալի է ։ Ոմանք կ'ըսեն . Այսպիսի յայտնութիւն մը բնութեան հակառակ է , ուստի եւ անհաւատալի ։ Բայց կը հարցնենք թէ որո՞ւ բնութեան հակառակ է ։ Աստուծո՞յ բնութեանը ։ Ինչէ՞ն գիտենք զայս ։ Այս փիլիսոփաներէն ոմանք կ'ըսեն թէ մենք չենք կրնար գիտնալ Աստուծոյ բնութիւնը ։ Եթէ ճշմարիտ է որ չենք կրնար բան մը գիտնալ Աստուծոյ բնութեանը վրայ ; ապա ի՞նչպէս կրնանք որոշել թէ ինչ բան հակառակ է Աստուծոյ բնութեանը ։ Բայց ի՞նչպէս կրնայ Աստուծոյ բնութեանը հակառակ ըլլալ մասնաւոր յայտնութիւն մը տալ մարդոց ։ Աստուծոյ ստորոգելեաց որո՞ւն հակառակ է այս ։ Աստուծոյ կարողութեանը ։ Ոչ ։ Աստուած մանաւանդ իր զարմանալի կարողութիւնը ցուցուցած կ'ըլլայ այնպիսի յայտնութիւն մը տալով ։ Աստուծոյ անփոփոխութեա՞նը հակառակ է մասնաւոր յայտնութիւն մը տալ մարդոց ։ Ոչ , եթէ այնպիսի յայտնութիւն մը տալու խորհուրդը կար ի յաւիտենից Աստուծոյ նը-

պատակին մէջ ։ Աստուծոյ իմաստութեա՞նը հակառակ է ։ Ոչ, եթէ յայտնութիւնը պիտի տրուէր յարմար կերպով եւ բարիք յառաջ բերելու համար ։ Աստուծոյ բարութեա՞նը հակառակ է ։ Ոչ, եթէ յայտնութիւնը պիտի տրուէր մարդկային ազգին ժամանակաւոր եւ յաւիտենա՛կան երջանկութեանը համար ։

Արդարեւ դիւրին է ըսել, բայց դժուարին է ցուցնել թէ մասնաւոր յայտնութիւն մը հակառակ է Աստուծոյ կատարելութիւններուն ։

Անկատար մարդիկ աւելի աղէկ կ'ընեն եթէ այս խնդրոյն լուծումը նոյն իսկ Աստուծոյ թողուն Փոխանակ ջանալու որոշել թէ ինչ բան ընել վայելուչ է Աստուծոյ, աւելի պատշաճ է խոնարհութեամբ քննել թէ Աստուած ինչ ըրած է իր կատարեալ իմաստութեամբը ։

Միթէ մարդո՞ւս բնութեանը հակառակ է աստուածային յայտնութիւն մը ընդունել ։ Կ'ընդունինք թէ կրնան այնպիսի յայտնութիւններ ըլլալ որ ըն-դեն թէ Աստուծմէ ծագում առած են, մինչ այնպէս հակառակ են մարդուս մտաւոր եւ բարոյական բնութեանը որ բոլորովին անհաւատալի են ։ Այսպիսի պարագայի մը մէջ մարդիկ կրնան չհաւատալ այն յայտնութեանց աստուածային ծագմանը, բայց ո՞վ կրնայ ապացուցանել թէ մարդուս բնութեանը հակառակ է ճշմարիտ յայտնութիւն մը ընդունել Աստուծմէ ։ Այնպիսի յայտնութիւն մը մարդուս ոչ բնական եւ ոչ բարոյական բնութեանը դէմ կու գայ, քանզի յայտնութիւնը տրուած է մարդուս վասն զի բանականութեան տէր եւ բարոյականութեան ըն-

դունակ է, եւ իր մտաւոր եւ բարոյական կարողութիւնները գործածելով կը քննէ զայն։ Ո՞վ կրնայ ապացուցանել թէ մարդուս բնութեանը հակառակ է յայտնութիւն մը, որոյ թէ նիւթը եւ թէ տրուելուն եղանակը համաձայն է մարդկային բնութեան։

Դարձեալ կը հարցնենք. Այսպիսի մասնաւոր յայտնութիւն մը միթէ հակառա՞կ է նիւթական աշխարհի օրինաց։ Յայտնի է թէ նիւթական աշխարհը կենդանեաց համար է, եւ թէ անոր արարածները բանաւոր արարածոց հպատակած են։ Երկիրս իր բնական օրէնքներովը ոչ թէ իրեն համար է, այլ մարդուս համար։ Բնական օրինաց անփոփոխ եւ համաձայն գործողութիւնները մարդուս օգտին համար են։ Ապա ինչպէս կրնայ ըսուիլ թէ, մարդկային ազգին ժամանակաւոր եւ յաւիտենական օգտին համար մասնաւոր յայտնութիւն մը տալ հակառակ է այն բնական օրինաց։ Ոչ տիեզերաց ընդհանուր կարգը կը շփոթուի այնպիսի յայտնութեան մը տրուելովը, ոչ ալ բնութեան օրինաց մին կ'եղծուի։ Գերագոյն զօրութիւն մը կրնայ ինքզինք յայտնել մեծ նպատակի մը համար առանց խանգարում գործելու նիւթական աշխարհին բնական կարգին։ Ուրեմն, ո՞վ կրնայ ցուցնել թէ այսպիսի յայտնութիւն մը հակառակ է նիւթական աշխարհի բնութեանը։

Բայց եւ այնպէս ոմանք առարկելով կը պնդեն թէ մարդկային մտաց բնութեանը հակառակ է հաւատալ աստուածային մասնաւոր յայտնութեան մը։ Այս առարկութեան պատասխանը շատ դիւրին է։

*Մարդու մտքին բնութեանը հակառակ չէ աստուածային մասնաւոր յայտնութեան մը հաւատալ, եւ ասոր ապացոյցը սա է որ մարդիկ ի սկզբանէ անտի հաւատացած են այսպիսի յայտնութեանց։ Նոյն իսկ սխալ եւ սուտ յայտնութեանց մարդոց կողմէն հաւատք ընծայուած ըլլալը կը ցուցնէ թէ մարդկային մտքին օրինաց հակառակ չէ աստուածային յայտնութեանց հաւատալ։ Մարդկային ազգին պատմութիւնը կը ցուցնէ թէ մարդ այնպէս կազմուած է որ պատրաստ է հաւատալ այսպիսի յայտնութեանց։ Թէ կրթեալ եւ թէ անկիրթ ազգաց պատմութիւնը բացայայտ կը ցուցնէ թէ Աստուծմէ մասնաւոր յայտնութիւն մը տրուած ըլլալն անհաւատալի չէ։ Արդարեւ այսպիսի յայտնութիւն մը չի կրնար առանց ապացուցի ընդունուիլ, եւ աստուածային յայտնութիւն մը հաստատելու համար պէտք են աւելի զօրաւոր փաստեր քան զոր պէտք են հասարակ դէպքեր հաստատելու համար։ Բայց, եթէ բաւական զօրաւոր փաստ կայ, կրնանք հաւատալ թէ Աստուծմէ մասնաւոր յայտնութիւն մը տրուած է։*

*Հիմա կը մնայ քննել ուրիշ խնդիր մը, այսինքն թէ անհրաժեշտակա՞ն է արդեօք որ Աստուծոյ կողմէն այնպիսի յայտնութիւն մը տրուած ըլլայ մարդոց։ Այս հարցման համառօտիւ կը պատասխանենք թէ, եթէ մարդիկ կարօտ չեն աստուածային մասնաւոր յայտնութեան մը, ապա հաւանական չէ թէ Աստուած տուած է մարդոց այնպիսի յայտնութիւն մը, քանզի Աստուած չըներ ինչ որ հարկաւոր չէ։ Եթէ մարդիկ ի բնէ կրնան սորվիլ ինչ որ հարկաւոր է իրենց ժամանակաւոր եւ յաւիտենական երջանկու-*

թեան համար, ապա հաւանական չէ որ մասնաւոր յայտնութիւն մը առած են երկինքէն։ Եթէ մարդիկ իրենց կարողութիւնները հաւատարմութեամբ եւ համբերութեամբ գործածելով կրնան սորվիլ ինչ որ հարկաւոր է իրենց ծագման, պարտուց եւ վախճանին նկատմամբ, ապա հաւանական չէ որ Աստուած մասնաւոր յայտնութեամբ օգնած է անոնց։

Բայց, ընդհակառակն, եթէ բնութեան լոյսը բաւական չէ լուսաւորել զմարդիկ, ապա անհաւանական չէ որ անոնց երկնաւոր Հայրն երկնաւոր լոյս մը ղրկած է անանց։ Եթէ մարդիկ իրենց կարողութիւններուն միջոցաւ չեն կրնար ճշմարտութեան գիտութեանը հասնիլ, ապա հաւանական է որ Աստուած իր մարդասիրութեամբն օգնած է անոնց։ Եթէ մարդկային ազգը կորուսանելով ճշմարիտ Աստուծոյ գիտութիւնը կուրաբար կը քալէր մահու եւ կորստեան ճամբուն մէջ, ապա հաւանական է թէ Աստուած անոնց յայտնած է յաւիտենական կենաց ճամբան։

Ուրեմն, մարդկային ազգն Աստուծմէ մասնաւոր յայտնութեան մը կարօ՞տ է։ Քննենք այս խնդիրն ուշադրութեամբ եւ անաչառութեամբ, եւ անատեն պատրաստ պիտի ըլլանք պատասխանելու սա առարկութեան թէ անհաւանական է որ Աստուած մասնաւոր յայտնութիւն մը տուած ըլլայ մարդոց։



# ԳԼՈՒԽ Դ.

## ՄԱՐԴԻԿ ԱՍՏՈՒԾՄԷ ՄԱՍՆԱՒՈՐ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՄԸ ԿԱՐՕ՞Տ ԵՆ

*Եթէ մարդիկ կարող չեն ինքնին ստանալ իրենց ներկայ եւ յաւիտենական երջանկութեան համար հարկաւոր գիտութիւնը, ապա կարօտ են աստուածային մասնաւոր յայտնութեան։ Ուրեմն, կայ մարդոց ներկայ եւ յաւիտենական երջանկութեան համար հարկաւոր գիտութիւն զոր մարդիկ կարող չեն ստանալ իրենց բնական կարողութիւնները գործածելով միայն։*

*Մարդիկ կարօտ են ստանալ ճշմարիտ գիտութիւն գերագոյն էակին վրայ, որոյ կամքէն բոլորովին կախում ունի անոնց ներկայ եւ հանդերձեալ երջանկութիւնը։*

*Մարդիկ կարօտ են ճշմարիտ գիտութիւն ունենալ այն բարոյական կառավարութեան վրայ որուն հպատակ են, եւ որոյ օրինաց համաձայն պիտի որոշուին անոնց ներկայ պարտքերն եւ հանդերձեալ վիճակը։*

*Մարդիկ կարօտ են գիտնալ թէ արդեօք իրենց հոգին պիտի պահէ իր գոյութիւնը մարմնոյն մեռնելէն ետքը. եւ եթէ պիտի պահէ, իւրաքանչիւր մարդու հանդերձեալ վիճակը մարդուն այս աշխարհի մէջ գործելու եղանակէն կախում պիտի ունենայ. եւ եթէ պիտի ունենայ, մարդ հոն ինչպէս գործելու եւ ինչպէս ապրելու է որ յարմար ըլլայ հանդերձեալ կենաց մէջ երանութեան հասնելու։ Մար-*

*դիկ կարօտ են նաեւ ստուգիւ գիտնալու թէ իրենց մեղքերը կրնա՞ն ներուիլ. եւ եթէ կրնան ներուիլ, ի՞նչ ընել պէտք է մարդոց իրենց մեղաց թողութիւն ընդունելու համար ։*

*Վերոյիշեալ խնդիրները լոկ հետաքրքրական խընդիրներ չեն, այլ վերջին աստիճանի կարեւոր գործնական խնդիրներ են ։ Բաւական չէ որ մարդ այս խնդիրներուն վրայ լոկ մակաբերութիւններ ունենայ թէ եւ սուր, կարծիքներ՝ թէեւ հանճարեղ, ենթադրութիւններ՝ թէեւ հաւանական ։ Այս խընդրոց վրայ մարդոց մակաբերութիւններն որչափ հանճարեղ ըլլան, անոնց փիլիսոփայական տեսութիւններն որչափ գեղեցիկ, մարդոց կարօտութիւնը չեն կրնար լեցնել ։ Մարդիկ կարօտ են լոյսի, հաւաստի, որոշ եւ հաստատուն տեղեկութիւն ունենալ ։ Արդ, միթէ մարդիկ կարող են այսպիսի գիտութիւն ստանալ այս խնդրոց վրայ առանց աստուածային յայտնութեան ։*

*Այս խնդիրն որոշելու համար հարկ չէ փիլիսոփայական նուրբ քննութիւններու դիմել մարդուս բնական կարողութիւններուն վրայ ։ Կրնանք շատ աղէկ հասկնալ թէ մարդիկ ինչ բան ընելու կարող են այս մասին, եթէ նկատենք թէ մարդիկ ինչ ըրած են ցարդ ։ Անցեալին մէջ մարդիկ իրենց բոլոր կարողութիւններովը ջանացին գիտնալ ինչ որ հնար էր Աստուծոյ եւ մարդկային հոգւոյն վրայ ։ Այս ջանքերը ոչ թէ քանի մը տարի միայն, այլ դարեր տեւեցին. ոչ թէ բարբարոս ցեղեր միայն, այլ իրենց հանճարոյն եւ փիլիսոփայութեան կողմանէ նշանաւոր ազգեր ըրին այս ջանքերը ։ Անոնք որ այս*

*մեծ խնդրոց քննութեամբն զբաղեցան, ոչ թէ տկարամիտ, նախապաշարեալ եւ անկարող մարդիկ էին, այլ իրենց մտաւորական ձրից եւ փիլիսոփայական կարողութեանց կողմանէ արդարեւ նշանաւոր եւ անուանի մարդիկ էին։ Այս անդուլ աշխատութեանց եւ անխոնջ հետազօտութեանց հետեւանքն ինչ եղաւ։ Աշխարհիս փիլիսոփաներն ինչ բան կրցան որոշել այս խնդրոց վրայ մինչեւ ի գալուստն Քրիստոսի յաշխարհ։*

*Փիլիսոփայք անկարող եղած են ստոյգ տեղեկութիւն առնել, կամ հաստատուն համոզման մը հասնիլ այս խնդրոց վրայ, եւ ինչպէս բնական էր, անոնցմէ շատերն ընդհանուր տարակուսանաց եւ յերկուանաց մէջ մնացին։ Նոյն իսկ Սոկրատայ ժամանակ իմաստակ կոչուած փիլիսոփայք հին աւանդութիւնները ծաղրեցին, եւ իբր չնչին բան՝ արհամարհեցին ճշմարտութիւնը։ Եպիկուրեանք կը կարծէին թէ ամէն բան դիպուած է եւ մարդուս կամքէն յառաջ կուգայ։ Ասոնք ուրացան հոգւոյ անմահութիւնը, եւ աշխարհիս հեշտութեանց անձնատուր եղան։ Նոր Ակադեմիա կոչուած փիլիսոփայական աղանդոյն վարդապետութեանց նայելով (244 նախ քան զՔրիստոս), մարդիկ կարող չէին հաստատել որ եւ իցէ ճըշմարտութեան։ Յառաջ քան զծնունդն Քրիստոսի Հռոմայեցւոց մէջ շատ գիտուն մարդիկ չէին հաւատար հանդերձեալ կենաց։ Կատոն եւ Կեսար Հռոմէական ծերակուտին մէջ յայտնապէս ըսին թէ, խաբուած են անոնք որ կը հաւատան թէ հոգին մարդուս մահուանէն ետքն ալ կ'ապրի։*

*Եղան տակաւին գիտնոց մէջ ոմանք, որ սրտի մտօք*

խորհեցան եւ խնամով ջանացին լուծել մարդուս գոյութեան եւ ապագայ կենաց խնդիրը ։ Բայց ցաւով խոստովանեցան թէ, որչափ եւ ջանացին, կարող չէին հասնիլ ճշմարտութեան, եւ ճշմարտութեան նկատմամբ յերկուանաց եւ անստուգութեան մէջ մնալու ստիպուած էին ։

Սոկրատ հին հեթանոսութեան ամենէն երեւելի անձն էր. իր դարուն նայելով շատ բարձր եւ իր առաքինութեամբն արդարեւ նշանաւոր էր ։ Սոկրատ փիլիսոփայից իմաստակութիւնները հերքեց, եւ իր ազգին մոլորութիւնները խստիւ դատապարտեց ։ Բայց եւ այնպէս Սոկրատ անկարող էր ազատիլ ժողովրդեան սնապաշտութիւններէն, կը հաւատար ազգային աստուածոց, եւ երբ մեռնելու վրայ էր, խնդրեց իր բարեկամներէն իրեն համար աքաղաղ մը զոհել Ասկղեպիոսի ։ Նոյն իսկ Սոկրատ որ այնչափ բարեմասնութեամբ եւ մեծ հանճարով զարդարեալ էր՝ իր անմահութեանը վրայ տարակուսանօք մեռաւ ։

Պղատոն, Սոկրատայ աշակերտն եւ նախնի փիլիսոփայից ամենէն բանիբունը, ցաւով կը խոստովանէր իր տգիտութիւնն Աստուծոյ եւ մարդուս հոգւոյն վրայ ։ Երբ աստուածոց վրայ խօսիլ կը սկսէր, իր աշակերտաց կ'ըսէր թէ այս մասին իրմէ ուրիշ բան չսպասեն բայց կարծիք ։ Երբ հոգւոյ եւ անոր վախճանին վրայ կը խօսէր, կ'ըսէր. « Ինծ կը թուի թէ կամ անկարելի եւ կամ շատ դժուարին է այս բաներն աղէկ գիտնալ աշխարհիս մէջ, բայց եւ այնպէս տկարամիտ մարդու գործ է ամէն կերպով չփորձել եւ չքննել ինչ որ ըսուած է անոնց վրայ ։ »

Դարձեալ Պղատոն իւր Աղկիբիադէս անուն գրքին մէջ կ'ըսէ . « Համբերութեամբ սպասելու ենք մինչեւ որ մէկը , (աստուած մը կամ մարգարէ մը), մեզի սորվեցնէ մեր բարոյական եւ կրօնական պարտականութիւնները , եւ մեր աչուըներէն մութը փարատէ : »

Աստուծոյ եւ մարդկային հոգւոյ վրայ ստոյգ տեղեկութիւն ստանալու համար նախնի մեծ փիլիսոփայից ջանքերը արդի փիլիսոփայից շատերուն ընթացքը կը դատապարտեն: Մեծանուն Պղատոնի խոնարհ խոստովանութիւնը թէ մարդկային միտքը տկար է , եւ կարօտ է աստուածային մասնաւոր յայտնութեան , կը դատապարտէ զանոնք որ ամբարտաւանութեամբ կ'ապաւինին իրենց կարողութիւններուն եւ Աստուծմէ օգնութիւն չեն խնդրեր :

Յամպլիքոս անուն ուրիշ հին փիլիսոփայ մը կ'ըսէ. « Յայտնի է թէ մարդիկ ընելու են ինչ որ հաճոյ է աստուածոց , բայց թէ ինչ են այն բաները որ հաճոյ են աստուածոց՝ դիւրին չէ գիտնալ, եթէ մարդ չսորվի նոյն իսկ Աստուծմէ , եւ կամ այնպիսի անձէ մը որ Աստուծմէ սորված է : »

Ուրիշ հին փիլիսոփայ մը , Քսենոփանէս , Բնութիւն անուն գրքին մէջ կ'ըսէ . « Ոչ ոք ստոյգ գիտութիւն ունեցաւ կամ պիտի ունենայ աստուածոց վրայ, քանզի թէ եւ ճշմարիտ ըլլայ ինչ որ կ'ըսէ մարդ, չի կրնար վստահ ըլլալ թէ արդարեւ ճշմարիտ ըսաւ։ Տարակոյս եւ յերկուանք ամէն տեղ կը տիրեն : »

Կիկերոն «Զաստուածոց» անուն ճառին մէջ կ'ըսէ . « Բոլոր այս բաները խորին խաւարով պատեալ են։ Անոնք որ կ'ըսեն թէ աստուածներ կան , իրենց

կարծեաց մէջ այնպիսի տարբերութիւններ եւ հակասութիւններ կը ցուցնեն որ անհնար է . այն կարծիքները մէկտեղ բերելով ընել ուսում կամ գիտութիւն ։ Եթէ աշխարհ եկած ըլլայինք այնպիսի պարագաներու ներքեւ որ կարենայինք ստուգիւ եւ բացայայտ ճանչնալ բնութիւնը , եւ բոլոր մեր կենաց մէջ հետեւիլ անոր ճշմարիտ եւ անարատ վարդապետութեանց , թերեւս կարելի պիտի ըլլար բաւական լոյս առնել բնութենէն . բայց բնութիւնը տուած է մեզ ուղիղ բանի փոքր կայծեր միայն , զորս ապականեալ խորհուրդներով եւ չար գործերով այնպէս արագ կը մարենք որ բնութեան լոյսը բնաւ չի տեսնուիր ։» Նոյն հեղինակը հոգւոյ անմահութեան նկատմամբ փիլիսոփայից կարծեաց վրայ խօսելով կ՚ըսէ • «Թէ անոնց կարծիքներէն որը ճըշմարտութեան աւելի մօտ է , մեծ խնդիր է . եւ թէ անոնցմէ որը ճշմարիտ է , Աստուած մը ըսելու է մեզ ։»

Հռոմայեցի ուրիշ հեղինակ մը , Պլինիոս , կը խոստովանի թէ իր հոգին քաղցեալ էր ճշմարտութեան , եւ կ՚ողբայ թէ կարելի չէր իր հոգւոյն քաղցը յագեցնել ։ Կը հետեւցնէ թէ մարդ ճշմարտութեան հասնելու անկարող ըլլալուն համար արարածոց թշուառագոյնն է , եւ թէ Աստուծոյ մեծ պարգեւն է որ մարդ կրնայ՝ անձնասպան ըլլալ ։

Նախնի փիլիսոփայից ամենէն երեւելիներուն խոստովանութիւնները եւ հառաչանքը լաւագոյն պատասխան են վերոյիշեալ հարցման , թէ արդեօք մարդիկ կարօ՞տ են աստուածային մասնաւոր յայտնութեան ։ Այս փիլիսոփայք կը ցուցնեն թէ աշխարհ

հարկաւոր է մարդոց ստոյգ տեղեկութիւն ստանալ Աստուծոյ եւ հոգւոյ վրայ ։ Այս փիլիսոփայք մեծ փութով ջանացին ստանալ այնպիսի գիտութիւն, բայց անկեղծութեամբ խոստովանեցան իրենց անյաջողութիւնը եւ ապիկարութիւնը, եւ ինչպէս անոնց գրուածներէն կ'երեւի, ապրեցան եւ մեռան առանց գիտնալու կարեւոր ճշմարտութիւններ ։ Ստոյգ է թէ անոնցմէ ոմանք ժամանակ ժամանակ բարձր եւ գերազանց գաղափարներ յայտնեցին Աստուծոյ եւ մարդկային հոգւոյն վրայ, բայց ատոնք ալ լոկ կարծիքներ էին, եւ այն գաղափարները յայտնող անձինք իսկ չէին կրնար բոլորովին վստահիլ անոնց ։

Որովհետեւ ամենէն բանիբուն եւ հանճարեղ հին փիլիսոփայք կարող չեղան ճանչցնել մարդոց ճշմարիտ Աստուածը, մարդիկ ինկան կռապաշտութեան անպատշաճութիւններուն, մոլորութիւններուն եւ խայտառակ զեղխութիւններուն մէջ ։ Բազմացուցին իրենց արու եւ էգ աստուածներուն թիւը, եւ պաշտեցին զանոնք խայտառակ եւ անամօթ ծէսերով ։ Անոնց կ'ընծայէին ոչ միայն քանի մը առաքինութիւններ, այլ եւ մարդկային անարգ կիրքեր, ինչպէս վրէժխնդրութիւն, անգթութիւն, արբեցութիւն եւ անառակ ցոփութիւն, եւ այսպիսի աստուածոց երկրպագուք չուառով նմանեցան անոնց զորս կը պաշտէին ։ Յոյնք եւ Հռոմայեցիք ի սկզբան շատ առաքինութիւններ ունէին, բայց յետոյ բոլորովին ապականեցան ։

[illegible] կ'ըսէ թէ նոյն իսկ փիլիսոփայք ընդհանրապէս առաքինութենէ զերծ չէին. ամենէն

մոլի գործերը կը ծածկէին համեստ հանդերձի եւ խիստ ձեւերու ներքեւ ։ Յունաց կրօնական տօներն եւ խորհուրդները , զոր օրինակ Դիոնիսեան եւ Բագոսեան տօներն , ամենէն գարշելի պղծագործութեամբ կը կատարուէին։ Այնպիսի երգեր կ'երգուէին եւ ներկայացումներ կ'ըլլային որ մարդոց ցած կիրքերը կը գրգռէին ։ Յետոյ Հռոմայ մէջ ալ նմանօրինակ պիղծ եւ գարշելի արարողութիւններ կը կատարուէին ։ Զազրագոյն պղծութիւններ կ'ընծայուէին այն աստուածոց ։ Ոչ միայն բանաստեղծք երգերով կը գովէին անոնց ամօթալի գործերն , այլ եւ պատկերահանք եւ արձանագործք անպարկեշտ պատկերներով եւ արձաններով կը ցուցնէին զանոնք ։ Կորնթոսի մէջ , քաղքին ամենէն ծաղկեալ ժամանակը , Աստղկան նուիրեալ խառնագնաց կիներ սրբազան անձինք կը համարուէին ։ Կորնթոս իր եկամտից մէկ մեծ մասը այն խառնագնաց կիներէն կ'առնէր ։ Ուստի զարմանալի չէ որ Կորնթոսի բնակիչները նշանաւոր եղան իրենց ցոփութեան եւ պղծագործութեան կողմանէ ։

Յոյն եւ Հռոմայեցի մատենագիրներէն շատերը զօրաւոր կերպով կը ցուցնեն կռապաշտութեան ապականիչ ազդեցութիւնը ։ Պղատոն Հանրապետութիւն անուն գրքին երկրորդ մասին մէջ կը խօսի աստուածոց տրուած յատկութեանց վնասակար ազդեցութեան վրայ , եւ կարգ կու տայ այնպիսի պատմութիւններ հրապարակաւ չկարդալ, որոնք [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] եւ [illegible] զանոնք [illegible] [illegible] ։ Արիստոտել խրատ կու տայ աստուածոց անհամեստ արձանները ու պատկերնե-

Տրայիանոս կայսեր հրամանաւ տասն հազար զոյգ սուսերամարտք կռուեցան ի զբօսանս ժողովրդեան ։

Ամենէն փայլուն եւ անգութ գերութիւնը կը տիրէր Յունաստանի եւ Հռոմայ մէջ ։ Գերեաց տէրերը կատարեալ իշխանութիւն ունէին տանջել եւ մինչեւ իսկ սպաննել իրենց գերիները , եւ շատ անգամ գերիներն ամենաչնչին բանի մը համար ամենէն անգութ կերպով կը սպաննուէին ։

Այլ եւ այլ պարագաներու մէջ տղայք սպաննելն ալ ոճիր համարուած չէր ։ Այն ժամանակի քաղաքակրթեալ ազգաց ոմանց մէջ իմաստութիւն կը համարուէր հիւանդոտ եւ խեղ տղայք սպաննել ։

Թէ մարդիկ կարօտ էին աստուածային մասնաւոր յայտնութեան մը , ասոր ինչ աւելի զօրաւոր ապացոյց կրնար ըլլալ քան այն սոսկալի վիճակը յորում կը գտնուէին թէ՛ քաղաքակրթեալ եւ թէ բարբարոս ազգեր Քրիստոսի գալստեան առենը ։ Աշխարհ իր իմաստութեամբը չճանչցաւ զԱստուած ։ Մարդկային փիլիսոփայութիւնը չկրցաւ ուրիշ բան ընել , բայց եթէ յայտնել քանի մը վերացեալ սկզբունք , որ բաւական չէին գոհ ընել նոյն իսկ փիլիսոփաները ։ Բարձր աստիճանի քաղաքակրթութեան հասած ազգերն անգամ կարող չեղան լուծել Աստուծոյ եւ մարդուս հոգւոյն վերաբերեալ մեծամեծ խնդիրները ։ Թէ եւ դրականութիւնն եւ գեղարուեստք զարմանալի յառաջադիմութիւն ըրին , մարդիկ մնացին տարակուսի եւ անստուգութեան մէջ մեծամեծ բարոյական եւ հոգեւոր ճշմարտութեանց վրայ , եւ իբրեւ անխուսափելի արդիւնք այս բարոյական տգիտութեան , բարուց անհնարին ապականութիւն մը

տիրեց ազգաց մէջ . Նոյն իսկ փիլիսոփայք ազատ չմնացին բարուց ապականութենէ : Փիլիսոփայութիւնը կարողացաւ իր աշակերտները տանել անհնարին չարիքէն եւ անոնց վրայ խօսիլ, բայց չկրցաւ ցուցնել հնարք մը որով մարդիկ կարող ըլլային ազատիլ այն չարիքէն, եւ որով մարդկային ընկերութիւնը կարող ըլլար մաքրուիլ: Մտքի զարգացումը բաւական չեղաւ պահել զմարդիկ բարոյական ապականութենէ, եւ ժողովուրդներն կրօնական անգիտութեան մէջ. Մնալով անձնատուր եղան անարգ կռապաշտութեան, որ յառաջ բերաւ ամէն տեսակ զեղծում, անգթութիւն եւ ապականութիւն : Եւ այսպէս, ինչպէս նախնի փիլիսոփայից մէջ իմաստնագոյններուն եւ գգաստագոյններուն, զոր օրինակ Սոկրատայ, Պղատոնի, Կիկերոնի եւ Սենեկայի վկայութիւններէն ալ յայտնի է, այն դարերուն մարդիկը կարօտ էին աստուածային մասնաւոր յայտնութեան մը :

Դրեթէ 2,000 տարի անցաւ անկէ ի վեր, եւ այսչափ երկայն ատենուան մէջ աշխարհ առաջ. եւ մեծ յառաջադիմութիւն ըրած է արուեստից եւ գիտութեանց մէջ: Արդարեւ աշխարհ մեծ յառաջադիմութիւն ըրած է դէպ ի բարձր աստիճանի քաղաքակրթութեան, եւ, բայց ի ճարտարապետութենէ եւ անդրիագործութենէ, ուրիշ բաներու մէջ արդի աշխարհս վեր ի վերոյ է քան զնախնիսն : Ուստի թէպէտեւ գտնուին մարդիկ որ ըսեն թէ, աշխարհ, Քրիստոսի գալստեան ատեն, կարօտ էր աստուածային մասնաւոր յայտնութեան, բայց հիմա կարօտ չէ :

Կրնանք թերեւս ըսել թէ մարդիկ հիմա փիլիսո-

ները, բայց երբ բնագէտէն կը պահանջուի ցուցնել թէ ինչ է կենդանութեան պատճառն ու սկիզբը, անկարող է պատասխանելու։ Արդէն փիլիսոփայք աւելի ձեռնհաս չեն քան զնախնիս ճշդիւ պատասխանելու սա հարցմանց. «Ի՞նչ եմ,» «Ուստի՞ կու գամ,» «Ո՞ւր կ'երթամ,» «Վախճանս ինչ պիտի ըլլայ։» Ոչ մանրացուցիչ կրնայ տեսնուիլ մարդուս ծագումը, ոչ դիտակով անոր վախճանը, ոչ ալ քիմիական վերլուծութեամբ կրնայ գիտցուիլ թէ մեղքը կրնայ թողուիլ, եւ թէ ինչպէս կրնայ սուրբ ըլլալ մարդկային միտքը։ Այս հարցմանց պատասխանելու համար մենք ալ նոյնպէս կարօտ ենք աստուածային մասնաւոր յայտնութեան, ինչպէս էին նախնիք Յոյնք եւ Հռոմայեցիք։

Թող չկարծուի թէ, եթէ մենք այս խնդրոյ վրայ հիներուն պէս տգէտ ըլլայինք, անոնց բարոյական ապականութեանը մասնակից չէինք ըլլար։ Մարդիկ բարոյական սոսկալի ապականութենէ եւ զեղծումէ այն ատեն միայն ազատուեցան, երբ գիտցան այն կարեւոր ճշմարտութիւնները որ կը վերաբերին ճշմարիտ Աստուծոյ, մարդուս առ Աստուած պատասխանատուութեանը, վերջին դատաստանին եւ աստուածային Փրկչի մը միջոցաւ եղած փրկութեան։ Մարդիկ, ազգեր եւ ժողովուրդներ, այն ատեն կը զեղծանին երբ չեն գիտեր կամ կը մերժեն կամ սխալ կը հասկնան Սուրբ գրոց մէջ յայտնուած մեծամեծ ճշմարտութիւնները։ Աշխարհի պատմութեան համեմատ մարդիկ գիտեն հեթանոս ազգաց այժմու զեղծ վիճակը. գիտեն թէ անգթութիւն, մոլութիւն, եւ ընդհանուր ապականութիւն ողողած են զանոնք, եւ

թէ արդի քաղաքակրթութիւնը շուտով պիտի փտէր, ինչպէս փտեցաւ հին Յունաց եւ Հռոմայեցւոց քաղաքակրթութիւնը, եթէ Աւետարանին սրբարար ազդեցութիւնը չըլլար :

Երբ դար մը առաջ Եւրոպայի ամենէն քաղաքակրթեալ ազգաց մին մերժեց Քրիստոնէութիւնը : Այս ազգին մէջ ուսմունք եւ գիտութիւնք յառաջադիմութեան բարձր աստիճանը հասած էին, եւ փիլիսոփայութիւնը կը պարծէր թէ կատարելութեան մօտեցաւ : Արդարեւ, եթէ ազգ մը կրթութեան միջոցաւ, առանց աստուածային մասնաւոր յայտնութեան, երբէք կարող էր ինքզինք բարոյապէս ուղղել, Գաղիա ըրած պիտի ըլլար այս բանն անցեալ դարուն վերջը : Բայց Գաղիա Աւետարանը մերժելով ինչ արդիւնք տեսաւ : Աշխարհի վրայ թերեւս երբէք տեղ մը չտեսնուեցաւ այնչափ անգթութիւն, չարութիւն եւ անմաքրութիւն, որչափ Գաղիոյ հռչակաւոր մայրաքաղաքին մէջ : Արդարեւ Գաղիոյ մեծ յեղափոխութեան (1792—93) բոլոր սոսկալի անկարգութիւնները Բարիզի մէջ հրատարակուած անհաւատութեան ընծայելու չենք. բայց եւ այնպէս յայտնի է որ, երբ այն քաղաքը մերժեց Յիսուս Քրիստոսի Աւետարանը, ինքզինք պատրաստեց մարդկային սրտին բոլոր կիրքերուն մատնուելու : Բարիզ քաղաքին քանի մը տարի առաջ Գերմանացիներէն պաշարուելուն ատենը, հասարակականաց (քօմինար) կողմէն հոն գործուած ոճիրները կը հաստատեն այս ճշմարտութիւնը :

Արժան է որ ամէն մարդ կարդայ անուանի Գաղիացի քաղաքագիտին եւ պատմաբանին, Կիզոյի, սա խօսքը.

«Երբէք երեւակայա՞ծ էք թէ ինչ կ'ըլլար մարդ մը, մարդկային ազգը, մարդկային ընկերութիւնը, եթէ կրօնքը չըլլայէր։ Չեմ վարանիր ըսելու թէ մարդուս երեւակայութիւնը չի կրնար իրեն առաջքը բերել թէ ինչ բաներ տեղի պիտի ունենային մեր մէջ եւ մեր բոլորտիքը, եթէ Քրիստոնէական հաւատքը վերնար։ Ոչ ոք կրնայ ըսել թէ ինչ աստիճան անկարգութեան եւ վատթարութեան մէջ կ'իյնար մարդկութիւնը։»

Հին եւ նոր պատմութիւնը կը ցուցնէ, ուրեմն, թէ մարդիկ յետին կարօտութիւն ունին աստուածային մասնաւոր յայտնութեան մը։



# ԳԼՈՒԽ Ե.

## Ի՞ՆՉ ՏԵՍԱԿ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԿԱՆ ՈՐ ԱՍՏՈՒԱԾ ՄԱՍՆԱՒՈՐ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ ՏՈՒԱԾ Է ՄԱՐԴՈՑ

*Առջի գլխոյն մէջ ցուցուցինք թէ մարդիկ վերջին աստիճանի կարօտութիւն ունին աստուածային մասնաւոր յայտնութեան մը։ Ճշմարիտ է որ իրաւունք չունինք այս կարօտութենէն միայն հետեւցնել թէ այնպիսի յայտնութիւն մը իրօք տրուած է մարդոց։ Սակայն երբ կը համոզուինք թէ մարդիկ վերջին աստիճանի կարօտութիւն ունին այնպիսի յայտնութեան մը, պատրաստ կ՚ըլլանք անաչառապէս քննելու թէ արդարեւ այնպիսի յայտնութիւն մը տրուած է մարդոց, եւ թէ Քրիստոնէութիւնն աստուածային յայտնութիւն է ։*

*Քրիստոնէութիւնը հիմնուած է Յիսուս Քրիստոսի Աւետարանին վրայ, եւ կը պնդէ թէ այս Աւետարանը մասնաւոր յայտնութիւն է Աստուծմէ, եւ Աւետարանին սորվեցուցած կրօնքն ուրիշ բոլոր կրօնքներէն կը տարբերի սա կողմանէ որ, անոր ապացոյցները, թէ ըստ որպիսութեան ու թէ ըստ քանակութեան, կը գերազանցեն քան զապացոյցս այլոց կրօնից ։*

*Նախ, Քրիստոնէութիւնը կ՚ընծայէ պատմական ապացոյցներ։ Բաց ի հիմնադրէն Քրիստոնէութեան ուրիշ որեւիցէ կրօնքի հիմնադիրն ըսած չէ, ինչպէս*

ըսաւ Քրիստոս . «Թէեւ ինծի չէք հաւատար , գոնէ գործքերուն հաւատացէք» (Յովհ. Ժ. 38) ։ Քրիստոս չպահանջեց առանց ապացուցի հաւատալ իր խօսքերուն միայն ։ Իր խօսքերուն հետ ցուցուց նաեւ գործեր որ այն խօսքերուն ճշմարտութիւնը հաստատեցին ։ Յետ Հրէական կրօնից (որ արդարեւ Քրիստոնէութեան մէկ մասն է) , Քրիստոնէութիւնն է միայն որ կը կենայ պատմական հիման վրայ , ուստի եւ անոր փաստերը կրնան պատմական խիստ եւ անաչառ քննադատութեան տակ դրուիլ ։

Ճշմարիտ է թէ Քրիստոնէութեան ծագման վերաբերեալ պատմական դէպքերը տեղի ունեցան շատ դարեր առաջ, եւ այնպիսի ժամանակ մը երբ ձեռագիր գիրքեր միայն կային, որոնց շատերը հիմա կորսուած կամ ջնջուած են, բայց եւ այնպէս կան տակաւին բաւական ապացոյցներ, որոց նայելով կրնանք բանաւոր հաւաստութեան մը հասնիլ յիշեալ դէպքերուն նկատմամբ ։ Երբ կը նկատենք թէ ուրիշ պատմական դէպքերու վերաբերեալ որչափ ապացոյցներ կորսուած են , արդարեւ կը սքանչանանք աստուածային նախախնամութեան վրայ որ ութեւտասն դարեր պահեց Քրիստոնէութեան ծագման վերաբերեալ այնչափ ապացոյցներ ։

Երկրորդ, Քրիստոնէութիւնը , բաց ի պատմական ապացոյցներէ, կ'ընծայէ նաեւ ուրիշ ապացոյցներ , որ նոյն իսկ Աւետարաններուն պարունակութենէն յառաջ կուգան , եւ կը հաստատեն Քրիստոնէութեան աստուածային ծագումը ։ Այս երկու տեսակ ապացոյցները քննելէ առաջ համառօտ նայուածք մը ձգենք անոնց վրայ ։

### Ա. Պատմական ապացոյցներ.

1. Պատմական ապացոյց կայ որ Յիսուս Քրիստոս կոչուած մարդ մը արդարեւ ապրեցաւ Պաղեստին իբր ութեւտասն դար առաջ, եւ իրեն համար ըսաւ թէ Աստուծոյ Որդի է եւ Աստուծմէ ղրկուած է մարդիկ իրենց մեղքերէն փրկելու ։

2. Պատմական ապացոյց կայ որ Յիսուս Քրիստոսի ծնանելէն շատ դարեր առաջ Հին կտակարանին մարգարէք աստուածային Փրկչի մը գալստեան վերաբերեալ շատ գուշակութիւններ ըրած էին ։ Թերեւս ոմանք ուրանան մարգարէից Աստուծմէ ներշնչեալ ըլլալը, բայց չեն կրնար ուրանալ թէ մարգարէք այն գուշակութիւններն ըրին Քրիստոսի աշխարհ գալէն դարեր առաջ ։ Մարգարէք Փրկչին ծննդեան ժամանակին, տեղւոյն եւ եղանակին, անոր թէ կենաց եւ թէ մահուանը վերաբերեալ պարագաներուն նկատմամբ շատ մանրամասն կանխասացութիւններ ըրին, եւ կան շատ պատմական ապացոյցներ, թէ բոլոր այս մանրամասն կանխասացութիւններն իրօք կատարուեցան Յիսուս Քրիստոսի ծննդեան, կենաց եւ մահուան ատենը ։

3. Կան պատմական ապացոյցներ թէ Յիսուս աշխարհիս վրայ երեւցող երեւելի մարդոց մէջ ամենէն նշանաւորն էր, թէ ուրիշ բոլոր մարդոցմէ կ՚որոշուէր իր վարուց բարոյական կատարելութեանը, իր վարդապետութեանց երկնային իմաստութեանը, իր հրաշագործութիւններուն, յարութեան եւ երկինք համբառնալուն կողմանէ ։

4. Պատմական ապացոյցներ կան թէ Յիսուս Քրիս-

տոս ըրաւ այնպիսի ազդեցութիւն մը որ, թէ յատկութեանը եւ թէ տարածութեանը կողմանէ, աշխարհիս վրայ գործուած ազդեցութեանց ամենէն նշանաւորն է։

Պատմութիւնը կը վկայէ թէ Յիսուս Քրիստոսի ազդեցութիւնը իր ազգին մէջ միայն չամփոփուեցաւ, ուրիշ թէ բարբարոս եւ թէ քաղաքակիրթ ազգաց վրայ ալ տարածուեցաւ, թէ այն ազդեցութիւնը Քրիստոսի ժամանակին միայն յատուկ չէր, այլ երկարեցաւ մինչեւ ցայսօր, եւ թէ այն ազդեցութիւնը ոչ միայն ազգերուն բարուց, սովորութեանց եւ օրինաց մէջ արտաքին բարեկարգութիւն մը յառաջ բերաւ, այլ եւ հոգեւոր յեղափոխութիւն մը գործեց մարդոց սիրտերուն մէջ։

Եթէ այս կէտերն ապացուցանելու բաւական պատմական փաստեր կան, ապա Քրիստոնէութիւնը կը կենայ պատմական անխախտ հիմանց վրայ։

### Բ. Նոյն իսկ Աւետարաններուն պարունակութենէն ապացոյցներ.

1. Եթէ Յիսուս Քրիստոսի յատկութիւնները, ինչպէս որ Աւետարաններուն մէջ ցուցուած են, պէտք քննուին, առողջ մտքի տէր եւ անաչառ մարդիկ պիտի համոզուին թէ, մաքսաւոր Մատթէոսի եւ ձկնորս Յովհաննու պէս մարդիկ պիտի չկրնային այնպիսի յատկութեանց տէր անձ մը ներկայացնել, եթէ այնպիսի անձ մը իրօք ապրած չըլլար։ Թէ աւետարանիչք անուս մարդիկ ըլլալով պիտի չկրնային գրել Աւետարաններուն մէջ գտնուած վարդապետութիւնները. Եթէ Յիսուս Քրիստոս այն

վարդապետութիւններն իրօք սորվեցուցած չըլլար, նաեւ թէ, Յիսուս, որ Բեթղեհէմ ծնած, բնակչաց տխմարութեանը եւ գեղխութեանը կողմանէ նշանաւոր Նազարեթ գիւղին մէջ սնած, եւ ի մանկութենէ Հրէից բոլոր նախապաշարումները լսած էր, եթէ արդարեւ էր այնպիսի անձ մը ինչպէս կը նկարագրեն աւետարանիչք, եւ եթէ իրօք սորվեցուց այն վարդապետութիւնները զորս աւետարանիչք կ՚ընծայեն անոր, ապա անոր ծագումն ի վեր էր քան պարզ մահկանացու մարդու ծագումը. միով բանիւ, անկարելի էր որ այնպիսի իմաստութիւն մը բղխէր Նազարեթէն, եւ այնպիսի կատարելութիւն մը մարդկային ապականութենէն։

2. Ամէն անաչառ մարդ ուշադրութեամբ բաղդատելով Աւետարաններուն վարդապետութիւններն այն բաներուն հետ զորս բնութիւնը կը սորվեցնէ, պիտի համոզուի թէ այս երկուքին մէջ այնպիսի զարմանալի համաձայնութիւն մը կայ, որ կը ցուցնէ թէ Աւետարաններն եւ բնութիւնը մի եւ նոյն աստուածային աղբիւրէ բղխած են։

Աւետարանին կատարելութիւնը կը ցուցնէ թէ Աւետարանն արդարեւ Աստուծմէ բղխած ըլլալու է։ Աւետարանն աստուածային յատկութիւններ ունի, ուստի եւ Աստուծմէ ծագած ըլլալու է։

Հիմա համառօտիւ քննենք ապացոյցները։

Ա. Կան պատմական փաստեր որ կը հաստատեն թէ արդարեւ Յիսուս Քրիստոս կոչուած անձ մը եղաւ աշխարհիս, ապրեցաւ Պաղեստինի մէջ աւելի քան ութեւտասն դար առաջ։ Այս պատմական փաստերը հետեւեալներն են։

1 . Այն մարդոց դրական վկայութիւնը որ Յիսուս Քրիստոս անձամբ տեսան, անոր վարդապետութիւնները լսեցին, անոր հետ խօսեցան եւ քաջ ծանօթ էին անոր ։ Այս անձինք համաձայնութեամբ կը վկայեն թէ արդարեւ Յիսուս Քրիստոս ապրեցաւ աշխարհի վրայ ։ Այս վկայութիւնք ստոյգ անձանց արժանահաւատութեանը վրայ [illegible] [illegible] խօսքեր ։

2 . Անուանի Հրէայ պատմչին, Յովսեպոսի, վկայութիւնը, որ ծնաւ Քրիստոսի թուականին 37 ին, եւ ապրեցաւ Երուսաղէմ ։ Անոր պատմութեան ութեւտասներորդ գիրքին երրորդ գլխոյն մէջ, համաձայն բոլոր ձեռագիր օրինակաց, կը գտնուի հետեւեալ վկայութիւնը . «Յիսուս կոչուած իմաստուն մարդ մը կար այն ատենը, եթէ արժան է մարդ կոչել զինք, քանզի այս անձը հրաշագործ էր եւ վարդապետ այն մարդոց որ ճշմարտութիւնը սիրով կ'ընդունէին ։» Նոյն գլխոյն մէջ կը վկայէ նաեւ թէ Յիսուս սպաննուեցաւ, եւ իր մահուանէն երեք օր ետքը աշակերտներուն երեւեցաւ ։ Շատ վէճ եղած է Յովսեպոսի այս նշանաւոր վկայութեան վրայ, բայց որովհետեւ այն վկայութիւնը կը գտնուի անոր պատմութեան բոլոր հին օրինակներուն մէջ, ինչու չընդունինք զայն իբրեւ հարազատ ։

3 . Երեւելի Հռոմայեցւոց վկայութիւնը ։ Տակիտոս, որոյ իբրեւ պատմագիր արժանահաւատութիւնը ծանօթ է, կը վկայէ թէ Յիսուս Քրիստոս ապրեցաւ Պաղեստին, եւ ի մահ դատապարտուեցաւ Պոնտացի Պիղատոսէն ; Ուրիշ վկայութիւն մը կը գտնուի նամակի մը մէջ զոր Պլինիոս Հռոմայեցի կուսակալը գրեց Տրայիանոս կայսեր ։

4. Քրիստոնէութեան թշնամիներուն վկայութիւնը։ Քրիստոնէական թուականին երկրորդ դարուն մէջ, Կելսոս, Ղուկիանոս եւ այլք յարձակեցան Քրիստոնէութեան դէմ, բայց ասոնց եւ ոչ մին ուրացաւ թէ Յիսուս Քրիստոս կոչուած անձ մը իրօք ապրեցաւ Պաղեստին։

5. Նոյն իսկ Քրիստոնէական եկեղեցւոյն գոյութենէն ծագած վկայութիւնը։ Եթէ դարէ դար ետ երթանք, այս եկեղեցւոյն սկիզբը կը գտնենք այն դարուն մէջ, յորում կ'ըսուի թէ ապրեցաւ Յիսուս Քրիստոս. եւ եթէ Քրիստոս իրօք ապրած չըլլար, Քրիստոնէական եկեղեցին որ բացի Քրիստոսէ ուրիշ հիմ չունի՝ ինչպէս կրնար հաստատուիլ, եւ իսկոյն ձեւանալ եւ զարգանալ վարդապետութիւններով եւ կարգերով, որոնց բոլորն ալ զՔրիստոս կը յիշեցնեն։

Արդարեւ այնպէս անթերի են վկայութիւնները որ կը հաստատեն թէ Յիսուս Քրիստոս իրօք ապրեցաւ աշխարհի վրայ, որ անհաւատներն իսկ չեն ուրանար այս իրողութիւնը։ Արդի անհաւատից ամենէն նշանաւորները կ'ընդունին թէ Յիսուս իրօք ապրեցաւ աշխարհի վրայ, եւ հիմնադիր եղաւ Քրիստոնէութեան։ Շտրաուս, որ այս դարուս Աւետարանին հակառակորդներուն մէջ ամենէն յանդուգն է, եւ Աւետարանները շատ խստիւ քննադատեց, կ'ընդունի թէ Յիսուս Նազովրեցի իրօք ապրեցաւ։

Բայց անհաւատներ կ'ընդունին թէ Աւետարանները հին դիցաբանութեանց կարգը չեն կրնար դասուիլ։ Րընան ստուգիւ չէր գրեր Յիսուսի վարքը, եթէ չհաւատար թէ այնպիսի անձ մը իրօք ապրեցաւ։ Րընան կ'ուրանայ Յիսուս Քրիստոսի

*աստուածութիւնը , բայց կ՚ընդունի թէ Յիսուս կոչուած անձ մը իրօք ապրեցաւ աշխարհի վրայ՝ Հռովմէական պետութեան անկման պատմութիւնը գրող Անգղիացի անուանի պատմիչը Կիպպըն կ՚ընդունի նոյնպէս թէ Յիսուս Քրիստոս ոչ թէ դիցաբանական , այլ պատմական անձ է, այսինքն թէ Յիսուս Քրիստոս ապրեցաւ աշխարհի վրայ ։*

*Մարդիկ որչափ եւ տարբեր կարծիք ունին Յիսուսի Քրիստոսի յատկութեանցը եւ գործերուն վրայ , ամէնքն ալ, անհաւատ եւ Քրիստոնեայ , միաբան են յայսմ թէ Յիսուս Քրիստոս կոչուած անձ մը իրօք ապրեցաւ աշխարհի վրայ ։ Չկայ անցեալ դէպք մը որ պատմական աւելի զօրեղ ապացոյցներով հաստատուած է ։*

*Բ . Կան Յիսուս Քրիստոսի միջոցաւ աշխարհի վրայ եղած ազդեցութեան նկատմամբ պատմական փաստեր որ կը բերուին անցեալ ութեւտասն դարերէն ։*

*1 . Հազարաւոր , ուսեալ եւ տգէտ , արժանահաւատ անձինք կը վկայեն թէ , Յիսուս Քրիստոս արտաքոյ կարգի ազդեցութիւն մը գործած է իրենց սիրտերուն եւ վարուցը վրայ ։*

*2 . Անաչառ պատմիչք կը վկայեն թէ Յիսուս Քրիստոս ընդհանուր ազդեցութիւն ունեցաւ հասարակութեանց եւ ազգաց վրայ ։*

*Այս պատմիչներուն վկայութեանը վրայ պիտի խօսինք յետոյ ։*

*Գ . Կան Յիսուս Քրիստոսի գերբնական յատկութեանը , սքանչելագործութիւններուն , բարոյական կատարելութեանցը , երկնային խնամութեանը ,*

Հրաշալի կարողութեանը եւ յարութեանը նկատմամբ տեսակ տեսակ վկայութիւններ, որոնց մեծ մասը կը գտնուի Աւետարան կոչուած պատմական գրոց մէջ։ Եթէ այս գիրքերն իբրեւ արժանահաւատ ընդունինք, անոնց վկայութիւնը բաւական եւ համոզիչ է, եւ այլ եւս տեղի չմնար տարակուսելու թէ Յիսուս Քրիստոս հրաշքներ գործեց, մեռելներէն յարութիւն առաւ, եւ թէ, ինչպէս ինք վկայեց իրեն համար, էր արդարեւ Որդի Աստուծոյ։ Բայց այս գիրքերը զուտ պատմական են. արժանի են կատարեալ վստահութեան։ Ունինք նաեւ ուրիշ այնպիսի պատմական վկայութիւններ, որ կարենանք անոնց վաւերականութիւններն ընդունել իբրեւ զուտ ճշմարտութիւն։ Որպէսզի կարենանք այս գիրքերը կատարեալ վստահութեամբ ընդունել, պէտք է որ բաւական ապացոյց ունենանք հաստատելու անոնց նկարագրին հետեւեալ երեք կէտերը.

1. Թէ Աւետարան կոչուած այս պատմական գիրքերը ստուգիւ գրուած են առաջին դարուն մէջ, և են արդարև գրուած Մատթէոսէ, Մարկոսէ, Ղուկասու և Յովհաննու.

2. Թէ այս գիրքերը հասած են մեզի ճիշդ այնպէս, ինչպէս որ գրուեցան առաջնորդներէն, առանց ամենեւին անոնց մէջ բան մը աւելցուած ըլլալու.

3. Թէ այս գիրքերը հաւաստեալ են, այսինքն թէ, անոնց հեղինակները արժանահաւատ վկաներ էին այն բաներուն զոր կը յիշեն իրենց գրուածներուն մէջ։

Եթէ բաւական պատմական ապացոյցներ կան հաստատելու վերոյիշեալ երեք կէտերը, այս Քրիստոնէութեան աստուածային ծագումը պատմաբանօրէն կը հաստատուի։

# ԳԼՈՒԽ Զ.

## ԿԱՆ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԹԷ ՉՈՐՍ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՆ ԱՐԴԱՐԵՒ ԳՐՈՒԱԾ ԵՆ ԱՌԱՋԻՆ ԴԱՐՈՒՆ ՄԷՋ ՄԱՏԹԷՈՍ, ՄԱՐԿՈՍ, ՂՈՒԿԱՍ ԵՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՆՈՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՉՆԵՐԷՆ

*Ոչ ոք կ՚ըսէ թէ Աւետարանները վերջին դարերու մէջ գրուած են, ոչ ոք կ՚ուրանայ անոնց հնութիւնը։ Թէ Աւետարանները կային Քրիստոնէութեան չորրորդ դարուն մէջ եւ ընդհանուր ընդունուած էին իբրեւ հարազատ գրուածք աւետարանիչներուն, այս մասին պատմական փաստերն այնչափ շատ եւ այնպէս բացայայտ են որ հարկ չենք համարիր մանրամասնօրէն մէջ բերել զանոնք։ Չորրորդ դարէն առաջ Աւետարաններն ուրիշ լեզուներու թարգմանուած, Նոր կտակարանի գրոց ցանկեր հրատարակուած, այն գրոց վրայ մեկնութիւններ գրուած, Աւետարաններուն դէմ հերետիկոսաց եւ անհաւատից կողմանէ յարձակումներ եղած էին, ուստի եւ յայտնի է թէ այն ատեն Աւետարանները կային։ Չորրորդ դարուն մատենագրաց գործերէն աւելի քան հարիւր գրութիւններ պահուած են մինչեւ հիմա, որոնք քիչ շատ բան կը յիշեն Աւետարաններուն վրայ, ուստի եւ յայտնի է թէ այն դարուն մէջ Աւետարաններն ընդհանուր ընդունուած էին իբրեւ հարազատ գրուածք աւետարանիչներուն։ Եթէ ուրիշ մարդիկ գրեցին Աւետարանները, եւ ոչ աւետարանիչք, հարկ է որ այն գիրքերը չորրորդ դարէն առաջ գրուած ըլլան։*

Բայց ինչ ապացոյց կայ որ Աւետարաններն երկրորդ, երրորդ կամ չորրորդ դարուն մէջ խաբեբայ մարդոց ձեռօք չգրուեցան։ Այս մասին երկու տեսակ ապացոյցներ կան։

Ա. Առաջին տեսակ ապացոյցները նոյն իսկ Աւետարաններուն մէջ կը գտնուին։

Նախ, թէև լեզուն որով Աւետարանները գրուած են՝ զօրաւոր ապացոյց է թէ այն գիրքերը գրուեցան Հրէաներէն որ Պաղեստինի կը բնակէին առաջին դարուն մէջ։ Լեզուագիտաց ծանօթ է թէ բոլոր լեզուներու մէջ դարէ ի դար փոփոխութիւններ տեղի կ'ունենան։ Հին եւ նոր Յունարէնի մէջ, ինչպէս նաեւ Հին եւ նոր Հայերէնի մէջ, մեծ տարբերութիւն կայ։ Այս տարբերութիւնները ոչ թէ մէկէն այլ դարէ ի դար տակաւ առ տակաւ տեղի ունեցած են։ Ուստի լեզուագէտք որ լեզուի մը պատմութիւնը քաջ սորված եւ բոլոր փոփոխութիւնները հետազօտած են, գիրքի մը լեզուէն կրնան որոշել դարը յորում գրուած է այն գիրքը։

Նաեւ ծանօթ է լեզուագիտաց թէ Հին Յունարէն լեզուն ունէր այլեւայլ գաւառական բարբառներ։ Ամէն գաւառի մէջ միեւնոյն եղանակով չէր խօսուեր եւ չէր գրուեր։ Յունագէտք Հին Յունարէնը բաժնած են չորս գլխաւոր ճիւղերու, բայց նաեւ իւրաքանչիւր գաւառ ունէր իրեն յատուկ ոճերն եւ ձեւերն, այնպէս որ լեզուագէտ մը գիրքի մը ոճերէն եւ ձեւերէն կրնայ հաւաստեաւ գիտնալ թէ այն գիրքն որ գաւառի մէջ գրուած է։

Աւետարանները Յունարէն լեզուաւ գրուած են, բայց այս լեզուն մաքուր Յունարէն չէ ինչպէս կը

խօսուէր Յունաստանի մէջ, այլ այն Յունարէնն է զոր կը խօսէին Պաղեստին բնակող Հրեայք ։ Այս Յունարէնին մէջ շատ Եբրայական եւ Ասորական ոճեր կան ։

Լեզուագէտք կարող են որոշել ոչ միայն տեղն ուր գրուած են Աւետարանք, այլ եւ ժամանակն երբ անոնք գրուեցան ։ Լեզուագէտք մանր հետազօտութեամբ հասկցած են թէ Աւետարաններուն յատուկ լեզուն դադրեցաւ խօսուելէ Երուսաղէմի աւերումէն եւ Հրէից ցրուելէն ետքը, իբր 70—71 ին յետ Քրիստոսի ։ Լեզուագէտներէն ոմանք կ'ըսեն թէ Յովհաննու առաքելոյն մահուանէն ետքն աշխարհիս վրայ մարդ չկար որ կարող ըլլար Եբրայայունական լեզուաւ, այսինքն Աւետարաններուն լեզուաւ, գիրք գրել ։ Ուստի նոյն իսկ Աւետարաններուն լեզուէն յայտնի է թէ անոնք գրուեցան Երուսաղէմի կործանմանէն առաջ կամ քիչ ետքը ։

Երկրորդ, ամէն դար եւ ամէն ազգ ոչ միայն իրեն յատուկ լեզու, այլ եւ իրեն յատուկ գաղափարներ, զգացումներ եւ նախապաշարումներ ունի, եւ որեւիցէ մատենագիր բոլորովին ազատ չէ իր դարուն եւ ազգին ազդեցութենէն ։ Աւետարաններէն յայտնի է որ անոնց հեղինակները Հրեայ էին, քանզի աւետարանիչք յաճախ կը ցուցնեն թէ Հրէական գաղափարներ եւ նախապաշարումներ ունէին ։ Անոնք կը պատմեն ոչ միայն Յիսուսի վարդապետութիւններն, որոնք բոլորովին ազատ էին Հրէական նախապաշարումներու ազդեցութենէն, այլ եւ կը նկարագրեն եղանակն որով ընդունեցան այն վարդապետութիւններն, եւ այս նկարագրութեան եղանակէն յայտնի է թէ Աւետարանը գրողք Հրեայ էին ։

Երրորդ, Աւետարանք շատ անգամ քաղաքական, եկեղեցական եւ ընկերական դէպքերու վերաբերեալ ակնարկութիւններ կ'ընեն։ Այս ակնարկութիւնները համաձայն են ճիշդ այն դարուն յորում կ'ըսուի թէ գրուած են Աւետարանք։ Մարդիկ խիստ քննութիւններ ըրած են, բայց կարող եղած չեն գտնել Աւետարաններուն մէջ որեւիցէ հետք կամ նշան մը որ ցուցնէ թէ անոնք վերջին դարերու մէջ գրուած են։

Եթէ աւետարանիչներն աւելի ետքի ժամանակներու մէջ ապրած ըլլային, անկարելի՛ էր անոնց այնպէս մանրամասն կերպով խօսիլ այլեւայլ դէպքերու վրայ առանց սխալելու։ Ճշմարտախօս եւ անկեղծ պատմագիր մը կրնայ ճշդիւ եւ համարձակութեամբ յիշել ժամանակակից դէպքերը, բայց ամենէն հանճարեղ պատմագիրք իսկ կարող չեն յաճախ յիշել անցեալ դարու մը վերաբերեալ դէպքերն առանց երբեմն սխալելու։ Ամենէն զգուշաւոր եւ կարող պատմագիրք անցեալ դէպքերու նկարագրութեան ատեն սխալներ կ'ընեն։ Սակայն ժամանակակից դէպքերու նկատմամբ ամենեւին սխալ չի գտնուիր Աւետարաններուն մէջ, ուստի եւ շատ հաւանական է թէ անոնց հեղինակներն ապրեցան առաջին դարուն մէջ որուն կը վերաբերին դէպքերը որ կը յիշուին անոնց գրուածոց մէջ։

Ուրեմն, նոյն իսկ Աւետարաններուն լեզուէն, ոճէն եւ պարունակութենէն զօրաւոր ապացոյց կայ թէ անոնք գրուած են Հրեաներէ որ կ'ապրէին Պաղեստին Երուսաղէմի կործանումէն (70—71 յետ Քրիստոսի) առաջ կամ քիչ ետքը. եւ եթէ անոնցմէն

գրուեցան , բոլորովին անհաւատալի է կարծել թէ առաքեալներէն գրուած չեն , վասնզի ինչպէս կարելի էր որ խաբեբաներ գիրքեր հրատարակէին իբրեւ գրուած յառաքելոց , մինչ առաքեալք անձամբ կենդանի էին ; եւ կրնային երեւան հանել անոնց խաբէութիւնը ։

Բ ։ Երկրորդ տեսակ ապացոյցները պատմական ապացոյցներ են ։

Հարկ չէ մեզի մեր դարէն մինչեւ չորրորդ դար քայլ առ քայլ ետ երթալ ցուցնելու համար թէ այն դարերուն մէջ կային Աւետարանները , քանզի ուսեալ մարդոցմէ ոչ ոք կ'ուրանայ թէ Աւետարանները չորրորդ դարուն սկիզբը կային եւ առ հասարակ իբրեւ հարազատ գրուածք առաքելոց ընդունուած եւ յարգուած էին , եւ չորրորդ դարէն սկսելով կրնանք հետազօտել Աւետարաններն դէպ ի երրորդ եւ երկրորդ դարն եւ մինչեւ այն ժամանակին երբ առաքեալներէն ոմանք եւ անոնց աշակերտներէն շատերը դեռ ողջ էին . եւ ասկէ զատ , կան նաեւ համոզիչ ապացոյցներ թէ բոլոր այս ժամանակին մէջ Աւետարաններն իբրեւ հարազատ գրուածք առաքելոց ընդունուած եւ յարգուած էին այնպիսի մարդոցմէ որ լաւագոյն պատեհութիւն ունէին քննելու թէ այն գիրքերն իսկապէս անոնց գրուածներն էին թէ ոչ ։ Այս ապացոյցներուն գլխաւորները հետեւեալներն են ։

1 . Նոր կտակարանի գրոց հին ցանկերը , 2 . Հին թարգմանութիւնները , 3 . Հին ձեռագիրները , 4 . Հին հեղինակներու գրութեանց մէջ Աւետարաններէն բերուած վկայութիւնները , 5 . Քրիստոնէութեան

րանք յիշուած են իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ։ Եթէ բաց այս ցանկերէն ուրիշ ապացոյց չունենայինք, Աւետարանաց անուններուն այս հին յիշատակութիւնը միայն բաւական էր ցուցնելու թէ, առաքելոց մահուանէն ոչ աւելի քան 200 տարի ետքը, չորս Աւետարանք առ հասարակ ընդունուած եւ յարգուած էին իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ։ Սակայն կան նաեւ ուրիշ ապացոյցներ ։

## 2. Աւետարանաց հին Թարգմանութիւնները ։

Քննադատք կ'ընդունին թէ գրքի մը հնութեան համար չկա՛ն ապացոյցք այնպէս անժխտելի ինչպէս այն գրքին հին թարգմանութիւնները ։ Արդ, Աւետարաններուն հնութեան եւ հարազատութեան համար այս ապացոյցը կայ ։ Աւետարանք, իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց, այլեւայլ լեզուաց թարգմանուած էին Քրիստոնէական թուականին առաջին դարուն մէջ ։ Աւետարաններուն հնութիւնն եւ հարազատութիւնը ցուցնող ամենէն կարեւոր թարգմանութիւնք հետեւեալներն են .

### Ա. Հին Ասորերէն Թարգմանութիւնը ։

Այս թարգմանութիւնն ընդհանուր ընդունուած է իբրեւ շատ հին, եւ անոր հնութեան մէկ ապացոյցը աս է, որ այն թարգմանութեան մէջ չեն գտնուիր Նոր կտակարանի այն գրքերն որոնց առաքեալներէն գրուած ըլլալուն տարակոյս կար Քրիստոնէական թուականին սկիզբները ։ Նաեւ գիտունք Ասորերէն թարգմանութեան ոճերն եւ ձեւերը մանր

քննելով համոզուած են թէ երկրորդ դարուն մէջ եղած է այս Թարգմանութիւնը : Ոմանք կ՚ըսեն թէ Նոր կտակարանն Ասորերէնի Թարգմանուեցաւ երկրորդ դարուն վերջերը, այլք կ՚ըսեն թէ երկրորդ դարուն կիսուն, իսկ այլք կ՚ըսեն թէ մօտ ի սկիզբն երկրորդ դարուն, այսինքն Յովհաննու առաքելոյն մահուանէն քանի մը տարի ետքը միայն :

Նոր կտակարանին այն գիրքերն որ Ասորերէն Թարգմանութեան մէջ չեն գտնուիր՝ են Պետրոս առաքելոյն երկրորդ Թուղթը, Յովհաննու առաքելոյն երկրորդ եւ երրորդ Թուղթերը, Յուդա առաքելոյն Թուղթը եւ Յայտնութեան գիրքը : Ասա այս Թարգմանութիւնը կը ցուցնէ թէ Աւետարանները կային եւ իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ընդունուած էին այն ատեն երբ այն Թարգմանութիւնը եղաւ, եւ անկէ առաջ իսկ, վասնզի կրնանք հետեւցնել թէ բաւական ժամանակ անցաւ մինչեւ որ Նոր կտակարանին գիրքերն իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ճանչցուեցան եւ ընդունուեցան եկեղեցիներէն, եւ մէկ գիրքի մէջ ժողվուելով Թարգմանուեցան օտար լեզուաց :

### Բ. Հին Իտալական Թարգմանութիւնը :

Պէտք է զանազանել այս Թարգմանութիւնը Վուլկադայ կոչուած Թարգմանութենէն որ եղաւ չորրորդ դարուն մէջ : Հին Իտալական Թարգմանութեան բոլոր պարագաները կը ցուցնեն անոր մեծ հնութիւնը, եւ այս հնութեան նշանները կան Լատին Քրիստոնէից առաջին գրուածոց մէջ : Որովհետեւ այն

թարգմանութիւնն ընդհանուր կը գործածուէր հիւսիսային Ափրիկէի մէջ Տերտուղիանոսի ատեն, որ իբր 160ին ծնաւ Կարքեդոն, հարկ է որ այն թարգմանութիւնն 150ին կամ աւելի առաջ եղած ըլլար ։ Այս թարգմանութիւնն ամբողջապէս պահուած չէ, բայց Աւետարաններուն թարգմանութիւնը հասած է մինչեւ մեր ժամանակը, եւ կը ցուցնէ թէ Աւետարանները կային եւ իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ընդունուած եւ յարգուած էին յամի Տեառն 150ի ատենները ։

Գ. Մուրատորեան հատուած ։

Այս անունը կը տրուի ձեռագիր կտորի մը որ կը վերաբերի Նոր կտակարանին գրոց, եւ զոր գտաւ Մուրատորի անուն Իտալացի բանասէր մը Միլանի Ամբրոսեան գրատան մէջ ։ Այս ձեռագրին մէջ մեծ հնութեան նշաններ կը տեսնուին ։ Ժամանակը յորում գրուած է այս ձեռագիրը՝ կ'որոշուի այսու, որ այն ձեռագրին մէջ կը յիշուի Հերմասի Հովիւ կոչուած ուրիշ գրուած մը, զոր Հերմաս «մօտերս մեր օրով գրեց,» կ'ըսէ ձեռագիրը, «մինչ անոր եղբայրը, Պիոս, Հռոմայ մէջ եկեղեցւոյ աթոռոյն վրայ էր ։» Պատմութենէ գիտենք թէ Պիոս վախճանեցաւ 157ին, ուստի եւ այս հատուածը յիշեալ թուականէն քիչ ետքը գրուած ըլլալու է ։

Այս ձեռագրին մէկ մասը կորսուած է, բայց մնացեալ մասերը բաւական են ցուցնելու թէ այն ատեն Աւետարանները կային եւ ընդհանուր ընդունուած եւ յարգուած էին իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ։

### 3. Աւետարանաց հին ձեռագիրներն ո՞ր տեղերն կա՞ն ։

*Շատ պատճառներ կան որոնց համար ցարդ պահուած չեն բազում դարեր առաջ գրուած գիրքերէն շատ օրինակներ ։*

*Նախ, անատեն տպագրութիւն չկար, եւ բոլոր հին գիրքերը ձեռագիր էին ։ Գիրքեր օրինակել դժուարին էր եւ շատ ծախք կը պահանջէր, ուստի առաջին դարուց գիրքերուն օրինակները ներկայ դարուս տպագրեալ գրոց հետ բաղդատուելով շատ քիչ էին ։*

*Երկրորդ, հին ձեռագիրներէն շատերը գրուած էին պապիրոսէ շինուած թուղթի վրայ որ շատ չէր դիմանար ։ Պապիրոսի վրայ գրուած ձեռագիր մը որ միշտ կը գործածուէր՝ չէր կրնար դիմանալ աւելի քան քառասուն կամ յիսուն տարի ։ Պապիրոսի վրայ գրուած բոլոր հին գիրքերէն միայն քանի մը հատ պահուած են Եգիպտոսի գերեզմաններուն եւ Հերգուլանոմ քաղքին աւերակաց մէջ ։ Նոր կտակարանին երեք ամենէն հին ձեռագիրները, որ տակաւին պահուած են, գրուած են ոչ պապիրոսի, այլ մագաղաթի վրայ, որ կը շինուէր ոչխարի կամ այծի մորթէ եւ էր սուղ ։ Սինայեան կոչուած հռչակաւոր ձեռագիրը զոր Դիշէնտորֆ քանի մը տարի առաջ գտաւ Սինա լերան Սուրբ Կատարինէ վանքին մէջ՝ գրուած էր վայրի այծի մորթէ շինուած մագաղաթի վրայ, եւ ամէն երկու թերթի համար գացած էր մէկ այծի ամբողջ մորթ ։ Բայց շատ քիչ ձեռագիրներ այսչափ սուղ նիւթի վրայ գրուած են ։*

*Երրորդ, առաջին դարերուն մէջ հասարակաց գրատուններ կամ դիւաններ չկային որոնց մէջ պահուէին*

*ձեռագիրները ։ Ուստի , զարմանալի չէ որ շատ քիչ ձեռագիրներ պահուած են ցարդ ։*

*Հիմա չկայ Հոմերոսի գիրքէն ամբողջ օրինակ մը որ երեքտասաներորդ դարէն առաջ գրուած է ։ Հերոդոտոսի պատմութիւնէն, որ շատ կարեւոր գիրք է, տասն եւ վեց օրինակք միայն կան ։ Նշանաւոր հեղինակներուն շատերուն գործերէն մէյ մէկ օրինակ միայն մինչեւ ցարդ պահուած է ։ Հին երեւելի հեղինակաց բոլոր գործերէն վեց կամ եօթը ձեռագիր միայն կան, որ վեցերորդ դարէն առաջ գրուած են ։*

*Սակայն Նոր կտակարանին ձեռագիր օրինակներն որ տակաւին կան՝ շատ կը գերազանցեն բոլոր ուրիշ հին գիրքերը թէ իրենց թուոյն եւ թէ հնութեան կողմանէ ։ Գիտունք մինչեւ ցարդ Նոր կտակարանին գրոց իբր հազար վեց հարիւր ձեռագիր օրինակները գտած եւ քննած են ։ Յիշեալ ձեռագիրներէն շատ քիչերը կը պարունակեն Նոր կտակարանին բոլոր գիրքերը ։ Կէսք կը պարունակեն Աւետարանները միայն, այլք՝ առաքելոց գործերն եւ ընդհանրական թուղթերը միայն, եւ այլք՝ Յայտնութեան գիրքը միայն ։ Այս հազար վեց հարիւր ձեռագիր օրինակներէն հարիւրը պահուած են Եգիպտոսի եւ Պաղեստինի մէջ, երեք հարիւր քսանն՝ Իտալիոյ մէջ, երկու հարիւր յիսունն՝ Անգղիոյ մէջ, երկու հարիւր երեսուն եւ ութը՝ Գաղիոյ մէջ, եւ անոնց մեծագոյն մասը կը գտնուին Բարիզի ազգային գրատունը. եօթանասուն օրինակ պահուած են Ռուսիոյ մէջ , եւ Մնացեալք ուրիշ տեղեր ։*

*Դարն յորում այս ձեռագիրներէն իւրաքանչիւրը գրուած է՝ կրնան որոշել գիտունք նիւթէն որոյ*

վրայ գրուած են գիրքերը, անոնց գիրերուն ձեւերէն, բառերուն անջատեալ կամ միացեալ ըլլալէն, կէտադրութենէն եւ երեսներուն եւ լուսանցներուն վրայ գտնուած ուրիշ նշաններէն ։ Բանասիրաց անաչառ քննութեամբը հաստատուած է որ այս ձեռագիրները կը վերաբերին միջոցի մը որ կը ձգուի չորրորդ դարէն մինչեւ հնգետասներորդ դար ։

Այլեւայլ երկիրներէ հաւաքուած այս հին ձեռագիրները կը ցուցնեն, նախ, թէ Աւետարանները կային այն ատեն. երկրորդ, թէ Աւետարաններն իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց այն ատեն ընդհանուր ընդունուած եւ յարգուած էին. եւ, վերջապէս, ինչպէս ետքը պիտի ցուցնենք, այս ձեռագիրները կը ցուցնեն թէ Աւետարաններուն մէջ որ եւ իցէ փոփոխութիւն տեղի ունեցած չէ չորրորդ դարէն ի վեր ։

### 4. Հին հեղինակներու գրուածոց մէջ Աւետարաններէն բերուած վկայութիւններ ։

Երրորդ եւ չորրորդ դարէն կան աւելի քան հարիւր հեղինակներ որոնց գրուածները կը վկայեն թէ Աւետարաններն այն ատեն կային, եւ իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ընդունուած եւ յարգուած էին ։ Երկրորդ դարէն՝ երեսուն եւ վեց հեղինակներ կան որոնց գրուածքը կը վկայեն թէ այն դարուն մէջ Աւետարանները կային, եւ իբրեւ հարազատ գործոց աւետարանչաց ընդհանուր ընդունուած եւ յարգուած էին ։ Նաեւ առաջին դարուն հեղինակներէն ոմանց գրուածոց մէջ Աւետարաններէն բերուած աւելի քան երկու հարիւր կոչումներ կամ

դիտողութիւններ կան որ կը հաստատեն թէ առաջին դարուն մէջ Աւետարանները կային, եւ իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ընդհանուր ընդունուած եւ յարգուած էին։ Չենք կրնար բոլոր այն հեղինակներն յիշել այս փոքր գրքին մէջ, ուստի անոնցմէ ոմանք միայն յիշել բաւական կը համարինք։

Տերտուղիանոս։ Տերտուղիանոս հեթանոս ծնողքէ ծնաւ Կարքեդոն յամի Տեառն 160ին։ Հայրը Հռոմայեցի հարիւրապետ էր։ Տերտուղիանոս աղէկ դաստիարակուած էր։ Շատ գրուածներ ունի, եւ բոլոր իր գրուածոց մէջ կ'ըսէ թէ Աւետարաններն եւ ուրիշ առաքելական գրութիւններն առանց վնասուելու այն ժամանակի Քրիստոնէից հասած էին իբրեւ սրբազան ժառանգութիւն։ Տերտուղիանոսի գրուածներէն կը սորվինք թէ նախնի Քրիստոնեայք բոլորովին միաբան էին թէ որեւիցէ գիրք մը որ առաքելոց կամ անոնց ընկերաց մէկէն գրուած չէր՝ չէր կրնար իբրեւ Աւետարան ընդունուիլ։ Տերտուղիանոս իր գրուածոց մէջ կոչումներ կ'ընէ իբրեւ աւետարանչաց գրուածներէ, Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու եւ Յովհաննու Աւետարաններուն իւրաքանչիւր գլխէն։

Կղեմէս Աղեքսանդրացի։ Կղեմէս հեթանոս ծնողքէ ծնաւ իբր 150ին։ Ուսեալ անձ էր, եւ իր դարուն փիլիսոփայութեան եւ մատենագրութեան քաջ հմուտ։ Շատ գիրքեր յօրինեց որոնց հինգը միայն ցարդ պահուած են։ Կղեմէս Նոր կտակարանը կը կոչէ Տէրոջը գիրքը, եւ կ'ըսէ. «Թէ օրէնքը եւ թէ Աւետարանը զօրութիւն են մեր Տէրոջը (Յիսուսի

Քրիստոսի), որ է Աստուծոյ զօրութիւնը եւ իմաստութիւնը»: Կը նկարագրէ կարգն որով Մատթէոս, Մարկոս, Ղուկաս եւ Յովհաննէս գրեցին իրենց Աւետարանները, եւ յետոյ կը յարէ թէ ասոնք սորված էր ծերագոյն երէցներէ:

**Երանոս**: Երանոս Յոյն ծնողքէ ծնաւ Փոքր Ասիա յամի Տեառն 140ին: Աշակերտ էր Պողիկարպոսի, աշակերտին Յովհաննու առաքելոյն: Ապրեցաւ Աւետարաններն հրատարակուելէն ոչ աւելի քան հարիւր տարի ետքը: Գրեց այլեւայլ գիրքեր որոնցմէ հինգը միայն ցարդ կան: Երանոսի գիրքերը շատ կարեւոր վկայութիւններ կու տան Աւետարաններուն վրայ: Երանոս իր գրուածոց մէջ Հին եւ Նոր կտակարանները կը կոչէ Պատգամք Աստուծոյ, եւ կ'ըսէ. «Մենք փրկութեան ճամբան սորվեցանք ոչ ուրիշներէ, այլ անոնցմէ միայն որոնց միջոցաւ մեզի տրուեցաւ Աւետարանը, զոր անոնք նախ քարոզեցին եւ ապա կամօքն Աստուծոյ ի գիր առին, որպէսզի ապագային մէջ ըլլար մեզի հիմն եւ սիւն հաւատոյ: Քանզի անոնք յետ յարութեան Տեառն մերոյ վերէն զօրութիւն առին եւ ամէն բանի վրայ կատարեալ գիտութիւն ստացան Սուրբ Հոգիէն որ իջաւ անոնց վրայ: Յետոյ, իրենց հետ ունենալով Աստուծոյ Աւետարանը, ցրուեցան երկրիս չորս ծայրերը քարոզել մարդոց երկնային խաղաղութեան օրհնութիւնները: Մատթէոս Հրէից մէջ գտնուելով գրեց Աւետարանն անոնց լեզուաւ. Մարկոս, աշակերտ եւ թարգման Պետրոսի, աւանդեց մեզի գրով ինչ որ Պետրոս քարոզած էր: Ղուկաս, ընկեր Պօղոսի, գրեց Աւետարանն ըստ քարոզութեան Պօղոսի. Հուսկ յետոյ

Յովհաննէս, աշակերտ Յիսուսի, մինչդեռ Եփեսոս էր, հրատարակեց իւր Աւետարանը։»

Արդարեւ քան զայս բացայայտ եւ համոզիչ փաստ չի կրնար ըլլալ։

Պապիաս։ Պապիաս երկրորդ դարուն առաջին կիսուն եպիսկոպոս էր ի Հերապոլիս Փռիւգիոյ։ Գրեց «Մեկնութիւն պատգամաց Տեառն» անուն գիրք մը։ Այս գիրքը մինչեւ ցարդ պահուած չէ, բայց Եւսեբիոս պատմիչ քանի մը տեղեկութիւն կու տայ այս գիրքին նիւթոյն վրայ։ Պապիաս կ՚ըսէ թէ առաքելոց մօտագոյն աշակերտներէն առաւ տեղեկութիւն Աւետարաններուն վրայ։

Յուստինոս վկայ։ Էր հեթանոս փիլիսոփայ, ծնեալ ի Նէապոլիս Յոյն հօրէ յամի Տեառն 90 ին կամ քիչ մը յետոյ։ 132 ին ընդունեցաւ Քրիստոնէութիւնը, եւ որովհետեւ ժամանակաւ մօտ ըլլալով առաքելոց պատեհութիւն ունէր խնամով եւ հաւաստեաւ քննել Աւետարանները, անոր վկայութիւնը մեծ կարեւորութիւն ունի։ Յուստինոս շատ գիրքեր գրեց, որոնց երեքը միայն հասած են առ մեզ։ Այս գրուածոց մէջ շատ վկայութիւններ կը բերէ Աւետարաններէն զորս կ՚անուանէ համառօտ կենսագրութիւն Յիսուսի Քրիստոսի գրեալ յառաքելոց։

Պողիկարպոս, Իրենէոս եւ Կղեմէս Հռովմայեցի։ Այս երեք անձինք շատ կարեւոր վկաներ են, վասնզի ապրեցան առաջին դարուն մէջ եւ ժամանակակից էին ոմանց յաւետարանչաց եւ յառաքելոց։

Պողիկարպոս։ Էր աշակերտ Յովհաննու առաքելոյ, եւ սպաննուեցաւ վասն հաւատոյ յամի Տեառն 167։ Ասոր գործքերէն հասած է մեզի առ Փիլիպպեցիս

գրուած համառօտ Թուղթ մը միայն, այնպէս լի վկայութիւններով Աւետարաններէն եւ Նոր կտակարանին ուրիշ գիրքերէն, որ բնաւ տարակոյս չի թողուր թէ Աւետարանները կային այն ատեն եւ ընդհանուր ընդունուած եւ յարգուած էին իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ։

*Իգնատիոս* ։ Հաւանականապէս էր ուրիշ աշակերտ Յովհաննու առաքելոյն ։ Ծնաւ յԱսորիս կամ ի Փոքր Ասիա, եւ եղաւ եպիսկոպոս Անտիոքայ յամի Տեառն 69 ։ Մեռաւ մարտիրոսական մահուամբ յամի Տեառն 107 կամ 116 ։ Քննադատք Իգնատիոսի ընծայուած գիրքերուն ամէնքը չեն ընդունիր իբրեւ հարազատ ։ Իբրեւ հարազատ ճանչցուածները լի են Աւետարաններէն բերուած կոչումներով, եւ այսու կը հաստատեն թէ Աւետարանները կային այն ատեն, եւ ընդհանուր ընդունուած էին իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց ։

*Կղեմէս Հռոմայեցի* ։ Ծնաւ յամի Տեառն իբր 30ին եւ մեռաւ իբր 100ին ։ Ոմանք կը կարծեն թէ այս այն Կղեմէսն է զոր Պօղոս առաքեալ կը յիշէ (Փիլիպ. Դ. 3) իբրեւ իր գործակիցներէն մին ։ Կղեմէսի գրուածներէն հասած է մեզի առ Կորնթացիս գրուած Թուղթ մը ուր շատ կոչումներ կան Աւետարաններէն ։

5. Քրիստոնէութեան առաջին, երկրորդ, երրորդ և չորրորդ դարերուն մէջ հերետիկոսք և անհաւատք իբրև հարազատ գործ աւետարանչաց կը ճանչնային Աւետարանները ։

Ամենէն խիստ հակառակորդք Քրիստոնէութեան, ինչպէս Կելսոս՝ երկրորդ դարուն մէջ, Պորփիւր՝ եր-

րորդ դարուն մէջ , Յուլիանոս ուրացեալ՝ չորրորդ դարուն մէջ , Քրիստոնէութեան դէմ շատ յարձակումներ ըրած են , բայց ըսած չեն երբէք թէ Աւետարանք աւետարանչաց հարազատ գործը չեն ։

Արդէն ցուցուցինք ի պատմութենէ թէ Աւետարանները կային այն ժամանակէն յորում ընդհանուր ընդունուած էին , մինչեւ այն ժամանակը յորում կ'ապրէին աւետարանիչներէն ոմանք եւ անոնց աշակերտներէն շատերը . ուստի եթէ ուրիշներն , եւ ոչ աւետարանիչք , գրեցին Աւետարաններն , ապա գրած ըլլալու են այն ատեն երբ յիշեալ աւետարանիչք դեռ ողջ էին, բայց այն ատեն այս անձինք կը հերքէին այն սուտ գրուածները եւ կը յայտնէին խաբէութիւնը ։ Նաեւ եթէ Աւետարաններն աւետարանչաց մահուանէն քիչ մը ետքը գրուած ըլլային, անկարելի էր որ կեղծ գրուածներն ընդունուէին իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց առանց հերքման նոյն իսկ աւետարանչաց աշակերտաց կողմէն ։ Աւետարաններուն ընդհանուր ընդունելութենէն յայտնի է թէ աւետարանչաց բարեկամներն եւ աշակերտները բնաւ չէին տարակուսեր անոնց հարազատութեան վրայ ։ Ո՞վ կրնար համոզել աւետարանիչներուն բարեկամները եւ աշակերտները թէ աւետարանիչք գրեցին այն գիրքերը, եթէ ստուգիւ անոնք չէին գրողները ։ Այն բարեկամք եւ աշակերտք անտարակոյս կը հերքէին այն՝ գրուածները ։ Ուստի եւ Աւետարանաց իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց անոնց բարեկամաց կողմէն ընդունուած ըլլալը զօրաւոր ապացոյց է թէ այն գիրքերն արդարեւ աւետարանիչներէն գրուած են ։

Արդարեւ համոզիչ են պատմական փաստերը։ Այս փաստերն այլեւայլ աղբիւրներէ առնուած, այլեւայլ երկիրներէ եւ ազգերէ հաւաքուած, եւ բազմատեսակ են ։

Նոր կտակարանի հին ցանկերը, հին թարգմանութիւնները, հին ձեռագիրները, Քրիստոնէութեան թէ բարեկամ եւ թէ թշնամի հին մատենագրաց մէջ գտնուած կոչումներն; ասոնց ամէնքն ալ ապացոյց են թէ Աւետարաններն առաջին դարուն մէջ գրուեցան աւետարանիչներէն, եւ որովհետեւ այս ապացոյցը հերքող ուրիշ փաստ չկայ, պարտինք ընդունել զայն ։ Րընան անգամ կ'ըսէ թէ բոլոր Աւետարանները գրուած են առաջին դարուն մէջ, եւ են արդարեւ գործ այն հեղինակաց որոնց կ'ընծայուին ։



# ԳԼՈՒԽ Է.

## ԿԱՆ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԹԷ ՄԵՐ ԱՅԺՄՈՒ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐԸ ԲՈՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՉՆԵՐԷՆ ԳՐՈՒԱԾ ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՆ ԵՆ

*Ի՞նչ ապացոյց կայ թէ անցեալ ութեւտասն դարերուն մէջ աւետարանիչներէն գրուած Աւետարաններուն վրայ բան մը ոչ աւելցուեցաւ եւ ոչ պակսեցաւ, եւ թէ մեր այժմու Աւետարանները բուն աւետարանիչներուն գրուածներն են։ Հարիւր տարիէ հետէ Եւրոպայի մէջ շատ գիտուն մարդիկ զբաղեցան այս խնդրով, եւ շատ տարիներ մանր քննութիւններ ըրին այս խնդիրը լուծելու։ Մենք հիմա անոնց քննութիւններուն արդիւնքը կ՚ուզենք համառօտիւ ցուցնել։*

*Տպագրութեան արուեստը գտնուեցաւ ԺԵ. դարուն, եւ առաջին տպագրեալ գրեանք Սուրբ գիրքերն եղան, յորոց ոմանք դեռ կան Եւրոպայի գրատանց մէջ։ Գիտունք մեծ ուշադրութեամբ բաղդատած են այժմու Աւետարաններն տպագրեալ օրինակաց հնագոյններուն հետ։*

*Նախընթաց գլխոյն մէջ յիշեցինք թէ Նոր կտակարանին այլեւայլ մասերէն գտնուած են ցարդ, Քրիստոնէական թուականին Դ. դարէն մինչեւ ԺԵ. դար գրուած, իբր 1,600 ձեռագիր օրինակք։ Գիտունք այժմու Աւետարաններն ուշադրութեամբ բաղդատած են բոլոր այն հին ձեռագրաց հետ։*

*Նախընթաց գլխոյն մէջ ըսինք նաեւ թէ երկրորդ եւ երրորդ դարուց մէջ Աւետարանները թարգման-*

ունեցան ուրիշ լեզուներու ։ Գիտունք այժմու Աւետարանները բաղդատած են նաեւ բոլոր այն հին թարգմանութեանց հետ, մանաւանդ Ասորական եւ հին Իտալական թարգմանութեանց հետ, որ եղան յամի Տեառն իբր 150ին եւ թերեւս յառաջագոյն իսկ ։

Ինչպէս արդէն ըսուեցաւ, կան չորրորդ, երրորդ, երկրորդ, եւ նա մանաւանդ առաջին դարուն մէջ անգամ ապրող շատ հեղինակներու գրուածներ յորս կան Նոր կտակարանէն բերուած վկայութիւններ ։ Այս վկայութիւններն այնչափ շատ են որ գրեթէ ամբողջ Նոր կտակարանը կրնան նորէն կազմել ։ Գիտունք մեր այժմու Աւետարանները ուշադրութեամբ բաղդատած են նաեւ այն հին հեղինակներէն բերուած վկայութեանց հետ ։

Արդ, երբ գիտունք այժմու Աւետարանները Սուրբ գրոց տպագրեալ օրինակաց հնագոյններուն, հին ձեռագրաց, հին թարգմանութեանց եւ նախկին դարուց մատենագրաց մէջ Աւետարաններէն բերուած վկայութեանց հետ խնամով բաղդատեցին, անոնց անաչառ բաղդատութենէն ինչ արդիւնք յառաջ եկաւ ։

Արդարեւ հազարաւոր տարբերութիւններ տեսնուեցան ։ Ձեռագրաց, թարգմանութեանց եւ վկայութեանց մէջ տեսնուած բոլոր տարբերութեանց թիւն 120,000ի կը հասնի, բայց ինչ տեսակ տարբերութիւններ են անոնք ։ Միթէ այնպիսի տարբերութիւններ են որ կրնան տարակոյս յարուցանել Նոր կտակարանին մէջ պատմուած որեւիցէ դէպքի, կամ անոր մէջ պարունակուած որեւիցէ վարդապետու-

տարբերութիւնները՝ կ'ըսէ. «Նոր կտակարանը կարդացող անուս անձինք թող ապահով ըլլան որ Աւետարանները զորս կը կարդան՝ բնագիրներուն հետ նոյն են, ինչպէս որ բազմահմուտ մարդիկ անխոնջ քննութիւններով եւ անաչառ դիտողութիւններով ստուգած են անթիւ հին օրինակներ այժմու Աւետարաններուն հետ բաղդատելով:»

Բոլոր հին ձեռագիրները, թարգմանութիւններն եւ վկայութիւնները, թէպէտ այլեւայլ դարերու մէջ գրուած, եւ իրարմէ շատ հեռու եւ բաժանեալ տեղերէ հաւաքուած են, բայց էութեամբ նոյն են։ Անոնց եւ ոչ մին տարբերութիւն կ'ընէ Աւետարաններուն մէջ աւանդուած վէպերէն եւ վարդապետութիւններէն մին։ Բոլոր օրինակաց եւ ոչ միոյն մէջ հոգեւոր ճշմարտութիւն մը կամ բարոյական սկզբունք մը պակսած կամ այլայլած է։ Գիտուն մարդոց հետազօտութիւնները կը վկայեն թէ մեր այժմու Աւետարանները միեւնոյն են ինչ որ էին գէթ երկրորդ դարուն կիսուն, այն է յամի Տեառն 150ին, երբ Նոր կտակարանը թարգմանուեցաւ հին Լատինական եւ Ասորական լեզուաց։ Թէ մինչեւ այն թուականը (150) փոփոխութիւն մուծուած չէր Աւետարաններուն մէջ, այս կը ցուցուի քան զայն թուականէն հին հեղինակաց մէջ գտնուած վկայութիւններէն։ Նա, յառաջ քան զայն թուական, գրեթէ անհնար էր փոփոխութիւն մուծանել Աւետարաններուն մէջ, վասն զի

1. Բաւական ժամանակ չկար որ փոփոխութիւններ մուծուէին Աւետարաններուն մէջ։ Փոփոխութիւններ ոչ թէ միանգամայն այլ սակաւ առ

տակաւ կը սպրդին ։ Գիտենք որ Յովհաննու առաքելոյն մահուանէն մինչեւ այն ատեն յորում Աւետարանները թարգմանուեցան Ասորերէնի եւ հին Իտալերէնի՝ ոչինչ աւելի քան յիսուն կամ վաթսուն տարի անցան, եւ այսչափ կարճ միջոցի մէջ անհնար էր որ մեծամեծ փոփոխութիւններ մուծուէին Աւետարաններուն մէջ ։

2. Առաքելոց ժամանակ եւ երկրորդ դարուն մէջ Քրիստոնեայք սովոր էին հրապարակաւ կարդալ Աւետարանները ժողովուրդին հասկնալի լեզուաւ, ուստի եւ ժողովուրդը շուտով տեղեկացաւ Աւետարանաց մէջ յիշուած կարեւոր ճշմարտութիւններուն եւ դէպքերուն, եւ շուտով պիտի իմանար եթէ դոյզն փոփոխութիւն մը գործուէր բնագրին մէջ ։

3. Առաջին դարուց Քրիստոնեայք շատ կը յարգէին Աւետարանները, եւ շատ նախանձաւոր էին անարատ եւ անփոփոխ պահել զանոնք ։ Իրենց բոլոր յոյսերուն եւ ակնկալութիւններուն հիմ կը ճանչնային Աւետարանները, եւ արիութեամբ կրեցին ամէն տեսակ հալածանք մինչեւ ի մահ այն ճշմարտութեանց համար որ պարունակուած են Աւետարաններուն մէջ ։ Եթէ խաբեբայք ոմանք ուզէին փոփոխութիւն մուծանել Աւետարաններուն մէջ, անտարակոյս ժողովուրդը պիտի հակառակէր անոնց ։ Արդարեւ Մարկիոն անուն մէկը ջանաց փոփոխութիւն մուծանել Աւետարաններուն մէջ, բայց անոր խարդախութիւնը յայտնուեցաւ, եւ անոր գիրքերը մերժուեցան ։

Աւետարաններէն այնչափ օրինակներ գրուած եւ այնպէս հեռաւոր տեղեր սփռուած էին որ, եթէ

այսինչ երկրին մէջ խաբեբայք ոմանք յաջողէին Աւետարաններուն մէջ որեւիցէ փոփոխութիւն մուծանել, չէին կրնար այն փոփոխութիւնն ընդունել տալ ուրիշ տեղեր գտնուած Քրիստոնէից։ Քրիստոսէ ետքը Աւետարանն այնպէս արագ քարոզուեցաւ Հռոմէական պետութեան մէջ եւ նոյն իսկ այն պետութեան սահմաններէն անդին, եւ Աւետարաններէն այնչափ օրինակներ տարածուեցան աշխարհիս այլ եւ այլ մասանց մէջ, որ որեւիցէ փոփոխութիւն մը բոլոր եկեղեցեաց ընդունել տալ կարելի չէր։ Իսկ եթէ որեւիցէ փոփոխութիւն մը իրօք եղած է, բոլոր եկեղեցեաց կողմէն ընդունուած ըլլալու է, քանզի Աւետարաններուն բոլոր օրինակները որ ցարդ մեր ձեռքը հասած կամ աշխարհիս այլեւայլ մասերուն մէջ գտնուած են՝ ըստ էութեան միեւնոյն են։ Միեւնոյն Աւետարանէն չգտնուեցան մինչեւ ցարդ իրարմէ տարբեր վարդապետութիւններ պարունակող, կամ իրարու հակառակ դէպքեր պատմող օրինակներ։ Չորս Աւետարաններէն իւրաքանչիւրին մեզի ծանօթ բոլոր օրինակները միեւնոյն պատմական դէպքերը կը յիշեն եւ միեւնոյն ճշմարտութիւնները կը սորվեցնեն։

Ստուգիւ, եթէ փոփոխութիւն մը գործուած ըլլար, գիտուն քննիչք անտարակոյս նշմարած պիտի ըլլային այն փոփոխութիւնը։ Ուրեմն, օգուտ քաղենք քննադատից անխոնջ քննութիւններէն, եւ ուրախանանք երբ կը տեսնենք թէ մեր այժմու Աւետարանները բուն իսկ չորս աւետարանիչներէն գրուած Աւետարաններն են, եւ անոնց մէջ որեւիցէ փոփոխութիւն մը մուծուած չէ։

# ԳԼՈՒԽ Ը.

## ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐԸ ՀԱՒԱՏԱԼԻ ԵՆ

Մեր ընթերցողներէն ոմանք, համոզուելով այն պատմական ապացոյցներէն որ յիշուեցան նախընթաց երկու գլուխներուն մէջ, թերեւս կ՚ընդունին Աւետարաններն իբրեւ հարազատ գրուածք աւետարանչաց, բայց եւ այնպէս տարակուսանօք կը հարցնեն. Միթէ հաւատալի են այն բաները զոր աւետարանիչք գրած են։ Թերեւս ոմանք կը հարցընեն. Ի՞նչպէս կրնանք վստահ ըլլալ որ նոյն իսկ աւետարանիչք խաբեբայ չէին։ Այլք թերեւս համոզուած են աւետարանչաց ճշմարտախօսութեան եւ անկեղծութեանը, բայց եւ այնպէս կը հարցնեն. Ի՞նչպէս կրնանք վստահ ըլլալ որ նոյն իսկ աւետարանիչք խաբուած չէին այն դէպքերուն վրայ զոր կը պատմեն իրենց գիրքերուն մէջ։ Այսպիսի խնդիրներ անտեղի չեն, եւ խորին ուշադրութեան արժանի են։ Արդ, տեսնենք թէ ապացոյց կայ թէ աւետարանիչք արժանահաւատ վկաներ էին այն դէպքերուն զորս կը պատմեն իրենց գիրքերուն մէջ։

**1. Ապացոյց կայ թէ աւետարանիչք կարող էին ստուգութեամբ գիտնալ եւ ճշդիւ նկարագրել ինչ որ տեսան եւ լսեցին։**

**2. Ապացոյց կայ թէ աւետարանիչք անկեղծ եւ ճշմարտախօս մարդիկ էին, եւ յօժար՝ ճշմարտութեամբ եւ ճշդիւ նկարագրելու ինչ որ տեսան եւ լսեցին։**

հեղինակներին հաւատք ընծայելու անարժան բանե-
րու հաւատալու պատրաստ դիւրահաւան մարդիկ չէին։
Նա մանաւանդ այն գրուածներէն յայտնի է թէ ա-
ւետարանիչք շատ անգամ դժուարաւ կը հաւատային,
եւ այնպէս դժուարաւ կը հաւատային այն բանե-
րուն զոր Յիսուս կ'ընէր անոնց, որ երբեմն Քրիս-
տոսէ կը յանդիմանուէին իբրեւ թերահաւատք։ Յի-
սուս յայտնապէս ըսած էր անոնց թէ յարութիւն
պիտի առնէր, բայց անոնք դժուարաւ կը հաւա-
տային (Ղուկ. ԻԴ. 25)։ Այն կանայք իսկ որ Յի-
սուսի գերեզմանը գացին, հոն գացին ոչ ողջունե-
լու յարուցեալ Փրկիչն, այլ օծելու թաղեալ վար-
դապետը. եւ երբ անոնք առաքելոց պատմեցին
Յիսուսի յարութիւնը, անոնց խօսքը շաղփաղփու-
թիւն թուեցաւ առաքելոց (Ղուկ. ԻԴ. 11)։ Առա-
քեալներէն մին այնչափ դժուարահաւան էր որ ըսաւ
թէ մինչեւ որ Յիսուսի ձեռքերուն վրայ բեւեռնե-
րուն տեղը չտեսնէր, եւ ձեռքը անոր կողը չմխէր,
պիտի չհաւատար (Յովհ. Ի. 25)։ Տաս ողջամիտ եւ
արդարակորով մարդիկ ուշադրութեամբ կարդալով
Աւետարանները համոզուած են թէ աւետարանիչք
դիւրահաւան մարդիկ չէին։

Եթէ արդարեւ աւետարանիչք Աստուծմէ ներշնչ-
եալ էին, ապա անոնց գրուածները հարկաւ հաւա-
տալի են, իսկ եթէ անոնք ներշնչեալ չէին, խոստո-
վանելու ենք թէ գերազանց մտաց տէր էին։ Մատ-
թէոս մաքսաւոր էր, եւ Յովհաննէս՝ ձկնորս, եր-
կուքն ալ անուս. բայց եւ այնպէս անոնք, ինչպէս
նաեւ միւս աւետարանիչք, այնպիսի գիրքեր գրե-
ցին որ իբր ութեւտասան դար շարունակ գրաւե-

ցին քաղաքակիրթ աշխարհի ուշադրութիւնը ։

Եթէ բաղդատութիւն մը ընենք Սոկրատայ, Պղատոնի, Արիստոտելի, եւ Կիկերոնի գրուածներուն ու Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու եւ Յովհաննու գրուածներուն մէջտեղ, եւ քննենք թէ որչափ լեզուներու թարգմանուեցան առաջինները եւ որչափ լեզուներու վերջինները. եթէ քննենք նաեւ թէ որչափ մեկնութիւններ գրուեցան առաջիններուն գրուածոց եւ որչափ վերջիններուն գրուածոց վրայ. եւ, վերջապէս, եթէ բաղդատենք այն փիլիսոփայից գրուածները կարդացողներուն թիւը եւ յառկութիւնն այն մարդոց թուոյն եւ յառկութիւններուն հետ որ Աւետարանները կը կարդան մինչեւ ցայսօր, պիտի համոզուինք թէ քաղաքակիրթ աշխարհ ութեւտասն դարերէ ի վեր պատուած է եւ դեռ աւելի կը պատուէ Աւետարանները քան այն հռչակաւոր փիլիսոփայից գրուածները ։ Զարդիս շատ ընկերութիւններ կան որոնց մասնաւոր նպատակն է թարգմանել տալ Աւետարանը բոլոր լեզուներու եւ տարածել զայն բոլոր ազգաց մէջ ։ Այս ընկերութեանց մին միայն 1800 էն ի վեր թարգմանեց Աւետարանը 150 տարբեր լեզուներու, եւ տպելով տարածեց միլիոնաւոր օրինակներ ։ Ասկէ ինչ հետեւցնելու ենք ։ Ասկէ սա հետեւցնելու ենք թէ, Աւետարաններուն հեղինակները ոչ ցնորամիտ մարդիկ էին եւ ոչ դիւրահաւան յիմարներ ։ Կրթեալ աշխարհն այսպէս պատիւ չըներ մոլեռանդ կամ ցնորամիտ մարդոց գրուածներուն ։ Այն մեծ պատիւը զոր վայելեցին Աւետարանք ութեւտասն դարէ ի վեր, եւ խորին տպաւորութիւնը զոր ըրին աշխարհի վրայ, կը ցուցնեն թէ այս գիր-

ուեն իբրեւ զԱստուած, եւ զոր Ռընանի պէս անհաւատք անգամ կը կոչեն անմեղան, պարզամիտ, աստուածային եւ կատարեալ մարդ։ Միթէ կարելի՞ է որ խաբեբայք կարենային նկարագրել ամենէն կատարեալ յատկութիւններով զարդարուած անձ մը, եւ հրատարակել աշխարհի ամենէն կատարեալ բարոյական օրինագիրքը։

Դ. Աւետարանիչներուն անկեղծութիւնն յայտնի է նոյն իսկ ժամանակէն եւ տեղէն յորում, ըստ աւետարանչաց, տեղի ունեցան Աւետարաններուն մէջ յիշուած դէպքերը։ Ըստ աւետարանչաց, Աւետարաններուն մէջ պատմուած դէպքերը ոչ թէ հեռաւոր ժամանակի մէջ պատահեցան, այնպէս որ մէկը կարող չըլլար հերքել զանոնք, այլ պատահեցան այնպիսի ատեններ որ շատ վկաներ դեռ ողջ էին, եւ կրնային դիւրաւ հերքել եթէ սուտ էին այն դէպքերը։

Ըստ աւետարանչաց, Աւետարաններուն մէջ պատմուած դէպքերը չպատահեցան նաեւ հեռաւոր տեղեր, այլ նոյն իսկ այն տեղերը ուր Աւետարանները հրատարակուեցան, եւ եթէ սուտ ըլլային՝ անոնց խօսքերը, շատ դիւրին էր հերքել զանոնք։ Խաբեբաներ կրնան հրատարակել սուտ բաներ այնպիսի դէպքերու նկատմամբ որ պատահած են հեռաւոր ժամանակի եւ հեռաւոր տեղերու մէջ, բայց չեն կրնար խեղաթիւրել դէպքերը որ պատահած են հրապարակաւ եւ այն դարուն եւ այն ժամանակին մէջ յորում հրատարակուած են գիրքերը, վասնզի եթէ այնպէս ընեն դիւրաւ կը յայտնուի անոնց խաբէութիւնը։

Ե. Աւետարանիչներուն անկեղծութիւնը յայտնի է եղանակէն որով, բառ աւետարանչաց, պատահեցան այն դէպքերը։ Աւետարանիչներէն յիշուած դէպքերուն մեծ մասը չպատահեցան գաղտնի տեղ մը որ բաց աւետարանիչներէն ուրիշ ոչ ոք կարող ըլլար տեսնել զանոնք, այլ այն դէպքերուն մեծ մասը պատահեցան հրապարակաւ եւ շատ վկաներու առջեւ, որոնց ամենք թշնամի էին։ Եթէ աւետարանիչք խաբեբայ ըլլային, անտարակոյս այնպէս չէին պատմեր ինչպէս կ՚ընեն, վասնզի դիւրին էր հերքել անոնց խօսքը եւ ցուցնել թէ այնպիսի դէպքեր հրապարակաւ չպատահեցան։

Զ. Աւետարանիչներուն անկեղծութիւնն աւելի յայտնի է մանր պարագաներով կը պատմեն դէպքերը։ Եթէ աւետարանիչք խաբեբայ ըլլային, հաւանականապէս ամէն մանր պարագայ չէին յիշեր, այլ քանի մը ընդհանուր բաներ միայն կը յիշէին եւ այն ատեն դժուարին կ՚ըլլար հերքել անոնց խօսքը։ Աւետարանիչք որչափ աւելի մանր պարագաներ յիշէին իրենց պատմուած դէպքերուն տեղւոյն եւ ժամանակին նկատմամբ, այնչափ աւելի դիւրին էր անոնց թշնամեաց հերքել անոնց խօսքն, ըսելով թէ այնպիսի դէպքեր չպատահեցան այն ինչ տեղ եւ այն ինչ ժամանակ։ Աւետարանիչք նշանաւոր են մանաւանդ այս կողմանէ որ շատ մանր պարագաներ կը յիշեն իրենց գիրքերուն մէջ. կը պատմեն Յիսուսի ոչ միայն ծնունդն, այլ եւ ծննդեան տեղը, ժամանակը եւ ուրիշ պարագաները։ Յիսուսի ոչ միայն մահն այլ եւ անոր մահուան տեղը, ժամանակը եւ ուրիշ պարագաները կը պատմեն։ Յիսուսի ոչ

միայն հրաշք գործելը այլ եւ հրաշքներուն գործուած տեղը, ժամանակն եւ ուրիշ պարագաները կը պատմեն։ Աւետարանները այնպէս լի են թուականներով եւ մարդոց եւ տեղերու անուններով, որ, եթէ սխալ ըլլային, շատ դիւրին էր հերքել զանոնք։ Խարեբայք կը զգուշանան իրենց պատմուած դէպքերուն տեղը, ժամանակն եւ ուրիշ պարագաները յիշել։

է. Աւետարանիչներուն անկեղծութիւնն յայտնի է ընդհանուր համաձայնութենէն եւ փոքր տարբերութիւններէն որ կը տեսնուին Աւետարաններուն մէջ։ Ոչ ոք կրնայ ուրանալ թէ էական կէտերու մասին ընդհանուր համաձայնութիւն կայ աւետարանչաց մէջտեղ։ Զորս աւետարանիչք միանգամայն համաձայն են Յիսուսի վարուց գլխաւոր կէտերուն նկատմամբ, եւ նոյնպէս միեւնոյն վարդապետութիւնները կը սորվեցնեն։ Աւետարանչաց մէջտեղ աւելի համաձայնութիւն կայ քան որեւիցէ մարդու մը կենսագրութիւնն ընող այլեւայլ հեղինակաց մէջտեղ։

Սակայն Աւետարաններէն յայտնի է թէ աւետարանիչք իրենց մէջ միաբանած չէին միեւնոյն բանը գրելու, վասնզի Աւետարաններուն մէջ կան տարբերութիւններ եւ առերեւոյթ հակասութիւններ։ Արդարեւ անհաւատք ոմանք ջանացին, բայց, ինչպէս ետքը պիտի տեսնուի, ի զուր, ցուցնել թէ Աւետարաններուն մէջ կան հակասութիւններ որ կը ցուցնեն թէ Աւետարանք հաւատալի չեն։ Սակայն այն տարբերութիւնները կը ցուցնեն թէ աւետարանիչներուն մէջ գաղտնի համաձայնութիւն չկար սուտ գրուածներով ժողովուրդը խաբելու, վասնզի, եթէ այնպիսի նպատակ ունենային, իրենց գիրքերը հրատարակելէ

առաջ զանոնք խրատու հետ կը բաղդատէին եւ բոլորովին խրատու կը համաձայնեցնէին ։ Աւետարանիչք կը գրեն իբրեւ ճշմարտախօս եւ անկեղծ մարդիկ համարձակութեամբ եւ առանց վախնալու թէ հակառութիւն գտնուի իրենց գրուածոց մէջտեղ ։

Ը. Աւետարանիչներուն անկեղծութիւնը նաեւ անկէ յայտնի է որ, եթէ անոնք խաբեբայ ըլլային, այս խաբէութենէն օգուտ չէին կրնար ակնկալել ։ Մարդիկ ուրիշները խաբելու համար նեղութիւն եւ տանջանք չեն կրեր առանց ակնկալութեան վարձուց ։ Եթէ աւետարանիչք խաբեբայ էին, ինչ բան շահիլ կրնային յուսալ ստութիւն հրատարակելով ։

Միթէ հարստութի՞ւն ձեռք բերել կը յուսային ։ Ոչ ։ Անոնք իրենց արուեստներն անգամ որովք իրենց ապրուստը կը շահէին՝ թողլով, իրենք զիրենք քարոզութեան գործին նուիրեցին ։ Եւ ինչ կը քարոզէին ։ Միթէ կը քարոզէին թէ մարդիկ վարձատրութեան համար անոնց ստակ կամ ուրիշ պարգեւներ տալու էին ։ Ոչ երբէք ։ Ընդհակառակն, կ՚ըսէին թէ, ինչպէս որ իրենք ձրի առին Տէրոջմէն, նոյնպէս ձրի կու տան ուրիշներուն ։ Սորվեցուցին թէ մարդիկ երկրի վրայ գանձ դիզելու չեն, եւ գործով եւ օրինակով հաստատեցին իրենց վարդապետութիւնը ։ Կամաւ յանձն առած էին աղքատութիւն ։

Միթէ աւետարանիչք պատի՞ւ կը փնտռէին ։ Եթէ պատիւ կը փնտռէին իրենց ազգակիցներէն, ինչու համար քարոզեցին եւ հրատարակեցին այնպիսի բաներ որ անոնց դէմ յարուցին բոլոր Հրէից ազգը. ինչու համար այնպէս խստիւ խօսեցան իշխանաց հպարտութեանը եւ ժողովրդեան նախապաշարում-

ներուն դէմ. մինչեւ համար իրենց գիրքերուն մէջ այնպէս սաստկութեամբ յանդիմանեցին ժողովուրդեան մեղքերն եւ այնպէս բացայայտ գուշակեցին անոնց կրելու պատիժները: Աւետարանիչք իբրեւ հերետիկոս եւ մահուան ամբաստանուեցան, իբրեւ չարագործ ծեծուեցան եւ բանտարկուեցան, եւ արգելուեցան սորվեցնելէ ժողովուրդը յանուն Յիսուսի, բայց եւ այնպէս բնաւ չդադրեցան յանուն Յիսուսի սորվեցնելէ: Արդ յայտնի է թէ մարդոցմէ պատիւ փնտռելու ետեւէ չէին:

Ուրեմն, հանգիստ և դիւրութի՞ւն կը փնտռէին: Բայց անոնք զիրենք կամաւ նեղութեանց մատնեցին: Հետի պատեցան իրենց երկրին մէջ, եւ ապա երկայն եւ տաժանելի ճամբորդութիւններ ըրին իրենց երկրէն դուրս շատ հեռաւոր տեղեր: Պօղոս առաքեալ Ա Կորնթ. Դ. 11—13 համարներուն մէջ հետեւեալ կերպով կը նկարագրէ Աւետարան քարոզողներուն կեանքը. «Մինչեւ աս օրուան ատենը կ'անօթենանք ալ, կը ծարաւինք ալ, աստանդական ալ կը պտըտինք, եւ մեր ձեռքերովը գործելով կ'աշխատինք. երբոր մեզ կը նախատեն, կ'օրհնենք. երբոր կը հալածեն՝ կը համբերենք. երբոր գէշ կը խօսին՝ կ'աղաչենք. իբրեւ աշխարհի աղտեղութիւնը՝ ամենուն անարգը եղալով մինչեւ հիմա:» Ուր որ կ'երթային, հակառակութեան կը հանդիպէին: Բանտարկուեցան, ծեծուեցան, հալածուեցան քաղաքէ քաղաք, բայց եւ այնպէս յարատեւեցին մինչեւ ի մահ: Պատմական շատ վկայութիւններ կան հեթանոս հեղինակաց գիրքերուն մէջ հալածմանց եւ նեղութեանց վրայ զորս աւետարանիչք կրեցին:

Եթէ աւետարանիչք անկեղծ մարդիկ չէին, ինչու համար այնպիսի նեղութիւններ կրեցին։ Անոնց վարքէն յայտնի է թէ անոնք չէին փնտռեր եւ չէին յուսար ստանալ հարստութիւն կամ պատիւ եւ կամ հանգիստ։ Բայց թերեւս ոմանք ըսեն թէ անոնք կը յուսային ետքը փառք ստանալ։ Սակայն այս կարելի չէր, վասնզի, եթէ անոնց գործը հիմնուած էր ստութեան վրայ, պատճառ չունէին յուսալու թէ վերջապէս պիտի յաջողէին։

Աւետարանիչք աշխատեցան, նեղուեցան եւ մեռան ի վկայութիւն իրենց գրուածներուն ճշմարտութեանը։ Անոնց անկեղծութիւնը ցուցնելու համար ասկէ աւելի համոզիչ ինչ փաստ կրնայ ըլլալ։

Նաեւ միթէ կարելի՞ է որ սխալ ըլլան այն գիրքերն որոնց մէջ այնպիսի նուաստացուցիչ բաներ ըսուած են մարդուս անկեալ բնութեանը նկատմամբ, եւ այնպիսի մեծ վարդապետութիւններ յիշուած են աստուածային բնութեան նկատմամբ. որոնց մէջ այնպէս հաւատարմութեամբ նկարագրուած են մարդոց անկատարութիւնը եւ Յիսուս Քրիստոսի կատարելութիւնը. որոնց մէջ ցուցուած է կատարեալ բարոյական մը որ ամէն կերպով յարմար է մարդուս բնութեանը եւ անոր այլեւայլ պարագաներուն. որոնց մէջ արգիլուած չէ որեւիցէ բան մը որ մաքուր, արդար եւ բարի է, եւ թոյլ տրուած չէ բան մը որ սուտ կամ մոլեկան է. որոնց մէջ բացայայտ ցուցուած է մարդոց իրենց կորսուեալ վիճակը, եւ կատարեալ Փրկչի մը միջոցաւ փրկուելու ճամբան։ Միթէ չար մարդոց կարելի՞ է այսպիսի գիրքեր գրել։ Միթէ անձնասէր եւ շահախնդիր

մարդիկ ամէն տեսակ նեղութիւն յանձն կ՚առնուն այսպիսի վարդապետութիւններ քարոզել, եւ մարդոց գիրար սիրել եւ սուրբ ըլլալ սորվեցնել։ Ո՞վ կրնայ հաւատալ ասոր։ Ամենէն երեւելի անհաւատք խակ կ՚ընդունին թէ այս կարելի չէ, եւ չեն ամբաստաներ աւետարանիչներն իբրեւ կամաւ խաբեբաներ։

3. Աւետարանիչք այնպիսի տեղ մը և այնպիսի վիճակի մէջ էին որ կրնային անձամբ լաւ տեղեակ ըլլալ այն դէպքերուն որոնք գրած են իրենց գիրքերուն մէջ։

Աւետարանիչք այնպիսի պարագաներու մէջ էին որ կարելի չէր անոնց խաբուիլ։

ա. Աւետարանիչք չեն պատմեր այնպիսի դէպքեր զորս աւանդութենէ կամ ի լրոյ միայն կրնային գիտնալ։ Աւետարանիչք կամ ականատես վկաներ էին իրենցմէ պատմուած դէպքերուն, կամ այն դէպքերուն վրայ իրենց տեղեկութիւններն առին ուղղակի ականատես անձերէ։

Մարկոս թէեւ ականատես վկայ չէր իրմէ պատմուած դէպքերուն, բայց ընկեր էր Պետրոս առաքելոյն, որ ականատես էր այն դէպքերուն, եւ Մարկոս կարող էր անկէ ստուգել իր գրածներուն ճշմարտութիւնը։ Ղուկաս չի պնդեր թէ ականատես վկայ էր իրմէ պատմուած դէպքերուն, բայց իր Աւետարանին սկիզբը կ՚ըսէ թէ իր տեղեկութիւններն առաւ անոնցմէ «որ սկիզբէն աչքով տեսած էին,» եւ թէ՝ քննած եւ ստուգած էր ինչ որ «սկիզբէն ճշդութեամբ տեղեկացած էր։» Բայց միւս երկու աւետարանիչք, Մատթէոս եւ Յովհաննէս, անձամբ ականատես էին դէպքերուն մեծ մասին զորս կը յիշեն։

Որովհետեւ աւետարանչաց երկուքն իրենց տեղեկութիւններն առին ուղղակի ականատես վկաներէ, եւ միւս երկուքն անձամբ ականատես էին պատմուած դէպքերուն եւ կարող էին քաջ տեղեակ ըլլալ անոնց, ապա յայտնի է թէ սուտ եւ ունայն զրոյցներէ խաբուած չէին։

բ. Աւետարաններուն մէջ յիշուած դէպքերն այնպէս բազմատեսակ եւ բազմաթիւ են, որ աւետարանչաց համար անհնար էր անոնց վրայով խաբուիլ։ Եթէ աւետարանիչք մէկ դէպք միայն յիշէին, կարելի էր ենթադրել թէ խաբուած էին։ Բայց աւետարանիչք կը յիշեն ոչ մի միայն դէպք, ոչ ալ մէկ օրուան, մէկ շաբթուան կամ մէկ ամսուան դէպքեր, այլ շատ դէպքեր որ երեք տարուան մէջ պատահեցան։ Այսչափ դէպքերու վրայով խաբուիլ կարելի չէր աւետարանչաց։

գ. Նաեւ Աւետարաններուն մէջ յիշուած դէպքերուն մեծ մասն այնպէս էր, որ անոնց վրայով խաբուիլ անկարելի էր աւետարանչաց։ Անկարելի էր անոնց խաբուիլ Յիսուս Քրիստոսի վարդապետութեանց վրայով. Աւետարանիչք, ինչպէս ցուցուցինք, ոչ ցնորամիտ, այլ կարող մարդիկ էին, եւ այսպիսի մարդիկ չէին կրնար սխալ հասկցած ըլլալ Քրիստոսի խօսքերը. մանաւանդ երկուքը, որ երեք տարի միշտ անոր հետ էին, անոր հետ կը ճամբորդէին, եւ ամէն օր մտիկ կ՚ընէին անոր խօսքերը։ Նաեւ Յիսուս շատ անգամ առանձին կը մեկնէր անոնց ինչ որ հրապարակաւ ըսած էր առակներով, եւ անոնք աղէկ հասկցած չէին։ Արդ, ինչպէս կարելի էր անոնց խաբուած ըլլալ Յիսուսի վարդապետութեանց վրայով.

*Նոյնպէս անկարելի էր անոնց խաբուիլ Յիսուսի գործքերուն վրայով։ Եթէ անոնք կը հասկնային անոր խօսքերը, կը հասկնային նաեւ անոր գործքերը, քանզի անոր խօսքերը շատ անգամ գործքերուն կը վերաբերէին եւ այն գործքերուն մեկնութիւնն էին։ Չենք կրնար Յիսուսի գործքերը զատել անոր խօսքերէն ։*

*Դ. Այն զարմանալի գործքերը զորս աւետարանիչք կը պատմեն, այնպիսի գործքեր էին որ աւետարանչաց կարելի չէր անոնց վրայով խաբուիլ ։ Աւետարանիչք ստուգիւ գիտէին թէ Յիսուս խօսքով բացաւ կոյրին աչքը եւ կաղը քալեցուց ։ Թերեւս ըսուի թէ աւետարանիչք խաբուելով կարծեցին թէ Յիսուս կը քալէր ծովին վրայ ։ Բայց երբ տեսան որ նաեւ իրենցմէ մին Յիսուսի հրամանաւ սկսաւ ծովին վրայ քալելով անոր քով երթալ, միթէ կարելի՞ էր որ անատեն ալ խաբուէին ։ Ոչ, անկարելի էր ։ Աւետարանիչք գիտէին անտարակոյս թէ Ղազարոս մարդիկ քանի մը նկանակով կշտացան անապատին մէջ, եւ թէ Ղազարոս գերեզմանին մէջ էր եւ Քրիստոսի հրամանաւ ելաւ գերեզմանէն դուրս։ Անկարելի էր անոնց խաբուած ըլլալ թէ Յիսուսի յարութենէն ետքը անոր հետ նստան ելան, խօսեցան եւ ճաշեցին։ Կարելի չէր աւետարանչաց խաբուելով իրական կարծել այն բաները որ առաջօք տեսիլ միայն էին եւ ոչ իր ։*

*Թէ աւետարանիչք կարող եւ անկեղծ վկաներ էին, եւ թէ այնպիսի տեղ եւ այնպիսի վիճակի մէջ էին որ կրնային աղէկ քննել դէպքերը զորս կը պատմեն, զայս հաստատողապացոյցներն արդարեւ այնպէս*

զօրեղ են որ, թէեւ ուրիշ ապացոյցներ չըլլային, պարտէինք աւետարանչաց գրուածներն իբրեւ հաւատալի պատմութիւն ընդունել:

4. Կան ուրիշ ապացոյցներ որ կը հաստատեն թէ Աւետարանները հաւատալի են:

ա. Հրէից գիրերէն ապացոյցներ.

Թալմուտը, որ հաւաքածոյ է Հրէական աւանդութեանց որոնց մէկ մասը ժողվուած է Քրիստոնէական թուականին երկրորդ դարուն մէջ, կը պատմէ Քրիստոսի վրայով քանի մը բաներ եւ յանուանէ կը յիշէ անոր աշակերտներէն ոմանք: Այս Հրէական գրուածը կ'ընդունի թէ Քրիստոս շատ եւ մեծամեծ հրաշքներ գործեց, բայց անոր սքանչելագործ զօրութեան պատճառը, կ'ըսէ, այս էր որ Յիսուս սորված էր Աստուծոյ անճառելի անունը շիտակ արտաբերել, եւ, ըստ Թալմուտի, Յիսուս այս գիտութիւնը գողցաւ տաճարէն:

Անուանի Հրեայ պատմիչը, Յովսեպոս, որ իր պատմութիւնը Քրիստոսէ քիչ ետքը գրեց, կարեւոր վկայութիւններ կուտայ: Անոր պատմութեան մէջ Աւետարանաց նկատմամբ ըսուածները կը հաստատեն թէ Աւետարանք հաւատալի են: Յովսեպոս իր պատմութեան մէջ քանի մը բաներ կը յիշէ Հրէից աղանդներուն, Հերովդէսի, Պիղատոսի, Փելիքսի, Դրուսիղայի եւ Յովհաննու Մկրտչի վրայով, եւ անոր խօսքերը համաձայն են Աւետարանաց: Հերովդէսի մահուան վրայով Յովսեպոսի գրածը շատ կը նմանի Ղուկասի գրածին: Յովսեպոսի գիրքին հինգերորդ գլխոյն մէջ Քրիստոսի վրայով նշանաւոր վկայութիւնն արդէն յիշեցինք: Յովսեպոս կ'ըսէ թէ

Յիսուս ի մահ դատապարտուեցաւ Պոնտացի Պիղատոսէն, եւ երրորդ օրը յարութիւն առաւ ։ Պատճառ չկայ Յովսեպոսի այս վկայութիւնն իբրեւ հարազատ վկայութիւն չընդունելու ։

բ. Հռոմայեցւոց գիրերէն ապացոյցներ ։ Հռոմայեցի կուսակալք սովոր էին գրով իմացնել կայսերաց յիշուելու արժանի ինչ բան որ կը պատահէր իրենց գաւառներուն մէջ ։ Կուսակալներէն տրուած տեղեկութիւնք չէին հրատարակուեր, կը պահուէին սակայն Հռոմէական պետութեան դիւաններուն մէջ իբրեւ Գործք կառավարական հարցաքննեանց ։ Յուստինոս պատմիչը Հռոմայեցի կուսակալաց այս սովորութեան վրայ խօսելով կ'ըսէ. «Որովհետեւ մեր Տէրոջը յարութիւնն անհերքելի դէպք էր որուն վրայ շատ կը խօսուէր բոլոր Պաղեստինի մէջ, Պիղատոս այս դէպքին վրայ տեղեկութիւն տուաւ կայսեր ։»

Յուստինոս վկայ իր առաջին ջատագովութեան մէջ զոր մատոյց Անտոնինոս Պիոս կայսեր եւ Հռոմէական ծերակուտին Քրիստոսի մահուանէն իբր հարիւր տարի ետքը, Քրիստոսի խաչուիլն հանդերձ պարագայիւք յիշելով կը յարէ. «Թէ այս բաներս այսպէս եղան, կրնաք Պոնտացի Պիղատոսի ժամանակի Գործքերէն իմանալ ։» Դարձեալ, Քրիստոսի հրաշագործութեանց վրայ խօսելով, նոյն խօսքերով կ'ակնարկէ Պիղատոսի վերոյիշեալ Գործքերը ։ Արդարեւ Յուստինոս վկայ չէր յիշեր կայսեր այն Գործքերը, եթէ անոնց մէջ պատմուած չըլլային Յիսուսի մահուան, յարութեան եւ հրաշագործութեանց վերաբերեալ դէպքեր, իսկ եթէ այս դէպքերը պատմուած են այն Գործքերուն մէջ, ապա այն Գործքերը զօրաւոր

ապացոյց են հաստատելու թէ հաւատալի են Աւետարանները :

Նաեւ Տերտուղիանոս կը խօսի Պիղատոսի Գործքերուն վրայ եւ կը յիշէ քանի մը բան որոնց վրայ խօսուած է անոնց մէջ :

Տակիտոսի վկայութիւնը : Այս Հռոմայեցի պատմիչը, որ Քրիստոսի մահուանէն իբր 20 տարի ետքը ծնաւ, կը պատմէ իր գրուածներուն մէջ թէ Քրիստոս իբրեւ չարագործ ի մահ դատապարտուեցաւ Պոնտացի Պիղատոսէն, թէ Քրիստոնեայ կոչուած մարդիկ իրենց անունն առին Քրիստոսէն, եւ թէ այս հաւատքը (զոր անապաշտութիւն կ'անուանէ) տարածուած է մինչեւ ի Հռոմ, ուր մեծ բազմութիւն կը հաւատայ. Ցիտուսի. կը պատմէ նաեւ վաղեմի Քրիստոնէից սոսկալի հալածանքը եւ նեղութիւնները եւ կ'ըսէ. «Քրիստոնեաները պատժելու համար այնպիսի պատիժներ հնարուած էին որ զանոնք ծաղու եւ այպանոյ նշաւակ կ'ընէին : Ոմանց վայրի գազաններու մորթեր կը հագցնէին զանոնք շուներուն փառատել տալու համար, ոմանք ալ դիւրավառ նիւթերու մէջ թաթխելով կ'այրէին մինչեւ ի մահ :

Պլինիոսի վկայութիւնը : Կայ հռչակաւոր նամակ մը Պլինիոսէ գրուած առ Տրայիանոս կայսր Քրիստոսի խաչելութենէն իբր 70 տարի ետքը : Պլինիոս կուսակալ էր Պոնտոսի եւ Բիւթանիոյ, որ Հրէաստանէն հեռու Ասիական գաւառներ էին : Պլինիոս այն նամակին մէջ քանի մը ուրացեալ Քրիստոնէից խոստովանութեանց վրայ խօսելով կ'ըսէ. «Բոլորն ալ կ'ըսեն թէ անոնց յանցանքն այս է որ սովոր են որոշեալ օր մը լուսնալէն առաջ մէկտեղ գումարիլ

եւ երգել երգ մը ի պատիւ Յիսուսի իբրեւ Աստուծոյ, եւ երդմամբ ուխտել բնաւ չարութիւն չգործել, գողութիւն, աւազակութիւն եւ շնութիւն չընել, սուտ չխօսիլ եւ չուրանալ աւանդն որ իրենց յանձնուած է անոնց քով։» Այս խօսքն այնպէս տարօրինակ թուեցաւ Պլինիոսի որ տանջել տուաւ երկու կիներ, բայց չկրցաւ աւելի բան մը երեւան հանել։ Պլինիոս այն նամակին մէջ կը խօսի նաեւ Քրիստոնէից թուոյն վրայ եւ կ'ըսէ. «Բոլոր դատաստանական գործողութիւնները դադրեցնելով ձեզ կը դիմեմ խրատի համար, քանզի ինծ կը թուի թէ այս բանն արժանի է նկատողութեան առնուելու, մանաւանդ անոր համար որ տանջուելոց (ասոնքն խաբուելոց) վտանգի մէջ եղողներուն թիւը շատ մեծ է, քանզի ամէն հասակէ, ամէն կարգէ եւ երկու սեռէ բազմաթիւ մարդիկ ամբաստանուած են եւ պիտի ամբաստանուին իբրեւ Քրիստոնեայ։ Այս սնապաշտութիւնը տարածուած է ոչ միայն քաղաքներու, այլեւ աւաններու եւ գիւղերու մէջ։»

Վերոյիշեալ հեթանոս մատենագիրք կը հաստատեն իբրեւ ճշմարիտ ինչ որ աւետարանիչք կ'ըսեն Քրիստոնէութեան սկզբանը, արագ արագ տարածուելուն, առաջին Քրիստոնէից յատկութիւններուն եւ անոնց հալածանաց եւ չարչարանաց վրայ։ Այսպիսի ապացոյցներ կը գտնուին նաեւ ի գիրս Կեղսոսի, Լուկիանոսի եւ Պորփիւրի, որոնք Քրիստոնէութեան դէմ յարձակումներ ըրին։

Գ. Հին դրամներ, փորագիրք եւ արձանագրութիւններն ապացոյցներ։ Այս դրամներուն, մետալներուն եւ արձանագրութիւններուն մեծ մասը կը հաստատէ թէ

Հին կտակարանը հաւատալի է, բայց եւ այնպէս առանցմէ ոմանք կը հաստատեն նաեւ Նոր կտակարանին պատմական ճշդութիւնը ։

Ղուկաս Կիպրոսի կառավարչին, Սերգիոս Պօղոսի, կու տայ այնպիսի տիտղոս մը որ փոխանորդ բդեշխի աստիճանէն եղող պաշտօնակալաց միայն կը տրուէր, եւ ոմանք պատմաբանք կը տարակուսէին թէ Սերգիոս Պօղոս այն աստիճանն ունէր ։ Սակայն մօտերս մետալ մը գտնուեցաւ որ կը ցուցնէ թէ Կիպրոսի կառավարիչն այս աստիճանն ունէր, եւ այսպէս կը հաստատուի Ղուկասու խօսքը ։

Ղուկաս Կողոմնիա (գաղթականաց տեղ) կը կոչէ Փիլիպպէ, եւ այս բառէն կը հասկցուի թէ Հռոմայեցի գաղթականաց տեղ էր այն ։ Որովհետեւ ուրիշ պատմիչ մը իբրեւ գաղթականութիւն յիշած չէ Փիլիպպէ, ոմանք տարակուսած էին Ղուկասու խօսքին ճշմարտութեանը վրայ, բայց մօտերս նոյնպէս հին մետալ մը գտնուեցաւ, որ կը ցուցնէ թէ գաղթականութեան պատիւ տրուած էր Փիլիպպէի Յուլիոս Կեսարէն, եւ այսպէս դարձեալ կը հաստատուի Ղուկասու խօսքին ճշդութիւնը ։

Ասոնք կը յիշենք ցուցնելու համար միայն թէ ինչպէս ամէն տեսակ ապացոյցներ կը միաբանին հաստատելու թէ Աւետարանները հաւատալի են ։

Դ. Նախնի Քրիստոնէից վկայութիւնները ապացոյցներ ։ Ամէն մարդ կ՚ընդունի թէ, եթէ ունենայինք Աւետարաններուն հրատարակուած ժամանակին ապրող հազար անաչառ մարդոց վկայութիւնները որոնցմէ ցուցուէր թէ Աւետարանաց մէջ պատմուած դէպքերն իրօք տեղի ունեցան, Աւետարաններուն արժանահաւատու-

թիւնը մեծապէս հաստատութիւն կը գտնէր ։ Ամէն մարդ կ՚ընդունի նաեւ իբրեւ վաւերական վկայութիւն այն մարդոց վկայութիւնն, որ ապրեցան մօտ այն ժամանակին եւ տեղւոյն յորում պատահեցան Աւետարանաց մէջ յիշուած դէպքերն, եւ որ կրնային լաւ հետազօտել թէ արդարեւ պատահեցան այն դէպքերը կամ ոչ, եւ, եթէ պատահեցան, ինչ կերպով պատահեցան ։ Ամէն մարդ կ՚ընդունի նաեւ թէ, եթէ այն վկայութիւնները տուողները կրած ըլլային յանդիմանութիւն, նախատինք, արհամարհանք, հարուած, բանտարկութիւն, նոյն իսկ մահ, ի հաստատութիւն իրենց վկայութեանը, անոնց վկայութիւնը կրնար իբրեւ վաւերական ընդունուիլ ։ Արդ, կան այսպիսի վկայութիւններ որ են ի նպաստ արժանահաւատութեան աւետարանչաց․ Այս վկաներուն խօսքերն արդարեւ գրուած չեն, բայց այնպէս ստոյգ են որպէս թէ անոնց ձեռքովը գրուած եւ ստորագրուած ըլլային ։

Անոնց գործերը ծանօթ են մեզ, եւ հարկաւ այս գործերը համոզումէ միայն կրնան յառաջ եկած ըլլալ ։ Հազարաւոր մարդիկ որ, ինչպէս պատմութիւնը ստուգիւ կը ցուցնէ, ընդունեցան Քրիստոնէութիւնը Յիսուսի խաչելութենէն քիչ տարիներ ետքը, այնչափ չարչարանք եւ տանջանք չէին կրեր, եթէ Աւետարանաց մէջ պատմուած դէպքերուն ճշմարտութեանը վրայ համոզուած չըլլային ։ Բաց իրենց համոզումէն ուրիշ պատճառ չկար ստիպելու զանոնք Քրիստոնեայ ըլլալու, քանզի յիշեալ մարդիկ այն ժամանակի Քրիստոնէութիւնն ընդունելով ոչ հարստութիւն կը ստանային, ոչ պատիւ եւ ոչ հանգստու-

թիւն։ Ուստի, այն հազարաւոր մարդիկ որ թողու-
ցին իրենց ազգն, ազգականներն եւ բարեկամները
Քրիստոնէութիւնն ընդունելու համար, մանաւանդ
ամէն անոնք որ մահ անգամ յանձն առին Քրիստոսի
սիրոյն համար, նովին գործով վկայած են շատ հա-
մոզիչ կերպով թէ արժանահաւատ կը համարէին Ա-
ւետարանները, եւ ցուցուցած են թէ այնպէս հա-
մոզուած էին Քրիստոնէութեան ճշմարտութեանը որ
պատրաստ էին զոհել իրենց երկրաւոր գանձերը
միայն սա նպատակաւ որ ընդունին այն գանձերն
որ խոստացուած են Աւետարաններուն մէջ։ Այս-
պէս կան հազարք հազարաց եւ բիւրք բիւրուց ան-
կեղծ եւ խոհական վկաներ որ կը հաստատեն Աւե-
տարաններուն արժանահաւատութիւնը։

Ե. Նոյն իսկ Քրիստոնէութենէն ապացոյցներ։ Նոյն իսկ
Քրիստոնէութեան գոյութիւնը կը հաստատէ թէ Ա-
ւետարանները հաւատալի են. Եթէ ընդունինք Աւե-
տարաններն իբրեւ ճշմարիտ եւ վաւերական պատ-
մութիւն, այն ատեն կարելի է մեկնել Քրիստոնէու-
թեան ծագման, արագ արագ տարածուելուն եւ
աշխարհի վրայ գործած զօրաւոր եւ տեւական ազդե-
ցութեան հետ կապակցեալ բոլոր դէպքերը. Իսկ եթէ
Աւետարանները մերժուին՝ իբրեւ անհաւատալի, անա-
տեն յիշեալ դէպքերը կը մնան անմեկնելի եւ աշխար-
հի վրայ ամենէն մեծ իմացական եւ բարոյական
շարժման ծագումը եւ յառաջացումը կ'ըլլան առեղծ-
ուած մը որ ոչ լուծուած է եւ ոչ կրնայ լուծուիլ։

Շատեր որ կ'ուրանան Աւետարաններուն արժա-
նահաւատութիւնը, ջանացած են ուրիշ կերպով մեկ-
նել քաղաքակիրթ աշխարհի մէջ Քրիստոնէութեան

արագ տարածումն եւ այն մեծ ազդեցութիւնը զոր Քրիստոնէութիւնն ունեցած է ութեւտասն դարերէ ի վեր, բայց յաջողած չեն ։ Եթէ կ'ընդունինք Աւետարաններն իբրեւ ճշմարիտ պատմութիւն, անատեն ամէն բան բացորոշ է ։ Եթէ Յիսուս Քրիստոս արդարեւ էր ինչ որ կ'ըսեն աւետարանիչք թէ էր, անատեն եւ միայն անատեն կարելի է ըմբռնել թէ ինչու ամենէն լուսաւորեալ եւ քաղաքակրթեալ ազգերէն միլիոնաւոր մարդիկ աստուածային պատիւ մատուցած են այն Գալիլեացի երիտասարդ գիւղացւոյն ։ Եթէ արդարեւ Յիսուս Քրիստոս յարեաւ ի մեռելոց, ինչպէս կը պատմուի Աւետարանաց մէջ ; անատեն եւ միայն անատեն կրնանք հասկնալ թէ ինչպէս այնչափ շատ մարդիկ պատրաստ էին տանջուելու եւ սպաննուելու անոր սիրոյն համար որ դատապարտուեցաւ անոնց ազգէն, ի մահ մատնուեցաւ իբրեւ չարագործ եւ խաչուեցաւ երկու աւազակաց մէջտեղ ։ Եթէ արդարեւ Քրիստոնէութիւնն Աստուծմէ է, ինչպէս կ'ըսուի Աւետարանաց մէջ, անատեն կրնանք հասկնալ այն զարմանալի զօրութիւնը զոր ունեցած է անցեալ դարուց մէջ ։ Ուրիշ կրօնք մը երբէք չտարածուեցաւ այնպիսի միջոցներով, ոչ ալ յաղթանակ կանգնեց այնպիսի թշնամեաց վրայ, ինչպէս Քրիստոնէական կրօնքը ։ Արդ, եթէ չընդունինք Աւետարաններն իբրեւ հաւատալի գիրքեր, չենք կրնար բանաւոր կերպով մեկնել Քրիստոնէութեան պատմութիւնը ։

Մինչեւ ցարդ համառօտիւ մէջ բերինք ապացոյցներ հաստատելու համար թէ աւետարանիչք կարող եւ անկեղծ մարդիկ էին, եւ թէ քաջ տեղեակ էին

*այն դէպքերուն որոնց պատմութիւնը կ'ընեն ։ Ցուցուցինք նաեւ թէ աւետարանչաց արժանահաւատութիւնը կը հաստատուի Հրեայ, հեթանոս եւ Քրիստոնեայ մատենագիրներէ ։ Այս այսպէս ըլլալով, մենք ինչ ընելու ենք. կամ ընդունելու ենք այն ապացոյցներն իբրեւ գոհացուցիչ, եւ կամ հերքելու ենք զանոնք ուրիշ աւելի զօրեղ ապացոյցներով ։*



# ԳԼՈՒԽ Թ.

## ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒՆ ԱՐԺԱՆԱՀԱՒԱՏՈՒԹԵԱՆԸ ԴԷՄ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԿԱ՞Ն

Եթէ կան ապացոյցներ Աւետարաններուն արժանահաւատութեանը դէմ, անոնք կամ աւետարանչաց անձերուն եւ կամ Աւետարաններուն պարունակութեանց դէմ ըլլալու են ։ Արդ, քննենք թէ կա՛ն մէկ կամ միւս տեսակէն բաւական ապացոյցներ որ կարենան հերքել Աւետարաններուն արժանահաւատութիւնը ։

Միթէ կա՞ն ապացոյցներ աւետարանիչներուն անձերուն դէմ ։

Պատրաստ ենք քննելու պատմական բոլոր ապացոյցները որ կրնան մէջ բերուիլ աւետարանիչներուն անձերուն դէմ, բայց որովհետեւ նոյն իսկ անհաւատները անկարող են մէջ բերել այս տեսակ ապացոյցներ, իրաւունք ունինք հաստատելու թէ այս տեսակ ապացոյցներ չկան ։ Չկան վկաներ որ անձամբ ծանօթ ըլլալով աւետարանչաց, կամ աւետարանչաց ծանօթներէն անոնց վրայով տեղեկութիւն առած ըլլալով ըսեն թէ Մատթէոս, Մարկոս, Ղուկաս եւ Յովհաննէս անկարող եւ վստահութեան անարժան մարդիկ էին ։ Այս այսպէս ըլլալով, եթէ կան ապացոյցներ Աւետարաններուն արժանահաւատութեանը դէմ, ապա այն ապացոյցներն Աւետարաններուն պարունակութեանցը դէմ ըլլալու են ։ Ուրեմն,

**Կա՞ն ապացոյցներ Աւետարաններուն պատմականութեանը դէմ։**

Եթէ այսպիսի ապացոյցներ կան, ասոնք կամ բուն իսկ Աւետարաններէն յառաջ եկած ըլլալու են եւ կամ պատմութենէ կամ գիտութենէ. այսինքն, կամ Աւետարանները զիրար հերքելու են իբրեւ իրարու հակասական, եւ կամ պատմութիւնը հերքելու է զանոնք ցուցնելով թէ անոնց մէջ գրուածները համաձայն չեն պատմական ծանօթ դէպքերուն, եւ կամ գիտութիւնը հերքելու է զանոնք ցուցնելով թէ ինչ որ Աւետարաններուն մէջ կ'ըսուի՝ հակառակ է մեզի ծանօթ բնական երեւոյթներու եւ օրինաց։ Բայց եթէ Աւետարանները չեն հերքեր զիրար, եւ ոչ պատմութիւնը եւ ոչ գիտութիւնը կը հերքէ զանոնք, ապա Աւետարանները ընդունուելու են իբրեւ արժանահաւատ գիրքեր։

**Ա. Արդեօք Աւետարանները զիրար կը հերքե՞ն իբրեւ իրարու հակառակ։**

Այս խնդիրը քննելու առթին հարկ է յիշել երեք բան։

Նախ, Աւետարանները չեն ըսեր թէ Քրիստոսի կենաց կատարեալ պատմութիւնն են։ Նոյն իսկ աւետարանիչք կ'ըսեն թէ իրենք չգրեցին ամէն բան ինչ որ Յիսուս ըսաւ եւ ըրաւ (Յովհ. Ի. 30)։ Աւետարանիչք Յիսուսի կենաց մէյմէկ համառօտ պատմութիւնը գրած են, եւ անոնց չորսն ալ միեւնոյն բաները չեն յիշեր։ Ուստի, երբ Աւետարաններէն մին այս ինչ բանը կը յիշէ եւ միւսն այն ինչ բանը, ասով իրարու հակասական չեն համարուիր, ցորչափ որ միոյն յիշած բանը միւսը յայտնապէս կամ լռելեայն

չի հերքեր։ Սակայն Աւետարաններուն մէջ այսպիսի հակասութիւն չկայ ։

Երկրորդ, աւետարանիչք չեն ըսեր թէ բոլոր պարագաներովն հանդերձ կը գրեն այն բաները զորս կը յիշեն իրենց գրուածներուն մէջ ։ Անոնց նկարագրութիւնները շատ համառօտ են։ Ուստի, երբ դէպքի մը պատմութեան մէջ իւրաքանչիւր աւետարանիչ միեւնոյն պարագաները չի յիշեր, ապէ ի հարկէ չի հետեւիր թէ աւետարանիչք իրարու հակառակ կը խօսին, ցորչափ որ դէպքի մը պատմութեան մէջ աւետարանչաց մէկէն յիշուած պարագայ մը միւսէն յիշուած ուրիշ մէկ պարագային անհամաձայն չի գար։ Աւետարաններուն մէջ գտնուած տարբերութիւններուն նման տարբերութիւններ ուրիշ բոլոր արժանահաւատ պատմչաց գրուածներուն մէջ կը գտնուին։ Նաեւ ուրիշ մասնաւոր պատճառ մը կար որուն համար բոլոր աւետարանիչք միեւնոյն պարագաները չեն յիշեր։ Մատթէոս իր Աւետարանը գրեց մասնաւորապէս Հրէից համար, Ղուկաս գրեց իր Աւետարանը մասնաւորապէս հեթանոսաց համար, եւ Յովհաննէս գրեց իր Աւետարանը միւս երեք աւետարանչաց պակաս թողած կէտերը լեցնելու, եւ Քրիստոսի աստուածային բնութիւնն աւելի յայտնի ցուցնելու համար, ուստի եւ իւրաքանչիւրը յիշեց այն դէպքերն եւ պարագաներն որ աղէկ կը ծառայէին իր նպատակին։ Ապա զարմանալի չէ որ բոլոր աւետարանիչք միեւնոյն դէպքերն եւ միեւնոյն պարագաները չեն յիշեր։

Երրորդ, աւետարանիչք չեն պնդեր թէ Աւետարաններուն մէջ պատմուած դէպքերը միշտ ժամանա-

կի կարգով գրած են։ Արդարեւ աւետարանիչք ընդհանրապէս կը պատմեն դէպքերը ժամանակին կարգաւ, բայց որովհետեւ անոնց գլխաւոր նպատակը կանոնաւոր պատմութիւն գրել չէր, ոչ ալ որոշել ճշդիւ թէ իւրաքանչիւր հրաշք երբ գործուեցաւ, եւ իւրաքանչիւր խօսք երբ ըսուեցաւ, այլ կ'ուզէին մանաւանդ մարդիկ կրթել անոնց ցուցնելով ազդու խօսքերով Յիսուսի կարողութիւնն, իմաստութիւնը եւ շնորհքը, երբեմն դէպքերը կը յիշեն ոչ ճիշդ ժամանակագրական կարգաւ. բայց ասկէ չի հետեւիր թէ հակասութիւն կայ անոնց պատմութեան մէջ, ցորչափ աւետարանիչներէն մին յայտնապէս չըսեր թէ այս ինչ դէպքը տեղի ունեցաւ այս ինչ ատեն, միւսն ալ այնչափ յայտնապէս չի պնդեր թէ նոյն դէպքը տեղի ունեցաւ այն ինչ տարբեր ատեն։ Նաեւ երբ Աւետարաններուն մէջ գտնուած տարբեր պատմութիւնները քննութեան կ'առնենք, զգուշանալու ենք չհամարիլ այլեւայլ դէպքերն իբրեւ մի, որ ոչ թէ միեւնոյն այլ տարբեր դէպքեր են։

Այս դիտողութիւնները ի մտի ունենալով համառօտիւ աչքէ անցնենք Աւետարաններուն մէջ գտնուած տարբերութիւնները։

ա. Գլխաւոր դէպքաց եւ վարդապետութեանց վերաբերեալ հակասութիւն ամենեւին չկայ Աւետարաններուն մէջ։

Յիսուսի յատկութիւններուն վրայ, անոր նպատակին վրայ, եւ միջոցներուն վրայ որովք այն նպատակին ի գլուխ հանեց, ամենեւին անհամաձայնութիւն չկայ աւետարանչաց մէջ. Աւետարանիչք բոլորովին համաձայն են Քրիստոսի վարդապետութիւններուն, անոր հրաշագործ զօրութեանը, խաչելու-

թեան եւ յարութեանը վրայ։ Արդարեւ Աւետարաններուն մէջ աւելի մեծ համաձայնութիւն կայ, քան որեւիցէ երեւելի անձի մը վարուց այլեւայլ պատմութիւններուն մէջ։

Սոկրատ երկու համբաւաւոր աշակերտ ունէր, Պղատոն եւ Քսենոփոն, որոնց երկուքն ալ գրած են Սոկրատայ կենսագրութիւնը, բայց աւելի տարբերութիւն կայ Սոկրատայ այս կենսագրութեանց մէջ քան Յիսուսի վարուց վրայ աւետարանչաց կողմէն գրուածներուն մէջ։ Բայց եւ այնպէս թէ Պղատոն եւ թէ Քսենոփոն կը համարուին արժանահաւատ կենսագիրք Սոկրատայ։ Եթէ Աւետարանները մերժելի են իբրեւ անհաւատալի գրեան վասնզի փոքր եւ անկարեւոր տարբերութիւններ կան անոնց մէջ, ապա պարտինք մերժել պատմական բոլոր գիրքերը, քանզի այս տեսակ տարբերութիւններ աւելի շատ կը գտնուին անոնց մէջ։

բ. Աւետարաններուն մէջ գտնուած տարբերութեանց մեծագոյն մասը դէպքերու կարգին համաձայնութեան վերաբերեալ է։

Տարբերութեանց գրեթէ բոլորը բուն դէպքերուն վերաբերեալ չեն, այլ դէպքերուն երկրորդական պարագաներուն միայն։ Աւետարանիչներէն մին կը յիշէ այս ինչ պարագաները, մինչ միւսն ուրիշ պարագաներ կը յիշէ։ Այս տարբերութիւններէն մէկ քանին քննենք ցուցնելու համար թէ ասոնք ինչպէս կրնան համաձայնութեան բերուիլ։

Մատթէոս, Մարկոս եւ Յովհաննէս կը նկարագրեն դէպք մը որ Բեթանիոյ մէջ բորոտ Սիմոնի տունը տեղի ունեցաւ Քրիստոսի Յուդայէն մատնուելէն քիչ ժամանակ առաջ։ Ով որ այս դէպքին

վերաբերեալ այլեւայլ պատմութիւնները կը կարդայ (Մատթ. ԻԶ. 6—13, Մարկ. ԺԴ. 3—9, Յովհ. ԺԲ. 1—8), պիտի համոզուի թէ ընդհանուր համաձայնութիւն կայ անոնց մէջ։ Ամէնքն ալ կը համաձայնին գլխաւոր կէտերուն վրայ, այսինքն կը յիշեն թէ երբ Յիսուս սեղան նստած էր, կին մը ծանրագին իւղի շիշով օծեց զանի, թէ առարկութիւններ եղան իւղին թափուելուն դէմ, եւ թէ ինչ պատասխան տուաւ Յիսուս այն առարկութեանց։ Բայց եթէ մարդ մանր քննէ այս դէպքին երեք պատմութիւնները, կրնայ քանի մը փոքր տարբերութիւն գտնել անոնց մէջ։ Ոմանք կրնան ըսել թէ աւետարանչաց պատմութեան մէջ հակասութիւն կայ ճիշդ ժամանակին նկատմամբ երբ յիշեալ դէպքը տեղի ունեցաւ. բայց եթէ մարդ աւելի ուշադրութեամբ քննէ, պիտի տեսնէ թէ այնպէս չէ։ Վերոյիշեալ երեք աւետարանիչք կ'ըսեն թէ այն դէպքը տեղի ունեցաւ երբ Յիսուս Բեթանիա էր Յուդայէն մատնուելէն քանի մը օր միայն առաջ, սակայն ոչ Մատթէոս ոչ Մարկոս եւ ոչ Յովհաննէս յայտնապէս կ'որոշէ օրը։

Մատթէոս եւ Մարկոս կ'ըսեն թէ կինը օծեց Յիսուսի գլուխը, մինչ Յովհաննէս կ'ըսէ թէ օծեց անոր ոտքերը, բայց միթէ ասոր մէջ հակասութիւն կա՞յ։ Եթէ կինն օծեց Յիսուսի գլուխն ու ոտքերը միանգամայն, որ շատ հաւանական է, հակասութիւն բնաւ չկայ։

Մարկոս կ'ըսէ. «Կային ոմանք որ կը դժուարէին» իւղին կորստեանը վրայ։ Մատթէոս կ'ըսէ. «Անոր աշակերտները տեսնելով դժուարեցան»։ Իսկ Յով-

հանդէս կ'ըսէ. «Ցուդան որ զանիկա պիտի մատնէր, ըսաւ. Ինչու համար այս եղը չծախուեցաւ երեք հարիւր դահեկանի, որ աղքատներուն տրուէր»։ Բայց այս տարբեր խօսքերուն մէջ միթէ էական տարբերութիւն կա՞յ։ Ոչ, վասնզի իրաւունք ունինք կարծելու որ հոն ներկայ եղողներէն ոմանք դժուարեցան, եւ անոնց մէջ էին աշակերտներն, որոնցմէ մին էր նաեւ Ցուդա որ ըսաւ վերի հարցումը։ Եթէ այսպէս էր, ապա որեւիցէ հակասութիւն չկայ։ Սակայն անհաւատներէն ոմանք կ'ըսեն թէ երեք աւետարանչաց այս պատմութիւնը բնաւ չիհամաձայնիր Ղուկասու Աւետարանին մէջ գտնուած պատմութեան։ Արդարեւ այնպէս է, քանզի յայտնի կ'երեւի թէ Ղուկաս կը պատմէ ուրիշ դէպք մը, որ քանի մը պարագաներու կողմանէ կը նմանի վերոյիշեալ դէպքին։

Ղուկասու է. 36—50 համարներուն մէջ յիշուած դէպքը տեղի ունեցաւ տարբեր ժամանակի մէջ, եւ այն կինն որ օծեց Ցիսուսի ոտուըները Մարթայի քոյրը Մարիամ չէր, այլ ուրիշ կին մը որ մեղաւոր էր, եւ հոն ներկայ գտնուողներուն առարկութիւնները բոլորովին տարբեր էին, ինչպէս էր նաեւ Ցիսուսի պատասխանը։ Սակայն անհաւատք ցուցնելու համար թէ աւետարանիչք իրարու հակասական են, կ'ըսեն թէ պարտինք ընդունիլ թէ բոլոր աւետարանիչք կը նկարագրեն միեւնոյն դէպքը, քանզի ամէնքն ալ կ'ըսեն թէ այն դէպքը տեղի ունեցաւ մարդու մը տունը որուն անունն էր Սիմոն, եւ անհաւանական է որ երկու կին օծէին Ցիսուսի ոտուըները։ Այս պատճառները եւ փաստերն ամենեւին գոհացուցիչ չեն։

Սիմոն հասարակ անուն էր Հրէից մէջ, ինչպէս են կարապետ եւ Գրիգոր Հայոց մէջ. բաց աստի, նոյն իսկ աւետարանիչք կը թուին ցուցնել թէ այն դէպքը տեղի չունեցաւ միեւնոյն Սիմոնի տունը, քանզի Մատթէոս, Մարկոս եւ Յովհաննէս Սիմոն բորոտ կը կոչեն այն անձը, մինչ Ղուկաս կ'ըսէ թէ այն դէպքը Փարիսեցի Սիմոնին տունը տեղի ունեցաւ։ Նաեւ միթէ հնար չէ՞ր որ երկու կանայք օծէին Յիսուսի ոտուըները։ Երբ գիտցուեցաւ թէ հաճոյ եղաւ Յիսուսի այն կնոջ գործը, այն է օծելն Յիսուսի ոտուըները, անհաւանական չէ թէ ուրիշ կին մը համարձակեցաւ նոյնպէս ընել։ Աւետարանչաց խօսքերուն տրամաբանութեան եւ ուղղութեան հակառակ մեկնութիւն տալով միայն կարելի է ըսել թէ աւետարանչաց գրուածներն իրարու հակառակ են։

Նաեւ ոմանք կ'ըսեն թէ Պետրոսի զՔրիստոս երկրորդ անգամ ուրանալուն պատմութեան մէջ հակասութիւն կայ։ Ըստ Մարկոսի միեւնոյն աղախինն ըրաւ երկրորդ հարցումը Պետրոսի, բայց Ղուկաս կ'ըսէ թէ ուրիշ մը ըրաւ այն հարցումը։ Այս տարբերութեան մեկնութիւնը կայ Յովհաննու Աւետարանին մէջ, ուր կ'ըսուի թէ ոչ մի այլ քանի մը անձինք ըրին այն հարցումը Պետրոսի։ Արդ՝ Աւետարաններուն այս պատմութեան մէջ իրօք հակասութիւն չկայ, վասնզի կարելի է թէ նոյն աղախինը երկրորդ անգամ հարցուց Պետրոսի, եւ յետոյ ուրիշ մը, եւ վերջապէս ուրիշ քանի մը անձինք միեւնոյն հարցումն ըրին Պետրոսի։ Շատ հաւանական է թէ աղախնոյն հարցումէն շարժելով ըրին այլք նոյն հարցումը։ Հիմա ալ նոյնպիսի պարագաներու մէջ

կրնայ այնպէս պատահիլ, ապա ինչ անհաւանականութիւն կայ թէ այնպէս չեղաւ նաեւ այն ատեն։ Աւետարաններուն մէջ տեսնուած տարբերութիւնը ոչ այլ ինչ է եթէ ոչ պարագաներու զանազանութիւն. եւ պարագաներու զանազանութիւնը հակասութիւն չէ, քանզի զանազան պարագայից ամէնքն ալ կրնան ճշմարիտ ըլլալ։

Անհաւատներէն ոմանք կ՚ըսեն թէ աւետարանչաց մէջ հակասութիւն կայ Քրիստոսի խաչելութեան կողմանէ։ Ըստ Մատթէոսի Քրիստոս խաչուեցաւ երրորդ ժամուն, ուր, ըստ Յովհաննու, դեռ վեցերորդ ժամ էր երբ Պիղատոս նստաւ դատել զՅիսուս։ Այս տարբերութիւնը կրնայ մեկնուիլ։ Յովհաննու Աւետարանին ուրիշ մասերէն շատ հաւանական կ՚երեւի թէ Յովհաննէս ըստ Հռոմայեցւոց կը համրէ ժամերը կէս գիշերէն սկսելով, մինչ Մարկոս Հրէից սովորութեան կը հետեւի եւ ժամերը կը համրէ ի ծագմանէ արեւուն։ Գերմանացի նշանաւոր մեկնիչ մը նկատելով տարւոյն այն եղանակին, այսինքն գարնան մէջ, արեւուն ծագման ժամը, եւ թէ որչափ ժամանակ պէտք էր Պիղատոսի ըստ Հռոմէական սովորութեան աւարտել Յիսուսի դատը, կը հետեւցնէ թէ վերը յիշուած մեկնութիւնը գոհացուցիչ է։ Միթէ երկու անձինք իրարու կը հակառակին, երբ մին ժամանակն ըստ արեւելեայց հաշուելով իր գրքին մէջ կը գրէ թէ այս ինչ դէպքը տեղի ունեցաւ Կոստանդնուպոլիս վեցերորդ ժամուն, եւ միւսն, ըստ Եւրոպացւոց հաշուելով ժամանակը, կը գրէ թէ նոյն դէպքը տեղի ունեցաւ օրուան առաջին ժամուն։

Ուրիշ օրինակ մը առնենք ։ Մատթէոս կ'ըսէ թէ Յիսուս բացաւ երկու կուրաց աչքը Երիքովի մօտ, իսկ Մարկոս եւ Ղուկաս կ'ըսեն թէ մէկ կուրի աչքը բացուեցաւ ։ Ըստ Մատթէոսի եւ ըստ Մարկոսի այս դէպքը տեղի ունեցաւ ի մեկնելն Յիսուսի յԵրիքովէ. ըստ Ղուկասու, ինչպէս կ'երեւի, ի մերձենալն յԵրիքով ։ Մի՞թէ արդարեւ հակասութիւն կայ այս երկու պատմութեան մէջ այնպէս որ կարելի չըլլայ զանոնք համաձայնեցնել ։ Ոչ ։ Կարելի է համաձայնեցնել զանոնք քանի մը կերպով ։ Կարելի է թէ Յիսուս բացաւ կուրի մը աչքը երբ Երիքով կը մտնէր, ինչպէս կ'ըսէ Ղուկաս, եւ ուրիշ կուրի մը աչքը բացաւ, երբ Երիքովէն կ'ելլէր, ինչպէս կ'ըսէ Մարկոս. իսկ Մատթէոս համառօտիւ կը յիշէ թէ Յիսուս երկու կուրաց աչքերը բացաւ ։ Ուրիշ մեկնութիւն մ'ալ թերեւս հանուի Ղուկասու Աւետարանին մէջ գործածուած բառէն, որ կրնայ նշանակել նաեւ թէ Յիսուս կուրին աչուքները բացաւ քաղքին մօտ, ոչ թէ ի մտանելն ի քաղաքն ։ Արդարեւ չենք կրնար ստուգիւ հաստատել թէ այս երկուքէն որն է բառին բուն միտքը, բայց նաեւ անհաւատք կարող չեն հաստատել թէ այս մեկնութիւններուն երկուքն ալ սխալ են ։ Բուն հակասութիւն չեն այն տարբերութիւնք զորս կարելի է ոեւիցէ կերպով իրարու հետ համաձայնեցնել, թէեւ բաւական ապացոյց չըլլայ ստուգիւ հաստատելու թէ մեկնութիւնն զոր կուտանք՝ ուղիղ է ։

Մեր միջոցը չի ներեր մեզ աւելի ընդարձակօրէն քննել Աւետարաններուն մէջ գտնուած տարբերութիւնները, եւ ոչ իսկ կարեւոր կը համարինք այս-

ալխոր քննութիւն մը, քանզի Նոր կտակարանին մէջ գտնուած տարբերութեանց մեծագոյն մասը վերը յիշուած տարբերութեանց կարգէն են ։ Գրեթէ բոլոր տարբերութիւնները կրնան դիւրաւ բերուիլ ի միաբանութիւն, եւ նոյն իսկ այն սակաւաթիւ անկարեւոր տարբերութիւնները որոնց համաձայնութիւնը կարող չենք առուգիւ ցուցնել, բուն հակասութիւն չեն ։ Սակայն հնար է զանոնք եւս բերել ի միաբանութիւն ։ Այն տարբերութիւնք հակասական կը թուին, վասնզի Աւետարանները շատ համառօտ են, եւ անոնց մէջ պատմուած դէպքերուն վրայ մեր տեղեկութիւնները շատ քիչ են ։

Քանի մը տարի առաջ աստեղագէտք կ'ըսէին թէ անկարող էին Ուրանոս մոլորակին շարժումը համաձայնեցնել ծանրութեան օրինաց ։ Այս պարագային մէջ աստեղագէտք ինչ ըրին ։ Միթէ տիեզերական ծանրութեան օրէնքը մերժեցին ; ըսելով թէ Ուրանոսի շարժման հետ չի համաձայնիր այն ։ Ոչ երբէք ։ Ընդհակառակն, ըսին թէ դեռ անծանօթ բան մը կայ, որ երբ գտնուի՝ պիտի ցուցնէ թէ Ուրանոսի շարժումը համաձայն է ծանրութեան օրինաց, եւ արդարեւ այսպէս եղաւ, քանզի յետոյ գտան այն անծանօթ բանը որ ցուցուց թէ Ուրանոսի շարժումը համաձայն է ծանրութեան օրինաց ։ Մենք եւս երբ Աւետարաններուն մէջ տեսնուած տարբերութիւնները կը քննենք, պարտինք նոյն խոհեմութիւնը ցուցնել. ոչ թէ թեթեւութեամբ հետեւցնել թէ, որովհետեւ չենք կրնար այսօր որոշ կերպով ցուցնել թէ Աւետարաններուն իւրաքանչիւր համարն ինչպէս կը համաձայնին միւս համարներուն հետ, ապա Աւե-

տարաններն իրարու հակասական են ։ Այսպիսի հետեւութիւն մը բանաւոր չէ ։ Աւետարաններուն մէջ գտնուած ընդհանուր համաձայնութիւնն ընդունուած է ։ Այն համաձայնութիւնը որ Աւետարանաց մէջ կը տեսնուի փոքր դէպքերու եւ երկրորդական պարագաներու նկատմամբ եւ է առանց դիտման եւ ըստ պատահման շատ նշանաւոր եւ շատ համոզիչ է ։ Բանասէրք որչափ աւելի ուշադրութեամբ կը քննեն Աւետարաններն եւ որչափ աւելի տեղեկութիւն կը ստանան ժամանակին վրայ յորում գրուեցան Աւետարանք, այնչափ աւելի կը համոզուին թէ անոնց մէջ կայ ընդհանուր համաձայնութիւն ։ Վերջին քննութիւնք ցուցուցած են թէ քանի մը տարբերութիւններ, որ յառաջագոյն հակասական կը թուէին, հիմա կրնան բերուիլ ի միաբանութիւն ։ Ուստի եւ զարմանալի չէ թէ երեւելի գիտուններէն շատերն որ տարիներով քննած են Աւետարաններն՝ համոզուած են թէ իրօք եւ բացարձակ հակասութիւն չկայ անոնց մէջ, եւ թէ, եթէ աւելի ընդարձակ տեղեկութիւն ունենայինք Աւետարաններուն մէջ պատմուած դէպքերուն վրայ, հակասութիւն պիտի չգտնէինք անոնց մէջ ։ Այսպէս Աւետարանք զիրար չեն հերքեր իբրեւ հակասական, այլ ընդհակառակն, իրենց էական համաձայնութեամբն եւ պատահական տարբերութիւններովը զօրաւոր կերպով կը հաստատեն իրարու արժանահաւատութիւնը ։



# ԳԼՈՒԽ Ժ.

## ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒՆ ԱՐԺԱՆԱՀԱՒԱՏՈՒԹԵԱՆԸ ԴԷՄ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԿԱ՞Ն

(Շարունակութիւն)

*Բ. Պատմութիւնը կը հերքէ՞ Աստուածաշունչը ։*

*Մասնաւորապէս չորս Աւետարաններուն արժանահաւատութեանը վրայ կը խօսինք. բայց որովհետեւ Աւետարանները Հին կտակարանին գիրքերուն արժանահաւատութեանը վրայ հիմնուած են, հարկ է քննել թէ արդեօք պատմութիւնը կը հերքէ՞ Աստուածաշունչին որեւիցէ մէկ գիրքը ։*

*Այս նիւթին վրայ ըստ արժանւոյն խօսելու համար ամբողջ հատոր մը գիրք գրել պէտք էր, բայց մեր գիրքին սեղմութեան պատճառաւ հարկ է որ քանի մը էջի մէջ միայն բովանդակենք մեր խօսքը ։*

*Աստուածաշունչը բուն պատմութիւն չէ, քանզի անոր հեղինակաց գլխաւոր նպատակը աշխարհական պատմութիւն մը, կամ որեւիցէ ժամանակի մը ամբողջ պատմութիւնը, եւ կամ որեւիցէ ազգի մը քաղաքական պատմութիւնը գրել չէր, բայց եւ այնպէս Աստուածաշունչն իրաւամբ կը կոչուի պատմական գիրք, քանզի աստուածային Փրկչի մը միջոցաւ մարդկային ազգին մեղքէ ազատուելուն պատմութիւնն է, եւ մինչ կը նկարագրէ այս փրկագործութիւնը, կը պատմէ շատ պատմական դէպքեր որ այս փրկա-*

գործութեան վերաբերութիւն ունին ։ Աստուածաշունչը համառօտիւ կը նկարագրէ աշխարհիս եւ մարդկային ազգին ստեղծումը , եւ առաջին դարուց համառօտ մէկ պատմութիւնը կ՚ընէ ։ Կը պարունակէ մանաւոր գործերու համար Աստուածմէ ընտրուած այլեւայլ անձանց համառօտ կենսագրութիւնը եւ Աստուծոյ ընտրեալ ժողովրդեան , Հրէից , պատմութիւնը , եւ շատ բան կը յիշէ ժամանակակից ազգերու նկատմամբ , այսինքն կը յիշէ անոնց թագաւորներէն ոմանց անուններն եւ յատկութիւնները , եւ այն թագաւորաց պատերազմներէն ոմանք ։ Կը պատմէ Աստուածորդւոյն մարդեղութիւնն , անոր հրաշալի գործերը , երեւելի վարդապետութիւններն եւ անոր յարութիւնը ։ Բաց այս բաներէն , յաճախ յիշատակութիւններ կ՚ընէ ժամանակակից դէպքերու եւ Հրէից եւ այլ ազգաց կրօնական եւ քաղաքական վիճակին վրայ ։ Կը նկարագրէ թէ Քրիստոնէական եկեղեցին առաջին անգամ ինչպէս հաստատուեցաւ , եւ յետոյ ինչպէս տարածուեցաւ ։

Արդարեւ Քրիստոնէութիւնը միւս բոլոր կրօնքներէն կը տարբերի այսու որ հիմնուած է իրօք պատմական դէպքերու վրայ . մինչ բանին Քրիստոնէութեան սրբազան գիրքերը մեծաւ մասամբ պատմական գիրքեր են ։ Ուստի , կարող ենք պատմական հաւաստութեան ենթարկել զնոսա , եւ քննել թէ արդեօք պատմական հաւաստութիւնները հերքած են թէ ոչ Հին եւ Նոր կտակարաններուն մէջ գտնուած պատմական բազմաթիւ տեղեկութիւններէն մին ։

1 . Պատմութիւնը կը հերքէ՞ Հին կտակարանը ։

ա . Հին կտակարանը , ինչպէս ըսինք , համառօ-

տիւ կը նկարագրէ աշխարհիս եւ մարդկային ազգին ստեղծումը։ Միթէ պատմութիւնը կը հերքէ՞ այս նկարագիրը։ Ոչ, քանզի այն դէպքերուն վերաբերեալ ուրիշ պատմական նկարագրութիւններ բնաւ չկան։ Այն դէպքերը տեղի ունեցան նախապատմական ժամանակի մէջ, եւ անոնց վրայ ուրիշ տեղեկութիւն չունինք բաց Աստուածաշունչի մէջ գտնուած տեղեկութիւններէն, ուստի եւ չկայ պատմական ապացոյց Աստուածաշունչի նկարագիրը հերքելու։ Եթէ կայ որեւիցէ ապացոյց որ կարող է հերքել աշխարհիս եւ մարդկային ազգին ստեղծման նկատմամբ Հին կտակարանին մէջ գտնուած նկարագիրը, այն ապացոյցը ոչ պատմական այլ ուրիշ տեսակ ըլլալու է։

բ. Մովսէսի հնգամատեանին մէջ համառօտ տեղեկութիւն մը կայ մարդկային ազգին նախնական ժամանակին վրայ։ Կա՞յ ապացոյց հերքելու ինչ որ գրուած է զայսմանէ այն գիրքերուն մէջ։

Այն նախնական ժամանակին վրայ շատ քիչ պատմական տեղեկութիւն կայ։ Այն շատ հին ժամանակին վրայ ամենէն արժանահաւատ տեղեկութիւնք զոր ունինք՝ առնուած են քաղաքակրթութեան ամենէն հին կեդրոններէն, այսինքն Եգիպտոսէ եւ Բաբելոնէ, եւ կը գտնուին Եգիպտացի պատմագրին Մանեթոնի եւ Քաղդէացի պատմիչին Բերոսոսի գրուածոց, քանի մը Եգիպտական եւ Բաբելոնական արձանագրութեանց եւ քանի մը կարեւոր ձեռագիրներու մէջ որ պապիրոսի վրայ գրուած են։

Երբ կը բաղդատենք Մովսէսի գիրքերն այն շատ հին գրուածոց հետ, միթէ անոնց մէջ որեւիցէ անհամաձայնութիւն կը գտնե՞նք։ Առաջին տեսու-

թեամբ անոնց մէջտեղ ժամանակագրական մեծ տարբերութիւն կը նշմարուի ։ Մանեթոնի ժամանակագրութիւնը կը պարունակէ 30,000 տարուան ժամանակ եւ Բերոսոսի ժամանակագրութիւնը կը պարունակէ 460,000 տարի ։ Բայց երբ աւելի ուշադրութեամբ կը քննենք այն ժամանակագրութիւնները, կը գտնենք որ երկուքն ալ երկերկու մաս կը բաժնուին. առաջինը կը պարունակէ այն ժամանակը երբ, ըստ հեթանոսական կարծեաց, դիք, կիսադիք եւ ոգիներ կը տիրէին երկրիս վրայ, իւրաքանչիւրը 60 էն մինչեւ 600 տարի, եւ յայտնի է թէ այս ժամանակին առասպելական կամ դիցաբանական է. երկրորդ մասը միայն, որ կը պարունակէ այն ժամանակը երբ մարդիկ սկսան տիրել երկրի վրայ, պատմական է ։ Եթէ այս ժամանակագրութիւններէն դուրս հանենք ինչ որ յայտնապէս առասպելական է, մնացեալ մասը շատ աղէկ կը համաձայնի Մովսէսի գրոց ժամանակագրութեան հետ ։ Անատեն Բաբելոնեան ժամանակագրութիւնը նախ քան Քրիստոս 2,458 տարիէն աւելի հնութիւն չի պարունակեր. եւ Եգիպտական ժամանակագրութիւնը, ըստ պատմաբանից ոմանց, նախ քան Քրիստոնէական թուականն 2,660 էն անդին չանցնիր ։

Հռչակաւոր հնախոյզը Պունսըն կ'ըսէ թէ Ասիական որեւիցէ երկրի մը ազգային ժամանակագրական պատմութիւնը նախ քան Քրիստոնէական թուականն 4,000 տարին անդին չանցնիր, թէեւ ամէն տեղ նախորդ ժամանակի մը[1] ցեղերու եւ քաղաք-

(1) Չինացիք, Հնդկաց պէս, իրենց ժամանակագրութիւնը քանի մը հարիւր հազար տարիներ ետ կը տանին. բայց անոնց բուն ազգային

ներու հետքեր կը տեսնուին։ Ըստ հաշուոյ յիշեալ հնախուզին երկու մեծ բուրգերը չինուեցան նախ քան զՔրիստոնէական Թուականին 2,645 եւ 2,589 տարիներուն մէջտեղ։

Անկէ յայտնի է թէ մեծ տարբերութիւն չկայ Սուրբ գրոց ժամանակագրութեան եւ միջեւ ցարդ պահուած ամենէն հին ժամանակագրութեանց մէջ-տեղ, ուստի եւ պատմական ապացոյց չկայ Սուրբ գրոց ժամանակագրութիւնը հերքելու։

Մարդկային ազգին հնութեան խնդրոյն գալով, դժուար է այս խնդիրը լուծել Հին կտակարանին ազգաբանական ցանկերով, վասնզի այն ցանկերը չինուած են ոչ տարիներու թիւը ցուցնելու կամ ամէն սերունդ կարգով յիշելու համար, այլ ամէն ցեղի ուստի սերիլը ցուցնելու համար։ Մեկնիչք իրարմէ շատ կը տարբերին այն ազգաբանութեանց

---

պատմութիւնը կը սկսի միայն իբր 2,000 տարի առաջ նախ քան զՔրիստոս։ Րէմիւզա Ասիոյ վրայ գրած գիրքին մէջ կ'ըսէ. «Չինաց արժանահաւատ պատմութիւնը նախ քան զՔրիստոնէական Թուականն 22 րդ դար միայն կը հասնի, եւ քանի մ'աւանդութիւններ Թոյլ կուտան մեզ չորս դար եւս աւելի առաջ տանելով հասցնել մինչեւ 2,637 Թուականն նախ քան զՔրիստոս» (Rémusat, Nouveaux Mélanges Asiatiques, Հատ. Ա., էջ 65)։ Բաղդատէ նաեւ Մայլեայի Histoire générale de la Chine. «Ընդհանուր պատմութիւն Չինաստանի»։ Օքսֆորդի համալսարանին մէջ հին պատմութեան դասատուն Րօլինսըն կ'ըսէ. «Ես տարակուսանօք կը նայիմ նախ քան զՔրիստոնէական Թուականն 550 տարիէն առաջ գրուած Չինական բոլոր պատմութեան վրայ, եւ ինչպէս ընդհանուր ընդունուած է, յիշեալ Թուականին միայն կը սկսի ժամանակակից պատմութիւնը։ Բրոֆ. Րօլինսըն Չինաց աւանդութիւնները կ'անուանէ «անհանճար առասպել»։

մեկնութեանը մէջ։ (Տես Գլ. ԺԲ. ուր աւելի ընդարձակօրէն պիտի խօսուի այս նիւթին վրայ։)

Պէտք է դիտել նաեւ թէ վերոյիշեալ Քաղդէացի հեղինակին Բերոսոսի պատմութիւնն արարչագործութեան եւ Ջրհեղեղին վրայ կը հաստատէ Սուրբ գրոց նկարագրութիւնը։

Ծննդոց գիրքին տասներորդ գլխոյն մէջ պատմական համառօտ նկարագրութիւն մը կայ նախկին ազգաց, անոնց ազգային խնամութեան եւ մինչեւ տարածման մը անոնց աշխարհագրական դրից վրայ։ Զարմանալի է, կ'ըսէ Բրոֆ Րօլինսըն, թէ պատմական նոր հետազօտութիւնք ինչպէս զօրաւոր կերպով հաստատած են Սուրբ գրոց այն նկարագրութեան ճշդութիւնը. զոր օրինակ տասներորդ գլխոյն երկրորդ համարին մէջ ըսուած է. «Յաբեթին որդիքը՝ Գոմեր, Մագոգ, Մադա, Յաւան եւայլն։» Ասով յայտնի ցուցուած է ազգակցութեան կապը որ կայ ի մէջ Յաբեթեանց, Մադայի այսինքն Մարաց, Գոմերի այն է Կիմմերացւոց, եւ Յաւանայ կամ Յոնաց, համաձայն Գերմանացի բանասիրին Շլէկէլի, որ ցուցուց թէ Եւրոպայի Արիական կամ Հնդեւրոպական գլխաւոր ցեղերն իրարու համացեղ են։

Նաեւ Ծննդոց Ժ. գլխոյն 10 համարին մէջ ըսուած է թէ Բաբելոնի նախկին բնակիչք Քուշեան էին։ Մինչեւ մօտ ատեններս եւրոպացի պատմաբաններէն ոմանք կը մերժէին Սուրբ գրոց այս խօսքը, բայց անոր ստուգութիւնը կատարելապէս հաստատուած է Բաբելոնի հին արձանագրութեանց ընթերցմամբ։ Առաջ Պունսըն ըսած էր թէ բաց Ափրիկէէ ուրիշ տեղ Քուշեանք չկային, եւ թէ «Ասիացի Քուշեանք Սուրբ

գրոց մեկնիչներուն երեւակայութեան մէջ միայն կային։» Սակայն մօտերս գտնուած ապացոյցը թէ Բաբելոնի նախկին բնակիչք Քուշեան էին, այնպէս զօրաւոր է որ ամենէն երեւելի պատմաբաններէն մին, Մ. Լէնորման, իր գրուածոց մէջ կ'ընդունի թէ Բաբելոնի մէջ Սեմեան պետութիւնը հաստատուելէն քանի մը դար առաջ Քուշեան պետութիւն մը կար։

Սըր Հէնրի Ռօլինսըն որ իր կեանքն անցուցած է հին ազգաց պատմութիւնը քննելով, կ'ըսէ. «Ծննդոց գրքին տասներորդ գլուխն ամենէն հին պատմական հատուածն է եւ ազգաց նախնական համացեղութեան վրայ ամենէն աւելի արժանահաւատ վկայութիւնն է։» Նոյն հեղինակը կ'ըսէ նաեւ. «Եթէ մէկդի դնենք Աստուածաշունչը, եւ միայն մեր հետազօտութեանց հետեւինք, պիտի համոզուինք թէ Սենաարի դաշտն է այն տեղն ուստի ցրուեցան երկրիս բոլոր ազգերը (Ծննդ. ԺԱ. 1—9)։ (1)

Բրոֆ. Ռօլինսըն, որ վերոյիշեալ անձին եղբայրն է, Մովսիսի հնգամատենին նկատմամբ կ'ըսէ. «Մովսիսի գրոց պատմութիւնը համաձայն է արդի պատմական հետազօտութեանց։ Ինչ որ այն գրոց մէջ ըսուած է տեղերու, ազգերու եւ լեզուներու վրայ՝ ճշմարիտ է. եւ որչափ աւելի հմուտ կ'ըլլանք այն հին դարերուն, այնչափ աւելի կը հաստատուի հնգամատենին ճշմարտութիւնը։» Իբր 40 կամ 50 տարի առաջ Գերմանացի գիտուններէն ոմանք ջանացին ցուցնել թէ ճիշդ չէ Եգիպտոսի այն նկարագը-

(1) Journal of Royal Asiatic Soc. Հտ. ԺԵ., Մաս Բ., էջ 232։

րութիւնը որ կը գտնուի Ծննդոց գիրքին վերջին մասին մէջ, բայց Պերլինի համալսարանին դասատուներէն մին, Հէնկսդէնպէրկ, կը հաստատէ հնգամատեանին մէջ Եգիպտոսի վրայ ըսուածներուն ստուգութիւնն, այնպէս որ անհաւատք իսկ չեն կրնար ժխտել։

գ. Սուրբ գրոց պատմական՝ երկրորդ մեծ ժամանակը կը ձգուի Մովսիսի մահուանէն մինչեւ Ռոբովամի թագաւորութիւնը, եւ այս ժամանակին վերաբերեալ պատմական տեղեկութիւնները կը գտնուին Դատաւորաց եւ Հռութայ գիրքերուն մէջ, եւ Թագաւորաց եւ Մնացորդաց գիրքերուն առաջին գլուխներուն մէջ։

Բրոֆ. Րոլինսըն այն գիրքերուն պատմական արժանահաւատութեանը համար կ՚ըսէ. «Չկայ արժանահաւատ պատմութիւն մը որ հերքէ այն գիրքերուն մէջ գտնուած տեղեկութիւններէն որեւիցէ բան մը։ Ընդհակառակն, անոնց արժանահաւատութիւնը կը հաստատեն Ասորեստանի արձանագրութիւններն, Ասորեստանի եւ Պարսկաստանի պալատները, Փիւնիկեցւոց պատմութիւնը եւ դրամները եւ Յունաց հին երգերը։ Ոմանք կարծեցին թէ Հին կտակարանին գիրքերուն արժանահաւատութիւնը հերքող ապացոյցներ գտան. բայց աւելի ճիշդ պատմական հետազօտութիւնները միշտ ցուցուցին թէ այն առարկութիւններն առողջ հիման վրայ չէին կենար։»

դ. Սուրբ գրոց պատմական երրորդ մեծ ժամանակը կը ձգուի Յերոբովամի ապստամբութենէն մինչեւ ի կործանումն Երուսաղեմի յամին իննեւտասաներորդի Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց։

*Այս ժամանակը որ իբր չորս դարէ կը բաղկանայ՝ շատ կարեւոր է, քանզի այս միջոցին տեղի ունեցան Ասորեստանեայց թագաւորութեան կանգնումն եւ անկումը, Մարաստանի եւ Բաբելոնի յանկարծ բարգաւաճումը, Փիւնիկեցւոց քաղաքաց ծաղկիլը, Յունաստանի մէջ Աթէնքի եւ Սպարտայի գերազանցութեան ամբառնալը, Կարքեդոնի եւ Հռոմի հիմնուիլը, եւ Յունական եւ Փիւնիկեան գաղթականութեանց միջոցաւ քաղաքակրթութեան ծաւալումը։*

*Այս ժամանակին վրայ անընդհատ պատմութիւն չկայ բաց անկէ որ կը գտնուի Սուրբ գրոց մէջ։ Սակայն Բերոսոսի եւ Մանեթոնի գրուածներէն կան քաղուածներ որ կը պարունակեն Բաբելոնի եւ Եգիպտոսի այն ժամանակուան տարեգրութիւնները, Տիւրացւոց պատմութեան քանի մը մասերը, եւ այն ատեն Ասորեստանի վրայ իշխող մեծ թագաւորաց ժամանակակից պատմութիւնը, նաեւ քանի մը պատմական տեղեկութիւններ Եգիպտական յիշատակարաններէ։ Բոլոր այս պատմական աղբիւրները խնամով քննուած են, եւ Բրոֆ. Րոլինսըն կը վկայէ թէ ամէնքն ալ կը լուսաւորեն եւ կը հաստատեն Սուրբ գիրքը։ Քանի մը անկարեւոր տարբերութիւններ միայն կան յիշեալ պատմական տեղեկութեանց եւ Սուրբ գրոց մէջտեղ, բայց այս տարբերութեանց մեծագոյն մասը ժամանակի կը վերաբերի. գլխաւոր դէպքերուն վրայ ամէնքն ալ կատարելապէս համաձայն են։ Անուանի Գերմանացի պատմիչը Նիպուր կ'ըսէ. «Զարմանալի համաձայնութիւն կայ ուրիշ հին պատմա-*

կան գրուածոց եւ Աստուածաշունչին մէջտեղ ։ [1]

ե . Սուրբ գրոց պատմական վերջին մեծ ժամանակը կը պարունակէ Բաբելոնի գերութիւնն եւ Հրէից դարձն իրենց հայրենի երկիրը ։

Ոչ ոք ուրացած է Հրէից գերութենէ դարձը պատմող Եզրի եւ Նէեմիայի արժանահաւատութիւնը ։

Բաբելոնի գերութիւնը նկարագրուած է Դանիելի գրոց մէջ ։ Ոմանք կ'ըսեն թէ այս գիրքին մէջ պատմական շատ սխալներ կան , բայց պատմական ապացոյց չունին իրենց խօսքը հաստատելու ։ Այն գիրքին մէջ պատմուած գլխաւոր դէպքն է Բաբելոնի դերութիւնը զոր ոչ ոք կրնայ ուրանալ ։ Ասորեստանի յիշատակարաններն եւ Պարսից պատմութիւնը կը հաստատեն թէ այն ատեններն ամբողջ ժողովուրդներ շատ անգամ մէկ երկրէ ուրիշ երկիր գերի կը տարուէին ։ Յովսեպոս կը գրէ թէ Քաղդէացի պատմիչը Բերոսոս գրեց Հրէից գերութեան վրայ , եւ նոյն իսկ Հրեայք չէին պատմեր թէ գերի տարուեցան եթէ արդարեւ գերի տարուած չէին ։

Բոյս բարուց Նաբուգոդոնոսորայ, ջերմ դիցապաշտութիւն նորա, ամբարտաւանելն իւր մեծագործութիւններուն վրայ որ ի Բաբելոն, ինչպէս նաեւ աշխարհակալութիւնը , յիշուած են ի Բերոսոսէ եւ յԱբիւդենոսէ որ այս բաներն յիշելով՝ կը հաստատեն Դանիելի պատմութիւնը ։ Բերոսոս , Աղեքսանդր Բազմավէպ, Պտղոմէոս եւ Բաբելոնեան բեւեռագիրք, բոլորը միաբան ընդ Դանիելի կը հաստատեն թէ Նաբուգոդոնոսոր թագաւորեց 43 տարի ։ Ինչ որ

---

[1] Vorträge über Alte Geschichte. Հատ. Ա. էջ. 126 ։

Դանիէլ կը պատմէ՝ համաձայն է բոլոր արժանահաւատ տեղեկութեանց զոր ունինք այն ատենուան Բաբելոնի վրայ։ Քանի մը տարի առաջ ոմանք կ'ըսէին թէ Բաղտասարայ վրայով Դանիելի մէջ ըսուածները չինծու են եւ հակառակ Բերոսոսի պատմութեան որ կ'ըսէ թէ Բաբելոնի վերջին թագաւորին անունն էր Նաբոնադիոս, որ Բաբելոն չէր երբ այն քաղաքն առնուեցաւ Պարսիկներէն։ Ի՛նչքան դժուարին էր պատասխանել այս առարկութեան, քանզի Բաղտասարայ անունը յիշուած չէր ուրիշ պատմական գիրքի մէջ։ Բայց 1854 ին Սըր Հ. Րօլինսըն Միջագետաց մէջ իր խուզարկութեանց ատեն Մուղայիր քաղաքին մօտ գետնէն հանեց քանի մը մնացորդներ որ հաստատեցին թէ Բերոսոսի եւ թէ Դանիելի նկարագրութեան ճշդութիւնը։ Այս նոր գտնուած մնացորդներէն հասկցուեցաւ թէ արդարեւ Բաբելոնի վերջին թագաւորին անունն էր Նաբոնադիոս, բայց նա իր թագաւորութեան վերջին տարիներուն մէջ իրեն գահակից ըրաւ իւր որդին Պիլ-շար-ուզուր (Բաղ-տա-սար), եւ թագաւորական տիտղոս տուաւ անոր։ Ստոյգ է թէ Դանիելի գիրքին մէջ Բաղտասար որդի Նաբուգոդոնոսորայ կը կոչուի, բայց Սուրբ գրոց լեզուով որդի բառն յաճախ կը նշանակէ նաեւ թոռն, եւ շատ հաւանական է թէ, ինչպէս բանասէրք կը ցուցնեն, Նաբոնադիոս էր փեսայ Նաբուգոդոնոսորայ։ Դանիէլ կը պատմէ թէ խնջոյքի մը ատեն Բաբելոն անակնկալ կերպով եւ յանկարծ ինկաւ Մարաց եւ Պարսից ձեռքը, եւ այնպէս Բաբելոնի տէրութիւնն անցաւ Մարաց։ Այս դէպքին վրայ զարմանալի համաձայ-

նութիւն կայ ի մէջ Դանիէլի եւ արտաքին պատմութեան ։

Հարկ չենք համարիր աւելի առաջ տանել մեր քննութիւններն Հին կտակարանին արժանահաւատութիւնը ցուցնելու, եւ կը բովանդակենք մեր խօսքը Բրոֆ. Ռոլինսընի հետեւեալ վկայութեամբ ։

«Բոլոր կարեւոր եւ արժանահաւատ վկայութիւնները որ մեզ հասած են ուրիշ աղբիւրներէ՝ կը հաստատեն Հին կտակարանին պատմական ճշմարտութիւնը։ Ասորեստանցւոց, Բաբելացւոց, Եգիպտացւոց, Պարսից եւ Փիւնիկեցւոց ժամանակէն մնացեալ հին գրուածներ, իրենց պատմութիւնները հին ժամանակակից տարեգիրներէ քաղող պատմաբանք, ինչպէս Մանեթոն, Բերոսոս, Դիոդորոս, նաեւ վկայութիւնք ականատես անձանց արեւելեան ազգերու բարուց եւ սովորութեանց վրայ, ամէնքը միաբան կը լուսաւորեն եւ կը հաստատեն Հին կտակարանին պատմական ճշդութիւնը։» Ուստի հետեւցնելու ենք թէ պատմութիւնը ոչ միայն չի հերքեր, այլեւ զօրաւոր կերպով կը հաստատէ Սուրբ գրոց արժանահաւատութիւնը ։

2. Պատմութիւնը կը հերքէ՞ Նոր կտակարանը ։

Նոր կտակարանը Հին կտակարանէն այնու կը տարբերի որ ոչ թէ ժողովրդեան մը այլ անձի մը սրբազան պատմութիւնն է ։ Նոր կտակարանը գլխաւորապէս տեղեկութիւն կուտայ Յիսուս Քրիստոսի, անոր ծննդեան, վարդապետութեանց, հրաշքներուն, մահուան եւ յարութեան վրայ. կը պատմէ թէ ինչպէս հիմնուեցաւ Քրիստոնէական եկեղեցին, եւ տարածուեցաւ Քրիստոսի աշակերտաց միջոցաւ.

կը մեկնէ եւ կը բացատրէ Յիսուսի վարդապետութիւնները, եւ վերջին գիրքին մէջ կը գուշակէ Քրիստոսի Թագաւորութեան հանդերձեալ վիճակը. ուստի եւ շատ չի խօսիր քաղաքական դէպքերու վրայ։

Որովհետեւ Աւետարանը գլխաւորապէս Քրիստոսի կենսագրութիւնն է, եւ Քրիստոս մերժուեցաւ Հրեաներէն, հաւանական չէր որ Հրէից եւ հեթանոսաց ժամանակակից պատմագիրները շատ բան գրէին անոր վրայ։ Եւ որովհետեւ Նոր կտակարանը գրողներն եւ անոնց ժամանակակից հեթանոս եւ Հրեայ պատմիչք շատ բան գրած չեն այս նիւթին վրայ, չեն կրնար մեծաւ մասամբ ոչ հերքել եւ ոչ հաստատել իրարու գրուածները։

Սակայն աւետարանիչներն համառօտիւ կը յիշեն ժամանակակից քանի մը դէպքեր, եւ իրենց գրուածոց մէջ յաճախ ակնարկութիւններ կ'ընեն Պաղեստինու քաղաքական, ընկերական եւ կրօնական վիճակին, Հռոմէական պետութեան եւ անոր պաշտօնակալաց, նաեւ դրացի ազգաց վրայ։ Իսկ Հռոմայեցի եւ Հրեայ մատենագիրներէն ոմանք կը գրեն ինչ ինչ Քրիստոսի եւ Քրիստոնէական եկեղեցւոյ վրայ։

Արդ, քննենք թէ Հռոմայեցի եւ Հրեայ մատենագիրք կը հերքեն Նոր կտակարանին մէջ գտնուած պատմական տեղեկութիւնները. Նախ, դիտել արժան է թէ Նոր կտակարանը մէկ գիրք չէ, եւ ոչ մի մատենագրի գրութիւն, այլ Նոր կտակարանը կը բաղկանայ եօթն կամ ութ տարբեր անձերէ եւ տարբեր ժամանակներ ու տարբեր պարագաներու ներքեւ գրուած 27 գիրքէ։ Ուրեմն այս գիրքերուն

վկայութիւնը, ոչ մէկ անձի միայն, այլ շատ անձերու միանգամայն վկայութիւն է, եւ բոլոր այս վկաները, Պօղոս, Պետրոս, Յակոբոս, Մատթէոս, Մարկոս, Ղուկաս եւ Յովհաննէս, կը հաստատեն իրարու վկայութիւնը ։

Սակայն պարտինք քննել թէ արդեօք կա՞յ պատմական ապացոյց որ կը հերքէ անոնց արժանահաւատութիւնը ։

ա. Յիսուս Քրիստոսի ատեն Հրէաստանի քաղաքական վիճակը տարօրինակ եւ խառնակ էր։ Հրէաստան հպատակած էր Հռոմայ ոչ միայն Հռոմէական զօրաց միջոցաւ, այլեւ իր բնակիչներէն շատերուն գործակցութեամբը, եւ այս պատճառաւ Հռոմէական կառավարութիւնը շատ արտօնութիւններ տուած էր Հրէից։ Հրէաստան մասամբ մը հպատակ էր Հռոմայ, եւ մասամբ մը անկախ էր։ Երկու կերպ վարչութիւն կար հոն, Հռոմէական եւ Հրէական. տուրքերն երկու եղանակաւ կը դրուէին եւ կը հաւաքուէին. արդարութիւնն երկու եղանակաւ կը մատակարարուէր, զինուորական ծառայութիւնն անգամ երբեմն երկու կերպ էր։ Յովսեպոս եւ ուրիշ մատենագիրք կ'ըսեն նաեւ թէ յաճախ փոփոխութիւններ կ'ըլլային քաղաքական վարչութեան մէջ, եւ թէ քաղաքական կարգերն եւ կանոններն այնպէս խառն եւ շփոթ էին որ նոյն իսկ Տակիտոս երբեմն կը սխալի՝ երբ կը խօսի անոնց վրայ ։ Սակայն Նոր կտակարանին մատենագիրները քաղաքական գործոց նկատմամբ սխալ բան մը յիշած չեն ։ Շատ անգամ կը յիշեն յաճախ փոփոխութիւնները որ երկրին վարչութեան մէջ տեղի ունեցան (Մատթ.

Բ. 1, 22, ԺԴ. 1, Ղուկ. Ա. 5, Գ. 1, ԺԳ. 1, ԻԳ. 24), երկու կերպ վարչութիւնը (Մատթ. ԻԷ. 1, 2), երկու տեսակ տուրքը (Մատթ. ԺԷ. 23, ԻԲ. 17), երկու կերպ դատարանները, պատժելու երկու կերպը, եւ զինուորական երկու տեսակ ծառայութիւնները (Յովհ. ԺԸ. 28, 31, Մատթ. ԻԷ. 64, 65), եւ այս ամենայն բոլորովին համաձայն է ուրիշ պատմական տեղեկութեանց զոր ունինք Հրէաստանի այն ատենուան քաղաքական գործոց վրայ։

Յովսեպոս եւ այլ մատենագիրք կը նկարագրեն այն ատենուան Հրէից ոգին, անոնց զգացումներն առ Հռոմայեցիս եւ առ դրացի ազգս, անոնց ներքին բաժանումներն եւ երկպառակութիւնները, եւ կառավարչաց ընդհանուր կաշառակերութիւնը, եւ այս ամէնը ճշդիւ համաձայն է Նոր կտակարանին մէջ գրուածներուն։

Ինչ որ գրուած է Նոր կտակարանին մէջ Հրէից, Յունաց եւ Հռոմայեցւոց վրայ՝ ճշդիւ համաձայն է ուրիշ պատմական տեղեկութեանց զոր անոնց վրայ ունինք։ Աւետարանիչք յանուանէ կը յիշեն Հռոմայեցի կայսրներն, Օգոստոս, Տիբերիոս, Կղօդիոս, նաեւ Հրէից թագաւորներն եւ իշխաններն, Հերովդէս Մեծ, Արքեղայոս, Հերովդէս Չորրորդապետ, Փիլիպոս Չորրորդապետ, Հերովդէս Ագրիպպաս առաջին եւ Հերովդէս Ագրիպպաս երկրորդ, նաեւ Հռոմայեցի կուսակալները, Կիւրենիոս, Պոնտացի Պիղատոս, Սերգիոս Պօղոս, Գաղիոն, Փեստոս եւ Փելիքս։ Ուրիշ ապացոյցներ կան որ կը հաստատեն թէ յիշեալ անձինք արդարեւ ապրեցան այն ատեն, եւ գտնուեցան այն պաշտօնին եւ աստիճանին մէջ զոր աւե-

տարանիչք կ'ընծայեն անոնց, եւ անոնց գործոց վրայ Աւետարաններուն մէջ տրուած տեղեկութիւններէն եւ ոչ մին հակառակ է արտաքին պատմութեան։

Նաեւ կը յիշեցնենք մեր ընթերցողաց թէ Յովսեպոս, Տակիտոս եւ Պլինիոս, ինչպէս արդէն ցուցուցինք ութերորդ գլխոյն մէջ, կը հաստատեն Աւետարաններուն պատմական արժանահաւատութիւնը։

Բայց չկան բնաւ պատմական վկայութիւններ որ կը հերքեն Նոր կտակարանին արժանահաւատութիւնը։

Գիտուն անհաւատք երկու կամ երեք պատմական առարկութիւն միայն մէջ բերած են բոլոր Նոր կտակարանին դէմ, եւ այս առարկութիւններն, ըստ հմուտ հնագիտաց, հաստատ հիմ չունին։

Շդրաուս չընդունիր թէ Օգոստոս կայսր երբէք հրաման հանեց աշխարհագիր ընել ինչպէս կը պատմուի Ղուկաս Բ. 1 համարին մէջ, բայց որովհետեւ Հռոմէական հնութեանց ամենէն հմուտ խուզարկուն, Սաւինեի, կը հաստատէ թէ Օգոստոս կայսրն իրօք այնպիսի հրաման հանեց, կ'երեւի թէ Շդրաուսի առարկութիւնը բնաւ հիմ չունի։

Շդրաուս կ'ըսէ նաեւ թէ Ղուկասու Բ. 2 համարը պատմութեան հակառակ է, քանզի Կիւրենիոս Ասորւոց կուսակալ չէր Հռոմի շինութեան 758 երորդ տարիէն առաջ, որ գոնէ ութ տարի յետոյ է քան ըզծնունդն Քրիստոսի։ Սակայն Գերմանացի Մ. Զումբդ իր պատմական քննութիւններովը ցուցուց թէ շատ հաւանական է թէ Կիւրենիոս երկիցս կուսակալ եղաւ Ասորւոց։ Մ. Զումբդի խուզարկութիւններէն կ'երեւի թէ Կիւրենիոս առաջին անգամ կուսակալ

եղաւ Ասորւոց երկրին չորսէ մինչեւ մէկ տարի յառաջ քան զծնունդն Քրիստոսի, եւ այսպէս Ղուկասու պատմական ճշդութիւնը կը հաստատուի ։

Շդրաւս կ'ըսէ նաեւ թէ արտաքին պատմութիւնը կը հերքէ Ղուկասու Գ. 1 համարը, ուր գրուած է թէ Լիւսանիաս չորրորդապետ էր Տիբեր կայսեր հնգետասաներորդ տարին։ Շդրաւս կը ջանայ ցուցնել թէ Լիւսանիաս այն թուականէն 60 տարի առաջ մեռած էր, եւ կը պնդէ թէ անհնար է ցուցնել թէ նոյն անուամբ ուրիշ չորրորդապետ եղաւ յետ Լիւսանեայ։ Բայց եւ այնպէս անհնարին համարեալն ի Շդրաւսէ հիմա հաստատուեցաւ ։ Մօտերս Պաալպէքի մօտ գտնուեցաւ հին արձանագրութիւն մը որ կը ցուցնէ թէ Լիւսանիաս անուամբ երկու անձինք կային, հայր եւ որդի, ուստի եւ շատ հաւանական է թէ որդին յաջորդեց հօրը իշխանութեանը ։ (1)

Բրոֆ. Ռոպինսըն կ'ըսէ. « Նոր կտակարանին արժանահաւատութեանը դէմ բաց ի վերոյիշեալ առարկութիւններէն ուշադրութեան արժանի ուրիշ պատմական առարկութիւն չկայ. » եւ կը յաւելու թէ անհաւատք մանրախոյզ դիտողութեամբ քննած են Աւետարաններուն եւ Գործոց առաքելոց մէջ յիշուած ամէն դէպք, եւ նախանձախնդրութեամբ ջանացած են սխալ գտնել անոնց մէջ, բայց բոլոր այս խիստ հետազօտութիւնք ուրիշ արդիւնք ունեցած չեն եթէ ոչ հաստատել Աւետարաններուն ոչ միայն գլխաւոր պատմութիւններուն, այլեւ անոնց մէջ յիշուած մանր մանր պարագաներուն ստուգութիւնը։

(1) Krafft, « Topografie Ierusalems », Inscription 29.

Անհաւատք կրցած չեն ցուցնել թէ աւետարանիչք որեւիցէ պատմական սխալման մէջ ինկան։ Եթէ անցեալ դէպքերուն հարեւանցի քննութիւնը եւ անկատար տեղեկութիւնը երբեք կարծել տուին մարդոց թէ սխալ կար Աւետարաններուն պատմութեան մէջ, աւելի ճիշդ հետազօտութիւնք միշտ հաստատեցին այն սրբազան գրոց ճշդութիւնը, եւ հակառակորդաց տգիտութիւնը խայտառակեցին։ Նոր կտակարանին պատմական արժանահաւատութիւնը բոլոր պատմագէտ քննչաց առջեւ հաստատուած է։

Մինչ նոյն իսկ պատմութեան դատաստանք կը հաստատեն Սուրբ գրոց պատմական ճշդութիւնն, ով կրնայ ըսել թէ պատմութիւնը կը հերքէ Սուրբ գրոց արժանահաւատութիւնը։



# ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒՆ ԱՐԺԱՆԱՀԱՒԱՏՈՒԹԵԱՆԸ ԴԷՄ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԿԱ՞Ն

(Շարունակութիւն)

Գ. Գիտութիւնը կը հերքէ՞ Սուրբ Գիրքը :

*Ի՞նչ է գիտութիւն : Բանի մը վրայ ծանօթութիւններ երբ դրութեան կը վերածուին՝ գիտութիւն կ'ըլլան : Առանց գիտութեան ծանօթութիւն կ'ըլլայ, բայց առանց ծանօթութեան գիտութիւն չըլլար : Ամէն ճշմարիտ գիտութիւն կը կազմուի ոչ թէ մարդոց կարծիքներէն, այլ գոյող իրաց վրայ գիտցուած ստոյգ եւ ապացուցեալ վկայութիւններէ : Բանի մը վրայ կրնանք կարծիք կամ ենթադրութիւններ ընել, բայց ասոնք եթէ յայտնի եւ ծանօթ իրաց վրայ հիմնուած չեն, ճշմարիտ գիտութիւն չեն կազմեր : Գիտուն մարդը կրնայ իր մտքին մէջ կարծել թէ այսինչ բանն այսպէս կամ այնպէս է, բայց այս վերացեալ մտածութիւնները գիտութիւն չեն : Այսպիսի մտածութիւններ կրնան առաջնորդել ճշմարիտ գիտութեան եւ կամ անկէ հեռու տանել : Ամէն ճշմարիտ գիտութիւն հիմնեալ է ճիշդ դիտողութեանց եւ ստոյգ տեղեկութեանց վրայ, եւ պարտի ի նպաստ իւր ունենալ բաւական ապացոյցներ :*

*Գիտութեան նպատակն է մեկնել, որչափ հնար*

է , ամէն իր եւ ամէն երեւոյթ , ուստի եւ նիւթական աշխարհի իրաց կամ երեւոյթներուն սահմանին մէջ փակուած չէ գիտութիւնը ։ Սխալ է կարծել թէ բաց ի բնական կոչուած գիտութիւններէն ուրիշ գիտութիւններ չկան ։ Ամէն տեսակ երեւոյթ կամ իր առարկայ է գիտութեան, ուստի եւ գիտութեան այնչափ ճիւղեր կրնան ըլլալ որչափ իրք եւ երեւոյթք կան որ քննութեան տակ կրնան իյնալ ։ Բայց եւ այնպէս գիտութիւնք ընդհանրապէս չորս ընդհանուր դաս կը բաժնուին ։

ա. Նիւթական փիլիսոփայութիւն , որ իրեն առարկայ ունի նիւթական աշխարհս ։ Նիւթական աշխարհի երեւոյթները կը քննէ եւ կը գիտէ , եւ անոնց միջոցաւ երեւան կը հանէ այն օրէնքներն որոց հպատակ է նիւթական աշխարհս ։ Այս գիտութիւնը երբեմն բնական փիլիսոփայութիւն ալ կը կոչուի, բայց աւելի յարմար է կոչել զայն նիւթական գիտութիւն, զի բնութիւնն աւելի բան կը պարունակէ քան նիւթական աշխարհը։ Ուրեմն , նիւթական փիլիսոփայութիւնը նիւթական աշխարհի օրինաց եւ երեւոյթներուն ճանաչումն է ։

բ. Իմացական փիլիսոփայութիւն , որ եւ մտաւորական փիլիսոփայութիւն կը կոչուի ։ Այս գիտութիւնն իրեն քննութեան առարկայ ունի մտաւորական աշխարհի գործողութիւններն եւ երեւոյթները որ այնպէս իրական եւ բաղդատական են ինչպէս բնական աշխարհի երեւոյթները , եւ այս գործողութիւններն եւ երեւոյթները քննելով երեւան կը հանէ այն օրէնքներն որոց հպատակ է մարդկային միտքը ։ Ապա ուրեմն , իմացական փիլիսոփայութիւնը ճանաչումն է մարդկային մտաց ։

գ. Բարոյական փիլիսոփայութիւն, որ եւ երբեմն կը կոչուի բարոյական փիլիսոփայութիւն։ Այս գիտութիւնն իրեն առարկայ ունի բարոյական աշխարհը, եւ կը քննէ մարդուս բարոյական բնութիւնը եւ այն հիմնական բարոյական օրէնքներն որոց ներքեւ կը գտնուի մարդ։ Կը քննէ այն յարաբերութիւնները զոր ունի մարդ Աստուծոյ եւ իր նմանեաց հետ, եւ այս յարաբերութիւններէն կը սորվի թէ ինչ են մարդուս պարտիքը։ Այսպէս ուրեմն, բարոյական փիլիսոփայութիւնը թարգման է բարոյական աշխարհին։

դ. Աստուածային փիլիսոփայութիւն, որ եւ երբեմն աստուածաբանութիւն կը կոչուի։ Այս գիտութիւնը կը քննէ Աստուծոյ բոլոր յայտնութիւնները, եւ, որչափ հնար է, անոնցմէ կը հետեւցնէ թէ ինչ է աստուածային բնութիւնն եւ ինչ են աստուածային ստորոգելիք։ Որովհետեւ Սուրբ գիրքն է գլխաւոր աղբիւր այն ամենայն տեղեկութեանց որոց վրայ հաստատուած է այս գիտութիւնը, աստուածաբանութիւնը կրնայ կոչուիլ թարգման Սուրբ գրոց։

Մեր որոշելու գլխաւոր եւ հիմնական խնդիրն այն չէ թէ վերոյիշեալ չորս թարգմանները, այսինքն գիտութիւնները, հակասական են իրարու, քանզի բոլորն ալ մարդկային, ուստի եւ սխալական են, այլ խնդիրը սա է թէ բուն իրերը, որոնց թարգման են միայն գիտութիւնք, են հակասական իրարու։ Այսինքն, բնական երեւոյթներն եւ անոնց օրէնքները հակառակ են Սուրբ գրոց վարդապետութեանցը։

1. Մարդկային մտաց փիլիսոփայութիւնը կամ մտաւորական փիլիսոփայութիւնը կը հերքէ՞ Սուրբ գիրքը։

Նախ թողլով քննել թէ բնական գիտութիւնը կը

հերքէ կամ ոչ Սուրբ գիրքը, քննենք նախ թէ մարդկային մտաց կազմութեան եւ օրէնքներուն ուղիղ թարգմանութիւնը, այսինքն ճշմարիտ իմացական փիլիսոփայութիւնը կը հերքէ՞ Սուրբ գիրքը։

Իմացական փիլիսոփայութիւնն ինչպէս կրնայ հերքել Սուրբ գիրքը։ Եթէ Սուրբ գրոց եւ իմացական փիլիսոփայութեան առարկաները մի եւ նոյն ըլլային, եւ երկուքն ալ միեւնոյն նիւթին վրայ խօսէին, կրնար կարծուիլ թէ անոնց վարդապետութիւնները կրնային իրարու հակառակ ըլլալ։ Բայց այսպէս չէ բանը· Սուրբ գիրք իմացական փիլիսոփայութիւն չէ, եւ իմացական փիլիսոփաներուն կարծիքներն եւ ենթադրութիւնները ոչ կ'ընդունի եւ ոչ կը մերժէ։ Սուրբ գիրք մարդկային միտքը չի լուծեր իր մասերուն, անոր կարողութիւնները դաս դաս չի բաժներ, ոչ ալ կը սահմանէ այն կարողութեանց գործողութիւններուն օրէնքները, ինչպէս որ կ'ընէ իմացական փիլիսոփայութիւնը։ Սուրբ գիրք կ'ըսէ միայն թէ մարդ ստեղծուեցաւ իմացական եւ բարոյական բնութեամբ, թէ այս բնութիւնն ապականեցաւ մեղօք, եւ թէ մեղքէն ուրիշ կերպով ազատութիւն չկայ եթէ ոչ աստուածային Փրկչի մը միջոցաւ։ Իմացական փիլիսոփայութիւնն ինչպէս կրնայ մերժել Սուրբ գրոց այս բարոյական եւ հոգեւոր վարդապետութիւնները· Իմացական փիլիսոփայութիւնն իրեն առարկայ ունի տեսակ մը խնդիրներ, Սուրբ գիրքն իրեն առարկայ ունի ուրիշ տեսակ մը խնդիրներ։ Ապա ինչպէս կրնան այս երկուքն հակառակ ըլլալ իրարու։ Այս բանը մէկ կերպով միայն կարելի է։

Որովհետեւ իմացական փիլիսոփայութեան առարկան մարդկային մտաց բնութիւնն է, եթէ այս գիտութիւնը կարենար ցուցնել թէ ինչ բաներ որ Սուրբ գիրք կը սորվեցնէ՝ այնպէս հակառակ են մարդկային մտաց բնութեանը որ զանոնք ընդունելն անհնար է, անատեն հակառակ եղած եւ հերքած կ'ըլլար Սուրբ գիրքը։ Եթէ իմացական փիլիսոփայութիւնը կարենար ցուցնել թէ մարդ այնպէս ստեղծուեցաւ, եւ անոր միտքն այնպիսի օրինաց ներքեւ է որ չի կրնար ընդունել ինչ որ Սուրբ գիրք կը սորվեցնէ, անատեն միայն փիլիսոփայութիւնը կ'ունենար իրաւունք հաստատելու թէ Աստուածաշունչը միտքը ստեղծողէն տրուած կամ յայտնուած չէ։

Բայց թէպէտեւ կրնայ ցուցուիլ թէ ինչ որ Սուրբ գիրք կը սորվեցնէ՝ հակառակ է բուն մարդկային մտքին բնութեանը։ Ինչ որ Սուրբ գիրք կը սորվեցընէ՝ կրնայ ոմանց կարծեաց կամ նաեւ համոզմանցը հակառակ ըլլալ. բայց ասիկէ չենք կրնար հաստատել թէ մարդկային մտքին բնութեանն ալ հակառակ է. քանզի եթէ այնպէս ըլլար, այլեւայլ իրաց վերաբերեալ վարդապետութիւններ որ հիմա առհասարակ իբրեւ ճշմարիտ ընդունուած են՝ մարդկային մտքին բնութեանը հակառակ եղած պիտի ըլլային, վասնզի ժամանակաւ հակառակ էին շատ մարդոց համոզմանցը։ Գրեթէ ամէն նոր գիւտ, եւ ամէն նոր բարեկարգութիւն ի սկզբան մերժուած է մարդոցմէ իբրեւ հակառակ իրենց համոզմանցը։ Գիտութեանց պատմութիւնը բացայայտ կը ցուցնէ թէ շատ վարդապետութիւններ կրնան հակառակ գալ շատերուն կարծեաց եւ համոզմանցը, թէեւ իրօք

հակառակ չեն մարդկային մտքին բնութեանը։ Քանի քանի վարդապետութիւններ այնպէս ի սկըզբան հակառակութիւն կրեցին, բայց ճշդագոյն հետազօտութիւնք յետոյ հաստատեցին զանոնք իբրեւ ճշմարիտ, ուստի եւ բոլորովին համաձայն մարդկային մտաց բնութեանը։

Դարձեալ, ուրիշ վարդապետութիւններ կրնան հրաշալի եւ խորհրդաւոր եւ այնպէս վեր ըլլալ քան զմարդկային միտս, որ մարդուն միտքը զանոնք չի կրնար ի սկզբան հասկնալ, թէպէտ այն վարդապետութիւններն իրօք հակառակ չեն մարդկային մտքին բնութեանց։ Բնական աշխարհի վերաբերեալ վարդապետութիւններէն ալ ոչ սակաւք խորհրդաւոր են։ Ի՞նչ է որ սիրտը կը թնդացնէ եւ մարմնոյ բոլոր գործարաններուն կանոնաւոր շարժում կու տայ։ Ի՞նչ է որ ծառին հիւթը ծառին արմատէն մինչեւ անոր հեռաւոր ճիւղերուն ծայրը կը հանէ։ Արեգակն ինչպէս կրնայ իրեն քաշել երկիրս որ անկէ միլիոնաւոր ժամերով հեռի է։ Գիտունք կ՚ըսեն թէ այս բաները կը գործուին կենսական զօրութեամբ, կամ քիմիական զօրութեամբ, կամ ձգողական զօրութեամբ։ Բայց այս բուն մեկնութիւն չէ։ Բնագէտք անուններ միայն կու տան այս զօրութիւններուն, բայց զանոնք ոչ կրնան մեկնել եւ ոչ հասկնալ։ Այս զօրութիւններուն գործողութիւնները կը մնան խորհրդաւոր եւ անիմանալի։ Ապա բնական գիտութիւնք կը ցուցնեն թէ կրնան ըլլալ շատ վարդապետութիւններ որ չեն կրնար մեկնուիլ, բայց եւ այնպէս հաւաստի են, ուստի եւ հակառակ չեն մարդկային մտքին բնութեանը։ Եթէ

ծրարածոց վերաբերեալ վարդապետութիւնները, թէեւ գաղտնիք, հաւատալի են, որչափ եւս առաւել հաւատալի ըլլալու են Արարչին վերաբերեալ վարդապետութիւնները, թէպէտ խորհրդաւոր կամ գաղտնիք են :

Մարդկային մաքին բնութեանը՝ ստուգիւ հակառակ կրնան՝ համարուիլ այն վարդապետութիւնները միայն որ ընդդէմ կու գան ընդհանուր համոզմանց մարդկային ազգին : Եթէ մտաւորական փիլիսոփայութիւնը կարենար ցուցնել թէ Սուրբ գրոց մէջ կան այնպիսի վարդապետութիւններ որ հակառակ են մաթեմաթիկական սկզբանց կամ ուրիշ ինքնայայտ ճշմարտութեանց, անատեն կարող կ՚ըլլար հերքել Սուրբ գիրքն իբրեւ անհաւատալի : Բայց Սուրբ գրոց ո՞ր վարդապետութիւնները հակառակ են ինքնայայտ ճշմարտութեանց : Միթէ Սուրբ գիրք կը սորվեցնէ՞ այնպիսի վարդապետութիւն մը որ հակառակ է ընդհանուր եւ բացարձակ համոզմանց մարդկային ազգին : Սուրբ գրոց մէջ կա՞յ վարդապետութիւն մը զոր ամէն տեղ միաբերան կը մերժէ իբրեւ անկարելի կամ անհաւատալի : Ոչ. վասնզի առողջ մտքի տէր միլիոնաւոր մարդիկ ընդունած են Սուրբ գրոց վարդապետութիւններն իբրեւ ճշմարիտ : Զենք ըսեր թէ Սուրբ գրոց վարդապետութիւնները ճշմարիտ են վասնզի միլիոնաւոր մարդիկ ընդունած են զանոնք, բայց իրաւունք ունինք ըսելու թէ որովհետեւ միլիոնաւոր մարդիկ հաւատացած են անոնց, ապա անոնք անհաւատալի չեն, այսինքն չեն կրնար համարուիլ անհաւատալի կամ հակառակ ընդհանուր եւ բացարձակ համոզմանց մարդկային

ազգին․ եւ որովհետեւ իմացական փիլիսոփայութիւնը չի կրնար հերքել Սուրբ գիրքն ուրիշ կերպով բայց եթէ ցուցնելով թէ ինչ որ Սուրբ գիրք կը սորվեցնէ հակառակ է մարդկային մտքին բնութեանը, պարտինք հաստեցնել թէ մտքին գիտութիւնը կամ իմացականութիւնը կամ իմացական փիլիսոփայութիւնը չի հերքեր Սուրբ գիրքը ։

2. Բարոյական գիտութիւնը կամ բարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ՞ Սուրբ գիրքը ։

Սուրբ գիրք բարոյական փիլիսոփայութիւն չէ ։ Բարոյական պարտականութեանց հիման կամ առաքինութեան բնութեան վրայ փիլիսոփայական տեսութիւններ չըներ, ինչպէս կ՚ընէ բարոյական փիլիսոփայութիւնը ։ Բայց կը պարունակէ շատ բարոյական սկզբունքներ եւ վարդապետութիւններ եւ կը ցուցնէ բարոյական օրէնք ։ Եթէ արդարեւ Սուրբ գիրք աստուածային յայտնութիւն է, ապա անոր բարոյական վարդապետութիւնները մաքուր եւ մարդուս բնութեան եւ վիճակին յարմար ըլլալու են ։ Եթէ բարոյական փիլիսոփայութիւնը կրնայ ցուցնել թէ Սուրբ գրոց մէջ ցուցուած բարոյական օրէնքը եւ վարդապետութիւններն անմաքուր կամ թերի են եւ կամ անոնց ազդեցութիւնը վնասակար է, ապա հզօր վկայութիւն մը տուած պիտի ըլլայ թէ Սուրբ գիրք Աստուծմէ տրուած չէ ։ Բայց բարոյական փիլիսոփայութիւնը կ՚ապացուցանէ զայս ։

Սուրբ գրոց բարոյական վարդապետութիւնները կը գտնուին Սուրբ գրոց բոլոր մասերուն մէջ, բայց կրնանք ըսել թէ գլխաւոր բարոյական վարդապետութիւնները կը գտնուին տասնաբանեայ պատուիրաններուն,

*Քրիստոսի այն վարդապետութեանց մէջ ուր այն պատուէրները կը մեկնուին, եւ Յիսուսի վարուց մէջ, Յիսուսի, որ իր գործերովը ցուցուց այն պատուէրներուն ոգին։*

*Բարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ զայս ամենայն իբրեւ սուտ, կամ կը մերժէ իբրեւ անարժան կամ թերի կամ վնասակար։*

*Միթէ բարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ տասնաբանեայ պատուէրները։ Կրնա՞յ ցուցնել թէ այն պատուէրները կ'արգիլեն ինչ որ ուղիղ, արդար, բարի եւ օգտակար է, կամ կը հրամայեն ընել ինչ որ չար եւ վնասակար է։ Ըստ բարոյական փիլիսոփայութեան տասնաբանեայ պատուէրներէն ո՞րը մերժուելու է։ Եւ ոչ մին։ Ընդհակառակն, բարոյական փիլիսոփայութիւնը կը սորվեցնէ թէ այն պատուէրներուն բոլորն ալ բարի, արդար եւ հարկաւոր են, կը հաստատէ թէ անոնց բոլորն ալ համաձայն են բնական իրաւանց մարդկան, եւ յարմար են յառաջ տանելու անհատից եւ ժողովրդոց բարձրագոյն շահերը, եւ թէ այն պատուէրներուն բոլորն ալ կատարուելու են որ մարդիկ, ժողովուրդներ եւ ազգեր հասնին Փիզիքական, իմացական եւ բարոյական երջանկութեան։ Ուրեմն, բարոյական փիլիսոփայութիւնն ոչ միայն չի հերքեր տասնաբանեայ պատուէրները, այլեւ կը հաստատէ զանոնք իբրեւ գերազանց բարոյական պատուէրներ։*

*Բարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ այն մեկնութիւնը զոր Յիսուս Քրիստոս տուաւ տասնաբանեայ պատուէրներուն Մատթէոսի Ե, Զ եւ Է գլուխներուն մէջ։ Ի՞նչ պատճառ կայ որ բարոյա-*

կեան փիլիսոփայութիւնը հերքէ Քրիստոսի մեկնութիւնը տասնաբանեային վրայ : Կրնա՞յ հերքել զայն իբրեւ հնացեալ : Ոչ . վասնզի Քրիստոսի մեկնութիւնը կը վերաբերի ոչ միայն մարդոց արտաքին գործքերուն , այլեւ այն գործքերուն յառաջ բերող ախտերուն : Կը դատապարտէ ոչ միայն սպանութիւնն , այլեւ ատելութիւնը որ սպանութեան կը տանի : կը դատապարտէ ոչ միայն շնութիւնը , այլ եւ անմաքուր խորհուրդներն որ զմարդ կը տանին շնութեան : Ըստ մեկնութեան Քրիստոսի , տասնաբանեայ պատուէրները կը վերաբերին մարդոց ոչ միայն բոլոր գործքերուն , այլ եւ բոլոր խորհուրդներուն , բաղձանաց եւ նպատակներուն , եւ խստիւ կը դատապարտեն ինչ որ անմաքուր եւ անիրաւ է մարդոց մէջ :

Յարոյական փիլիսոփայութիւնը կը մերժէ՞ Քրիստոսի մեկնութիւնն իբրեւ ոչ անաչառ : Յարոյական փիլիսոփայութիւնը չի կրնար այն մեկնութիւնն իբրեւ ոչ անաչառ հերքել , վասնզի այն մեկնութիւնը կը վերաբերի բոլոր ազգաց , ինչպէս Հրէից նոյնպէս եւ հեթանոսաց : Միեւնոյն կերպով կը խօսի թագաւորներու եւ հպատակներու , գիտուններու եւ տգէտներու , եւ ամենէն կը պահանջէ մի եւ նոյն արդարութիւնը , մի եւ նոյն սրբութիւնը եւ մի եւ նոյն բարեպաշտութիւնը :

Յարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ՞ Քրիստոսի մեկնութիւնն իբրեւ անիրաւ : Ոչ . վասնզի այն մեկնութիւնը կը պահանջէ իւրաքանչիւր անձէ ոչ թէ ինչ որ անոր կարողութենէն վեր է , այլ ինչ որ անոր կարողութեան ներքեւ է (Ղուկ . ԺԲ . 48, Բ

Կորնթ. Ը. 12)։ Մարդոցմէ չի պահանջեր այնպիսի գործ մը զոր հրեշտակք միայն կրնան կատարել. աղքատներէն եւ տգէտներէն չի պահանջեր ինչ որ հարուստք եւ գիտունք միայն կրնան ընել։ Իւրաքանչիւր անձէ կը պահանջէ այն գործը որ ճշգիւ համաձայն է անոր բնութեանը, վիճակին եւ կարողութեանը։ Իւրաքանչիւր անձէ կը պահանջէ այն գործը միայն զոր նա կրնայ եւ պարտի ընել, եւ կ'արգելէ այն բանը միայն զոր ոչ ոք պարտի ընել։ Այսպիսի օրէնք մը չի կրնար բնաւ մերժուիլ իբրեւ անիրաւ։

Բարոյական փիլիսոփայութիւնը կը մերժէ Քրիստոսի մեկնութիւնն իբրեւ անկատար, կամ նեղ եւ կամ չափազանց։ Ըստ մեկնութեան Քրիստոսի, օրէնքը կը բովանդակի սա խօսքին մէջ. « Քու Տէր Աստուածդ սիրես քու բոլոր սրտովդ եւ քու բոլոր անձովդ ու քու բոլոր մտքովդ. աս է առաջին ու մեծ պատուիրանքը։ Ու երկրորդը ասոր նման՝ Քու ընկերդ սիրես քու անձիդ պէս։ Ախ երկու պատուիրանքէս կախուած են բոլոր օրէնքը եւ մարգարէները » (Մատթ. ԻԲ. 37—40)։ Յիսուս Քրիստոս միւս բոլոր բարոյական վարդապետներէն կը տարբերի յայսմ որ կը սորվեցնէ մեզ թէ ոչ մեր հայրենակիցները կամ մեր ազգակիցները միայն, այլ եւ բոլոր մարդիկ մեր ընկերներն են (Ղուկ. Ժ. 30-37)։ Քրիստոս մարդոց սորվեցուց նաեւ սիրել իրենց թշնամիները, օրհնել իրենց անիծիչները, բարի ընել իրենց ատելիներուն եւ աղօթք ընել իրենց չարչարիչներուն եւ հալածիչներուն համար (Մատթ. Ե. 44)։ Քրիստոս կը պատուիրէ մարդոց ըլլալ կատարեալ

ինչպէս անոնց երկնաւոր Հայրը կատարեալ է (Մատթ. Ե. 48)։ Նոր կտակարանին բարոյականը կը պահանջէ ամէն մարդէ կատարեալ սէր։ Այսպիսի մեկնութիւններ կը գտնուին նաեւ Հին կտակարանին մէջ։ «Քու Տէր Աստուածդ բոլոր սրտովդ, բոլոր հոգւովդ ու բոլոր զօրութիւնովդ սիրես (Բ Օր. Զ. 5, Ժ. 12, ԺԱ. 1, 13, 22, ԺԹ. 9)։ «Քու ընկերդ քու անձիդ պէս սիրես» (Ղեւտ. ԺԹ. 18)։ Միթէ բարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ այսպիսի վարդապետութիւններ։ Ոչ երբեք. ընդհակառակն, բարոյական փիլիսոփայութիւնը կ'ընդունի եւ կը պատուէ զանոնք իբրեւ կատարեալ։ Բարոյական փիլիսոփայութիւնը կը ճանաչցի Գաղոն փիլիսոփային որ կ'ըսէ. «Աշխարհի վրայ չեղաւ երբեք կրօնք մը կամ օրէնք մը այնպէս նպաստաւոր հասարակաց բարւոյն, ինչպէս Քրիստոնէական կրօնքը։»

Բարոյական փիլիսոփայութիւնը կը ճանաչցի Մօնթէսքիէօ անուն նշանաւոր Գաղղիացի մատենագրին, որ իր «Ոգի օրինաց» կոչուած գրքին մէջ կ'ըսէ. «Աւետարաններուն բարոյականութիւնն Աստուծմէ մարդուս տրուած պարգեւներուն ազնուագոյնն է։» Կը ճանաչցի նաեւ Ամերիկայի ամենէն մեծ քաղաքագիտին, Ուէպստէրի, որ կ'ըսէ. «Լերան քարոզն այնպէս պզանչելի է որ չի կրնար մարդու մտքի ծնունդ ըլլալ։»

Բարոյական փիլիսոփայութիւնը կը հերքէ Սուրբ գրոց այն բարոյականը որ կը տեսնուի Քրիստոսի վարուց մէջ։ Կը մերժէ Քրիստոսի օրինակն իբրեւ անկատար կամ մնասակար։ Ի՞նչ թերութիւն կը

գտնէ Քրիստոսի անձին վրայ, եւ ինչ յանցանք՝ անոր վարուց մէջ։ Եւ ոչ մի։ Այս գլխոյն մէջ չենք խօսիր Յիսուս Քրիստոսի բարոյական կատարելութեան վրայ, քանզի այս նիւթին վրայ ընդարձակօրէն պիտի խօսինք ԺԴ. գլխոյն մէջ։ Հոս բաւական կը համարինք յիշել քանի մը երեւելի մարդոց վկայութիւնը Քրիստոսի վրայ։

Ֆրանսուա անուն պատմիչը Քրիստոսի համար կ'ըսէ. «Երկրիս վրայ ապրող էակաց մէջ ամենէն կատարեալն էր։» Գերմանացի փիլիսոփան Տը Վէդդէ կը կոչէ զՔրիստոս «անարատ եւ անմեղ»։ Ուրիշ Գերմանացի փիլիսոփայ մը, Հէկէլ, կ'ըսէ նոյնպէս Քրիստոսի համար. «Աշխարհիս պատմութեան մէջ միակ եւ աննման է, եւ անոր վրայ միայն միացեալ են աստուածային եւ մարդկային բնութիւնք։» Նաբոլէոն Պոնաբարդ ըսած է. «Քրիստոսի եւ ուրիշ բոլոր մարդոց մէջտեղ բաղդատութիւն անկարելի է։» Գերմանացի անհաւատը Շթրաուս կ'ըսէ. «Քրիստոս իր վարուքը կրօնքի վրայ կու տայ ամենէն բարձր գաղափարը զոր մարդու միտքը կրնայ ըմբռնել։» Ռընան կ'ըսէ. «Աննման եւ երկրպագելի անձ է։» Եւ արդարեւ Յիսուս Քրիստոսի բարոյական աննման գերազանցութիւնն ինքնին հզօր ապացոյց է թէ Քրիստոս իրօք Որդի Աստուծոյ էր, եւ թէ անոր Աւետարանն աստուածային է։

Սակայն ոմանք Սուրբ գրոց բարոյականին իբրեւ արատ կը համարին Նոյայ, Ղովտի, Դաւթի, Սողոմոնի եւ այլոց ամօթալի մեղքերն յիշելը։ Բայց եթէ այն անձինք այնպիսի մեղքեր իրօք գործեցին, Սուրբ գիրք ինչո՞ւ համար չյիշէր զանոնք։ Սուրբ

գիրք ուղիղ եւ անաչառ գիրք է, եւ կը նկարագրէ զմարդիկ ճիշդ այնպէս ինչպէս էին։ Սուրբ գիրքն անաչառ եւ վստահութեան արժանի չէր ըլլար, եթէ մարդոց բարի գործքերը միայն յայտնելով անոնց չար գործքերը ծածկէր։ Բայց Սուրբ գիրք երբէք չի գովեր յիշեալ անձանց չար գործքերը, այլ, ընդհակառակն, խստիւ կը դատապարտէ զանոնք։ Երբէք չընծայեցներ այն մարդոց յանցանքներն իբրեւ հետեւելու արժանի օրինակ, այլ, ընդհակառակն, շատ անգամ կը յիշէ զանոնք իբր խրատ զգուշութեան, եւ կը ցուցնէ թէ ինչպէս այն մեղքերը գործող մարդիկ խոնարհութեամբ զղջացին, կամ չարաչար պատժուեցան։ Սուրբ գրոց մէջ կայ համար մը միայն որ ապիրատ գործ մը կը գովէ, եւ կամ կը քաջալերէ զմարդիկ անօրէն եւ պիղծ ըլլալու։ Ոչ, չկայ։ Զարագործութեանց պատմութիւններուն ամէնն ալ որ Սուրբ գրոց մէջ կը գտնուին՝ մարդոց սիրտերուն մէջ պիղծ եւ մեղանչական գործերու դէմ զզուանք, իսկ բարի եւ սուրբ գործերու վրայ սէր յառաջ բերելու նպատակաւ գրուած են։

Ոմանք կ'ըսեն թէ Հին կտակարանին մէջ կան գլուխներ որ տղայոց կարդալու յարմար չեն։ Բայց որչափ են այսպիսի գլուխներ բոլոր Սուրբ գրոց մէջ։ Շատ քիչ. եւ դարձեալ Սուրբ գրոց մէջ այնպիսի գլուխներ գտնուելուն աղէկ պատճառներ կան։ Այնպիսի գլուխներէն ոմանք գրուած են ցուցընելու համար թէ նահապետք եւ մարգարէք անգամ կրից տէր էին իբրեւ զմեզ, բայց եւ այնպէս յարատեւեցին, եւ հաւատքով հասան բարձր աստիճանի սրբութեան, եւ թէ մենք ալ ապաշխարու-

թեամբ եւ հաւատքով կրնանք անոնց օրինակին նմանել ։ Անոնց մեղքերէն ոմանց պարագաները պատմուած են ցուցնելու համար աշխարհի թէ ո՛ր-չափ մեծ էին այն մեղքերը , որպէս զի ոչ ոք , որ-չափ մեծ եւ շատ ըլլան իր մեղքերը , յուսահատի ներումն գտնելու , երբ սրտանց կը զղջայ իր մեղ-քերուն վրայ ։

Ուրիշ մեղքեր յիշուած են Սուրբ գրոց մէջ իբրեւ զգուշութիւն չար ընկերաց եւ չար սովորութեանց դէմ , եւ այս կողմանէ շատ օգտակար եւ ազդու խրատ են ։ Դարձեալ , ուրիշ մեղքեր յիշուած են իբ-րեւ պատմական կարեւոր տեղեկութիւն , եւ իբրեւ մեկնութիւն այլուր պատմուած դէպքերու ։ Օրինակ առնենք Ծննդոց ԺԹ. գլխոյն մէջ պատմուած դէպ-քերը ։ Միթէ կրնայինք աղէկ հասկնալ թէ ինչու համար Աստուած այնպէս խստիւ պատժեց Սոդոմ եւ Գոմոր քաղաքները , եթէ անոնց սոսկալի պըղ-ծագործութիւնն այնպէս յայտնի գրուած չըլլար Սուրբ գրոց մէջ ։

Ոմանք կը հարցնեն թէ Քանանացւոց կոտորածը որ եղաւ Իսրայէլացւոց ձեռքով՝ ինչպէս կրնայ արդարանալ ։ Կը պատասխանենք թէ Իսրայէլացիք ջնջեցին զՔանանացիս Աստուծոյ յայտնի հրամանաւ, եւ միթէ մէկը կրնա՞յ ըսել թէ Աստուած որ տուիչ է կենաց՝ իրաւունք չունի առնել զայն ։ Աստուած ամէն տարի միլիոնաւոր մարդոց կեանք կու տայ, եւ ուրիշ միլիոնաւոր մարդոց կեանքը կ՚առնէ ։ Այն միլիոնները որ ամէն տարի կը ծնանին եւ կը մեռ-նին՝ կը ծնանին եւ կը մեռնին հրամանաւ Աստու-ծոյ , եւ ոչ ոք կ՚ըսէ թէ այս հրամանն անիրաւ է ։

*Կայ սակայն լիուացի պատճառ մը թէ ինչու համար Աստուած այսպիսի նորանշան եւ ահեղ կերպով ջնջել տուաւ Քանանացւոց ազգերը ։ Քանանացիք կռապաշտ էին , եւ եթէ չջնջուէին, կրնային խոտորեցընել զԻսրայելացիս ճշմարիտ աստուածպաշտութենէ։ Աստուած ստեղծեց երկրիս բոլոր ազգերը , եւ անդադար կը խնամէ զանոնք ։ Աստուծոյ խնամոքն է որ արեգակը կը ծագէ անոնց վրայ , եւ երկիրը իր բերքը կու տայ անոնց ։ Աստուած կը պարգեւէ անոնց անթիւ օրհնութիւններ եւ շնորհքներ ։ Բայց երբ ազգերը կը դադրին զԱստուած պաշտելէ, կռապաշտութեան մէջ կ'իյնան եւ իրենց գարշութիւններովը կ'ապականեն ուրիշ ազգեր , իրաւունք կ'ունենայ Աստուած զանոնք ջնջելու՝ ջրհեղեղով ինչպէս ըրաւ Նոյի ժամանակ , կամ կրակով՝ ինչպէս ըրաւ Սոդոմայ եւ Գոմորայ , կամ սրով՝ ինչպէս ըրաւ Քանանացւոց ։ Աստուած արդարեւ երկայնամիտ է եւ բազումողորմ , բայց նաեւ արդար Տէր է եւ կը պատժէ զանոնք որ անօրէնութեան ճամբուն մէջ անդադար յառաջ կ'երթան ։*

*Ուստի, յայտնի է թէ վերոյիշեալ առարկութիւնք եւ ուրիշ անոնց նմանք հաստատուած չեն առողջ հիման վրայ , եւ թէ բարոյական գիտութիւնը ոչ միայն չի հերքեր Սուրբ գիրքը , այլ մանաւանդ կը հաստատէ զայն ։*



# ԳԼՈՒԽ ԺԲ.

## ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐՈՒՆ ԱՐԺԱՆԱՀԱՒԱՏՈՒԹԵԱՆԸ ԴԷՄ ԱՊԱՑՈՅՑՆԵՐ ԿԱ՞Ն

(Շարունակութիւն)

3. *Բնական գիտութիւնք կը հերքե՞ն Աւետարանը ։*

*Նախ, քննենք թէ բնական գիտութիւնք հակառակ են վարդապետութեանց Աւետարանաց, ուստի եւ կը հերքեն անոնց արժանահաւատութիւնը ։*

*Կարելի չէ որ երկու հեղինակ իրարու հակառակ ըլլան, եթէ մի եւ նոյն նիւթոց վրայ չեն խօսիր, եւ կամ անոնց գրուածներն ուղղակի եւ կամ անուղղակի մի եւ նոյն նիւթոց վերաբերեալ չեն ։ Երկու քերականութիւնք կրնան իրարու հակառակ ըլլալ, քանզի մի եւ նոյն նիւթոյ վրայ կը խօսին. Նմանապէս երկու աշխարհագրութիւնք կամ երկու թուաբանութիւնք կրնան հակառակ ըլլալ իրարու, բայց քերականութիւն մը չի կրնար հակառակ ըլլալ աշխարհագրութեան կամ թուաբանութեան մը, քանզի այս գիտութիւնք մի եւ նոյն նիւթոյ վրայ չեն խօսիր ։ Արդ, բնական գիտութիւնք եւ Աւետարանները կը խօսի՞ն այնպիսի նիւթոց վրայ որ մի եւ նոյն են, կամ այնչափ մօտ կապակցութիւն ունին իրարու հետ որ կարելի ըլլար անոնց հակառակ ըլլալ իրարու ։*

Բնական գիտութիւնք ինչ նիւթոց վրայ կը խօսին։ Բնական գիտութիւնք կը խօսին բնական աշխարհի վրայ միայն։ Զորօրինակ, աստեղագիտութիւնը կը խօսի արեգական, լուսնի եւ աստեղաց վրայ, երկրաբանութիւնը կը խօսի երկրի վրայ, հանքաբանութիւնը՝ հանքերու վրայ, բուսաբանութիւնը՝ բուսոց վրայ, կենդանաբանութիւնը՝ կենդանեաց վրայ, մարդակազմութիւնը՝ մարդկային մարմնոյ վրայ, քիմիաբանութիւնը՝ նիւթական մարմնոց բաղադրութեան վրայ, բնագիտութիւնը՝ նիւթական աշխարհի զօրութիւններուն վրայ։ Թողլով այժմ Աստուածաշունչին ուրիշ գիրքերը, Աւետարանաց համար կ'ըսենք թէ, ասոնք վերոյիշեալ գիտութեանց եւ ոչ մէկուն նիւթին վրայ կը խօսին։ Աւետարանները ոչ աստեղագիտութիւն կը սորվեցնեն, ոչ երկրաբանութիւն, ոչ բուսաբանութիւն, ոչ քիմիաբանութիւն եւ ոչ բնագիտութիւն, եւ այս բաներէն եւ ոչ մէկուն վրայ կարծիք կը յայտնեն։ Եթէ երբեք երկնից կամ երկրի, բուսոց կամ անասունոց վրայ կը խօսին, գիտնոց լեզուն չեն գործածեր, այլ ժողովրդեան սովորական լեզուն։ Երբեք չեն ջանար այն գիտութեանց վրայ բան մը սորվեցնել մարդոց, ուստի եւ այն ճշմարտութիւնները զորս բնական գիտութիւնք կը սորվեցնեն, ինչ որ ալ ըլլան, չեն կրնար հակառակ ըլլալ Աւետարանաց վարդապետութիւններուն։ Աւետարանները կը խօսին բարոյական եւ հոգեւոր ճշմարտութեանց վրայ։ Կը սորվեցնեն թէ մարդիկ ինչպէս պարտին վարուիլ իրարու հետ, եւ իրենց Աստուծոյն հետ, թէ ինչպէս կրնան անոնց մեղքերը թողուիլ եւ անոնց

սիրտերը մաքրուիլ : Արդ , աստեղագիտութիւնը կամ երկրաբանութիւնը կամ բուսաբանութիւնը եւ կամ մարդակազմութիւնը ինչպէս կրնան հակառակ ըլլալ Աւետարանաց վարդապետութիւններուն : Աստեղագիտութիւնն աստեղաց վերաբերեալ բաներ կը սորվեցնէ , բայց մեղաց թողութեան վրայ ինչ կրնայ սորվեցնել : Ոչինչ : Երկրաբանութիւնը կը սորվեցնէ երկրիս խաւերուն վերաբերեալ գիտելիք , բայց ինչ կրնայ սորվեցնել վերստին ծննդեան վրայ : Ոչինչ : Հնար չէ գիտութեանց , որ բնական աշխարհի վրայ միայն կը խօսին , հաստատել կամ ժխտել ինչ որ Աւետարանները կ'ըսեն բարոյական եւ հոգեւոր բաներու վրայ : Եթէ Աւետարանները բնական աշխարհի վերաբերեալ վարդապետութիւններ մէջ բերած ըլլային , բնական գիտութիւնք կրնային քննել այն վարդապետութիւնները , եւ եթէ անոնց մէջ սխալ մը կար , հերքել . բայց Աւետարանաց մէջ աստեղագիտութեան , երկրաբանութեան , կենդանաբանութեան , բուսաբանութեան կամ քիմիաբանութեան վերաբերեալ ինչ վարդապետութիւն կայ : Ոչինչ :

Աւետարանները կը պատմեն թէ Յիսուս Քրիստոս հրաշք գործեց . բայց ոմանք կ'ուզեն հաստատել թէ բնական գիտութիւնք կը հերքեն հրաշքներն իբրեւ անհաւատալի : Բնական գիտութիւնք ստուգիւ կրնան հերքել Աւետարաններուն մէջ յիշուած հրաշքները : Բնական գիտութիւններէն ո՞րը կրնայ հերքել զանոնք : Աստեղագիտութիւնը : Աստեղագիտութիւնը , բաց յերկնային մարմնոց ուրիշ բանի վրայ չի խօսիր : Աստեղագիտութիւնը թող խօսի աստե-

ղաց վրայ ինչ որ կրնայ, բայց ի՛նչպէս կրնայ ապացուցանել թէ Քրիստոս մեռեալներէն յարութիւն չառաւ։ Երբեք չի կրնար։ Երկրաբանութիւնը կը հերքէ Աւետարաններուն մէջ յիշուած հրաշքները. Ի՞նչպէս կրնայ ընել զայն։ Երկրաբանութիւնը հողագունտին վերաբերեալ բաներ միայն կը սորվեցնէ։ Արդ, երկրաբանութիւնը կրնա՞յ ապացուցանել թէ Յիսուս մեռեալ Ղազարոսը գերեզմանէն չկանչեց։ Չի կրնար ապացուցանել. Քանի մը նկանակով 5,000 մարդոց հրաշքով կերակրուելուն դէմ բուսաբանութիւնն ի՛նչ կրնայ ըսել։ Կենդանաբանութիւնն ի՛նչ կրնայ ըսել բորոտին բժշկութեանը դէմ. Ոչինչ։ Մարդակազմութիւնն ի՛նչ կրնայ ըսել Յիսուս Քրիստոսի յարութեան դէմ։ Կրնա՞յ ապացուցանել թէ Քրիստոսի յարութիւնն անկարելի էր. Ի՞նչպէս պիտի կրնայ։ Մարդակազմութիւնը կրնա՞յ հաստատել թէ այնպիսի դէպք մը, ինչպէս է յարութիւնը, հաստատակօրէն կը պատահի՞ կամ կրնա՞յ պատահիլ մեզի ծանօթ բնական զօրութեամբք եւ կամ ըստ նիւթական օրինաց որ մեզի ծանօթ են. Թող այս հաստատութիւններն ընէ, եւ թող ցուցնէ թէ Յիսուսի յարութիւնը չի կրնար մեզի ծանօթ բնական զօրութեամբ մը կատարուած ըլլալ։ Բայց անկէ ի՛նչ կրնայ հետեւցնել։ Չի կրնար ստուգիւ հետեւցնել թէ այնպիսի դէպք մը երբեք տեղի չունեցաւ. քանզի, բաց ի բնական օրինաց եւ զօրութեանց, աշխարհիս վրայ ուրիշ օրէնքներ եւ զօրութիւններ ալ կրնան ըլլալ։ Մարդակազմութիւնն իր հաստատութիւններէն սա միայն կրնայ հետեւցնել թէ, եթէ յարութիւն մը արդարեւ տեղի ունեցաւ,

*մարմնոյն բնական զօրութեամբը չէր այն ։ Բայց այսպիսի հետեւութիւն մը ոչ միայն չի հերքեր Աւետարանները , այլ , ընդհակառակն, մինչեւ աստիճան մը կը հաստատէ զանոնք , քանզի Աւետարաններն ալ կ'ըսեն թէ Քրիստոսի յարութիւնը ոչ թէ հասարակ այլ բոլորովին արտաքոյ կարգի դէպք էր, որ չկատարուեցաւ բնական զօրութեամբք , այլ գերբնական զօրութեամբք ։ Բայց բնական գիտութիւններէն մին, ինչպէս է մարդակազմութիւնը , ինչ կրնայ ըսել գերբնական դիպաց եւ գերբնական զօրութեանց վրայ ։ Եւ ոչինչ ։ Բնական գիտութիւնք հարկաւ չեն կրնար անցնիլ իրենց սահմանը, որ է նիւթական աշխարհս ։ Երբ այս գիտութիւնք կը թողուն բնական զօրութիւններն եւ բնական օրէնքներն , եւ կը սկսին խօսիլ գերբնական զօրութեանց եւ գերբնական օրինաց վրայ, կը դադրին բնական գիտութիւն ըլլալէ եւ գերբնական գիտութիւն կ'ըլլան , եւ այլ եւս իրաւունք չեն ունենար յանուն բնական գիտութեանց խօսելու ։*

*Մարդակազմութիւնն ինչպէս կրնայ հերքել յարութեան վարդապետութիւնն իբրեւ անկարելի ։ Մարդակազմութիւնն այս բանն ընելու համար պարտի ապացուցանել թէ աշխարհի մէջ բաց ի բնական զօրութեանց ուրիշ զօրութիւններ չկան, այսինքն բնութենէ դուրս եւ վեր Աստուած չկայ , կամ թէ Աստուած, եթէ Աստուած կայ, չի կրնար կամ չուզեր բաց ի մարմնոյ կենսական զօրութիւններէն ուրիշ զօրութիւններ ի գործ դնել ։ Բայց մարդակազմութիւնն ինչպէս կրնայ ապացուցանել թէ Աստուած չկայ ։ Մարդակազմութիւնը կը խօսի միայն*

մարմնոյն մորթին եւ ոսկերաց, ջիղերուն եւ մկանանց եւ այլ մասանց վրայ, նաեւ օրինաց վրայ որոնց հպատակ է մարմինը, բայց այսպիսի գիտութիւն մը ինչպէս կրնայ ապացուցանել թէ Աստուած չկայ ։ Երբեք չի կրնար ։ Ընդհակառակն, մարմնոյն զարմանալի կազմուածը զօրաւոր ապացոյց է թէ ամենիմաստ արարիչ մը կայ ։

Կամ մարդակազմութիւնն ինչպէս կրնայ ապացուցանել թէ Աստուած կարող չէ բաց ի մարմնոյն ներկայ կենսական զօրութիւններէն ուրիշ զօրութիւններ ի գործ դնել ։ Մարդակազմութիւնը չի խօսիր Աստուծոյ բնութեան եւ կարողութիւններուն, այլ մարդկային մարմնոյ բնութեան եւ զօրութիւններուն վրայ միայն ։ Որպէս զի մարդակազմութիւնն աստուածային կարողութեան վրայ բան մը կարենայ ըսել կամ հաստատել, նախ մարդակազմութիւն ըլլալէ դադրելով աստուածաբանութիւն ըլլալու է ։ Մարդակազմութիւնը կրնայ ցուցնել թէ մեռելոց յարութիւնը չի կրնար տեղի ունեցած ըլլալ ըստ հասարակ զօրութեանց մարմնոյ, բայց թէ Աստուած մեռելներն յարուցանելու զօրութիւն ունի թէ ոչ, մարդակազմութիւնը չկրնար ոչ հաստատել եւ ոչ հերքել զայս. քանզի գերբնական զօրութիւնք առարկայ չեն մարդակազմութեան, եւ այս գիտութիւնը չի քններ գերբնական զօրութիւնները, ուստի եւ անոնց վրայ բան մը չի գիտեր ։

Կամ մարդակազմութիւնը կարող է ապացուցանել թէ Աստուած երբեք գերբնական զօրութիւն պիտի չգործածէ մեռելներն յարուցանելու ։ Մարդակազմութիւնն ինչպէս կրնայ ապացուցանել զայս ։ Մար-

դակազմութիւնն ինչ կրնայ ըսել ստուգիւ աստուածային կամաց վրայ ։ Մարդակազմութիւնն աստուածային կամաց վրայ ուրիշ բան չի կրնար ըսել բայց եթէ ինչ որ կը տեսնէ մարմնոյ կազմութեան եւ գործողութիւններուն մէջ ։ Մարդակազմութիւնն Աստուծոյ կամաց վրայ այսչափ բան միայն գիտէ, եւ քան զայս աւելի բան մը չի կրնար ցուցնել ։ Մարդակազմութիւնն արդարեւ կրնայ ցուցնել թէ Աստուած ընդհանրապէս չի կամիր արտաքոյ կարգի զօրութիւններ գործածել մեռելներ յարուցանելու , քանզի մարդակազմութիւնն իր հետազօտութեանց մէջ զայս միայն կը տեսնէ , բայց ինչպէս կրնայ ապացուցանել թէ Աստուած չուզեր նաեւ որեւիցէ պարագայի մէջ եւ որեւիցէ նպատակաւ երբէք գերբնական զօրութիւն գործածել ։ Մարդակազմութիւնը մարդկային մարմնոյ օրէնքները եւ կազմութիւնը քննելով ստացաւ երբէք այսպիսի գիտութիւն մը Աստուծոյ կամաց վրայ ․ Ոչ երբէք ։ Ապա չի կըրնար ըսել թէ Աստուած գերբնական զօրութիւն երբէք չուզեր գործածել ։

Ոմանք կ՚ըսեն ․ Մարդակազմութիւնը կը հաստատէ թէ մեռելոց յարութիւնն հակառակ է մարմնոյ նիւթական օրինաց ․ արդ , որովհետեւ Աստուած դրած է մարմինն այն նիւթական օրինաց ներքեւ , ապա հաւանական չէ թէ ուզէ ջնջել կամ բռնաբարել օրէնքներ զոր ինք դրած է ։

Սա եւս կ՚ըսեն ․ Բնագիտաց հետազօտութիւնները կը ցուցնեն թէ բոլոր նիւթական աշխարհ բնական օրինաց տակ է , եւ թէ տիեզերաց մէջ ամէն բնական գործ տեղի կ՚ունենայ այն օրինաց համե-

մասս, եւ անհաւատալի է թէ այն օրէնքները ջնջուին կամ բռնաբարուին, ապա իբրեւ անհաւատալի պէտք է մերժել Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքները, որ արտաքոյ բնական օրինաց գործուած են։ Բայց այս եզրակացութիւնն հաստատ հիման վրայ չի կայանար։ Արդարեւ պարտինք իբրեւ ճշմարիտ ընդունել ինչ բան որ բնական գիտութիւնք կը հաստատեն նիւթական աշխարհի վրայ. պարտինք նաեւ իբրեւ Աստուծմէ հաստատուած ճանչնալ ամէն օրէնք որոնց ներքեւ է նիւթական աշխարհ. բայց ամենեւին չենք ընդունիր թէ բնական գիտութիւնք կրնան ցուցնել թէ Աւետարաններուն մէջ պատմուած հրաշագործութիւնք կ'եղծանեն կամ կը ջնջեն բնական օրէնքներն այնպէս որ այն հրաշագործութիւնք մերժուելու են իբրեւ անհաւատալի։ Այս յայտնի է հետեւեալ իրողութիւններէն։

ա. Բնական գիտութիւնք չեն ցուցներ թէ բնական օրէնք եւ զօրութիւնք որ կան՝ հարկաւոր կամ բացարձակ են, եւ ի բնէ կամ էապէս անայլայլելի։

Բնական գիտութիւնք չեն ցուցներ թէ նիւթական օրէնք եւ զօրութիւնք կախեալ չեն Արարչին կամքէն, եւ թէ այնպէս յաւիտենական են ինչպէս Աստուած, եւ այնպէս անայլայլելի ինչպէս աստուածային բնութիւնը. քանզի եթէ բնական գիտութիւնք ապացուցանէին զայս, ապացուցած կ'ըլլային թէ իրաց ներկայ կարգն ի յաւիտենից է։ Եթէ նիւթական աշխարհի օրէնքներն եւ զօրութիւններն ի բնէ կամ էապէս հարկաւոր եւ բացարձակ են, ապա հարկ է որ նաեւ ի յաւիտենից եղած ըլլան,

այն օրինաց և զօրութեանց արդիւնքը կամ հետեւանքն ալ ի յաւիտենից եղած ըլլան, այսինքն աշխարհի մէջ իրաց ներկայ կարգն ալ ի յաւիտենից եղած ըլլայ: Սակայն գիտութիւնք կը ցուցնե՞ն թէ այսպէս է: Գիտութիւնն, ընդհանրապէս, կը ցուցընէ թէ էր երբեմն որ ոչ տունկք, ոչ անասունք և ոչ մարդիկ կային երկրի վրայ, և այսպէս կը հաստատէ թէ նիւթական աշխարհի այժմու կարգն ի յաւիտենից չէ. ուստի և բնական օրէնք և զօրութիւնք ինքնին հարկաւոր կամ բացարձակ չեն, և ոչ ի բնէ կամ էապէս անայլայլելի:

բ. Բնական գիտութիւնք չեն ցուցներ թէ Աստուած երբ այս աշխարհս արարեց, թէև ասկէ՝ չեն կրնար ըսել այժմու բնական օրէնքներէն և զօրութիւններէն տարբեր օրինաց և զօրութեանց ներքև գտնել:

Բնական գիտութիւնք ինչպէս կրնան ապացուցանել թէ Արարիչը կարող չէր բոլորովին տարբեր յատկութիւններ տալ նիւթական աշխարհի: Բնական գիտութիւնք չեն կրնար ապացուցանել զայս, վասնզի անոնց առարկան արդի աշխարհս է միայն, և արդի աշխարհս քննելով միայն ստացած են այն ստոյգ ծանօթութիւններն որոնց վրայ հիմնուած են: Բնական գիտութեանց առարկայ չեն ուրիշ կարելի կամ անկարելի աշխարհներ, և այս բաներուն վրայ գիտունք կարծիք միայն կրնան ունենալ, բայց ոչ ստոյգ գիտութիւն: Բնական գիտութիւնք կը քննեն այն օրէնքները և զօրութիւնները միայն որ ցարդ գործեցին, և որ արդ ևս կան և կը գործեն, և որոնց գործողութիւնները կը տեսնուին, բայց չեն քններ որևիցէ անծանօթ, կարելի կամ անկարելի,

դրել թէ Աստուած կրնար լուսոյ կամ օդոյ կամ ջերմութեան օրէնքները տարբեր ընել անոնց այժմու օրէնքներէն ։ Ամենեւին պատճառ չկայ ։ Այս օրէնքները կապակցութիւն կամ վերաբերութիւն չունին իրաւանց յաւիտենական եւ անփոփոխելի սկզբունքներուն հետ, ուստի եւ Աստուած, տիեզերաց օրէնսդիրն, ազատ է փոխել զանոնք երբ եւ ինչպէս որ անոր լաւ կը թուի ։

Դ. Թէեւ ենթադրենք թէ նիւթական աշխարհի մէջ օրէնքներն անփոփոխելի են, տակաւին բնական ֆէնոմէնները չեն ցուցըներ թէ Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքները կ'եղծանեն կամ կը ջնջեն կամ կը բռնաբարեն այն օրէնքներէն մին ։

Շատ բնական զօրութիւններ կան որ տարբեր օրինաց համեմատ կը գործեն ։ Այս զօրութիւնք երբեմն կը գործակցին իրարու, բայց երբեմն ալ իրարու հակառակ կը գործեն ։ Բնական զօրութիւն մը կը քաշէ երկիրս դէպ արեգակը, բայց կայ ուրիշ զօրութիւն մը որ զայն արեգակէն հեռու կը մղէ ։ Այս զօրութիւններն իրարու հակառակ կը գործեն, բայց զիրար չեն եղծաներ կամ ջնջեր կամ բռնաբարեր ։ Քիմիական զօրութեան մը ազդեցութեամբ միսը կը սկսի շուտով նեխիլ, բայց եթէ աղի մէջ դրուի, ուրիշ քիմիական զօրութիւն մը կ'ընդդիմանայ առջի զօրութեան ներգործութեանը ։ Քիմիական զօրութեան մը ներգործութեամբ խաղողի հիւթը շուտով կը սկսի խմորիլ, բայց երբ մանանխայ սերմը կը նետուի այն հիւթին մէջ, ուրիշ քիմիական զօրութիւն մը առաջին զօրութեան ներգործութեանը հակառակ կը գործէ ։ Բայց այս վերջին զօրութիւնք չեղծաներ եւ չի ջնջեր կամ բռնաբարեր

բնութեան կարգը ։ Այս դէպքին մէջ ուժգնագոյն զօրութիւն մը կը գործէ հակառակ տկարագոյն զօրութեան մը ։ Երբ այս երկու զօրութեանց վրայ միայն կը խօսինք, կրնանք ըսել թէ ուժգնագոյն զօրութեան ներգործութիւնը հակառակ է տկարագոյն զօրութեան բնութեանը, բայց չենք կրնար ըսել թէ հակառակ է ընդհանուր բնութեան որ բոլոր քիմիական զօրութիւններն իր մէջ կը պարունակէ ։

Եթէ ըսուի թէ վերոյիշեալ զօրութեանց բոլորն ալ բնական օրինաց ներքեւ են, կը պատասխանենք թէ կան ուրիշ զօրութիւններ որ բնական օրինաց ներքեւ չեն, բայց եւ այնպէս նիւթական աշխարհի զօրութիւններուն հակառակ կը գործեն ։ Զորօրինակ, մարդ մը գունտ մ'ունի ձեռքը ։ Ըստ ներգործութեան ծանրութեան օրինաց այն գունտը գետին պիտի իյնար, բայց մարդը չի թողուր որ իյնայ գունտը. ընդհակառակն, կը նետէ զայն վեր օդին մէջ, եւ ցորչափ որ գունտը վեր կ'ելլէ, այնչափ բան մը կ'ընէ որ համաձայն չէ ծանրութեան օրինաց ։ Ի՞նչ զօրութիւն է որ այսպէս հակառակ կը գործէ եւ կը յաղթէ ծանրութեան օրինաց ։ Այս հակառակ ներգործող զօրութիւնը յառաջ կու գայ մարդուն կամքէն կամ միտքէն ; որ իր որոշումներուն եւ գործողութիւններուն մէջ ազատ է եւ ոչ ընդ օրինօք նիւթական աշխարհի ։ Բայց մարդ այսպէս գործելով կ'եղծանէ՞ կամ կը ջնջէ՞ կամ կը բռնաբարէ՞ ծանրութեան զօրութիւնը ։ Ոչ բնաւ ։ Այս զօրութիւնը կը շարունակէ գործել, բայց ուժգնագոյն զօրութիւն մը միջամուտ կ'ըլլայ, այնպէս որ առջի զօրութեան սովորական արդիւնքը յառաջ չի

դար ։ Միթէ այսպիսի միջամտութիւն մը հակառակ է բնութեան կամ բնական օրինաց ։ Կրնայ ըսուիլ թէ հակառակ է ծանրութեան օրինաց, կամ նիւթական աշխարհի բնութեանը, բայց չի կրնար ըսուիլ թէ հակառակ է այն բնութեան որ ազատ գործող մարդիկ եւ նիւթական գոյացութիւններ միանգամայն կը պարունակէ իր մէջ, ոչ ալ կրնայ ըսուիլ թէ այն միջամտութիւնը կ՚եղծանէ կամ կը ջնջէ կամ կը բռնաբարէ բնութեան օրէնքները ։

Արդ, եթէ մարդիկ կրնան բարձրագոյն զօրութեամբ մը այնպէս գործել որ սովորական դէպքեր չհետեւին բնական օրինաց եւ զօրութեանց ներգործութենէն, եւ այսպէս ընելով ոչ կ՚եղծանեն, ոչ կը ջնջեն եւ ոչ կը բռնաբարեն բնական օրէնքներն եւ զօրութիւնները, միթէ Աստուած չի՞ կրնար ընել նոյն բանը ։

Շատերը կը սխալին կարծելով թէ բնութիւնը բաց ի նիւթական օրէնքներէ եւ զօրութիւններէ ուրիշ օրէնքներ եւ զօրութիւններ չունի։ Այս կարծիքը սխալ է ։ Բնութիւնը նիւթական աշխարհէն զատ ուրիշ շատ բաներ կը պարունակէ ։ Կը պարունակէ մարդ որ կարողութիւն ունի նիւթական աշխարհի վրայ գործելու, եւ մինչեւ աստիճան մը կասեցնելու եւ ըստ հաճոյս ուղղելու անոր զօրութիւնները, եւ այսպիսի միջամտութիւն մը հակառակ չէ այն բնութեան որ կը պարունակէ զմարդիկ եւ նիւթը միանգամայն ։

Սակայն բնութիւնը նիւթէն եւ մարդէն զատ ուրիշ բաներ ալ կը պարունակէ ։ Եթէ բնութիւն բառն իր ընդարձակ նշանակութեամբ առնենք,, անոր կը

վերաբերի նաեւ Աստուած, վասնզի բնութիւն բառը կը նշանակէ ինչ որ է, այսինքն ինչ որ գոյ է, թէ նիւթական ըլլայ եւ թէ մտաւոր, թէ երկրային ըլլայ եւ թէ աստուածային։ Անկէ կը հետեւի թէ ինչ որ կը թուի հակառակ ըլլալ այն բնութեան որ կը պարունակէ նիւթ եւ մարդ միայն՝ կրնայ ամենեւին հակառակ չըլլալ այն բնութեան որ կը պարունակէ ամէն բան, նիւթական եւ մտաւոր, մարդկային եւ աստուածային, ժամանակաւոր եւ յաւիտենական։ Ուստի, շատ յայտնի է թէ բնական գիտութիւնք, կամ աւելի ճշդիւ խօսելով, նիւթական գիտութիւնք, չեն ցուցներ թէ Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքները հակառակ են բնութեան կամ կ'եղծանեն կամ կը ջնջեն եւ կամ կը բռնաբարեն բնութեան օրէնքներէն մին։ Վերոյիշեալ իրողութիւններէն յայտնի է թէ բնական գիտութիւնք Աւետարաններուն մէջ յիշուած հրաշքներուն վրայով բան մը չեն գիտեր, ուստի եւ չեն կրնար բան մ'ըսել ի նպաստ կամ ընդդէմ այն հրաշքներուն։

Սակայն Աւետարանները կը հաստատեն թէ ճըշմարիտ է Հին կտակարանը որուն մէջ նիւթական աշխարհի վերաբերեալ քանի մը բան պատմուած է, զորօրինակ, երկրիս ստեղծումը եւ մարդկային ազգին ծագումը։ Ուրեմն, աւելի յառաջ տանինք մեր հետազօտութիւններն եւ քննենք թէ բնական գիտութիւնք կը հերքե՞ն Սուրբ գրոց որեւիցէ մէկ մասը։

Որպէսզի կարող ըլլանք այս խնդիրն ուղիղ լուծել, հարկ է որ Սուրբ գիրքը եւ բնութիւնը միանգամայն ուղիղ մեկնենք, քանզի, եթէ մին կամ

միւսը թէեւ կը մեկնենք, թերեւս երկուքն իրարու հակասական երեւան՝ առանց ստուգիւ հակասական ըլլալու :

Նախ քան զամենայն հարկ է ուղիղ մեկնել Սուրբ գիրքը, բայց հետեւեալ պատճառներէն կը տեսնուի որ դիւրին բան չէ այս :

ա. Սուրբ գիրքը կը բաղկանայ այլեւայլ տեսակ, այսինքն պատմական, բանաստեղծական, մարգարէական եւ ուրիշ տեսակ գիրքերէ, եւ ասոնց իւրաքանչիւրը մեկնուելու է իր մասնաւոր ոճին եւ կանոններուն համաձայն. Պատմական գիրքերը մեկնուելու են պատմական գրութեանց կանոններուն համեմատ, եւ բանաստեղծական գիրքերը մեկնուելու են բանաստեղծական գրութեանց կանոններուն համաձայն : Մարդիկ շատ անգամ կը սխալին, մարգարէական կամ բանաստեղծական գիրք մը իբրեւ պատմական գիրք մը մեկնելով :

բ. Սուրբ գիրք կը խօսի շատ խորին նիւթերու եւ բարձր ճշմարտութեանց վրայ : Կը խօսի բոլոր բաներուն անստեղծ պատճառին վրայ որ է Աստուած. կը խօսի աշխարհի արարչութեան վրայ, ամենակալ եւ ամենիմաստ Աստուծոյ Նախախնամութեան վրայ, եւ մարդոց փրկութեան համար Աստուծոյ Որդւոյն մարդեղութեան վրայ : Մեր տկար կարողութիւններուն միջոցաւ դժուարաւ կրնանք հասկնալ այս բաները, ուստի եւ շատ անգամ կ'իյնանք սխալման մէջ երբ կը ջանանք զանոնք մեկնել :

գ. Սուրբ գիրք քիչ խօսքերով շատ բան կը հասկցնէ : Աստուածաշունչին բոլոր գիրքերը միանգամայն միջակ հատոր մը կը կազմեն, բայց ո՜րչափ շատ

տեղեկութիւն կը պարունակէ այն միջակ հատոր գիրքը ։ Սուրբ գիրք բաց ի վերոյիշեալ բաներէն կը պարունակէ համառօտ պատմութիւն մարդկային ազգին, աստուածային օրէնք մը, այն օրինաց բացատրութիւնը, շատ հրահանգիչ կենսագրութիւններ, կարեւոր բարոյական սկզբունքներ եւ շատ մարգարէութիւններ ։ Սուրբ գիրք, ինչպէս ըսինք, կը պատմէ Աստուածորդւոյն մարդեղութիւնը, վարդապետութիւնները եւ հրաշքները, եւ կը նկարագրէ Քրիստոնէական եկեղեցւոյ հիմնուիլն եւ տարածուիլը ։ Արդ, որովհետեւ Սուրբ գիրքն ընդարձակօրէն չի բացատրեր իր վարդապետութիւնները, այլ որչափ հնար է համառօտ կ'ամփոփէ զանոնք, զարմանալի չէ որ մարդիկ շատ անգամ կը սխալին երբ անոր իմաստը մեկնելու կ'ելլեն ։

Դ. Սուրբ գիրք գիտուն մարդոց համար գրուած փիլիսոփայական գիրք չէ, այլ հոգիները հրահանգող գիրք է որ գրուած է բոլոր ազգաց համար, թէ քաղաքակրթելոց եւ թէ ոչ քաղաքակրթելոց․ բոլոր մարդոց համար, թէ ուսելոց եւ թէ անուսից․ եւ գրուած է ոչ թէ մարդոց բնական գիտութիւն աւելցնելու՝ այլ փրկութեան ճամբան ցուցնելու ։ Ուստի, Սուրբ գիրք նիւթական աշխարհի վրայ չէր կրնար խօսիլ գիտնական ճշդութեամբ, վասնզի եթէ այսպէս ընէր, ոչ քաղաքակրթեալ եւ անուս մարդիկ կը մերժէին զայն իբրեւ դժուարիմաց կամ անստոյգ ։ Դիցուք թէ Հին կտակարանն այնպէս նկարագրէր աշխարհի ստեղծումը ինչպէս արդի աստեղագէտք կը նկարագրեն զայն, մոլորակաց կազմութեան եւ բաղադրութեան վրայ տար-

քեր տարբեր կարծիքներ յայտնելով, կամ ինչպէս արդի երկրաբանք կը նկարագրեն երկրաբանական խաւերը. Հասարակ մարդիկ, որ ոչ աստեղագիտութեան տեղեակ են եւ ոչ երկրաբանութեան, ինչպէս կրնային իբրեւ ճշմարիտ ընդունել այն նկարագրութիւնը։ Սուրբ գիրքն այնպէս հակառակ պիտի թուէր մարդոց կարծիքներուն եւ համոզումներուն, որ իսկոյն պիտի մերժէին զայն։

Ուստի, հարկ էր որ Սուրբ գիրք սխալ վարդապետութիւն մը չսորվեցնելէն զատ, ամէն ազգի եւ ամէն կարգի մարդոց դիւրահասկնալի լեզու մը գործածէր, եւ նիւթական աշխարհի երեւոյթները նկարագրէր ոչ թէ գիտնական ճշդութեամբ, այլ այնպէս ինչպէս կ՚երեւէին մարդոց։ Ուրեմն, կը սխալին անոնք որ Սուրբ գիրքը կը մեկնեն այնպէս ինչպէս կը մեկնուի աստեղագիտական կամ երկրաբանական գրուած մը, եւ կամ Սուրբ գիրքէն կը պահանջեն գիտնական խնդրոց մէջ բառի ճշդութիւն։

Ե. Ուրիշ պատճառ մ՚ալ կայ թէ ինչու համար մարդիկ շատ անգամ կը սխալին երբ կը մեկնեն Սուրբ գիրքը, եւ այն պատճառը սա է թէ մարդիկ իրենց յատուկ կարծիքները եւ տեսութիւններն ունին, եւ ուրեմն միտեալ են այնպէս մեկնել Սուրբ գիրքը որ համաձայն ըլլայ իրենց կարծեաց եւ տեսութեանցը։

Վերոյիշեալ պատճառներուն նայելով զարմանալի չէ որ մարդիկ շատ անգամ սխալ մեկնած են Սուրբ գիրքը։ Ժամանակաւ կը կարծուէր թէ Սուրբ գիրք կը սորվեցնէ որ երկիրը կը կենայ եւ արեգակը կը դառնայ. նաեւ կը կարծուէր թէ Սուրբ գիրք երկիրը

ոչ թէ գնդաձեւ կը համարի այլ հարթաձեւ : Դարձեալ կը կարծուէր թէ ըստ Սուրբ գրոց իբր 6,000 տարի է յորմէ հետէ Աստուած յոչնչէ ստեղծեց երկիրս : Բնական գիտութիւնք հերքեցին այս կարծիքները կամ մեկնութիւնները, բայց զանոնք հերքելով հերքած չեղան Սուրբ գիրքը , քանզի Սուրբ գիրք իրօք չէր սորվեցներ այն սխալ կարծիքները : Բնական գիտութիւնք հերքեցին Սուրբ գրոց տրուած սխալ մեկնութիւնները միայն : Սուրբ գրոց տրուած արդի մեկնութիւններէն ոմանք ալ կրնան ճիշդ չըլլալ , եւ բնական գիտութիւնք կրնան հերքել անոնցմէ ոմանք , բայց պէտք է գիտնալ թէ բնական գիտութիւնք Սուրբ գրոց տրուած քանի մը սխալ մեկնութիւնները հերքելով նոյն իսկ Սուրբ գիրքը հերքած չեն ըլլար :

Այս այսպէս ըլլալով կրնան ոմանք հարցնել. Միթէ կարելի չէ՞ Սուրբ գրոց որեւիցէ մեկնութիւնն ընդունել կատարեալ վստահութեամբ. եւ եթէ կարելի չէ, ապա ինչ օգուտ աստուածային յայտնութենէ մը որուն բուն նշանակութեանը վրայ չենք կրնար վստահ ըլլալ : Այս հարցման կը պատասխանենք թէ Սուրբ գրոց մէջ պատմուած գլխաւոր դէպքերն եւ կարեւոր ճշմարտութիւնները կրնան դիւրաւ մեկնուիլ : Մարդոց ժամանակաւոր եւ յաւիտենական երջանկութեանը վերաբերեալ վարդապետութիւնք այնպէս պարզ են որ տղայ մ'իսկ կրնայ հասկնալ զանոնք : Փրկութեան ճամբան այնպէս ցուցուած է որ ամենէն պարզամիտ մարդն իսկ կրնայ գտնել զայն : Դժուարահասկնալի կէտերն այնպիսի կէտեր են որոնց ուղիղ հասկցուիլը կարեւոր չէ փըր-

կութեան համար. այնպիսի բաներ են զորս Սուրբ գիրք ոչ ընդարձակօրէն այլ համառօտիւ կը պատմէ. Ընթերցողը միշտ յիշելու է թէ մարդիկ շատ անգամ սխալ կը մեկնեն Սուրբ գիրքը. եւ թէ Սուրբ գրոց մէկ սխալ մեկնութեան հերքումը բուն Սուրբ գրոց հերքում չէ. Որպէս զի բնական գիտութիւնք կարենան հերքել Սուրբ գիրքն, անոր ուղիղ մեկնութիւնը հերքելու կարող ըլլալու են:

Նաեւ նախ քան ըսել մեր թէ բնական գիտութիւնք կը հերքեն Սուրբ գիրքը, հարկ է բնութիւնն ուղիղ մեկնել. Բնութեան մէկ սխալ մեկնութիւնը կրնայ հակառակ երեւալ Սուրբ գրոց, մինչ ուղիղ մէկ մեկնութիւնը կրնայ համաձայն ըլլալ, եւ հետեւեալ իրողութիւններէն յայտնի է թէ դիւրին չէ ուղիղ մեկնել բնութիւնը:

ա. Բնութիւնը դիւրաւ չի մեկնուիր, վասն զի շատ ընդարձակ է: Ո՛րչափ դժուարին է կենդանաբանից իբր 300,000 տեսակ տարբեր անասուններու ճանչնալ, կամ տնկաբանից իբր 250,000 տեսակ տունկերը գիտնալ, կամ աստղագիտաց գիտնալ անթիւ անհամար աստղերը: Գիտուն մարդիկ նիւթական աշխարհի վերաբերեալ անբաւ տեղեկութիւններ համբարած են, բայց դեռ շատ աւելի բան կը մնայ անոնց սորվելու: Շատ գիւտեր ըրած են, բայց դեռ շատ գիւտեր ունին ընելու: Անոնց գիտութիւնը նիւթական աշխարհի վրայ անկատար է, ուստի եւ այն մեկնութիւնները զորս կու տան գիտունք նիւթական աշխարհի՝ հարկաւ անկատար են: Նիւթական աշխարհի երեւոյթներուն վրայ քանի մը բան կը սորվին եւ մեկնութիւն տալ կը ջանան այն բաներուն,

այսինքն անոնց վրայ ենթադրութիւններ կ'ընեն, բայց յետոյ ուրիշ բաներ կը սորվին, եւ շատ անգամ կը ստիպուին փոխել իրենց ենթադրութիւնները, որպէս զի կարող ըլլան համաձայնեցնել այն ենթադրութիւնները նոր սորվուած բաներուն հետ։

բ. Բնութիւնը դիւրաւ չի մեկնուիր, վասնզի բնութեան մէջ կան բաներ յորոց ոմանք այնպէս հեռու են, ոմանք ալ այնպէս մանր են որ աչքով չեն տեսնուիր։ Որչափ դժուարին է գուշել թէ ինչ բաներէ կազմուած են երկնային մարմինք որ միլիոնաւոր մղոններ հեռու են մենէ։ Որչափ դժուարին է ցուցնել թէ ինչպէս կը գոյանան ճճիք որք այնչափ փոքր են որ կաթիլ մը ջրոյ մէջ անոնցմէ հազարաւորներ կրնան պարունակիլ։

գ. Բնութիւնը մեկնել դժուարին է, քանզի զայն մեկնելու համար պէտք է գիտնալ նիւթական աշխարհի ոչ միայն այժմու այլ եւ անցեալ վիճակը, եւ որչափ դժուարին է երկրաբանից գուշել ճշդիւ թէրեւս միլիոնաւոր տարիներ առաջ կատարուած դիպաց ժամանակին եւ կարգը. դէպքեր որոնց վրայ մենք այնչափ բան միայն գիտենք, որչափ երկրիս խաւերն անկատար կերպով մեզի կ'իմացնեն։

դ. Բնութիւնը մեկնել դժուարին է նաեւ վասնզի բնութիւնն ալ իր աքանչելիքն ունի։ Անոր զօրութիւններէն ոմանք, զորօրինակ ելեքտրական եւ կալուանեան զօրութիւնք, այնպէս նուրբ են որ չենք կրնար միշտ գիտել եւ ստուգել անոնց գործողութիւնները. ուրիշ զօրութիւնք, զորօրինակ կենսական զօրութիւնք, այնպէս գաղտնի են որ չենք կրնար հասկնալ եւ հասկցնել անոնց գործողութիւնները։

*Ե. Ինչպէս երբեմն դժուարին է աստուածաբանից ուղիղ մեկնել Սուրբ գիրքն իրենց նախապաշարմանց պատճառաւ, նոյնպէս երբեմն դժուարին է բնագիտաց ուղիղ մեկնել բնութիւնը, վասնզի անոնք ալ ունին նախապաշարումներ ։ Ունին յատուկ կարծիքներ եւ ենթադրութիւններ նիւթական աշխարհի վրայ, եւ միտեալ են այնպէս մեկնել բնութիւնը որ իրենց ենթադրութիւնները հաստատուին։ Թերեւս նպատակ չունին խաբել ուրիշները կամ զիրենք, բայց յայտնի է որ չեն կրնար միշտ պահել զիրենք իրենց նախապաշարումներէն, ուստի եւ շատ անգամ ուղիղ չեն մեկներ բնութիւնը ։*

*Ապա զարմանք չէ որ բնագէտք շատ անգամ սխալած են նիւթական աշխարհը մեկնելով ։ Արդարեւ բնագէտք աւելի եւ մեծագոյն սխալներ ըրած են բնութիւնը մեկնելով, քան աստուածաբանք Սուրբ գիրքը մեկնելով ։ Զարմանալի չէ այս, վասն զի Սուրբ գիրք աւելի բացայայտ է քան նիւթական աշխարհը ։ Եթէ մէկը բնական գիտութեանց պատմութիւնը կարդայ, պիտի զարմանայ տեսնելով թէ գիտունք որչափ շատ եւ մեծ սխալներ ըրած են մեկնելով նիւթական աշխարհը ։ Պիտի զարմանայ տեսնելով պէս պէս գիտնական ենթադրութիւններ կամ կարծիքներ զորս ժամանակաւ գիտունք ընդունած էին իբրեւ հաւանական, բայց յետոյ աւելի աղէկ քննելով իբրեւ սխալ մերժեցին ։ Հաւատարմութեան արժանի անձ մը կը պատմէ թէ 1808ին Գաղիոյ գիտութեանց ճեմարանը 80 այլեւայլ երկրաբանական դրութիւններ հաշուեց, բայց այս 80 դրութեանց եւ ոչ մին հիմա կ'ընդունուի իբրեւ*

ճշմարիտ ։ Այս ինչ դարուն բնագէտք իբրեւ անհիմն կը հերքեն նախորդ դարուն ենթադրութեանց եւ կարծեաց, եթէ ոչ ամէնը, գէթ մեծագոյն մասը ։ ԺԹ. դարուն բնագէտք ԺԸ. դարուն գիտնական կարծեաց շատը կը մերժեն. ապա ինչպէս կրնանք ըսել թէ Ի. դարուն գիտունք ալ ԺԹ. դարուն գիտնոց կարծիքները պիտի չմերժեն ։

Յայտնի է թէ Աստուածաշունչը չի կրնար համաձայնիլ բոլոր դարերու գիտնական կարծեաց հետ։ Եթէ ԺԸ. դարուն բոլոր գիտնական կարծեաց հետ համաձայն ըլլար, ԺԹ. դարուն բոլոր գիտնական կարծեաց հետ համաձայն չէր կրնար ըլլալ. եթէ ԺԹ. դարուն բոլոր գիտնական կարծեաց հետ համաձայն ըլլայ, հաւանական չէ թէ Ի. դարուն բոլոր գիտնական կարծեաց հետ ալ համաձայն պիտի ըլլայ ։

Այս դարուն իրարու հակառակ գիտնական կարծիքներէն յայտնի է նաեւ թէ բնագէտք շատ անգամ կը սխալին նիւթական աշխարհը մեկնելով ։ Շատ կը սխալի ով որ կը կարծէ թէ բոլոր բնագէտք ամէն գիտնական խնդրոյ վրայ միեւնոյն կարծիքն ունին, քանզի գիտունք մեծապէս կը տարբերին իրարմէ նոյն իսկ կարեւոր եւ հիմնական խնդրոց մէջ. զոր օրինակ, թէ ինչ է նիւթը կամ ինչ է զօրութիւնը։ Ուրիշ օրինակ մը բերենք. կան գիտունք, ինչպէս Տարուին եւ Պիւխնէր, որ յանուն բնական գիտութեանց կ'ըսեն թէ բոլոր տունկերը, անասունները եւ մարդիկ բնական զօրութեանց ազդեցութեամբ զարգանալով յառաջ եկած են մէկ սերմէ եւ կամ մէկ նախնական ճճիէ ։ Ուրիշ գիտունք, ինչպէս,

Էկուալդ, Տոլըն, Հիւ Միլլըր, Քրեմլիէ, Ցլուրէնս, Գոտէ եւ այլք կը պնդեն նոյնպէս յանուն բնական գիտութեանց թէ այն բնական զարգացումն անկարելի է, եւ կան բուսաբանական եւ երկրաբանական փաստեր վերոյիշեալ դրութեան դէմ ։ Արդ այս երկու կարծեաց կամ ենթադրութեանց որն եւ ուղիղ ըլլայ, յայտնի է թէ այս երկու դասու գիտնոց մէկը կամ միւսը սխալած է. երկուքն ալ ուղիղ չեն կրնար ըլլալ, ուստի եւ անհնար է որ Աստուածաշունչը երկուքին հետ ալ միանգամայն համաձայն ըլլայ ։

Նաեւ բնագէտք շատ անգամ կը փոխեն իրենց կարծիքը ։ Երբ 1844 ին Տարուինի դրութեան աւելի կամ նուազ նման դրութիւն մը հրատարակուեցաւ «Հետք արարչագործութեան» անուն գրքի մը մէջ, գրեթէ բոլոր բնագէտք հերքեցին այն դրութիւնն իբրեւ անհիմն. բայց հիմա ոմանք իրենց կարծիքը փոխած են, եւ իբրեւ հաւանական կ'ընդունին այն դրութիւնը ։ Յայտնի է թէ բնութեան տրուած այս մեկնութիւնները սխալ էին կամ 1844ին կամ 1879ին, եւ կարելի չէր Աստուածաշունչին համաձայն ըլլալ թէ առաջ եւ թէ ետքը տրուած մեկնութեանց, որ հակասական են ։ Սըր Չարլս Լայէլ, ամենէն երեւելի երկրաբաններէն մին, իր «Սկզբունք երկրաբանութեան» կոչուած գիրքը շատ անգամ տպագրել տուած է, եւ այս այլեւայլ տպագրութեանց մէջ տարբեր գիտնական կարծիք եւ ենթադրութիւններ յառաջ բերած եւ պաշտպանած է ։ Լայէլ հարկաւ սխալած է իր կարծիքներէն ոմանց մէջ, քանզի իրարու հակասական են ։

Թերեւս հարցուի. Միթէ անկարելի է առաջ բան

մը գիտնալ բնագիտաց հետազօտութիւններէն ։ Ոչ երբէք ։ Բնագիտաց հետազօտութեանց միջոցաւ ստուգած ենք նիւթական աշխարհի վրայ շատ բաներ, որք այնչափ շատ փաստերով ապացուցուած են որ բնաւ տարակոյս չկայ անոնց ստուգութեանը, եւ բոլոր գիտունք իբրեւ ճշմարիտ ընդունած են զանոնք ։ Ամէնքը միաբերան կ՚ըսեն. «Այո, այս այսպէս է, ուղիղ է այս մեկնութիւնը եւ ընդունելու է իբրեւ ճշմարիտ։» Եթէ նիւթական աշխարհի վրայ այսպիսի ուղիղ մեկնութիւններ, զորս բնագէտք միաբերան կ՚ընդունին եւ կը հաստատեն, կը հերքեն Սուրբ գրոց մէկ ուղիղ մեկնութիւնը, անատեն Սուրբ գիրք մերժելի է իբրեւ անհաւատալի ։ Բայց կրնան ըլլալ գիտնական կարծիք կամ ենթադրութիւններ որ այսպէս բաւական ապացոյցներով հաստատուած եւ բնագէտներէն առ հասարակ ընդունուած չըլլալով հակառակ թուին Սուրբ գրոց վարդապետութիւններուն . այս տեսակ կարծիքներ կամ ենթադրութիւններ չեն կրնար հերքել Սուրբ գիրքը մինչեւ որ բնագէտներուն ընդհանուր վկայութեամբը հաստատուի թէ այն մեկնութիւնները ճշմարիտ եւ ընդունելի են ։

Քննենք, ուրեմն, թէ բնութեան վրայ կա՞յ ուղիղ մեկնութիւն մը որ կը հերքէ Սուրբ գրոց որեւիցէ մէկ ուղիղ մեկնութիւնը։ Սուրբ գրոց մը խօսքին համար կրնա՞յ ըսուիլ թէ կը հերքուի բնական գիտութիւններէն ։ Այսպիսի բան մը կրնայ ըսուիլ միայն այն խօսքերուն համար որ նիւթական աշխարհի կը վերաբերին , եւ որ գլխաւորապէս կը գտնուին Ծննդոց Ա. գլխոյն մէջ յիշուած արար-

չագործութեան պատմութեան մէջ։ Քննենք, ուրեմն, այն գլխոյն մէջ ըսուածները, եւ տեսնենք թէ կա՞յ բան մը որ հերքուած է բնական գիտութիւններէն։

Գրեթէ բոլոր հին կրօնքները, զորօրինակ, Ետրուրացւոց, Եգիպտացւոց, Փիւնիկեցւոց, Բաբելացւոց եւ Սքանտինաւեան ազգաց կրօնքներն, ինչպէս նաեւ գլխաւոր կրօնքներէն ոմանք որ դեռ կան, զորօրինակ Պուտտայականութիւնը, Պրահմինականութիւնը, կրակապաշտութիւնը կը նկարագրեն աշխարհիս ստեղծումը։ Յիշեալ կրօնքներուն սրբազան գիրքերը կը պարունակեն շատ մը աստեղագիտական, աշխարհագրական եւ երկրաբանական տեղեկութիւններ իբրեւ կարեւոր մասունք այն կրօնից, բայց այն տեղեկութիւններն այնպէս լի են սխալներով որ ուսեալ մարդ մը չի կրնար ընդունել զանոնք իբրեւ ճշմարիտ։ Պրահմինականութիւնը կը սորվեցնէ թէ երկրիս տրամագիծը հազարաւոր միլիոն մղոն երկայն է, եւ թէ կան շատ ովկիանոսներ որոնցմէ մին աղի ջուրէ, միւսը շաքարի եղեգան հիւթէ, ուրիշ մը արբեցուցիչ ըմպելիքէ, ուրիշ մը հալած կարագէ եւ ուրիշ մը մածունէ է։ Ըստ վարդապետութեան Պրահմինականութեան բոլոր երկնային մարմիններէն արեգակը մերձաւորագոյնն է երկրիս, լուսինն արեգակէն կրկնապատիկ աւելի հեռի է երկրէս, եւ մոլորակներն ամենէն հեռաւոր են։ Միթէ այսպիսի սխալներ կա՞ն Ծննդոց գրքին մէջ։

Պուտտայականութիւնը կը սորվեցնէ թէ արեգական տրամագիծը 400 մղոն է, եւ թէ կան ձուկեր որ հազարաւոր մղոն երկայն են. կան ծառեր որ 400

մղոն բարձրութիւն ունին, կան առուծներ որ կրնան երգել եւ կրնան մէկ ոստումով երկու մղոն տեղ ցատկել։ Միթէ այսպիսի սխալներ կը գտնուի՞ն Ծնընդոց գրքին մէջ։

Հին Տեւտոնեանց կրօնքին վարդապետութեանց նայելով Ոտին չաստուածն եւ անոր եղբայրները սպաննեցին Իմիր անուն առաջին մեծ հսկան եւ կազմեցին անոր արիւնէն ծովերը, գետերը եւ լճերը, անոր ոսկրներէն լեռները, անոր ատամունքէն եւ ծնօտներէն աստղերը, եւ անոր ուղեղէն զոր նետեցին օդին մէջ, շինուեցան ամպերը։ Միթէ այսպիսի սխալներ կը գտնուի՞ն Սուրբ գրոց մէջ։

Արդ, գանք սա խնդրոյն թէ Ծննդոց Ա. գլխոյն մէջ ըսուածները հերքուա՞ծ են բնական գիտութիւններէն։

Նախ, պարտինք դիտել արարչագործութեան վրայ Սուրբ գրոց նկարագրութեան համառօտութիւնը։ Բոլոր այս նկարագրութիւնը կը գտնուի Ծննդոց գրքին առաջին գլխոյն առաջին 27 համարներուն եւ երկրորդ գլխոյն եօթներորդ համարին մէջ։ Սուրբ գրոց աստեղագիտական, երկրաբանական եւ կենդանաբանական բոլոր վարդապետութիւնները կը պարունակուին յիշեալ 28 համարներուն մէջ միայն, որ լրագրի մը մէկ սիւնակէն աւելի տեղ չեն բռներ։ Նոյն իսկ այս նկարագրութեան համառօտութենէն յայտնի չէ՞ որ Սուրբ գրոց նպատակն աստեղագիտութիւն կամ երկրաբանութիւն սորվեցընել չէր։

Երկրորդ, պարտինք նկատել եղանակն որով նկարագրուած է Սուրբ գրոց մէջ բուսոց, անասնոց եւ

մարդուն ստեղծումը ։ Սուրբ գիրք գրեթէ բան մը չըսեր կերպին վրայ որով ստեղծուեցան անոնք, այլ ամենահամառօտ կերպով կը յիշէ արդիւնքը միայն ։ Սուրբ գրոց նկարագրութեան ոճէն յայտնի է թէ այս գիրքին նպատակը աստեղագիտութիւն կամ երկրաբանութիւն սորվեցնել չէր ։

Երրորդ, պարտինք դիտել թէ այս նկարագրութեան մէջ բոլոր ըսուածները, նոյն իսկ անոնք որ նիւթական իրաց կը վերաբերին, բարոյական եւ հոգեւոր նշանակութիւն ունին ։ Յայտնի է թէ Ծննդոց գիրքին առաջին գլխոյն գլխաւոր նպատակն էր սորվեցնել սա բարձր բարոյական եւ հոգեւոր ինչպէս նաեւ փիլիսոփայական ճշմարտութիւնը, թէ Աստուած ստեղծեց աշխարհ եւ որ ինչ յաշխարհի է, թէ Աստուած կը տիրէ ամենայնի եւ ամէն բան անկէ կախում ունի, եւ թէ ամէն բան անոր հպատակ է ։

Քննենք, ուրեմն, այն գլխոյն մէջ ըսուածները, եւ տեսնենք թէ կայ բան մը որ հերքուած է բնական գիտութիւններէն ։

ա. Աշխարհիս արդի կարգ ու կազմածին վրայ ի՞նչ կը սորվեցնէ Աստուածաշունչը։

Կը սորվեցնէ թէ տնկոց եւ անասնոց եւ մարդոց արդի տեսակները կամ ցեղերը չկային ի յաւիտենից, եւ թէ իրարմէ յառաջ եկած չեն անհուն յաջորդութեամբ ։

Բնական գիտութիւնք կը հերքե՞ն այս վարդապետութիւնը ։

Իբր դար մը առաջ Հըթըն անուն երեւելի երկրաբան մը ըսաւ. «Ես ոչ սկզբնաւորութեան հետք կը գտնեմ բնութեան մէջ, եւ ոչ կատարածի նշմարանք ։»

Բայց վերջին հարիւր տարուան մէջ երկրաբանական հետազօտութիւններով գտնուեցան հետքեր որ ցուցուցին թէ աշխարհս սկիզբ ունէր: Երկրաբանութիւնը հիմա բացայայտ կը ցուցնէ թէ աշխարհիս արդի կարգն ու կազմուածն ի յաւիտենից չէ, այսինքն էր երբեմն որ տնկոց եւ անասնոց եւ մարդոց այժմու տեսակներէն եւ ոչ մին կար: Երեւելի երկրաբանը Միլլըր «Ապառաժից վկայութիւնը» կոչուած գրքին մէջ կ'ըսէ. «Ժամանակաւ շնչաւոր եւ բոյս չկար մեր մոլորակին վրայ, եւ երկրիս կեդրոնէն մինչեւ անոր երեսը մեռեալ նիւթ միայն էր,» այսինքն նիւթ առանց կենդանի սերման: Ամերիկայի Ամհէրստ գոլէճ կոչուած վարժարանին երկրաբանութեան դասատուն, Հիչգոք, կ'ըսէ. «Երկրաբանութիւնը կը սորվեցնէ թէ էր երբեմն որ երկիրս էր իբրեւ հալած նիւթոյ գանգուած մը, ուստի աչքառ է որ բոլոր շնչաւորք եւ բոյսք որ հիմա կան երկրիս երեսին վրայ եւ բոլոր այն բաները որ անոր ապառաժուտ խաւերուն մէջ թաղուած են, սկիզբ ունեցած ըլլան, այսինքն ստեղծուած ըլլան:» Ուրեմն յայտնի է թէ երկրաբանութիւնն այս մասին կը հաստատէ Սուրբ գիրքը:

բ. Ի՞նչ կը սորվեցնէ Աստուածաշունչը սկզբնական նիւթին վրայ որմէ կազմուեցան երկինք եւ երկիր իր բոյսերովը ու շնչաւորներովը:

Աստուածաշունչը (Ծնն. Ա. 1) կը սորվեցնէ թէ Աստուած ստեղծեց նիւթը, ուստի եւ նիւթն ալ յաւիտենական չէ:

Բնական գիտութիւնք կը հերքեն այս վարդապետութիւնը, եւ կը ցուցնեն թէ նիւթը յաւի-

*տեսական է։ Ոչ. Այն բնագէտք անգամ որ, ինչպէս Հէրպըրդ Սբենսէր, աշխարհի ստեղծման նկատմամբ Աստուածաշունչին պատմութիւնը չեն ընդունիր, կ'ըսեն թէ բնական գիտութիւնք չեն ապացուցաներ թէ նիւթն որմէ կազմուած է աշխարհս՝ յաւիտենական է։ Բնագիտաց մէջ երեւելիները կը խոստովանին թէ նիւթին սկզբնաւորութիւնը քննել եւ որոշել բնական գիտութեանց գործը չէ։ Գաղիացի անուանի բնագէտը Գոնդ, որ հիմնադիր է դրական փիլիսոփայութեան, կ'ըսէ. «Նիւթոյ սկիզբը փնտռել ընդունայն է. մարդիկ բաւական համարելու են նիւթոյ երեւոյթները միայն քննել։» Թէ նիւթն ի սկզբան ուստի յառաջ եկաւ, բնագէտք այս խնդիրը չեն կրնար լուծել։*

*Հըդդըն երկրաբանը կ'ըսէ թէ նիւթոյ սկզբան խնդիրը երկրաբանութեան չի վերաբերիր. երկրաբանութիւնը բաւական համարելու է նիւթական աշխարհի երեւոյթները քննել, եւ մեկնել այն երեւոյթները բնական օրինօք։*

*Ուրիշ երկրաբան մը, Լայէլ, երկրաբանութիւնը կը սահմանէ այսպէս. «Գիտութիւն որ կը քննէ այն փոփոխութիւնները որ հետզհետէ կատարուած են երկրիս գործարանաւոր եւ անգործարան էակաց մէջ։» Լայէլ այս ճիշդ սահմանը տալով երկրաբանութեան, դուրս կը հանէ նիւթոյ սկզբան խնդիրն իբրեւ այնպիսի խնդիր մը զոր երկրաբանութիւնը կարող չէ հետազօտել եւ որոշել։*

*Անգղիացի փիլիսոփան, Հէրպըրդ Սբենսէր, կը խոստովանի թէ բնական գիտութիւնք անձեռնհաս են որոշ բան մը ըսել նիւթոյ սկզբան վրայ։ Ձըն-*

դուներ թէ նիւթը յաւիտենական է, այլ կ'ըսէ թէ պարտի պատճառ մը ունենալ, բայց թէ ինչ է այն պատճառը չենք գիտեր ։

Ուրեմն, մինչ բնագէտք իսկ կը վկայեն թէ բնական գիտութիւնք չեն կրնար որոշ բան մը ըսել նիւթոյ վրայ, յայտնի է թէ այս գիտութիւնք չեն հերքեր Աստուածաշունչը որ կը սորվեցնէ թէ Աստուած ստեղծեց նիւթը ։

գ. Աստուածաշունչն ի՞նչ կը սորվեցնէ նկատմամբ եղանակին որով Աստուած ստեղծեց երկինք և երկիր, տունկերն և շնչաւորներն սկզբնական նիւթէն ։

Աստուածաշունչը ճշդիւ չի նկարագրեր թէ Աստուած ինչ եղանակաւ ստեղծեց զանոնք ։ Երկնից ստեղծմանը վրայ կ'ըսէ. «Սկիզբէն Աստուած երկինքն ու երկիրը ստեղծեց.» բայց թէ ինչպէս եւ ինչ կերպով ստեղծեց՝ չըսեր։ «Աստուած,» կ'ըսէ, «ըսաւ. Լոյս ըլլայ, ու լոյս եղաւ.» «Եւ Աստուած երկու մեծ լուսաւորներն ըրաւ,» բայց չըսեր թէ ինչպէս ըրաւ զանոնք ։ Բուսոց ստեղծման վրայ սա միայն կ'ըսէ. «Երկիրը կանանչ խոտ, իր տեսակին պէս սերմ տուող խոտ, եւ իր տեսակին պէս սերմ ունեցող պտղաբեր ծառ հանեց։» Ծովային եւ ցամաքային անասնոց ստեղծման համար ալ կ'ըսէ թէ Ջուրերը կենդանութեան շունչ ունեցող շատ սողուններ հանեցին, եւ երկիրը հանեց շնչաւոր կենդանի իր տեսակին պէս, անասուններ, սողուններ ու երկրի գազաններ իրենց տեսակին պէս։ Մարդուն ըստեղծման համար ալ կ'ըսէ թէ Աստուած զմարդ ստեղծեց իր պատկերին եւ նմանութեանը պէս, թէ հողէն շինեց մարդը եւ անոր ռնգացը փչեց

կենդանութեան չունի, այսինքն թէ Աստուած մարդուն մարմինն երկրին հողէն ըրաւ, եւ տուաւ անոր բարոյական եւ իմացական բնութիւն որ նմանութիւն ունի Աստուծոյ բնութեանը։ Բայց գալով մասնաւոր եղանակին եւ գործողութեանց որովք Աստուած ստեղծեց տունկերը, անասունները եւ զմարդ, Սուրբ գիրք բան մը չըսեր, եւ չի նկարագրեր թէ անոնց ստեղծման գործողութիւնք քիչ թէ շատ, այսինքն թէ խառն էին, եւ, ինչպէս քիչ մը ետքը պիտի տեսնենք, Սուրբ գիրք ճշգիւ չի ցուցներ թէ որչափ ժամանակի մէջ ստեղծուեցան անոնք։ Ոմանց կողմանէ Սուրբ գրոց տրուած մեկնութեանց նայելով, Աստուածաշունչը շատ բան կ'ըսէ ստեղծագործութեան վրայ. բայց այնպէս չէ։ Բնագէտք հիմա քննելու վրայ են սա խնդիրը թէ Աստուած բուն ինչ կերպով ստեղծեց տունկերն, անասունները եւ զմարդ։ Դեռ միաբան չեն այս խնդրոյն վրայ, բայց վերջապէս ինչ որ ալ ապացուցանեն, արարչագործութեան բուն եւ մասնաւոր եղանակին վրայ Սուրբ գիրք որոշ բան մը ըսած չէ։

**Գ. Աստուածաշունչն ի՞նչ կը սորվեցնէ նկատմամբ ժամանակին յորում Աստուած ստեղծեց սկզբնական նիւթը որմէ յետոյ երկիրս պատրաստուեցաւ մարդկային ազգին բնակութեան համար։**

Սուրբ գիրք սկզբնական նիւթոյն ստեղծման ժամանակը չի յայտներ, միայն կ'ըսէ. «Սկիզբէն Աստուած երկինքն ու երկիրը ստեղծեց։» Բայց թէ երբ էր այս սկիզբը՝ ատոր վրայ բան մը չըսեր։ Ծննդոց Ա. գլխոյն 1 համարին մէջ կ'ըսուի թէ Աստուած սկիզբէն ստեղծեց երկիրս յոչնչէ, եւ նոյն գլխոյն միւսեալ համարներուն մէջ կը ցուցուի թէ երկիրս ինչ-

24 ժամերէ բաղկացեալ 6 ժամանակի միջոցներու մէջ, եւ գիտուններէն ոմանք կ'ըսեն թէ, եթէ ընդունինք որ ամբաւ ժամանակ անցաւ նիւթոյ առաջին ստեղծման եւ մարդոց բնակութեան համար երկրիս յարդարման մէջտեղ, այն ատեն երկրաբանութիւնը հակառակ չի գար Ծննդոց խօսքին ընդունած սա մեկնութեան թէ երկիրս մէն մի 24 ժամերէ բաղկացեալ 6 աւուրց մէջ պատրաստուեցաւ մարդոց բնակութեան համար: Երկրաբանութեան ուսուցիչը Հիչգոք կ'ըսէ. «Այս մեկնութիւնը Ծննդոց գրքին եւ երկրաբանութեան մէջտեղ բոլոր հակառակութիւնը կը վերցնէ. Ըստ այսմ մեկնութեան ամբաւ ժամանակ կար երկրիս բոլոր խաւերուն կազմութեանը:»

Բայց ոմանք կ'ըսեն թէ այս մեկնութիւնը համաձայն չէ Ծննդոց գրքին որ կ'ըսէ թէ երկնային մարմինք ստեղծուեցան մէն մի 24 ժամէ բաղկացեալ երեք օրերու մէջ նախ քան զստեղծումն մարդոյ, եւ ասի անհաւատալի է: Մր. Հիչգոք այս առարկութեան սա պատասխանը կու տայ. Ծննդոց գիրքը չըսեր թէ արեգակը, լուսին եւ աստեղք չորրորդ օրը ստեղծուեցան: Բնագրին, այսինքն Եբրայեցերէնի մէջ, բուն ստեղծել նշանակող բառը որ Ա. գլխոյն առաջին համարին մէջ գործածուած է՝ նոյն գլխոյն 16 երորդ համարին մէջ գործածուած չէ, այլ ուրիշ բառ մը գործածուած է որ ընել կամ շինել միայն կը նշանակէ, եւ այս բառին միտքը կ'որոշուի յաջորդ խօսքէն ուր կ'ըսուի. «Աստուած երկնից հաստատութեան մէջ դրաւ զանոնք որ երկրի վրայ լոյս տան:» Ըստ մեկնութեան Մր. Հիչգոքի, արեգակը,

լուսինն ու աստեղք թէեւ շատ առաջ ստեղծուած էին, բայց յառաջ քան չորրորդ օրը ծագած չէին երկրիս վրայ ի պատճառս թանձրամած շոգւոյն կամ մառախուղին՝ որ կը պատէր զերկիր։ Չորրորդ օրը միայն սկսան երեւիլ եւ Սուրբ գիրք ստեղծագործութիւնը կը պատմէ ոչ թէ գիտնական ճշդութեամբ այլ այնպէս ինչպէս կ'երեւէր երկրիս վրայ ։

Իսկ անոնց որ կ'առարկեն թէ Ծննդոց Ա. գլխոյն մէջ երեկոյ եւ առաւօտ յիշուած են յառաջ քան չորրորդ օրն, պատասխան կը տրուի թէ, թէպէտ մինչեւ չորրորդ օր արեգակը, լուսինն եւ աստեղք երեւած չէին երկրիս վրայ, սակայն անոնց աղօտ լոյսը կը թափանցէր թանձրամած մառախուղէն, եւ որովհետեւ երկիր ի սկզբանէ կը հոլովէր իր առանցքին վրայ, տիւ եւ գիշեր կրնային ըստ բաւականին որոշուիլ ։

Մենք չենք ըսեր թէ Ծննդոց Ա. գլխոյն տրուած այս մեկնութիւնն ուղիղ է. ոչ ալ, եթէ ուղիղ է, կրնանք ճշդիւ ապացուցանել թէ կատարելապէս համաձայն է երկրաբանութեան եւ աստեղագիտութեան նուրբ եւ մանր տեղեկութիւններուն ։ Բայց մէջ կը բերենք զայն իբրեւ կարելի միջոց մը որով Ծննդոց մէջ ըսուածը կրնայ համաձայնիլ երկրաբանութեան։ Մէջ կը բերենք զայն նաեւ իբրեւ վկայութիւն երկրաբանութեան երեւելի ուսուցչի մը, թէ երկրաբանութիւնը չի հերքեր Ծննդոց մէջ ըսուածը, եւ թէ կան կարելի եւ հաւանական մեկնութիւններ, ըստ որոց այն երկուքն իրարու հետ կը միաբանին։

Կայ սակայն Ծննդոց վրայ ուրիշ եւ հաւանականագոյն մեկնութիւն մը որ շատ գիտուններէ ընդուն-

ուած է ։ Այս մեկնութեան նայելով՝ օր թարգմանուած Եբրայեցերէն բառը միշտ չի նշանակեր 24 ժամերէ բաղկացեալ միջոց ժամանակի, այլ երբեմն կը նշանակէ նաեւ անորոշ ժամանակ մը ։ Յայտնի է թէ օր թարգմանուած բառը Սուրբ գրոց Եբրայեցերէն բնագրին մէջ գործածուած է ժամանակի այլեւայլ երկայն միջոցներ նշանակելու ։ Այն բառը երբեմն կը նշանակէ բնական օր կամ տիւ, այսինքն այն միջոցը որուն մէջ արեգակը անգամ մը հորիզոնէն վեր է ։ Երբեմն ալ կը նշանակէ 24 ժամու միջոց մը, նաեւ երբեմն ամբողջ տարի ։ Ծննդոց Բ. 4 համարին մէջ այն բառը կը նշանակէ բոլոր այն միջոցը որուն մէջ Աստուած ստեղծեց երկինքն ու երկիրը ։ Երբեմն կը նշանակէ նաեւ անորոշ ժամանակ մը, ինչպէս, Երեմ. ԽԶ. 21 եւ Աբդ. 13 համարներուն մէջ կորստեան օրը, Ա. Կորնթ. Զ. 2 համարին մէջ փրկութեան օրը, Յովհ. Ը. 56 համարին մէջ Քրիստոսի օրը, Ես. ԺԳ. 6 համարին մէջ Տէրոջը օրը, Մատթ. Ժ. 15 եւ Բ Պետ. Բ. 9 համարներուն մէջ դատաստանին օրը ։ Այս օրինակներէն յայտնի է որ Ծննդոց Ա. գլխոյն մէջ օր թարգմանուած Եբրայեցերէն բառը կրնայ նշանակել ոչ միայն 24 ժամերէ բաղկացեալ օր, այլ եւ անորոշ միջոց ժամանակի, որ կրնայ միլիոնաւոր տարիներ ըլլալ ։ Այս մեկնութիւնը տուած են Օգոստինոս եւ ուրիշ Քրիստոնեայ մատենագիրք առաջին դարուց ։ Ըստ այսմ մեկնութեան Ծննդոց առաջին գլուխը կրնայ համառօտիւ նկարագրած ըլլալ աշխարհիս ստեղծման միջոցներն որչափ եւ երկայն եղած ըլլան, եւ եթէ այս մեկնութիւնը շիտակ է, անատեն ընդհանուր համաձայնութիւն կը տեսնուի

*Ծննդոց Ա. գլխոյն մէջ ըսուածներուն եւ երկրաբանութեան մէջտեղ ։ Ձենք ըսեր թէ Ծննդոց գիրքին առաջին գլխոյն մէջ յիշուած ստեղծագործութեան համառօտ պատմութեան եւ երկրաբանութեան մանր բացատրութիւններուն մէջտեղ բառական համաձայնութիւն կայ, վասն զի Աստուածաշունչին պատմութիւնը, ինչպէս յառաջագոյն ըսինք, երկրաբանական ճշմարտութիւններ սորվեցնելու նպատակաւ գրուած չէ, բայց իրաւունք ունինք ըսելու թէ զարմանալի ընդհանուր համաձայնութիւն մը կայ Աստուածաշունչին եւ երկրաբանութեան մէջտեղ ։*

*Մր. Տէյնա, Եէյլ վարժարանին ուսուցիչն, որուն գիտնական գիրքերը մեծ պատուով ընդունուած են Գերմանական համալսարաններուն մէջ, կ'ըսէ. Ստեղծագործութեան կարգն ըստ Աստուածաշունչին, ինչպէս կը պատմուի Ծննդոց առաջին գլխոյն մէջ, կը բաժնուի երկու մեծ շրջանի կամ միջոց ժամանակի, այսինքն, անօրգանական էակաց ստեղծման ժամանակ, եւ օրգանաւոր էակաց ստեղծման ժամանակ. եւ այս երկու բաժանմունք ունին իրենց երկրորդական բաժանումները ։*

*Ա. Անօրգանական էակաց ստեղծման ժամանակը ։*

*1. Օր — Նախնական (արեւուն ստեղծուելէն առաջ եղած) լոյսը կը ստեղծուի ։*

*2. Օր — Երկիրը կը բաժնուի զանի շրջապատող հեղուկէն, այսինքն երկիրս կը բաժնուի եւ կը զատուի տիեզերաց մնացեալ մասերէն ։*

*3. Օր — ա. Ցամաքը կը բաժնուի ջուրերէն ։ բ. Բոյսք կը ստեղծուին ։*

Բ. Գործարանաւոր էակաց ստեղծման ժամանակը ։

4. Օր — Լոյս կը ծագի արեգակէն ։

5. Օր — Ստորին կարգի անասունք կը ստեղծուին։

6. Օր — ա. Ցամաքային անասունք կը ստեղծուին։

բ. Մարդը կը ստեղծուի ։

Մր. Տէյնա կ'ըսէ նաեւ թէ Աստուածաշունչին մէջ յիշուած ստեղծագործութեան պատմութիւնը ճշմարիտ եւ խորին փիլիսոփայական է, եւ թէ այն պատմութեան եւ երկրաբանական նորագոյն հետազօտութեանց հետեւանաց մէջտեղ այնպիսի զարմանալի ընդհանուր համաձայնութիւն մը կայ, որ հարկ է ըսել թէ այն պատմութիւնն Աստուծմէ ներշնչեալ է ։ Մր. Տէյնա կ'ըսէ նաեւ թէ ոչ ներշնչեալ մարդու մը կարելի չէր այնչափ դարեր առաջ շարադրել ստեղծագործութեան պատմութիւն մը որ այնպէս ճշդիւ համաձայն կըլլայ արդի գիտութեանց տեղեկութիւններուն ։ Բնական գիտութեանց վերոյիշեալ անուանի ուսուցիչը կը վերջացնէ սա աղուոր խօսքերով. «Սուրբ գրոց առաջին էջն ինքնին ապացոյց է անոր աստուածային ծագմանը ։»

Նաեւ բնական գիտութեանց ուրիշ ուսուցիչ մը, Մ. Կիւյոյ, կ'ըսէ թէ ոչ ներշնչեալ մարդ մը չի կրնար գրած ըլլալ Ծննդոց գիրքին առաջին գլուխը, վասն զի այն գլուխը շատ սքանչելի կերպով կը համաձայնի գիտնական նորագոյն հետազօտութեանց հետ ։

Անգղիացի երեւելի երկրաբանը Մր. Հիւ Միլըր «Ապառաժից վկայութիւնը» կոչուած գիրքին մէջ կը ցուցնէ Ծննդոց առաջին գլխոյն համառօտ պատմութեանն ու երկրաբանութեան մէջտեղ զարմանալի

համաձայնութիւնը։ Մր. Միլլըրի կարծեացն նայելով, Մովսէս իր տեղեկութիւնն առաւ Աստուծմէ տեսիլքով, եւ ապա նկարագրեց արարչագործութեան մեծ տեսարանը որ անոր առջեւ բացուած էր այն տեսլեան մէջ։ Բայց Մովսէս ստեղծագործութեան բոլոր մանր պարագաները չպատմեց, այլ ամենէն նշանաւոր մասերը միայն, եւ սոնք չնկարագրեց գիտնական ճշդութեամբ, այլ այնպէս ինչպէս պիտի երեւէին այն բաները մէկու մը որ երկրիս վրայ կը կենար։ Մովսէս այնպէս խօսեցաւ ինչպէս կը խօսին հիմա մարդիկ առ հասարակ, նոյն իսկ բնագէտք, բնական աշխարհիս երեւոյթներուն վրայ։ Ամէն մարդ գիտէ թէ արեգակը ոչ կ'ելլէ եւ ոչ կը մտնէ. բայց որովհետեւ կը թուի թէ կ'ելլէ եւ կը մտնէ, նոյն իսկ փիլիսոփայք եւ աստեղագէտք կ'ըսեն արեգական համար թէ կ'ելլէ եւ կը մտնէ։ Այսպէս Մովսէս նկարագրեց արարչագործութիւնն ոչ թէ գիտնական ճշդութեամբ, այլ այնպէս ինչպէս երեւցաւ անոր։ Յայտնի է թէ այսպիսի նկարագրութիւն մը միայն կրնար հասկնալի ըլլալ բոլոր ազգաց, թէ քաղաքակրթելոց եւ թէ բարբարոսաց։ Անուանի աստեղագէտը Քէփլէր կ'ըսէ. «Մենք աստեղագէտքս անգամ հասարակ մարդոց պէս կ'ըսենք երկնային մարմնոց համար թէ կ'ելլեն եւ կը մտնեն։ Ասով պարզապէս ըսել կ'ուզենք թէ, անոնք մեզի այնպէս կ'երեւին։ Ապա որչափ եւս առաւել պատճառ չունինք Սրբազան գիրքէն պահանջել որ խօսելու սովորական կերպը թողլով գրէր գիտնական ճշդութեամբ, եւ այնպէս ընելով մութ եւ անյարմար բառերով շփոթէր զմարդիկ։»

Գանք հիմա քննել Մր. Միլլըրի կարծիքն արարչագործութեան վրայ ։ Մր. Միլլըր, ինչպէս առկէ առաջ յիշեցինք, կ'ենթադրէ թէ Մովսէս աշխարհիս ստեղծման վերաբերեալ տեղեկութիւններն առաւ տեսիլքի մէջ, եւ ինչ որ տեսաւ այն տեսիլքին մէջ, նկարագրեց այնպէս ինչպէս որ երեւցաւ անոր ։ Մր. Միլլըր Ծննդոց առաջին գլխոյն մէջ արարչագործութեան վրայ յառաջ բերուած նկարագրութիւնը բաղդատելով արարչագործեալ իրաց կարգին մէջ եօթն նշանաւոր դիպաց հետ որոնց վրայ կը խօսի երկրաբանութիւնը, Մովսիսական նկարագրութեան եւ երկրաբանական դիտողութեանց մէջտեղ զարմանալի համաձայնութիւն կը գտնէ ։ Կ'ըսէ թէ եթէ մարդ մը երկրաբանական մեծամեծ փոփոխութեանց ատենները երկրիս երեսը կեցած ըլլար եւ դիտէր կատարուած բաները, անոր ուշադրութիւնը գրաւող ամենէն նշանաւոր դէպքերը պիտի ըլլային այն բաները զորս Մովսէս կը յիշէ իր նկարագրութեան մէջ ։

Առաջին տեսիլ ։ Մովսէս նախ տեսաւ երկիրս պարապ, անձեւ, ջրով ծածկուած եւ մութ ։

Ըստ վկայութեան երկրաբանից, այսպիսի եղած է հաւանականապէս երկրիս վիճակը երկրաբանական ամենէն հին ժամանակը ։ Երկրիս կեղեւն այն ատեն դեռ տաք էր, եւ անոր երեսը ծածկող ջուրն ալ տաք ըլլալով յառաջ կը բերէր խիտ շոգի այնպէս որ խաւար կը պատէր անդունդը ։ Եթէ այն հին ժամանակը մարդ մը գտնուէր երկրիս վրայ, երկիրս անոր այնպէս պիտի երեւէր ինչպէս նկարագրուած է Ծննդոց Ա. գլխոյն 2 համարին մէջ ։

*Երկրորդ տեսիլ։ Այս տեսլեան մէջ Մովսէս լուսաւորութիւն տեսաւ։*

*Ըստ կարծեաց երկրաբանից, երկիրս երթալով կը պաղէր, ուստի եւ ջուրն ալ պաղելով շոգին տակաւ կ'անգայտանար, այնպէս որ արեգական ճառագայթներէն ոմանք կը սկսէին թափանցել շոգւոյն մէջէն երկրիս վրայ. մինչ արեգակն եւ լուսինը դեռ տեսանելի չէին, ինչպէս որ ամպոտ օրերը լոյս կայ թէեւ արեգակը չտեսնուիր։ Երկրիս թաւալումն իր առանցքին վրայ պատճառ էր որ այն աղօտ լոյսը մերթ կը ծագէր եւ մերթ կ'անհետանար, այնպէս որ կրնայ ըսուիլ թէ տիւ եւ գիշեր կ'ըլլար։ Եթէ մարդ մը գտնուած ըլլար երկրիս վրայ երկրաբանական այս երկրորդ ժամանակին, անոր համար ամենէն նշանաւոր բանը պիտի ըլլար լուսոյ երեւումն ինչպէս որ նկարագրուած է Ծննդոց Ա. գլխոյն 3, 4 եւ 5 համարներուն մէջ։*

*Երրորդ տեսիլ։ Մովսէս այս տեսլեան մէջ ջուրերուն բաժանումը տեսաւ։*

*Ըստ կարծեաց երկրաբանից երկրիս պաղիլը երկար տեւեց, եւ շոգին կը բարձրանար երկրիս երեսէն վեր, կամ աւելի ճշգիւ խօսելով, ջուրերուն երեսէն վեր, եւ իբրեւ խոնաւ գօլորշի կը տեսնուէր վերը թանձր ամպերու նմանութեամբ, բոլորովին զատուած վարի ջուրերէն։ Ծննդոց Ա. գլխոյն 6, 7 եւ 8 համարներուն մէջ ըսուածը թէ, «Աստուած հաստատութիւնը ըրաւ, ու հաստատութեանը տակ եղած ջուրերը՝ հաստատութեանը վրայ եղած ջուրերէն զատեց». համաձայն է երկրաբանութեան, որ կը սորվեցնէ թէ ջրոց այսպիսի բաժանում մը*

այս երրորդ ժամանակին ամենէն նշանաւոր դէպքն էր ։

Չորրորդ տեսիլ ։ Մովսէս այս տեսլեան մէջ տունկերուն բուսնիլը տեսաւ ։

Այս տեսիլը կը պատասխանէ երկրաբանութեան ածխային ժամանակին որ երկրիս ուրիշ ժամանակներէն կը տարբերի իբրեւ առատութեամբ բոյսեր յառաջ բերող ժամանակ ։ Հանքային ածխոյ աւազին մթերները, որ հիմա առատ վառելի նիւթ կը մատակարարեն քաղաքակրթեալ աշխարհի, այն ժամանակին զարմանալի ծառերուն եւ տունկերուն մնացորդներն են ։ Երկրաբանութիւնը կը վկայէ թէ բոյսերն այն ժամանակին ամենէն նշանաւոր բանն էին, եւ թէ, եթէ մարդ մը այն միջոցին գտնուած ըլլար երկրիս վրայ, ի վեր քան զամենայն դիտողութեան արժանի պիտի համարէր այն զարմանալի ծառերը ։ Այսպէս երկրաբանութիւնը կը համաձայնի Ծննդոց Ա. գլխոյն 11 եւ 12 համարներուն մէջ ըսուածներուն ։

Հինգերորդ տեսիլ ։ Մովսէս այս տեսլեան մէջ տեսաւ արեգական, լուսնի եւ աստեղաց ծագումը ։

Ըստ կարծեաց երկրաբանից երկրիս պաղիլը տեւեց մինչեւ որ արեգակը կամաց կամաց կրցաւ փարատել ամպերը, եւ արեգակը, լուսինն եւ աստղերն առաջին անգամ տեսանելի եղան ։ Երկրաբանական այս ժամանակը, կ՚ըսէ երկրաբանութեան դասատուն, Մր. Ցորալս, այնչափ քիչ անասունք եւ բոյսք կային որ դիտողութեան արժանի չէին ։ Ամենէն նշանաւոր բանն այս ժամանակին մէջ արեգական, լուսնի եւ աստեղաց երեւիլն էր, ուստի եւ զատանք

միայն կը յիշէ Մովսէս Ծննդոց Ա. 14—19 համարներուն մէջ, հինգերորդ օրուան պատմութեան մէջ։

Վեցերորդ տեսիլ։ Մովսէս այս տեսլեան մէջ մեծամեծ թռչուններ եւ ծովային անասուններ տեսաւ։

Այս տեսիլը լաւ կը պատասխանէ երկրաբանութեան այն ժամանակին որ երեւելի է ծովային հրէշից եւ վիթխարի թռչնոց կողմանէ։ Երկրաբանական հետազօտութիւններէն յայտնի է թէ, եթէ այն ատեն մարդ մը գտնուած ըլլար երկրիս վրայ, անոր համար ամենէն նշանաւոր բաները պիտի ըլլային մեծամեծ օձերը (սողուններ) եւ վիթխարի թռչունները։ Այսպէս երկրաբանութիւնը կը համաձայնի Ծննդոց Ա. գլխոյն 20—23 համարներուն մէջ ըսուածներուն։

Եօթներորդ տեսիլ։ Մովսէս այս տեսլեան մէջ ցամաքային անասունները տեսաւ։

Այս տեսիլը կը պատասխանէ երկրաբանութեան այն ժամանակին որ մեծամեծ ցամաքային անասնոց բազմութեանը կողմանէ նշանաւոր է։ Երկրաբանութիւնը կը սորվեցնէ նաեւ թէ այս ժամանակին դէպ ի վերջը կը տեսնուի մարդը, եւ այսպէս այս գիտութիւնը կը հաստատէ ինչ որ Ծննդոց Ա. գլխոյն 24-27 համարներուն մէջ ըսուած է։

Վերոյիշեալ երկրաբանը Միլլըր կը հաստատէ թէ այս մեկնութեան նայելով չկայ գիտնական ճշմարտութիւն մը որ հակառակ գայ Ծննդոց Ա. գլխոյն մէջ ըսուածներուն։

Մր. Միլլըրի մեկնութիւնք, թէպէտ ոչ ըստ ամենայնի միեւնոյն, շատ նման է սակայն երկրաբանութեան ուսուցչին Մր. Տէյնայի մեկնութեան։ Ջենք

կրնար ըսել թէ այս մեկնութիւններէն մին կամ միւսը բոլորովին ճիշդ է, եւ թէ մին կամ միւսը կը հաստատէ թէ Ծննդոց Ա. գլխոյն համառօտ նկարագրութիւնը եւ երկրաբանութեան մանր տեղեկութիւնները բոլորովին համաձայն են իրարու. Կ'ըսենք սակայն թէ վերոյիշեալ երկրաբանից մեկնութիւնները յայտնի կը ցուցնեն որ Ծննդոց գրքին եւ երկրաբանութեան մէջտեղ այնպիսի հակասութիւններ չկան որ չկրնան համաձայնիլ իրարու:

Երբ Միլլեր, Տոսըն, Հիչգոք, Տէյնա, Կիւյօ եւ բնական գիտութեանց ուրիշ անուանի ուսուցիչք կը վկայեն թէ բնական գիտութիւնք չեն հերքեր ինչ որ Ծննդոց գրքին մէջ ըսուած է թէ նկատմամբ ժամանակին յորում, եւ թէ նկատմամբ կարգին որով ստեղծուեցաւ աշխարհս, այլ թէ մանաւանդ կը հաստատեն թէ այն գրքին եւ բնական գիտութեանց մէջտեղ կայ զարմանալի համաձայնութիւն մը, եւ երբ այս անուանի երկրաբանք կը ցուցնեն նաեւ այլ եւ այլ հաւանական կերպեր որովք Ծննդոց գրքին խօսքերն ու երկրաբանութիւնը կրնան համաձայնիլ, մի՛ կրնայ ըսել թէ բնական գիտութիւնք հերքած են Ծննդոց առաջին գլխոյն մէջ ըսուածները. Ո՛չ ոք:

Գ. Սուրբ Գիրքը մարդկային ազգին հնութեանը վրայ ի՞նչ կը սորվեցնէ

Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ բոլոր արարածոց մէջ մարդն ամենէն յետոյ ստեղծուեցաւ: Կ'ըսէ թէ բոյսք եւ շնչաւորք նախ ստեղծուեցան, եւ ապա մարդկային ազգը: Երկրաբանութիւնը միթէ կը հերքէ՞ այս վարդապետութիւնը:

Երկրաբանք երկրիս խորագոյն խաւերուն մէջ կը

գտնեն ոչ սակաւ տնկային մնացորդներ բրածոյ կամ քարացեալ վիճակի մէջ, բայց անոնց մէջ մարդոց մնացորդներ չեն գտներ, եւ այսպէս երկրաբանութիւնը կը ցուցնէ թէ բոյսերը ստեղծուեցան երկայն ատեն յառաջ քան զմարդ։ Ուրիշ խաւերու մէջ, որ աւելի մօտ են երկրիս երեսին, այսինքն նուազ խոր են քան այն խաւերը որոնց մէջ բոյսեր կը գտնուին, երկրաբանք կը գտնեն ցամաքային անասնոց քարացեալ նշխարներ, բայց այն խաւերուն մէջ ալ չեն գտներ մարդկային մնացորդներ։ Մարդկային մնացորդներ կը գտնուին ամենէն նոր խաւերու մէջ միայն, եւ այսպէս երկրաբանութիւնը կը հաստատէ Սուրբ գրքին խօսքը թէ մարդս արարածոց կարգին մէջ ամենէն յետոյ ստեղծուեցաւ։

Աստուածաշունչին խօսքէն այնպէս կ'երեւի թէ վեց հազար կամ ութ հազար տարի միայն անցած է յորմէ հետէ մարդկային ազգը ստեղծուեցաւ։ Երկրաբանութիւնը կը հերքէ՞ այս խօսքը։ Երկրաբանութիւնը շատ ապացոյց կ'ընծայէ թէ մարդկային ազգին ստեղծումը նոր է համեմատութեամբ երկրաբանական երկար ժամանակներուն յորս կազմուեցան երկրիս այլեւայլ խաւերը։ Տնկոց եւ անասնոց քարացեալ մնացորդները, որ երկրիս խաւերէն ոմանց մէջ գտնուած են, կը ցուցնեն թէ երկիրս կար թերեւս միլիոնաւոր տարիներ յառաջ քան զստեղծումն մարդոյ. բայց ապացոյց չկայ թէ երկրիս այն ժամանակի միջոցը յորմէ հետէ մարդը ստեղծուեցաւ շատ երկայն է համեմատութեամբ նախընթաց ժամանակի միջոցներուն, վասն զի մարդկային մնացորդներն ամենէն նոր եւ երկրիս վերին երեսը կազ-

մով խաւլին մէջ միայն կը գտնուին ։ Անկէ յայտնի է թէ ընդհանուր համաձայնութիւն կայ Աստուածաշունչին եւ երկրաբանութեան մէջտեղ մարդկային ազգին հնութեանը վրայ՝ համեմատութեամբ երկրիս, բուսոց եւ անասնոց հնութեանը ։

Բայց երբ կու գանք ասելի ճշդիւ որոշելու թէ որչափ տարիներ անցած են յորմէ հետէ ստեղծուած է մարդկային ազգը, միթէ անհամաձայնութիւն կ'ե՞լլ Աստուածաշունչին խօսքին եւ երկրաբանութեան մէջտեղ։ Այս խնդրոյն կը պատասխանենք թէ, շատ դժուարին է ճշդիւ որոշել Սուրբ գիրքէն թէ որչափ տարիներ անցան յորմէ հետէ ստեղծուեցաւ մարդկային ազգը ։

ա. Մովսէսի հնգամատեանն երեք հին լեզուով հասած է մեզի, այսինքն Եբրայեցերէն, Յունարէն եւ Սամարերէն, բայց այս երեքին ալ ժամանակագրութիւնները տարբեր են իրարմէ։ Եբրայեցերենին ժամանակագրութեանը նայելով Ջրհեղեղէն մինչեւ Աբրահամու կոչումը 292 տարի էր, Սամարերենի ժամանակագրութեան նայելով 942 տարի, իսկ ըստ Յունարէնին 1,072 կամ 1,172 տարի ։ Անկէ յայտնի է թէ թիւերն օրինակելու ատեն հին ձեռագրաց մէջ սխալ սպրդած է։ Դրեթէ բոլոր հին ձեռագրաց մէջ թիւերը չէին գրուեր թուանշաններով, այլ ուրիշ նշանագիրներով որք շատ նման էին իրարու, այնպէս որ օրինակուած ատեն շատ անգամ սխալներ կը սպրդէին։ Օքսֆորտի համալսարանին դասատուն, Մր. Րոլինսըն, կ'ըսէ թէ, այսպիսի սխալներ կը պատահէին այնպէս յաճախ, որ ամէն տեսակ հին գրութեանց մէջ յիշուած թիւերը չեն կրնար իբրեւ

հաւատարմութեան արժանի ընդունուիլ։ Հին կտակարանին վերոյիշեալ երեք հնագոյն օրինակներուն մէջ գտնուած տարբերութիւններէն իսկ յայտնի է թէ, դէթ անոնց երկուքին մէջ սխալում եղած է օրինակուելու ատեն, եւ որովհետեւ օրինակողք ներշնչեալ մարդիկ չէին, սխալում երեք օրինակին մէջ ալ կրնար պատահիլ։ Այս պատճառաւ Աստուածաշունչին բնագրին ժամանակագրութիւնը հիմա չի կրնար ճշդիւ որոշուիլ։

բ. Ուրիշ պատճառ մ'ալ կայ թէ ինչու համար դժուարին է Սուրբ գիրքէն ճշդիւ որոշել թէ որչափ տարիներ անցած են յորմէ հետէ ստեղծուեցաւ մարդը։ Սուրբ գրոց ժամանակագրութիւնը գլխաւորապէս կ'որոշուի Հին կտակարանին ազգահամարներէն. բայց որովհետեւ այս ազգահամարներուն նպատակը ոչ տարիներուն թիւը ցուցնել է, կամ յիշել կարգաւ իւրաքանչիւր ծնունդ, այլ անոնց ցեղային ծագումը ցուցնել, այս պատճառաւ Սուրբ գրոց ժամանակագրութիւնը չի կրնար որոշուիլ ճշդիւ այն ազգահամարներէն։ Բոլոր մեկնիչները կ'ընդունին թէ Սուրբ գրոց ազգահամարներն իւրաքանչիւր ծնունդ չեն յիշեր կարգաւ։ Երբեմն ոչ սակաւ ծնունդ զանց կ'ընեն, եւ «ծնաւ» բառը Սուրբ գրոց մէջ կը գործածուի ոչ միայն անմիջական ծնունդ, այլ նաեւ ուրիշ ծնունդներ ցուցնելու։ Զորօրինակ, Ծննդոց ԽԶ. գլխոյն 16—18 համարներուն մէջ Զեղփայի որդւոց եւ թոռանց եւ թոռնորդւոց յիշուելէն ետքը, ընդ ամէնը տասն եւ վեց հոգի, կ'ըսուի թէ «ասոնք են Զեղփային որդիքը... եւ անիկա ծնաւ ասոնք Յակոբին, տասնըվեց հոգի»։

Մատթէի Ա. գլխոյն 11 երորդ համարին մէջ ըսուած է թէ Յովսիա ծնաւ զՅեքոնիա, բայց Յեքոնիա Յովսիայի թոռն էր։ Դարձեալ Մատթէի Ա. գլխոյն 8 երորդ համարին մէջ ըսուած է թէ Յովրամ ծնաւ զՈզիա, որ, ինչպէս Հին կտակարանէն կը տեսնենք, անոր թոռան որդին էր։ Ծննդոց Ժ. գլխոյն 15–18 համարներուն մէջ ըսուած է թէ Քանան այլ եւ այլ ազգեր ծնաւ, այն է զՅեբուսացին, զԱմորհացին, զԳերգեսացին, զԽեւացին, զԱրուկեցին եւ զայլս։ Աւելի յայտնի է թէ չի կրնար ըսուիլ թէ Սուրբ գրոց ազգահամարներուն մէջ գործածուած ծնաւ բառն անմիջական կամ մօտաւոր սերունդ միայն կը նշանակէ։ Եւ այս զարմանալի չէ, վասն զի այն ազգահամարներուն նպատակը ոչ այնչափ պատմել էր տարեաց թիւը, որչափ ցուցնել Մեսիայի սերունդն Ադամէն, Սեմէն, Աբրահամէն, Դաւիթէն եւ ուրիշներէն, եւ այսպէս ցուցնել Մեսիայի երկրաւոր նախնեաց վերաբերեալ մարգարէութիւնը։

Ամէն մարդ պիտի հասկնայ թէ ինչ մեծ դժուարութեամբ մեկնուած են այն ազգահամարները, եթէ յիշեցնենք որ այլեւայլ Հրեայ եւ Քրիստոնեայ գիտուն մատենագիրներ 180 տարբեր հաշիւներ ըրած են Ադամէն մինչեւ Քրիստոս անցնող ժամանակին երկայնութեանը վրայ։ Ըստ ոմանց 3,433 տարի է Ադամէն մինչեւ Քրիստոս, բայց ըստ այլոց 6,984, այսինքն 8,863 տարի է Ադամէն մինչեւ ցարդ։

Թէպէտ ժամանակը Սուրբ գրքէն ճշդիւ չկրնար որոշուիլ, կ'երեւի սակայն թէ ըստ Սուրբ գրոց ոչինչ աւելի քան վեց կամ ութ հազար տարի անցած է մարդկային ազգին ստեղծմանէն մինչ-

չեւ ցարդ ։ Արդ, միթէ բնական գիտութիւնք կը ցուցնեն թէ մարդուս ստեղծմանէն ի վեր աւելի քան վեց կամ ութ հազար տարի անցած է ։ Այս նիւթին վրայ այլեւայլ կարծիքներ կան, բայց որովհետեւ այսպիսի շատ կարծիքներ ասկէ առաջ իբրեւ անտեղի ապացուցուած եւ մերժուած են, խոհական մարդիկ ընդհանրապէս յօժար՝ չեն առանց համոզիչ փաստերու ընդունել արդի կարծիքները ։ Արդ, քննենք թէ բնական գիտութիւնք համոզիչ ապացոյցներ ունի՞ն ցուցնելու թէ մարդկային ազգը քան վեց կամ ութ հազար տարիէն շատ յառաջ կար երկրիս վրայ ։

ա. Զուիցերայի լճերէն ոմանց մէջ քանի մը հին բնակարաններու մնացորդներ գտնուած են, բայց ասոնք, հակառակ ոմանց խօսքին, չեն ցուցներ թէ մարդկային ազգը քան 6,000 կամ 8,000 տարի հին է ։ Այս բնակարանաց մէջ գտնուած անասնոց ոսկրները հնագոյն անասնոց ոսկրներ չեն որոնց տեսակները հիմա չկան, այլ հիմա աշխարհիս վրայ ապրող անասնոց տեսակներու ոսկրներ են ։ Այս բանը կը ցուցնէ թէ յիշեալ շէնքերն ալ հաւանականաբար շատ հին չեն ։ Սակայն կ'ըսուի թէ այն բնակարաններուն մէջ քարէ շինուած գործիքներ կը գտնուին, եւ թէ ասկէ կրնայ հետեւցուիլ թէ այն տեղերը բնակող մարդիկ կը վերաբերէին այն ժամանակին որ քարեղէն ժամանակ կը կոչուի ։ Այս առարկութեան կը պատասխանենք թէ ապացոյց չկայ որ քարեղէն ժամանակը միեւնոյն տեւողութիւնը ունեցած է երկրիս բոլոր մասերուն մէջ ։ Կան ցեղեր որ քարէ գործիքներ կը գործածէին մինչեւ մօտ ատեններ.

*կան նաեւ ցեղեր որ մինչեւ ցարդ կը գործածեն քարեղէն գործիք ։ Քարեղէն գործեաց կիրառութիւնը ստուգիւ չի ցուցներ ազգի մը կամ ցեղի մը հնութիւնը , այլ միայն անոր քաղաքակրթութեան աստիճանը ։ Նաեւ Մր. Լայէլ կ'ըսէ թէ Մ. Մարլոյ եւ ուրիշ Զուիցերացի երկրաբանք այն երկրին քարեղէն ժամանակը քան 5,000 կամ 7,000 տարի հնագոյն չեն համարիր ։ Ուստի ասկէ յայտնի է թէ Զուիցերայի լճերուն մէջ գտնուած բնակարանները չեն հերքեր Սուրբ գրոց ժամանակագրութիւնը ։*

*բ. Կ'ըսուի թէ կան տեղեր ուր մարդու ոսկրներ խառն կը գտնուին այնպիսի անասնոց ոսկրներուն հետ որոնց տեսակները շատոնց ջնջուած են ։ Բայց այս ալ մարդկային ազգին հնութեանը նկատմամբ ստոյգ բան մը չի ցուցներ ։ Մարդու ոսկրներ եւ հնագոյն անասնոց ոսկրներ կրնան միեւնոյն տեղը գտնուիլ , բայց ասկէ ամենեւին չի հետեւիր թէ այն մարդիկն եւ անասունք միեւնոյն ժամանակ կ'ապրէին ։ Միլլըր երկրաբանը կ'ըսէ . « Քարայրներ որ ժամանակաւ որջ էին գազանաց՝ յետոյ մարդոց ապաստանարան եղան մինչ անոնք կ'ապրէին եւ գերեզման երբ անոնք մեռան. այս պատճառաւ մարդոց ոսկրներն եւ գործիներն անոնցմէ շատ առաջ մեռած անասնոց ոսկրներուն հետ խառն կրնան գտնուիլ ։ » Նաեւ Լայէլ երկրաբանը կ'ըսէ . « Թէպէտ մարդու ոսկրներ անասնոց շատ հին տեսակաց ոսկրներուն հետ խառն կը գտնուին , բայց ասկէ չենք կրնար հետեւցնել թէ մարդկային ազգը շատ հին է ։ » Մր. Սէճուիք ժայռերու մէջ քանի մը բնական ճեղքուածներ կը յիշէ , որոնցմէ ոսկրներ ինկած*

են երկրիս շատ խորունկ տեղերը, եւ կը յաւելու թէ, երբ այսպիսի ճեղքուած մը հաղորդակցութիւն ունի ստորերկրեայ խոռոչի մը հետ, թէ անասնոց եւ թէ մարդոց ոսկրներ կրնան հեղեղներէ տարուիլ այն խոռոչին մէջ ։ Երկրաբանութեան ուսուցիչ, Մր. Շմէրլինկ, խոռոչ մը գտաւ որուն մէջ շատ տեսակ անասնոց ոսկրները խառն կը գտնուէին ։ Մր. Շմէրլինկ կը կարծէ թէ այն ոսկրները յիշեալ խոռոչին մէջ տարուած են գետերու միջոցաւ, որ կը հոսէին երկրիս երեսէն։ Այս կերպով այլեւայլ ժամանակ եւ այլեւայլ տեղեր ապրող մարդոց եւ անասնոց ոսկրները կրնան միեւնոյն տեղը գտնուիլ ։ Արդ, նոյն իսկ երկրաբանք կը վկայեն թէ թէպէտեւ քանի մը տեղեր տեսնուած են մարդոց ոսկրներ անասնոց հին տեսակներուն ոսկրներուն հետ խառնուած, սակայն ասկէ չենք կրնար հետեւցնել թէ մարդկային ազգը եւ այն հին անասունները մէկտեղ կ'ապրէին ։

Գ. Կ'ըսուի թէ մարդոց ոսկրներ գտնուած են երկրիս խորունկ մասերուն մէջ թաղուած ։ Բայց թող որ այս շատ քիչ կը պատահի, երկրիս խորերուն մէջ մարդոց ոսկրներու գտնուիլը չի հերքեր Սուրբ գրոց ժամանակագրութիւնը ։

Ամէն դաստիարակեալ մարդ գիտէ թէ երկրիս երեսը մեծամեծ փոփոխութիւններ կատարուած են պատմական ժամանակի մէջ ։ Այս փոփոխութիւններէն ոմանք կատարուած են կամաց կամաց այն զօրութեանց գործելովը, որովք հին քաղաքաց, ինչպէս Հռովմայ եւ Երուսաղէմի, հիմերը երկրիս այժմու երեսէն վար խոր թաղուած են ։ Այսպիսի փոփոխութեանց վրայ Մր. Լայէլի վկայութիւնը դի-

*տողութեան արժանի է։ Այս բնագէտը կ՚ըսէ. «Անգլիա եւ Գաղիա երկրիս փտած փայտերէ բաղադրեալ խաւերուն մէջ գտնուած բոլոր դրամներ, կացիններ, զէնք եւ անօթք հին Հռոմայեցւոց ժամանակի գործեր են։ Ասկէ յայտնի է թէ միջեալ խաւերուն մէջ գտնուած մարդկային անթիւ մնացորդք չեն հերքեր Սուրբ գրոց ժամանակագրութիւնը։»*

*Երկրիս երեսին վրայ ուրիշ փոփոխութիւններ կատարուած են յանկարծ, երկրիս ներքին զօրութեանց հզօր ազդեցութեամբը։ Ամերիկա տպուած Շտեմարան գիտելեաց* (Encyclopedia Americana) *անուն գիրքը կ՚ըսէ թէ այսպիսի փոփոխութիւններ կատարուած են երկրիս ամէն կողմը։*

1692*ին Ճամայիգայի մայրաքաղաքը Բորդ-Ռոյալ թաղուեցաւ ջուրին տակ։* 1775 *ին Լիսպոնա քաղքին մէկ մասը ծովին երեսէն* 600 *ոտք խոր ընկղմեցաւ։* 1811*ին Ամերիկայի մէջ իբր* 300 *մղոն տարածութիւն ունեցող երկիր մը նախ բարձրացաւ եւ ապա նորէն ինկաւ, եւ երկրին երեսը շատ տեղերէն ճեղքուեցաւ, եւ տեղ տեղ ճեղքուածներն կէս մղոնէ աւելի երկայն էին։* 1819*ին Հնդկաստանի մէջ* 2,000 *քառակուսի մղոն երկիր մը խոր իջնելով եղաւ լիճ, եւ անկէ քանի մը մղոն հեռու ուրիշ երկիր մը բարձրացաւ։* 1822 *ին Չիլի կոչուած երկրին մէկ մասն,* 100,000 *քառակուսի մղոն տարածութիւն ունեցող երկիր մը որ Անդեան լերանց եւ ովկիանոս մէջտեղն է,* 2 *էն մինչեւ* 7 *ոտք բարձրացաւ։*

*Որովհետեւ այսպէս սաստիկ զօրութիւններ կը գործեն երկրիս մէջ, եւ երբեմն յառաջ կը բերեն*

այսպիսի յանկարծ փոփոխութիւններ, եւ որովհետեւ երկրիս վրայ չկայ տեղ որ այսպիսի փոփոխութենէ բոլորովին ազատ ըլլայ, զարմանք չէ որ երբեմն մարդոց ոսկրներ կը գտնուին երկրիս երեսին տակ շատ խոր թաղուած ։

Գիտնոց հաշիւները շատ կը տարբերին իրարմէ սա մասին թէ որչափ ժամանակ հարկաւոր էր երկրիս երեսին վրայ կատարուած փոփոխութեանց համար ։ Մր. Լայէլ կ'ըսէ. «Միսիսիպի գետին դելտան կազմելու համար գոնէ 100,000 տարի հարկաւոր էր ։» Սակայն Միացեալ Նահանգաց կառավարութեան երկրաչափներուն միջոցաւ կատարուած նորագոյն քննութեանց նայելով յիշեալ դելտային կազմութեան համար 4,000 կամ 5,000 տարի միայն բաւական էր ։ Մր. Լայէլ եւ այս երկրաչափք ամէնքն ալ գիտուն մարդիկ են, բայց ինչ մեծ տարբերութիւն կայ անոնց հաշիւներուն մէջ ։

Ատենով մարդու ոսկր մը գտնուեցաւ Անգղիոյ մէջ այնպիսի տեղ մը, որ ոմանք կարծեցին թէ այն ոսկրը 10,000 կամ 15,000 տարուան ըլլալու էր։ Յետոյ նոյն տեղը գտնուեցաւ ծանօթ դրամ մը, որմէ յայտնի եղաւ թէ այն ոսկրը փոխանակ հազարաւոր տարիներով հին ըլլալու, հազիւ քանի մը հարիւր տարի միայն հին էր ։

Նաեւ հողէ աման մը Նեղոս գետին աւազին տակ այնպէս խորունկ թաղուած գտնուեցաւ, որ ոմանք կարծեցին թէ այն ամանն աւելի քան 6,000 կամ 8,000 տարի հին էր, բայց յետոյ յայտնապէս ցուցուեցաւ որ ամանը Հռոմայեցւոց գործ էր։

Ամերիկայի Բրինոգոն գոլէն կոչուած երեւելի վար-

ժարանին բնական գիտութեանց դասատուն Մր. Կիյդ կ'ըսէ թէ բաւական յայտնի ապացոյց չկայ հաստատելու թէ մարդ կար երկրիս վրայ աւելի քան 7,000 կամ 8,000 տարի առաջ։ Բնական գիտութեանց ուրիշ երեւելի դասատուներ միեւնոյն կարծիքն ունին։ ԼըՄոնտ անուն Գաղղիերէն գիտնական թերթին հեղինակը մօտերս ըսաւ թէ մարդկային ազգին շատ հին ըլլալուն վերաբերեալ ապացոյցները քննելով անոնց բոլորն ալ անբաւական գտաւ։ Այս այսպէս ըլլալով, ինչպէս կրնայ ըսուիլ ուրեմն թէ բնական գիտութիւնք կը հերքեն Սուրբ գրոց ժամանակագրութիւնը, մինչ բնական գիտութեանց երեւելի դասատուներն անգամ ասոր հակառակը կը պնդեն։

է. Սուրբ Գիրքը մարդկային ազգին ծագմանը վրայ ի՞նչ կը սորվեցնէ։

Սուրբ գիրքը կը սորվեցնէ թէ բոլոր մարդիկ սերեցան միեւնոյն նախնիներէ, այսինքն Ադամէն եւ Եւայէն։ Բնական գիտութիւնք կը հերքեն այս վարդապետութիւնը։

Ամէն մարդ գիտէ թէ մեծ տարբերութիւն կայ այլեւայլ ցեղի մարդոց բնական երեւութին, իմացական կարողութիւններուն եւ առաքինութեանց մէջտեղ։ Բայց միթէ ապացուցուած է թէ այս տարբերութիւններն այնպէս մեծ են որ անհնար է բոլոր մարդոց միեւնոյն նախնիներէ սերած ըլլալ։ Այս խնդիրը կրնան լուծել այն գիտնական մարդիկ որ զիրենք մասնաւոր կերպով տուած են սորվելու մարդկային այլեւայլ ցեղերուն բնական, իմացական եւ բարոյական բնութիւնը։ Ուստի մեր ընթերցո-

ջաց պիտի ցուցունենք ամենէն նշանաւոր բնագէտաց ոմանց կարծիքներն եւ համոզումներն այս նիւթին վրայ։ Բայց այս ընելէն առաջ մեր ընթերցողներուն ուշադրութիւնը կը հրաւիրենք քանի մը բաներու, զորս իւրաքանչիւր ոք կրնայ անձամբ դիտել եւ նկատել ։

Նախ. Տարբերութիւնները որ կան այլեւայլ ցեղերու մէջտեղ՝ աւելի քիչ են քան անոնց նմանութիւններն իրարու հետ։ Եթէ մէկ բանի մէջ իրարու նման չեն այլեւայլ ցեղեր, տասը, մինչեւ իսկ հարիւր բանի մէջ իրարու կը նմանին ։ Բոլոր ցեղերը մարմնոյ կազմանէ ունին միեւնոյն կազմութիւնը։ Ամէնքն ալ ունին միեւնոյն թուով ոսկրներ, մկանունք եւ ջղեր եւ ուրիշ մարմնաւոր գործարաններ ։ Այլ եւ այլ ցեղերուն մարմնաւոր գործարանները կազմուած են միեւնոյն կերպով, ունին միեւնոյն յատկութիւնները եւ կը կատարեն միեւնոյն գործերը ։

Այլեւայլ ցեղերէն ամենուն ալ շնորհուած է իմացական բնութիւն մը որ միեւնոյն էական յատկութիւններն ունի ։ Արդարեւ այլեւայլ ցեղերուն մտաւոր կարողութիւնները միեւնոյն չափով եւ աստիճանաւ զարգացեալ չեն, բայց բոլոր ցեղերն ալ նոյնչափ եւ նոյնպէս զարգանալու կարողութիւն եւ յարմարութիւն ունին։ Ամէնքն ալ ըմբռնելու, յիշելու, բաղդատելու, դատելու, երեւակայելու եւ իրենց միտքը յայտնելու կարողութիւններ ունին ։ Բոլոր մարդոց միտքերը միեւնոյն օրինաց ներքեւ են, եւ նոյն պաշտօնները կը կատարեն միեւնոյն պայմանաց ներքեւ, եւ այսպէս կը ցուցնեն թէ միեւնոյն բնութիւնն ունին ։

Նաեւ բոլոր մարդիկ ունին բարոյական բնութիւն որով կը զանազանուին ուրիշ կենդանիներէ։ Արդարեւ բարոյականի կողմանէ մեծ տարբերութիւն կայ այլեւայլ մարդկային ցեղերու մէջ, բայց թերեւս այս տարբերութիւնն աւելի մեծ չէ քան զայն որ երբեմն կը տեսնուի միեւնոյն ազգի մէջ այլեւայլ ժամանակ, կամ միեւնոյն ազգի եւ դասու անհատ մարդոց մէջ։ Շատ ազգերու խիղճը լուսաւորեալ չէ, բայց ամէնքն ալ ունին խիղճ որ կրնայ լուսաւորուիլ։ Շատերը բարոյականի վրայ սխալ դատողութիւններ կ'ընեն, բայց եւ այնպէս ամէնքն ալ իրենց գործերուն վրայ բարոյական դատողութիւններ կ'ընեն։

Երկրորդ. Նմանութիւնները որ կան այլեւայլ մարդկային ցեղերու մէջտեղ՝ արմատական եւ հիմնական են, իսկ անոնց տարբերութիւնները թեթեւ եւ հարեւանցի են։ Այլեւայլ մարդկային ցեղերը նման են իրարու մարմնոյ գրեթէ բոլոր գործարանաց ձեւին, կազմութեան եւ պաշտօնին կողմանէ, բայց իրարմէ կը տարբերին մորթի գունոյն եւ մազերուն ձեւին եւ քիչ շատ նաեւ գլխոյ ձեւին կողմանէ։ Իրարու կը նմանին իրենց իմացական եւ բարոյական կարողութիւններուն կողմանէ, իսկ անոնց տարբերութիւնն այն կարողութեանց զարգացման չափուն կամ աստիճանին կողմանէ է միայն։

Երրորդ. Նմանութիւններն որ կան այլեւայլ ցեղերու մէջտեղ այնպէս էական են որ չեն կրնար փխաւածի կամ արտաքին պարագաներու արդիւնք ըլլալ. ընդհակառակն, տարբերութիւններն այնպէս թեթեւ եւ հարեւանցի են որ, ամենէն հմուտ բնա-

գիտնոց մեծ մասին դատողութեանը նայելով, կրնան յառաջ եկած ըլլալ երկայն միջոցի մէջ տարբեր կլիմաներէ, աղբերու եղանակներէ եւ սովորութիւններէ : Տարուինի եւ ուրիշ բնագիտաց քննութիւնները կը ցուցնեն թէ բնական պատճառներ ինչ զարմանալի փոփոխութիւններ կրնան գործել բուսոց եւ անասնոց, նաեւ մարդոց ձեւին եւ երեւութին վրայ: Այս խնդրոյն վրայ հոս քանի մը նշանաւոր բնագիտաց վկայութիւնները մէջ բերենք :

Բնախօսութեան ամենէն անուանի դասախօսներէն ոմանք, ինչպէս Գարբէնթըր Անգղիոյ մէջ եւ Տրէյբըր Ամերիկայի մէջ, կ'ըսեն թէ բոլոր մարդկային ցեղերուն միեւնոյն նախնիներէ սերած ըլլալը հնարաւոր է, եւ թէ անոնց այժմու բոլոր տարբերութիւնները կրնան յառաջ եկած ըլլալ տակաւ առ տակաւ, հարիւրաւոր դարերու միջոցին կլիմայի ազդեցութենէ եւ ուրիշ բնական պատճառներէ :

Հէմպոլտ կ'ըսէ թէ «Մարդկային այլեւայլ ցեղերը բոլորն ալ միեւնոյն նախնական սերունդէ են:»

Գերմանացի բնագէտը, Միւլըր, միեւնոյն բանը կը հաստատէ :

Ուրիշ անուանի բնագէտ մը, Քիւվիէ, կ'ըսէ. «Բոլոր մարդկային ցեղերը կը թուին յառաջ եկած ըլլալ մէկ զոյգէ:» Ուրիշ երեւելի բնագէտ մը, Բրիչարտ, կ'ըսէ. «Երբ կը քննենք ինչ որ կարող եղած ենք սորվիլ մարդկային այլեւայլ ցեղերու նկատմամբ, իրաւունք ունինք հետեւցնելու թէ բոլոր ազգերը միեւնոյն սերունդէ են:»

Լեզուաբանութեան ամենէն երեւելի ուսուցիչը, Մաքս Միւլըր, կ'ըսէ թէ բանասիրութիւնը կամ

լեզուաց գիտութիւնը կը ցուցնէ թէ Ասիոյ եւ Եւրոպայի լեզուները միեւնոյն սկիզբէ են ։

Պունսըն կ'ըսէ թէ Եգիպտական լեզուն կը ցուցնէ թէ Եգիպտացիք Ասիոյ մեծամեծ ցեղերուն հետ միեւնոյն ծագումն ունին, եւ թէ Ամերիկայի բնիկ ցեղերուն լեզուն կը ցուցնէ թէ այն բնիկ ցեղերն Ասիական սերունդ են ։

Հիւ Միլլըր կ'ըսէ. «Պատմութիւնը եւ աւանդութիւնը կը ցուցնեն թէ կեդրոնական տեղն ուր մարդկային ազգն երեւեցաւ ի սկզբան՝ չի կրնար հեռու եղած ըլլալ Կովկասեան լեռներէն ։»

Այս համառօտ գիրքին մէջ տեղ չունինք մէջբերելու այս կարեւոր նիւթին վերաբերեալ բոլոր ապացոյցները, բայց կը կարծենք թէ մինչեւ ցարդ բերուած ապացոյցները բաւական են մեր ընթերցողները համոզելու թէ բնական գիտութիւնք չեն հերքեր ինչ որ Աստուածաշունչը կը սորվեցնէ, 1. Աշխարհիս այժմու կարգին եւ կազմուածին վրայ, 2. Սկզբնական նիւթին վրայ որմէ երկինք եւ երկիր կազմուեցաւ, 3. Եղանակին վրայ որով Աստուած ստեղծեց երկինք եւ երկիր, տունկերն եւ շնչաւորներն սկզբնական նիւթէն, 4. Ժամանակին վրայ յորում Աստուած ստեղծեց սկզբնական նիւթը որմէ յետոյ երկիրս պատրաստուեցաւ բնակութիւն ըլլալու մարդկային ազգին, 5. Ժամանակին վրայ յորում, եւ կարգին վրայ որով, բոյսք, անասունք եւ մարդ ստեղծուեցան, 6. Մարդկային ազգին հնութեանը վրայ, եւ 7. Բոլոր մարդկային ցեղերուն միեւնոյն նախնիներէ սերելուն վրայ ։

Արդ, եթէ բնական գիտութիւնք չեն հերքեր

Աստուածաշունչին այս վարդապետութիւնները, հապա անոր ո՛ր վարդապետութիւնները կը հերքեն։ Եւ ոչ մին։

Այս գլուխը վերջացնելէ առաջ համառօտիւ յիշենք նախընթաց գլուխներուն մէջ յառաջ բերուած ապացոյցները, որոնք երբեմն կը կոչուին արտաքին ապացոյցք Քրիստոնէութեան, եւ ապա սկսինք մէջ բերել ուրիշ տեսակ մը ապացոյցներ որ երբեմն կը կոչուին Ներքին ապացոյցք Քրիստոնէութեան։

Նախընթաց գլուխներուն բովանդակութիւնը

Նախ ցուցուցինք թէ այս խնդիրն այնպիսի պատմական կարեւորութիւն ունի, որ խելացի մարդ մը չի կրնար արհամարհել զայն, եւ թէ խնդրոյն ուղիղ լուծումն այն աստիճան կարեւորութիւն ունի նաեւ իւրաքանչիւր մարդու անձին, որ ոչ ոք կրնայ անվտանգ զանց ընել զայն։ Դարձեալ ցուցուեցաւ թէ այս խնդիրը լուծուելու է ոչ լոկ մեր հաճոյից կամ նախապաշարմանց այլ ապացոյցներով, եւ թէ այս ապացոյցները քննուելու են անաչառ, անկեղծ եւ բարեպաշտ ոգւով։

Յետոյ ցուցուցինք թէ ոչ ոք կարող է հաստատել թէ անկարելի էր Աստուծոյ մասնաւոր յայտնութիւն մը տալ մարդոց, կամ անկարելի էր մարդոց ընդունել այսպիսի յայտնութիւն մը Աստուծմէ. Նաեւ ցուցուցինք թէ անհաւատալի չէ, եւ ոչ անկարելի, թէ Աստուած տուաւ այնպիսի յայտնութիւն մը մարդոց։ Յետոյ մէջ բերուեցան համոզիչ պատճառներ թէ աշխարհք Քրիստոսի ժամանակ յետին կարօտութիւն ունէր աստուածային յայտնութեան

*մը, նաեւ թէ աշխարհք ԺԹ. դարուն մէջ ոչինչ նը-ւազ կարօտութիւն ունի այսպիսի յայտնութեան։*

*Այսպէս պատրաստուեցանք անկողմնաբար քննելու սա խնդիրը թէ արդեօք այսպիսի յայտնութիւն մը արդարեւ տրուա՞ծ է, այսինքն թէ Քրիստոսի Աւետարանն Աստուծմէ՞ է թէ ոչ։ Ասոր մէջ բերուեցան պատմական ապացոյցներ Հրեայ, Հռոմայեցի եւ Քրիստոնեայ հեղինակներէ թէ Քրիստոսի պէս անձ մը արդարեւ կ'ապրէր Պաղեստինի մէջ իբր 18 դար առաջ, եւ տեսնուեցաւ թէ այս ապացոյցներն այնպէս համոզիչ են որ անհաւատք անգամ կ'ընդունին զանոնք։ Յիշեցինք նաեւ թէ Քրիստոսի գերազանց յատկութիւններուն եւ հրաշալի գործքերուն շատ եւ այլ եւ այլ ապացոյցներ կան, որոնցմէ շատերն Աւետարան կոչուած պատմական չորս գրոց մէջ պահուած են, եւ տեսանք որ, եթէ այն գիրքերն արդարեւ արժանահաւատ են, անոնց վկայութիւնը համոզիչ եւ բաւական համարուելու է։ Ուստի սկսանք քննել թէ արդեօք Աւետարաններն արդարեւ արժանահաւատ են, եւ համառօտիւ մէջ բերինք ապացոյցներ հաստատելու համար թէ այն գիրքերը ստուգիւ գըրուեցան առաջին դարուն մէջ, եւ են հարազատ գրութիւնք Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու եւ Յովհաննու։ Յիշեալ ապացոյցները կը բղխին նոյն իսկ Աւետարաններուն լեզուէն եւ պարունակութենէն, նաեւ հին ցուցակներէն, հին թարգմանութիւններէն, հին ձեռագիրներէն եւ հին մատենագրաց մէջ յիշուած վկայութիւններէն։ Յետոյ պատմական ապացոյցներով հաստատեցինք թէ մեր այժմու Աւե-*

*տարանները չորս աւետարանիչներէն գրուածներն են, եւ թէ ըստ նորագոյն քննութեանց այն գիրքերն ամենեւին փոխուած չեն անցեալ 18 դարուց մէջ։*

*Ցուցնելու համար թէ աւետարանիչք արժանահաւատ վկաներ են այն դէպքերուն զորս կը պատմեն Աւետարաններուն մէջ, հաստատեցինք նախ թէ անոնք կարող էին ճշդիւ դիտելու եւ հաւատարմութեամբ պատմելու ինչ որ տեսած եւ լսած էին. եւ երկրորդ, թէ անոնք նաեւ անկեղծ եւ ճշմարտախօս էին, եւ պատրաստ ճշմարտութեամբ գրելու ինչ որ տեսած եւ լսած էին։ Անոնց անկեղծութիւնը յայտնի է խոնարհութենէն որով կը խօսին իրենց վրայ, անաչառութենէն որով կը յանդիմանեն ժողովրդեան մեղքերը, նաեւ անոնց անկեղծութիւնը յայտնի է անոնց բարոյական վարդապետութենէն, եւ ասկէ որ անոնք չէին կրնար յուսալ թէ Աւետարաններուն համար պատիւ, հարստութիւն եւ հանգիստ պիտի ստանային, այլ ընդհակառակն, գիտէին թէ նեղութիւն, հալածանք եւ մահ անգամ պիտի կրէին։ Ցուցուցինք նաեւ թէ աւետարանիչք այնպիսի տեղեր եւ այնպիսի վիճակի մէջ էին որ չէին կրնար խաբուիլ այն բաներուն վրայ զորս գրեցին Աւետարաններուն մէջ։*

*Վերջապէս յայտնի եղաւ որ Աւետարանաց աստուածուստ ըլլալուն ապացոյցներն այնպէս զանազան եւ շատ են որ պարտինք ընդունիլ զանոնք իբրեւ համոզիչ, եւ կամ հերքել զանոնք աւելի զօրեղ եւ համոզիչ փաստերով։ Ուստի սկսանք քննել թէ արդեօք Աւետարանաց արժանահաւատութեանը*

դէմ ապացոյցներ կա՞ն։ Եթէ այնպիսի ապացոյցներ կան, անոնք կամ նոյն իսկ Աւետարաններէն կամ պատմութենէ եւ կամ գիտութենէ յառաջ գալու են ։

Ասոր վրայ քննեցինք նախ թէ կայի՞ն արդեօք Աւետարաններուն մէջ անոնց արժանահաւատութիւնը հերքելու բաւական հակասութիւններ, եւ համոզուեցանք որ այնպիսի հակասութիւններ չեն գըտնուիր Աւետարաններուն մէջ ։ Յետոյ քննեցինք թէ արդեօք պատմութիւնը կը հերքէ՞ Հին եւ Նոր կտակարաններուն մէջ ըսուած բաները, եւ երեւելի պատմագրաց վկայութիւններէն տեսանք որ Սուրբ գրոց պատմական արժանահաւատութիւնն արդէն հաստատուած է ։ Յետոյ քննեցինք թէ արդեօք գիտութիւնք կը հերքե՞ն Աստուածաշունչին արժանահաւատութիւնը, այսինքն թէ Աստուածաշունչին մէջ կա՞ն բաներ որ հակառակ են մեզի ծանօթ բնական երեւոյթներուն եւ ապացուցեալ բնական օրինաց ։ Գիտնոց նորագոյն հետազօտութիւններուն հետ բաղդատեցինք Աստուածաշունչին այն խօսքերը որ գիտնական բաներու կը վերաբերին, եւ գտանք թէ գիտութիւնք արդարեւ հերքած են Աստուածաշունչին խօսքերուն տրուած քանի մը սխալ մեկնութիւնները, եւ թէ Սուրբ գրոց մէջ կան բաներ որ հակառակ են արդի գիտուններէն ոմանց կարծիքներուն, բայց այս կարծիքները բաւական փաստերով հաստատուած եւ գիտուններէն առ հասարակ իբրեւ ճշմարիտ ընդունուած չեն, այլ, ընդհակառակն, տեսանք որ, նոյն իսկ գիտնոց շատերուն վկայութեանը նայելով, Աստուածաշունչին ճշմարիտ մեկ-

*նութիւններէն եւ ոչ մին երբէք հերքուած է գիտութեանց ապացուցեալ որ եւ իցէ մէկ վարդապետութենէն ։*

*Այս այսպէս ըլլալով, պարտինք իբրեւ ճշմարիտ ընդունել Աւետարաններուն արժանահաւատութիւնը հաստատող զանազան եւ բազմաթիւ փաստերը ։*

*Բայց կան նաեւ ուրիշ տեսակ ապացոյցներ որ, շատերուն կարծեացը նայելով, աւելի համոզիչ են, եւ այս ապացոյցներն են նոյն իսկ Աւետարաններէն ծագած ապացոյցները։ Այս ապացոյցներէն ոմանք այսուհետեւ մէջ պիտի բերենք համառօտիւ։*



# ԳԼՈՒԽ ԺԳ.

## ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻՆ ՄԵՍԻԱՅԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ԲՈԼՈՐ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍԻ ՎՐԱՅ ԿԱՏԱՐՈՒԵՑԱՆ

*Դիտողութեան արժանի է սա կէտը թէ Հին կտակարանին շատ խօսքերը շարունակ ժողովրդեան ուշադրութիւնը կը դարձնէին դէպ ապագայ Փրկիչ մը։ Հրէից ոչ միայն մարգարէութիւններն այլեւ Հրէական եկեղեցւոյ ծէսերն եւ արարողութիւնները կը նայէին Մեսիայի մը ։ Արդարեւ այս մարգարէութիւնները չըսուեցան այն պարզութեամբ որով պատմութիւնը կը նկարագրէ անցեալ դէպքեր. ոչ ալ այնպէս որոշ էին որ անոնց նշանակութիւնը, մարգարէութեանց կատարուելէն առաջ, ճշդիւ հասկցուէր ամէն պարագայիւք. բայց մարգարէութիւններն երթալով աւելի յստակ եւ որոշ եղան, եւ վերջապէս երբ կատարուեցան, անոնց նշանակութիւնը բոլորովին յայտնի եղաւ ։*

*Յայտնի է որ Մեսիայի վերաբերեալ մարգարէութիւնք ըսուեցան դարերով յառաջ քան Քրիստոսի աշխարհք գալը ։ ԶՔրիստոս չընդունող Հրեայք անգամ կը հաստատեն զայս։ Հրէից վկայութեանը նայելով այս մարգարէութեանց վերջինը գրուեցաւ Յիսուսի ծնանելէն քանի մը դար առաջ ։ Նաեւ դիտ-*

ցուած է որ Հին կտակարանին բոլոր գիրքերը Քրիստոսի ծնունդէն աւելի քան 200 տարի առաջ Յունարէն թարգմանուեցան ։

Արդ, քննենք համառօտիւ այն մարգարէութիւններէն ոմանք որ Քրիստոսի ծնանելէն առաջ ըսուեցան, եւ տեսնենք թէ ինչպէս ճշդիւ կատարուեցան Քրիստոսի վրայ ։

1. Ապագայ Մեսիայի վերաբերեալ մարգարէութիւնք շատ են։ Հարիւրը կ'անցնի անոնց թիւը, եւ Հին կտակարանին գրեթէ ամէն մասին մէջ կան ։ Մովսէսի հինգ գիրքերուն մէջ կը գտնուին մարգարէութիւններ կնոջ սերունդին վերաբերեալ որ օձին գլուխը պիտի ջախջախէր (Ծննդ. Գ. 15), նաեւ Աբրահամու սերունդին վերաբերեալ որով երկրիս բոլոր ազգերը պիտի օրհնուէին (Ծննդ. ԻԲ. 18)։ Մովսէս որ Իսրայելի ժողովուրդն ազատեց Եգիպտոսի ծառայութենէն՝ իրեն նման մարգարէի մը վրայ կը խօսի զոր Աստուած պիտի յարուցանէր (Բ Օր. ԺԸ. 18)։ Դաւիթ իր Սաղմոսներուն մէջ ինքզինք կը ցուցնէ իբրեւ տիպ եւ օրինակ անոր որոյ թագաւորութիւնը պիտի տարածուէր ծագաց ի ծագս աշխարհի (Սաղմ. Բ. եւ ԽԵ.)։ Սողոմոն յառաջնմէ կը պատմէ անոր փառքը (Սաղմ. ՀԲ)։ Մարգարէք Յովսէէ, Յովէլ, Ամովս, Եսայի, Երեմիա, Դանիէլ, Մաղաքիա, բոլորն ալ մարգարէացան Մեսիայի վրայ։ Անոնցմէ եւ ոչ մին լի եւ կատարեալ տեղեկութիւն կուտայ ապագայ Մեսիային վրայ, բայց իւրաքանչիւրը կը ցուցնէ այն բաները միայն որ յարմար էին իրենց ժամանակի մարդոց պարագաներուն եւ կարօտութեանցը ։ Այս մարգարէութիւնք ըսուեցան շատ

*դարեր առաջ, եւ իրարմէ շատ հեռու ապրող մարգարէներու միջոցաւ, եւ այս մարգարէութեանց մէջ յիշուած են ապագայ Փրկչին այլեւայլ տարբեր յատկութիւնները եւ պաշտօնները, եւ բոլոր այս մարգարէութիւնք արդեամբ կատարուեցան Քրիստոսի վրայ:*

*2. Այս մարգարէութիւնք շատ մանր պարագաներ կը յիշեն: Ի սկզբան ընդհանուր էին, եւ մինչեւ աստիճան մը մթին, բայց յետոյ սկսան մանրապատում եւ յստակ ըլլալ: Հարկ չէ մեզ յիշել այս մարգարէութիւնները կարգաւ Ծննդոց գիրքէն մինչեւ Մաղաքիա, բայց կը բաւէ անոնցմէ մէկ քանին յիշել՝ ցուցնելու համար թէ ինչ զարմանալի ճշդութեամբ կանխաւ պատմուեցաւ Մեսիայի կեանքը, այսինքն թէ երբ եւ ուր պիտի գար Մեսիան, եւ ինչ պիտի ըլլային անոր ծննդեան պարագաները, ի՛նչ գործքեր պիտի կատարէր, ի՛նչ կերպով պիտի ընդունուէր Հրէից ազգէն, ի՛նչ մահուամբ պիտի մեռնէր, եւ ի՛նչպէս պիտի ըլլար անոր ապագայ թագաւորութիւնը:*

*Մեսիայի գալստեան ժամանակը ճշդիւ բացուած է: Ըստ Ծննդ. ԽԹ. 10 համարին, թէեւ Իսրայելի միւս ցեղերը ցրուէին, Յուդայի ցեղը պիտի մնար եւ իր առանձին ցեղային իշխանութիւնը պիտի վարէր մինչեւ ի գալուստն Մեսիայի, եւ արդարեւ այս ցեղն իր ցեղային ամբողջութիւնը պահեց մինչեւ ի գալուստն Քրիստոսի:*

*Ըստ Անգեայ (Անգ. Բ. 3, 7, 9) Մեսիա պիտի գար մինչդեռ երկրորդ տաճարը կանգուն էր: Հրեայք նոյնպէս կը հասկնային յիշեալ մարգարէութիւնը, եւ*

համոզուած էին թէ տաճարը պիտի չկործանէր մինչեւ Մեսիայի գալուստը, եւ անոնց այս համոզումն այնպէս զօրաւոր էր որ չուզեցին որեւիցէ պայմաններով յանձնել Երուսաղէմ Տիտոսի, որ յամի Տեառն 70—71 պաշարեց յիշեալ քաղաքը ։

Դանիէլի մէջ (Թ. 20—27) մարգարէութիւն մը կայ նկատմամբ ճիշդ ժամանակին թէ երբ պիտի երեւէր Մեսիան եւ երբ պիտի կտրուէր։ Թող ընթերցողք մտադրութեամբ կարդան այս մարգարէութիւնը ։ Ըստ այս մարգարէութեան, Քրիստոսի գալստեան ժամանակն էր 70 եօթնեակ, այսինքն 490 տարի, որ երեք մաս կը բաժնուի։ Առաջին մասն է 7 եօթնեակ, այսինքն 49 տարի, եւ այս միջոցին երկրորդ տաճարը պիտի շինուէր։ Երկրորդ մասն է 62 եօթնեակ, այսինքն առաջին մասէն ետքը 434 տարի, եւ այս միջոցին Մեսիան պիտի երեւէր։ Երրորդ մասն է մէկ եօթնեակ, այսինքն 7 տարի, որոյ կիսուն պիտի կտրուէր Մեսիան ։ 70 եօթնեկաց կամ 490 տարեաց ժամանակը պիտի սկսէր «Երուսաղէմը նորէն շինելու հրամանը ելլելէն»։ Այսպիսի հրաման մը երեք ելաւ։ Կիւրոս հրաման տուաւ տաճարը շինելու, բայց Երուսաղէմ շինելու յատուկ հրամանը տրուեցաւ Արտաշէսէն, անոր թագաւորութեանը 20երորդ տարին ։ Այս հրամանին մանր պարագաները կը յիշուին Նէեմեայ երկրորդ գլխոյն մէջ ։ Արդի պատմագէտք մեծ ճշդութեամբ եւ զարմանալի համաձայնութեամբ կ՚որոշեն ժամանակը յորում տրուեցաւ այս հրամանը ։ Եան, Հէնկստէնպէրկ, Հէյլզ, Գալմէդ եւ Ըշըր անուն երեւելի հնագէտներուն հաշիւներուն մէջ չկայ տարբերութիւն մ՚աւելի քան տասն տարւոյ այն

ժամանակին վրայ յորում տրուեցաւ Երուսաղէմ Նորէն շինելու հրամանը։ Ըստ Եանի այն հրամանը տրուեցաւ 444 տարի նախ քան զՔրիստոս. ըստ Հէնկստէնպէրկի 454 տարի նախ քան զՔրիստոս. ըստ Հէյլզի 444 տարի նախ քան զՔրիստոս. ըստ Գալմէդի 449 տարի նախ քան զՔրիստոս, եւ ըստ Ըշըրի 454 տարի նախ քան զՔրիստոս։ Արդ, եթէ այս թուականները հանենք 69 մարգարէական եօթնեակներով ցուցուած 483 տարեաց թիւէն, անատեն Մեսիայի երեւման տարին կ'ըլլայ ըստ Եանի եւ Հէյլզի Քրիստոնէական թուականին 39երորդ տարին, ըստ Գալմէդի՝ 34երորդ տարին, եւ ըստ Հէնկստէնպէրկի եւ Ըշըրի՝ 29երորդ տարին, եւ Աւետարաններէն գիտենք որ Քրիստոս իր ծնունդենէն իբր 30 տարի յետոյ իբրեւ Մեսիա արդարեւ յայտնեց զինք հրապարակաւ աշխարհի։ Շատ դժուարին է նոյն իսկ գիտնոց ճշդիւ որոշել հին դէպքի մը բուն տարին, ինչպէս է Երուսաղեմայ շինութեան հրաման տրուելուն դէպքը, բայց ստոյգ է որ քանի մը երեւելի հնագիտաց նորագոյն հետազօտութեանց նայելով Քրիստոս զինք հրապարակաւ յայտնեց աշխարհի իբրեւ Մեսիա բուն իսկ այն տարին որ յիշուած է Քրիստոսէ 600 տարի առաջ գրուած Դանիէլեան մարգարէութեան մէջ, եւ ուրիշ հնագիտաց հաշիւներն, ինչպէս տեսանք, անկէ երեք կամ չորս տարի միայն կը տարբերին։ Նոյն իսկ մարգարէութեան մէջ կանխաւ ըսուած է նաեւ թէ, ժամանակին առաջին երկու մասերէն, այսինքն 7 եւ 62 եօթնեակներէն, ետքը Մեսիան պիտի կտրուէր վերջին մասին, այսինքն վերջին մարգարէական եօթնեկին մէջ։

*տեղը։ Այս ժամանակը կը պատասխանէ ճիշդ Քրիստոսի կենաց այն տարիներուն, որոնց մէջ Քրիստոս յայտնելով զինք աշխարհի իբրեւ Մեսիա, շարունակեց իր պաշտօնն երեք կամ չորս տարի եւ կտրուեցաւ, եւ մատուցանելով զինք պատարագ աշխարհի մեղաց համար, դադրեցուց ուրիշ ամէն պատարագ եւ ողջակէզ, ինչպէս որ կանխաւ ըսուած էր։*

*Այս մեկնութիւնը կը հաստատուի իբրեւ ճշմարիտ սա բանով որ նոյն իսկ Հրեայք այս կերպով կը մեկնէին յիշեալ մարգարէութիւնը, եւ կը սպասէին Մեսիայի երեւման ճիշդ այն ատեն որ Քրիստոս երեւցաւ։ Ոչ Հրեայք միայն այլ եւ ուրիշ ազգեր ունէին այս ակնկալութիւնը։ Այն դարուն Հռոմայեցի մատենագիրներէն, ինչպէս Տակիտոսէ եւ Սուետոնիոսէ, կը սորվինք որ այն ժամանակներն արտաքոյ կարգի անձի մը երեւնալուն առ հասարակ կը սպասուէր։*

*Այսպէս յայտնի է թէ Յիսուս Քրիստոս երեւցաւ երկրի վրայ ճիշդ այն ժամանակ որ Մեսիան պիտի երեւէր ըստ մարգարէից։*

*Մարգարէութեանց մէջ կանխաւ ըսուած էր թէ Մեսիա պիտի ունենար կարապետ մը որ ճամբայ պիտի պատրաստէր անոր համար։ Տես Եսայ. Խ, 3, Մաղ. Գ. 1, Դ. 5։ Ընթերցողք այս մարգարէութիւնները թող բաղդատեն Մատթէի Գ. գլխոյն հետ, եւ պիտի տեսնեն թէ ինչպէս կատարուեցան անոնք Յովհաննու Մկրտչին վրայ, որ իր վարուքը եւ ոգւով շատ նման էր Եղիա մարգարէին։ Յովհաննէս Մկրտիչ քարոզեց անապատին մէջ, եւ իր քարոզութեամբը պատրաստեց ժողովուրդը Քրիստոսի գալստեանը։*

Մարգարէութեանց մէջ կանխաւ ըսուած էր նաեւ թէ Մեսիան պիտի ծնանէր Յուդայի Բեթլէհէմ գիւղը, եւ արդարեւ Յիսուս յիշեալ գիւղը ծնաւ։ Բաղդատէ Միք. Ե. 2 եւ Մատթ. Բ. 1։

Կանխաւ ըսուած էր նաեւ Մեսիայի ծննդեան կից զարմանալի դէպքերն որ նոյնպէս կատարուեցան Յիսուս Քրիստոսի ծննդեան ատենը։ Բաղդատէ Եսա. Է. 14 եւ Մատթ. Ա. 18—25 համարները։

Մարգարէութեանց մէջ կանխաւ ըսուած էր նաեւ թէ Մեսիան պիտի ծագէր Աբրահամու, Իսահակայ, Յակոբայ, Յուդայի եւ Դաւթի սերունդէն, եւ Յիսուս արդարեւ ըստ մարմնոյ ծագեցաւ յիշեալ նահապետաց սերունդէն։

Մեսիայի կատարելու պաշտօնն ալ ըսուած էր մարգարէութեանց մէջ։

Ըսուած էր թէ Մեսիան պիտի ըլլար մարգարէ կամ ուսուցիչ։ Տես Բ. Օր. ԺԸ. 15, Ես. ԺԱ. 1—4։ Այս մարգարէութիւնները ճշդիւ կատարուեցան յանձին Քրիստոսի, որ կը խօսէր այնպէս ինչպէս մարդ երբեք խօսած չէր (Յովհ. Է. 46), որ կը սորվեցնէր իբրեւ իշխանութիւն ունեցող (Մատթ. Է. 29), որ խստիւ յանդիմանեց դպրաց եւ փարիսեցւոց կեղծաւորութիւնը եւ ամբարշտութիւնը (Մատթ. ԻԳ), եւ որ կ'ըսէր քաղցր եւ մխիթարական խօսքեր առ տառապեալս (Մատթ. ԺԱ. 28, ԺԸ. 6)։

Մարգարէութեանց մէջ կանխաւ ըսուած էր նաեւ թէ Մեսիան պիտի ըլլար քահանայ (Սաղմ. ՃԺ. 4)։ Յիսուս Քրիստոս զարմանալի կերպով կատարեց այս մարգարէութիւնը, երբ զինք մատոյց կատարեալ պատարագ մեր մեղաց համար։

Կանխաւ ըսուած էր նաեւ թէ Մեսիան պիտի ըլլար Թագաւոր, թէ անոր թագաւորութիւնը պիտի տարածուէր հեթանոսաց վրայ, եւ թէ այս թագաւորութիւնը պիտի ըլլար խաղաղութեան թագաւորութիւն։ Տես Սաղմ. Բ. 6, ԾԺ. 2, Ես. Թ. 6, 7, ԽԹ. 6, Կ. 3, 5։

Ի՛նչ զարմանալի կերպով կատարուեցան այս մարգարէութիւնները Քրիստոնէական կրօնքին ութեւտասն դարուց մէջ ընդհանուր տարածուելովը հեթանոսաց մէջ մինչեւ իսկ երկրիս ծայրերը։ Նաեւ առաքելոց օրէն ի վեր չեղաւ ժամանակ յորում այս մարգարէութեանց կատարումն այնպէս արագ եղաւ որչափ ներկայ դարուս մէջ, քանզի Քրիստոսի Աւետարանը հիմա թարգմանուած է գրեթէ երկրիս բոլոր լեզուներուն, ովկիանոսի կղզիները փրկութեան համար դարձած են Քրիստոսի, եւ Չինու, Ճապոնի եւ Հնդկաստանի մէջ բազմութիւնք սիրած են Տէր ճանչնալ զՔրիստոս։

Մարգարէութեանց մէջ կանխաւ ըսուած էր թէ Մեսիան պիտի բանար կոյրերուն աչքերը եւ խուլերուն ականջները, թէ կաղերուն քալել պիտի տար եւ համրերուն խօսիլ (Ես. ԼԵ. 5, 6)։ Արդարեւ այսպիսի հրաշքներ գործեց Յիսուս։

Մարգարէութեանց մէջ կանխաւ ըսուած էր թէ Մեսիան պիտի մերժուէր Հրեաներէն, չարագործներուն կարգը պիտի դասուէր, պիտի հոյհոյուէր եւ վերջապէս պիտի սպաննուէր։ Տես Ես. ԾԳ. եւ Դան. Թ. 26։ Մեր ընթերցողք գիտեն թէ այս մարգարէութիւնները ճշդիւ կատարուեցան Յիսուս Քրիստոսի վրայ։ Կ՚ըսուի թէ Լորտ Րոչէսթէր,

Անգղիացի անուանի անհաւատը, զարմացաւ, երբ ուշադրութեամբ կարդաց Եսայեայ ԾԳ. գլուխը։ Ըսաւ թէ, թէպէտ այս գիրքը Քրիստոսի ծնընդենէն 700 տարի առաջ գրուած է, անոր չարչարանքն ու մահն այնպէս ճշդիւ կը պատմէ ինչպէս Մատթէոս աւետարանիչ։

Մեսիայի վերաբերեալ մարգարէութիւններէն ոմանք այնպէս հակասական կը թուին, որ կրնայ մարդ ըսել թէ անհնար էր որ անոնք միեւնոյն անձին վրայ կատարուէին, բայց եւ այնպէս անոնց բոլորն ալ կատարուեցան Քրիստոսի վրայ։

Կանխաւ ըսուած էր թէ Մեսիան աշխարհակալ մը պիտի ըլլար, պիտի նստէր Դաւթի աթոռը եւ պիտի կառավարէր բոլոր ազգերը. բայց ըսուած էր նաեւ թէ պիտի չարչարուէր, անարգուէր եւ մերժուէր մարդոցմէ։

Մեսիայի վրայ ըսուած էր կանխաւ թէ անոր թագաւորութիւնը սահման պիտի չունենար, բայց ըսուած էր նաեւ թէ Մեսիան պիտի կտրուէր։ Բաղդատէ Ես. Թ, 7 եւ ԾԳ. գլուխը, նաեւ Դան. Է. 13, 14 համարները Դան. Թ. 26 համարին հետ։ Մեսիան ի՞նչպէս կրնար թագաւորել փառօք, միանգամայն ըլլալ անարգեալ եւ մերժեալ ի մարդկանէ։ Ի՞նչպէս կրնար սպաննուիլ, միանգամայն յաւիտեան թագաւորել։

Կանխաւ ըսուած էր թէ Մեսիան պիտի երեւէր իբրեւ տղայ կուսածին, բայց եւ այնպէս կոչուած է «Սքանչելի, Խորհրդակից, Հզօր Աստուած, Յաւիտենականութեան Հայր, Խաղաղութեան Իշխան։» Բաղդատէ Ես. Է. 14, Ես. Թ. 6 համարին հետ։

Այս մարգարէութեանց կատարուելէն առաջ անհնարին կը թուէր անոնց կատարումը մի եւ նոյն անձին վրայ, բայց հիմա յայտնի է թէ բոլորն ալ կատարուեցան Քրիստոսի վրայ։

Ուրեմն ինչպէս կարելի է մեկնել Հին կտակարանին մարգարէութեանց եւ Քրիստոսի կենաց պատմութեան մէջտեղ զարմանալի համաձայնութիւնը։

Կրնայ ըսուիլ թէ այս համաձայնութիւնը դիպուածական է։ Այսպէս կրնար ըլլալ, եթէ Հին կտակարանին մէջ միայն քանի մը ընդհանուր մարգարէութիւններ ըլլային. բայց այնպէս չի կրնար ըլլալ, քանզի այն գրոց մէջ աւելի քան հարիւր մարգարէութիւններ կան Մեսիայի վերաբերեալ, յորոց ոմանք ընդհանուր են, բայց այլք մասնաւոր են։ Մասնաւոր մարգարէութեանց մէջ կը յիշուին Քրիստոսի ծննդեան տեղը, ժամանակը եւ պարագաները, անոր կենացը եւ մահուան բոլոր հանգամանքը։ Շատ դիւրահաւան ըլլալու է մարդ հաւատալու համար թէ բոլոր այս կանխասացութեանց կատարուիլը Քրիստոսի վրայ դիպուածական էր։ Այսպիսի բանի մը հաւատալ բոլորովին անտեղի է։

Կրնա՞յ ըսուիլ թէ Քրիստոս եւ անոր աշակերտները այս մարգարէութիւնները գիտնալով, այն մարգարէութեանց գուշակութիւնները դիտմամբ կատարեցին։ Ասոր կը պատասխանենք որ եթէ Քրիստոս լոկ մարդ էր, ոչ ինքն եւ ոչ աշակերտները կարող էին որոշել անոր ծննդեան ժամանակն ու տեղը, ոչ ալ կատարել այն գուշակութիւններն որ կը վերաբերին Մեսիային Հրէից ազգէն մերժուելուն եւ խաչուելուն եւ անոր թագաւորութեան

ապագայ փառացը ։ Այս խօսքն ալ անտեղի է ։ Աշխարհք եկող բոլոր մարդոց մէջ չեղաւ մէկը որուն վրայ այս մարգարէութեանց տասներորդ մասը կատարուած ըլլայ ։ Քրիստոս է միայն անձը որոյ վրայ կատարուեցան բոլոր այն մարգարէութիւնք լիովին ։ Այս ճշմարիտ է ոչ միայն Հին կտակարանին գրաւոր մարգարէութեանց, այլեւ ծէսերուն, նուէրներուն եւ զոհերուն նկատմամբ ։ Ասոնց բոլորին ալ իմաստը, մեկնութիւնը եւ հոգեւոր նշանակութիւնը յայտնի եղան Քրիստոսի վրայ ։ Ուստի եւ առանց հակառակութեան կը հետեւի թէ Քրիստոս էր արդարեւ Մեսիան որ այնչափ դարեր խոստացուած էր Հրէից ազգին, եւ թէ նա է արդարեւ Խաղաղութեան Իշխանը որ փրկութիւն պիտի բերէր մեր կորուսեալ աշխարհին ։



# ԳԼՈՒԽ ԺԳ.

## ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԿԱՏԱՐԵԼՈՒԹԻՒՆԸ

*Ով որ ուշադրութեամբ կը կարդայ Քրիստոսի վարքը որ յայտնուած է Աւետարաններուն մէջ, կը համոզուի թէ Յիսուս արդարեւ գերազանց անձ մ'էր։*

*Աշխարհի մէջ երեւեցան շատ մարդիկ որ ձրից եւ առաքինութեանց կողմանէ նշանաւոր էին, բայց անոնցմէ եւ ոչ մին ունէր ամէն գերազանց յատկութիւն։ Քրիստոս միայն ունեցաւ ամէն առաքինութիւն, եւ բարձր աստիճանաւ։*

*Ուրիշ բոլոր մարդիկ որչափ նշանաւոր ձրից եւ առաքինութեանց տէր որ էին, շատ թերութիւններ ալ ունէին. բայց Քրիստոսի անձին վրայ մի միայն եւ դոյզն աստիճանի թերութիւն չգտնուեցաւ։*

*Կան առաքինութիւններ որ շատ քիչ անգամ մի եւ նոյն անձին վրայ բարձր աստիճանաւ կը գտնըւին, զոր օրինակ արութիւն եւ խոնարհութիւն, ուժգնութիւն եւ քաղցրութիւն, մաքրութիւն եւ գութ առ անկեալն, բայց Քրիստոսի վրայ ատոնց բոլորն ալ միացեալ էին, եւ այն՝ բարձրագոյն աստիճանաւ։ Հոս Քրիստոսի գերազանց յատկութիւններէն ոմանք յիշենք։*

*1. Քրիստոսի գերազանցութիւնը կը տեսնուի յայտ որ, մինչ բարձր ճշմարտութիւններ վարդապետելու զբաղած եւ մեծ գործի մը ձեռնարկած էր, օրըստօրական կենաց դոյզն պարտականութիւն-*

ները չթողուց, ոչ ալ զանց ըրաւ մատուցանել մարդոց ամենաչնչին ծառայութիւններ։ Մեծ բազմութեանց կը քարոզէր. միանգամայն չմերժեց սորվեցնել անհատ անձ մը որ գիշերով եկաւ անոր, կամ խեղճ Սամարացի կինը որուն հանդիպեցաւ Ջըրհորի մը քով (Յովհ. Գ. 1—21, Դ. 5—26)։ Բազմութիւններու խօսեցաւ երկնային իմաստութեան խօսքերը, բայց չմոռցաւ միանգամայն անոնց անօթութիւնը, ուստի եւ հոգաց անոնց ուտելու հաց հայթայթել (Մատթ. ԺԴ. 14—21. ԺԵ, 32)։ Իր ամենակարող զօրութեամբը կերակուր պատրաստեց հազարաւորաց, բայց հրամայեց նաեւ իր աշակերտներուն հացին կտորուանքը ժողվել որպէս զի բան մը չկորսուէր (Յովհ. Զ. 5—12)։

2. Քրիստոսի գերազանցութիւնը կը տեսնուի նաեւ անոր սիրոյն մէջ որ առ ամենեսին։ Քրիստոս կը սիրէր իր մայրը, իր եղբայրները եւ իր ազգը, բայց անոր սէրն ազգականութեան զօդին միայն կապուած չէր, ոչ ալ ազգութեան սահմանին մէջ միայն փակուած էր։ Իր մահուան տագնապին մէջ յանձնեց իր մայրը սիրելի աշակերտին խնամոցը (Յովհ. ԺԹ. 25-27), բայց ըսած էր նաեւ թէ ով որ իր Հօրը կամքը կը կատարէ, իր եղբայրը, քոյրը եւ մայրն է (Մատթ. ԺԲ. 46-50)։

Ինք գնաց, եւ իր աշակերտներուն ալ պատուիրեց երթալ նախ իր ազգին, Իսրայէլի տանը կորուսեալ ոչխարներուն (Մատթ. Ժ. 6), բայց իբրեւ վերջին պատուէր հրամայեց նաեւ իր աշակերտներուն. «Գացէք բոլոր աշխարհ, ու Աւետարանը քարոզեցէք բոլոր ստեղծուածներուն» (Մարկ. ԺԶ. 15)։

3. Քրիստոսի գերազանցութիւնը կը տեսնուի նաեւ անոր թէ պարզութենէն եւ թէ ազնուութենէն։ Քրիստոս չփնտռեց մեծատանց կամ գլխոց եւ կամ մեծամեծաց բարեկամութիւնն եւ շնորհքը։ Կը սիրէր հասարակ ժողովուրդը, անոնց ընկերութենէն կ՚ախորժէր, եւ մասնակից կ՚ըլլար անոնց նեղութիւններուն, ուրախութիւններուն եւ տրտմութիւններուն։ Արդարեւ Քրիստոս եղաւ իբրեւ անոնցմէ մին, բայց եւ այնպէս բոլորովին զերծ էր դժգոհութեան եւ նախանձու ոգիէն որ շատ անգամ կը տեսնուի հասարակ մարդոց մէջ։ Թէպէտ Քրիստոս աղքատ էր, հակառակ չէր մեծատանց. թէպէտ հպատակ էր, իշխանութեան տէր անձինք չէր անարգեր. Թէպէտ հասարակ ժողովրդեան մէջ կը գտնուէր, անոր բարքը շատ գերազանց էր քան անոնցը. Թէպէտ անոր երկրաւոր վիճակը խոնարհ էր, անոր ոգին երկնային էր։ Պարզամիտ էր, միանգամայն ազնուամիտ։

4. Քրիստոսի վրայ ուրիշ գերազանց յատկութիւններ ալ կային։ Քրիստոս գործունեայ էր, եռանդուն, բոլորովին անձնատուր իր գործին, միանգամայն արդարախոհ եւ մարդասէր։ Միշտ կը հրահանգէր ժողովուրդը, միանգամայն միշտ կը խօսէր ճիշդը եւ ճիշդ ժամանակին։ Անոր կեանքը լի էր բարերարական գործերով, միանգամայն այն գործերուն իւրաքանչիւրը յարմար էր ժամանակին։ Պատմութիւնը կը վկայէ թէ շատ դժուարին է եռանդնոտ մարդոց խոհեմ ըլլալ, եւ խոհեմներուն գործօն եւ եռանդուն ըլլալ, բայց այս երկու յատկութիւնները կատարեալ կը գտնուէին Քրիստոսի վրայ։

5. Նմանապէս Քրիստոս աներկիւղ միանգամայն զգուշաւոր էր : Քրիստոս մարդոցմէ չէր վախնար, եւ հոգ չէր ըներ թէ անոնցմէ վնաս մը կրնար հասնիլ իրեն : Երուսաղէմ գնաց, գիտնալով հոն իրեն դէմ նիւթուած թշնամութիւնը, եւ աներկիւղութեամբ յանձն առաւ մատնուիլ եւ ի մահ դատապարտուիլ : Բայց միշտ կը զգուշանար թշնամութիւն չգրգռել վայրապար : Անոր հակառակորդաց չարութիւնը չէր կրնար ամենեւին խոտորեցնել զանի իր նպատակն ի գլուխ հանելէ : Բոլոր թշնամիք միանալով չէին կըրնար գոցել անոր բերանը, մինչեւ որ խօսէր ինչ որ պէտք էր խօսիլ. ոչ ալ կրնային կասեցնել անոր ջանքերը, մինչեւ որ ամէն հարկաւոր մարդասիրական գործ կատարուէր. բայց եւ այնպէս Քրիստոս իշխանները զայրացնող խօսք ամենեւին չէր ըներ, ոչ ալ կ՚ուզէր որ իր փրկաւոր գործը հրատարակուէր ժամանակէն առաջ : Անոր թշնամիներուն չարութիւնը չէր կրնար ոչ վախցնել եւ ոչ գրգռել զՔրիստոս :

6. Քրիստոսի գլխաւոր նպատակն էր յայտնել մարդոց հանդերձեալ աշխարհին անհուն գերազանցութիւնը, եւ յորդորել զանոնք երկնային ժառանգութիւն մը փնտռելու, բայց եւ այնպէս երբէք չարհամարհեց այս աշխարհս, ոչ ալ ինքզինք հակառակ ցուցուց աշխարհի իրական շահերուն : Երբէք անձնատուր չեղաւ աշխարհային հեշտութեանց եւ պատուոյ, բայց նաեւ խոյս չտուաւ մարդոց ընկերակցութենէն : Մինչ մարդոց կը պատուիրէր զանձ չդիզել երկրի վրայ այլ երկինքը, անոնց օրըստօրական գործերը կամ աշխատութիւնը չպարսա-

ւեց իրրեւ անօգուտ, ոչ ալ անոնց ընկերական զուարճութիւնները մերժեց իբրեւ մեղանչական ։ Մինչ կը խրատէր իր աշակերտները երկնաւոր աշխարհի փառքը նկատելու, ըստ արժանւոյն կը յարգէր նաեւ ինչ որ բարի եւ օգտակար եւ սուրբ բան կար այժմու կենաց զբաղմանց եւ յարաբերութեանց մէջ ։ Մինչ կը հրաւիրէր զմարդիկ Գառին հարսանեաց ընթրիքին (Յայտ. ԺԹ. 9), չզլացաւ անձամբ երթալ Գալիլեայի Կանայ քաղքին հարսանիքը ։

Անկատար մարդոց համար շատ դժուարին է մանաւանդ այս բանին մէջ Քրիստոսի նմանող ըլլալ ։ Ոմանք մտածելով թէ որչափ շատ եւ որչափ մեծ են չարիք աշխարհիս մէջ, կ'ուզեն բոլորովին հրաժարիլ մարդոց ընկերակցութենէն. մինչ այլք մտածելով թէ կայ քիչ մը բարի բան աշխարհիս մէջ, անձնատուր կ'ըլլան բոլորովին աշխարհային հեշտութեանց եւ պատիւներու, եւ երկնային ժառանգութիւն չեն փնտռեր ։

Մարգարէացուած էր թէ Մեսիան պիտի նմանէր գառին եւ առիւծու միանգամայն (Ես. ԾԳ. եւն, Ծնունդ. ԽԹ. 9, 10, Յայտ. Ե. 5) ։ Ո՛չ ապաքէն Քրիստոս առիւծու զօրութիւնն ու քաջութիւնը միանգամայն ունէր ։ Աշխարհիս վրայ ոչ հարստութիւն ունէր, ոչ ազդեցութիւն եւ ոչ բարձր աստիճան. քանի մը խոնարհ աշակերտներ միայն ունէր, անոնք ալ անկարող էին անոր կենացը միջացին լաւվին հասկնալ անոր նպատակը, կամ օգնական ըլլալ անոր իր ձեռնարկութիւններուն մէջ ։ Բայց եւ այնպէս Քրիստոս ձեռք զարկաւ այնպիսի ընդարձակ եւ դժուարին գործի մը որ ի վեր էր քան զմարդկային

կարողութիւն եւ իմաստութիւն ։ Այս աշխարհիս բոլոր զօրութիւնները, մարդոց կիրքերը, իշխանաց նախանձը եւ քահանայից մոլի եռանդը, բոլորն ալ ելան Քրիստոսի եւ անոր գործին դէմ, բայց եւ այնպէս Քրիստոս ինչ հաստատամտութեամբ եւ արութեամբ յառաջ տարաւ գործը ։ Առանձին էր, բայց չվարանեցաւ երբէք ։ Դպրաց եւ փարիսեցւոց կողմէն հակառակութիւն տեսաւ, բայց յարատեւեց իր գործին մէջ ։ Որեւիցէ դժուարութիւն, որչափ ալ մեծ ըլլար, չէր կրնար վհատեցնել զինքը. որ եւ իցէ հակառակութիւն, որչափ ալ սաստիկ ըլլար, չէր կրնար փախցնել զինքը ։ Խօսեցաւ իշխանութեամբ. ինքզինք ամենուն վրայ տէր ցուցուց. փոթորիկին սաստեց եւ խաղաղութիւն եղաւ. ախտաժետներուն հրամայեց, եւ անոնք հնազանդեցան անոր ։ Արդարեւ Յուդայի ցեղին առիւծն էր ։

Թէպէտ այսպէս մեծանձն էր եւ հզօր զօրութեամբ, սրտով հեզ եւ խոնարհ էր ։ Որպիսի՜ քաղցրութեամբ կ'ընդունէր զանոնք որ անոր կու գային, եւ ի՜նչ համբերութեամբ կը տանէր անոնց թերութիւններուն ։ Կը գթար ժողովրդեան եւ իրեն կը հրաւիրէր բեռնաւորեալները ։ Ի՜նչ քաղցրութեամբ յանդիմանեց աշակերտները երբ անոնք չհսկեցին անոր հետ վերջին տագնապին մէջ ։ Որպիսի՜ խանդաղատանօք նայեցաւ Պետրոսի անոր ուրացութեան ատենը, եւ յետոյ ի՜նչ քաղցրութեամբ յանդիմանեց զանի ։ Երբ զրպարտութեամբ ամբաստանուեցաւ, եւ դատապարտուեցաւ սուտ վկայութեամբ, գանգատանաց խօսք մը չլսուեցաւ անոր բերնէն ։ Նոյնպէս բոլոր նախատանաց եւ ծաղրաբանութեանց

ամենեւին պատասխան չտուաւ ։ «Անիկա անիրաւութիւն կրեց ու չարչարուեցաւ, բայց իր բերանը չբացաւ. մորթուելու տարուող ոչխարի պէս, ու իր խուզողներուն առջեւը մունջ կեցող մաքիի պէս՝ անանկ իր բերանը չբացաւ» (Ես. ԾԳ. 7)։ Արդարեւ քաւութեան համար կարգուած Գառն Աստուծոյ էր ։

8. Բայց Քրիստոսի առաքինութիւններուն ամենէն երեւելին էր անոր կատարեալ մաքրութիւնը եւ անմաքուրներու վրայ կարեկցութիւնը ։

Քրիստոս իր վսեմ բարոյական յատկութեամբը քան զամենայն մարդիկ գերազանց եղաւ ։ Սաստիկ հակառակութիւն մը ցուցուց միշտ անմաքրաց եւ անարդարաց դէմ ։ Արդարութիւնն ու սրբութիւնը կը սիրէր վերջին աստիճան, եւ անիրաւութեան դէմ անոր սաստիկ զզուանքն էր որ անոր այնպէս խըստիւ յանդիմանել տուաւ դպրաց եւ փարիսեցւոց կեղծաւորութիւնը, եւ ագահ լումայափոխները վռնտել տուաւ տաճարէն ։ Անոր բարկութիւնը սուրբ բարկութիւն էր անիրաւութեան դէմ ։ Եթէ այսպիսի գործքերու դէմ բարկութիւն չզգար, անոր բարոյական բնութիւնը կատարեալ եղած չէր ըլլար ։ Քրիստոս միշտ եւ ամենայն ուրեք հակառակ կեցաւ չարութեան ։ Միւս կողմանէ մեղաւորաց համար միշտ կարեկցութիւն ցուցուց, եւ անոնցմէ ետ չկեցաւ ։ Չմերժեց խօսել Սամարացի կնոջ հետ, թէպէտ այս կինը մարդու մը հետ կ՚ապրէր, որ անոր ամուսինը չէր ։ Շնութեան յանցանքով բռնուած կնոջ գութ ցուցուց, պատուիրելով անոր երթալ եւ այլ եւս չմեղանչել. մաքսաւորներու եւ մեղաւոր-

նոնք որ կը յարատեւէին մեղաց մէջ. բայց եւ այնպէս կ'ողբար անոնց կորստեան վրայ (Ղուկ. ԺԹ. 41)։ Տառապելոց կարեկից էր եւ բոլոր ծանրաբեռնեալները կը հրաւիրէր իրեն գալ հանգիստ գտնելու։ Տգէտներուն կը խոստանար տալ իմաստութիւն, տկարներուն՝ զօրութիւն, ապաշխարելոց՝ թողութիւն, եւ յաւիտենական կեանք անոնց որ սրտանց կ'ընդունէին զՔրիստոս։ Իր անձը չէր փնտռեր, այլ զինք նուիրած էր բոլորովին մարդկային մեղաւոր ազգին։ Միշտ կը նպաստէր ուրիշներուն, մինչ ինք իր գլուխն անգամ դնելու տեղ չունէր։ Իր սքանչելագործ զօրութիւնը չէր գործածեր երբէք իր պէտքերուն կամ զուարճութեանը, այլ միշտ յօգուտ այլոց։ Նախատինք, յանդիմանութիւն եւ չարչարանք համբերութեամբ կրելէն ետքը ինքզինք մատնեց ի մահ «արդարը անարդարներուն վրայ»։

Քրիստոս այնպէս սիրեց զմարդիկ ինչպէս մէկը սիրած չէր զանոնք։ Մարդիկ կը սիրեն զանոնք որ իրենց ընտանիքէն կամ ցեղէն կամ ազգէն են, բայց Յիսուս սիրեց զանոնք որ ոչ անոր ազգէն, ոչ անոր ցեղէն եւ ոչ անոր ընտանիքէն էին։ Յիսուս սիրեց բոլոր մարդիկ առանց խտրելու ազգ կամ ցեղ։ Այլք կը սիրեն ազնիւ, խոնարհ եւ առաքինի մարդիկ, բայց Յիսուս սիրեց նաեւ մեղաւորները, հպարտներն եւ անառակները։ Այլք կը սիրեն իրենց բարեկամները, բայց Յիսուս սիրեց նաեւ իր թշնամիները։ Շատերը կը սիրեն իրենց ընկերներն աչառութեամբ, անոնց թերութիւնները ծածկելով, եւ մոլութիւններն անպատիժ ընելով. բայց Յիսուս սի-

րեց զմարդիկ անկեղծ սիրով, ոչ անոնց թերութիւնները ծածկելով, ոչ ալ անոնց չար գործքերն արդարացնելով։ Ընդհակառակն, յայտնեց անոնց իրենց մեղքերը եւ խստիւ յանդիմանեց զանոնք, որպէս զի ազատուէին այն մեղքերէն։ Այլք կը սիրեն իրենց բարեկամները այնչափ որ յանձն կ'առնեն անոնց սիրոյն համար բան մը զոհել, բայց Յիսուս այնպէս սիրեց իր թշնամիները որ իր կեանքը տուաւ անոնց համար։

Այսպէս Յիսուս կատարեալ էր իր բոլոր յարաբերութիւններուն մէջ դէպ առ մարդիկ, վասն զի անոր սէրը մարդոց համար կատարեալ էր։

2. Յիսուս կատարեալ էր բոլոր իր յարաբերութիւններուն մէջ առ Հայր Աստուած։

Անոր հնազանդութիւնն առ Աստուած կատարեալ էր։ Հնազանդ էր ոչ միայն մասնաւոր բանի մը մէջ, այլ ամէն բանի մէջ զոր կ'ըսէր եւ կ'ընէր։ Երբէք չվարանեցաւ հնազանդելու, թէպէտ հնազանդութեան շաւիղը դէպ ի Գեթսեմանի եւ դէպ ի Գողգոթա կը տանէր։

Յիսուսի այս կատարեալ հնազանդութիւնը յառաջ կու գար անոր կատարեալ սէրէն առ Հայր Աստուած, եւ արդարեւ անոր առ Հայրն իւր գերազանց սէրն էր որ յառաջ կը բերէր անոր զարմանալի սէրն առ մարդիկ։

Յիսուս Քրիստոս արդարեւ կատարեալ էր, վասն զի առ Աստուած եւ առ մարդիկ կատարեալ սէրն անոր մէջ կը գտնուէր, եւ վասն զի անոր բոլոր կենացը մէջ նոյն սէրը յայտնուեցաւ արդեամբք։

Ահա այսպէս էր Քրիստոս ըստ Նկարագրութեան Աւետարանաց։ Անոր բարուց եւ վարուցը մէջ ինչ

թերութիւն կրնայ գտնուիլ, կամ մանաւանդ՝ ինչ կատարելութիւն պակաս է ։ Արդարեւ անոր քայլքն ու վարքը կատարեալ չեն ։ կրնա՞յ մէկը ըսել թէ աւետարանիչք հնարեցին Յիսուսի կենաց պատմութիւնը ։ Այնպիսւոյն կը յիշեցնենք սա զօրաւոր եւ անհերքելի ապացոյցը թէ աւետարանիչք արժանահաւատ վկաներ են ։ Այնպիսւոյն կրնանք տալ նաեւ անհաւատ Ռուսոյի սա պատասխանը ․ « Աւելի դիւրին է հաւատալ թէ Քրիստոսի պէս անձ մը իրօք ապրեցաւ, քան հաւատալ թէ չորս մարդիկ միաբանելով Յիսուսի պատմութեան պէս պատմութիւն մը չինեցին »։ Մինչեւ ցարդ՝ պատմիչ մը նկարագրած եւ վիպասան մը երեւակայած չէ այնպիսի մարդու մը նկարագիրը ։

Դիտողութեան արժանի է նաեւ այն կէտը, որով աւետարանիչք կը նկարագրեն Յիսուսի վարքը ։ Աւետարանիչք ոչ թէ շատ մը առաքինութիւններ կը յիշեն, եւ ապա կը հաստատեն թէ Քրիստոս այն առաքինութեանց տէր էր ։ Աւետարանիչք Յիսուսի կատարելութիւնները ուրիշ կերպով չեն յայտներ եթէ ոչ յիշելով ինչ որ Յիսուս խօսեցաւ եւ գործեց ։ Բոլորովին անհաւատալի չէ՞ թէ Մատթէոս որ մաքսաւոր էր, եւ Յովհաննէս որ ձկնորս էր, երկուքն ալ անուս մարդիկ, կարող եղան ստեղծել այնպիսի վարուց նկարագիր մը որուն վրայ հիացաւ 1,800 տարի բոլոր քաղաքակիրթ աշխարհ ։ Արդէն անհաւատք կ'ընդունին թէ այս անհաւատալի է ։ Նոյն իսկ Շդրաուս կ'ընդունի թէ Յիսուսի վարուց պատմութիւնը, բաց ի հրաշքներէն, ճիշդ այնպէս էր ինչպէս կը նկարագրեն աւետարանիչք ։

Կրնա՞յ մէկը ըսել թէ, եթէ ընդունինք խակ Քրիստոսի նկարագիրն ըստ Աւետարանաց իբրեւ հաւատարմութեան արժանի, դարձեալ իրաւունք չունինք անկէ հետեւցնել թէ արդարեւ Յիսուս կատարեալ մարդ էր։ Այնպիսւոյն կը պատասխանենք թէ Յիսուս Քրիստոս ամենէն նշանաւոր անձն է պատմութեան մէջ։ Քան ուրիշ որ եւ իցէ մարդ աւելի գրաւած է աշխարհի ուշադրութիւնը։ Հարիւրաւոր հատոր գիրքեր գրուած են ի նպաստ եւ հակառակ Յիսուսի։ Թշնամիք սաստիկ քննութեան տակ ձգած են անոր բարուց եւ վարուց նկարագիրը, սակայն հակառակ այն խիստ, թշնամական եւ շատ անգամ նախապաշարեալ քննադատութեանց որ եղան երկրորդ դարէն սկսելով մինչեւ իննեւտասներորդ դար, տակաւին հազարք հազարաց եւ բիւրք բիւրուց ընդունած են անոր բարոյական կատարելութիւնը։ Գրեթէ ամէն երկրի մէջ բազմութիւններ վկայեցին թէ անոր նման մարդ չեղաւ։ Ոչ միայն բարբարոս եւ անկիրթ մարդիկ, այլ եւ անուանի բանաստեղծից, փիլիսոփայից եւ պատմագրաց բազմութիւններ մատուցին պատիւ եւ մեծարանք անոր անհամեմատ գերազանց բարոյականին։

Կրնա՞յ մէկը ըսել թէ յիշեալ կարծիքները Յիսուսի բարեկամաց եւ հետեւողաց կողմնակալ դատաստանն են։ Այսպէս ըսողին կը պատասխանենք թէ այն մարդոց շատերը ժամանակաւ թշնամի էին Յիսուսի, ուրիշ շատերն ալ ոչ ի ծնէ եւ ոչ դաստիարակութեամբ անոր բարեկամ էին, այլ անոր բարեկամ եւ հետեւող եղան երբ համոզուեցան թէ Յիսուս արդարեւ կատարեալ մարդ էր։

*Ընթերցողաց ուշադրութիւնը կը հրաւիրենք ոչ թէ աստուածաբանից վկայութեանը, այլ այնպիսի քննադատից վկայութեանը, որոնց համար ոչ ոք կրնայ ըսել թէ նախապաշարեալ էին ի նպաստ Յիսուսի Քրիստոսի։*

*Պայրըն, իր բանաստեղծական մեծ ձրից միանգամայն զեղծ վարուց կողմանէ նշանաւոր Անգղիացին, կ'ըսէ. «Եթէ երբէք մարդ Աստուած եղաւ, կամ Աստուած մարդ, Յիսուս մարդ եւ միանգամայն Աստուած էր։»*

*Ֆրօուտ, անուանի Անգղիացի պատմիչը, կ'ըսէ. «Յիսուս ամենէն կատարեալ էակն է որ երբէք կոխեց մեր երկրագունդին վրայ։»*

*Եւրոպայի ամենէն երեւելի փիլիսոփաներն ալ նոյն վկայութիւնը տուած են։*

*Տէ Վէզդէ կը կոչէ զՅիսուս «անպարտ եւ անմեղ։»*

*Հէկէլ կ'ըսէ. «Յիսուս աննման եւ անհամեմատ կը մնայ աշխարհի պատմութեանը մէջ, եւ անոր վրայ միացեալ կը գտնենք աստուածային եւ մարդկային մեծութիւնը։»*

*Գարլայլ կը կոչէ զՅիսուս «աստուածային մարդ»։*

*Յայտնի է թէ մեծն Նաբոլէոն մարդոց բնաւորութիւնը ճանչնալու կողմանէ երեւելի էր։ Այս անձը Սուրբ Հեղինէ կղզւոյն մէջ խօսակցութեան մը ատեն Յիսուսի համար ըսաւ. «Բաց ի Քրիստոսէ ուրիշ որ եւ իցէ անձի վրայ ո՛րչափ թերութիւններ կը գտնուին։ Ո՞ր մարդն է որ երբէք չվարուեցաւ ըստ տեղւոյ եւ ըստ պարագայից, որ տեղի չտուաւ ժամանակին ազդեցութեանը, եւ որ չյարմարեցաւ*

երբէք ստորութեանց եւ կրից ։ Յիսուս իր կենացը սկիզբէն մինչեւ վերջը մի եւ նոյն էր , միշտ մի եւ նոյն , վեհանձն եւ պարզ , բոլորովին հաստատուն եւ բոլորովին քաղցրաբարոյ ։ Հարեւանցի խորհող միտքեր նմանութիւն մը կը տեսնեն Քրիստոսի եւ տէրութեանց հիմնադիրներուն եւ ուրիշ կրօնից աստուածներուն մէջտեղ , բայց այսպիսի նմանութիւն մը իրօք չկայ ։ Հնդկաց , Չինաց , Հռոմայեցւոց եւ ուրիշ ազգաց օրէնսդիրք զիս չեն կրնար զարմացնել ։ Անոնց անիրաւութիւն չեմ ըներ ։ Գիտեմ անոնց արժէքը եւ կը յարգեմ զանոնք ։ Լիկուրգոս , Նումա , Կոմփուկիոս եւ այլք մեծ մարդիկ էին , բայց անոնց եւ իմ մէջտեղ նմանութիւն մը կայ ։ Անոնց տկարութիւնները եւ սխալումները կը ցուցնեն թէ այն անձինք լոկ մարդ էին ։ Բայց Յիսուս այնպէս չէ ։ Անոր վրայ ամէն բան հիանալի է ըստ իս ։ Անոր միտքը կ'ապշեցնէ զիս , եւ կամքը կ'ամչցնէ ։ ԶՅիսուս ուրիշ որ եւ իցէ մահկանացուի հետ բաղդատել անհնար է ։ Ես կը ճանչնամ մարդիկ եւ կը վկայեմ թէ Յիսուս լոկ մարդ չէր ։ »

Արդ , համառօտիւ մէջ բերենք ոմանց կարծիքներն որ խստիւ քննադատած են Քրիստոնէութիւնը , յարձակած են Քրիստոնէական եկեղեցւոյ վրայ եւ ուրացած են Յիսուս Քրիստոսի աստուածութիւնը ։

Ռուսօ , Գաղիացի անհաւատն , ըսած է . « Եթէ Սոկրատայ կեանքն եւ մահն իմաստնոյ մը կեանքն ու մահ էին , Յիսուսի կեանքն ու մահն Աստուծոյ մը կեանքն ու մահն են ։ »

Ֆիհթէ , Գերմանացի փիլիսոփան, կ'ըսէ , « Մին-

չեւ ի լրումն ժամանակի, բոլոր ողջամիտ մարդիկ պիտի խոնարհին Նազովրեցի Յիսուսին առջեւ։»

Շդրաուս կ'ըսէ. «Քրիստոս բարձրագոյն տիպար է կրօնքի որուն կրնայ հասու ըլլալ մարդկային միտքը, եւ թէ կատարեալ բարեպաշտութիւն կարելի չէ առանց Յիսուսի ներկայութեան մարդուս սրտին մէջ։»

Ռընան կ'ըսէ. «Աստուծոյ ճշմարիտ որդւոց մեծ դերդաստանին մէջ առաջին տեղը տալու ենք Յիսուսի։ Յիսուս առաջօք տեսիլներ չունեցաւ։ Աստուած անոր հետ դրսէն չխօսեցաւ. Աստուած անոր ներսի դին էր։ Յիսուս Աստուծոյ ծոցին մէջ կ'ապրէր, եւ անընդմիջական հաղորդութիւն ունէր անոր հետ։ Ամենաբարձր աստուածգիտութիւնն որ երբէք գտնուեցաւ մարդոյ կրծոց մէջ, Յիսուսինն էր։ Յիսուս աննման եւ պաշտելի է, որուն աշխարհ ընծայած է Որդի Աստուծոյ տիտղոսը։»

Որովհետեւ մենք չենք կրնար թերութիւն մը գտնել Յիսուսի վրայ, եւ որովհետեւ քաղաքակիրթ աշխարհ գրեթէ միաձայն կը վկայէ թէ Յիսուսի վրայ ամենեւին յանցանք կամ թերութիւն չգըտնուեցաւ, եւ Քրիստոսի եկեղեցւոյ թշնամիներն անգամ ստիպուեցան խոստովանիլ թէ Յիսուս արդարեւ անհամեմատ եւ երկրպագելի անձ էր, պարտինք ընդունել թէ Յիսուս կատարեալ մարդ էր, եւ պարտինք քննել թէ Քրիստոսի բարոյական կատարելութիւնն ուստի յառաջ եկաւ։ Իբրեւ ողջամիտ մարդիկ պարտինք փնտռել թէ ինչպէս պատահեցաւ որ Նազովրեցի Յիսուս բոլոր մահկանացուաց մէջ այնպէս նշանաւոր եղաւ, որ բոլոր քաղաքա-

կիրթ աշխարհ յարգանք եւ պատիւ կ'ընծայէ անոր իր բարոյականին կատարելութեան համար ։ Այս կատարելութեան խնդիրը լուծման կարօտ է ։ Այս կատարելութիւնը ուստի՞ յառաջ եկաւ ։ Այն դարէն յորում կ'ապրէր Քրիստոս ։ Սակայն այս անկարելի է, վասնզի հին մատենագրաց շատերուն, զորօրինակ Լուկիանոսի, Ցոբնալի եւ Պերսէոսի վկայութիւնները կը ցուցնեն թէ այն դարը յորում Քրիստոս ապրեցաւ՝ երեւելի էր բարոյական ապականութեան կողմանէ ։ Ռընան կ'ըսէ ․ « Քրիստոնէական թուականին առաջին դարուն միջոցը հին պատմութեան յոռեգոյն ժամանակներուն մէկն էր ։ »

Քրիստոսի բարոյական կատարելութիւնն անոր ազգէն յառաջ եկաւ ։ Շատ յայտնի է թէ Հրեայք ամենեւին նշանաւոր չէին որ եւ իցէ առաքինութեան կողմանէ, ընդհակառակն երեւելի էին ամբարտաւանութեամբ եւ մոլեռանդութեամբ ։

Քրիստոսի բարոյական կատարելութիւնը կրնա՞յ ընծայուիլ Նազարէթի ազդեցութեանը ուր սնաւ Յիսուս ։ Նազարէթ գիւղ էր որոյ բնակիչներուն ագիտութիւնը եւ չարութիւնը յայտնի են սա հարցումէն ․ « Նազարեթէն կարելի՞ է որ աղէկ բան մը ըլլայ » (Յովհ․ Ա․ 46) ։ Յիսուս իր կենաց մինչեւ երեսներորդ տարին բնակեցաւ այն ապականեալ գիւղին մէջ ։ Շգրաւս անգամ կը վկայէ թէ Քրիստոս Նազարէթ գիւղը վատ եւ ապականեալ ազդեցութեան ներքեւ սնաւ ։ Ուրեմն, Յիսուսի բարոյական կատարելութիւնն անոր ուստէ՞ն բխեց ։ Եթէ լոկ մարդ էր, մասնակից եղած ըլլալու էր մարդկային ընդհանուր ապականութեանց ։

Յայտնի է, ուրեմն, թէ այն բարոյական կատարելութիւնը որ դարերով իրեն ձգեց աշխարհիս մեծարանքը՝ չէր կրնար ըլլալ պտուղ դարուն յորում ապրեցաւ Քրիստոս. չէր կրնար յառաջ գալ այն ազգէն որուն կը վերաբերէր Քրիստոս ըստ մարմնոյ, եւ ոչ ալ այն գիւղէն ուր ծնած էր։ Ուրեմն, ինչ բանի ընծայելու է անոր բարոյական կատարելութիւնը։ Հարկաւ աստուածային ծագման մը ընծայելու է։ Նաեւ եթէ Քրիստոս արդարեւ մարդոց մէջ միմիայն կատարեալ անձն էր, իբրեւ ճշմարիտ եւ հաւատարմութեան արժանի ընդունելու ենք ինչ որ նա ըսաւ իրեն համար։ Բոլորովին անհաւատալի է թէ այսպիսի կատարեալ եւ պաշտելի անձ մը զաշխարհ խաբէ իր անձին եւ իր գործին նկատմամբ. եւ եթէ Յիսուս խաբեբայ չէր, ապա կը հետեւի թէ, ինչպէս յաջորդ գլխոյն մէջ պիտի ցուցնենք, ի վեր էր քան զմարդ կատարեալ, արդարեւ Աստուծոյ Որդի էր։



# ԳԼՈՒԽ ԺԵ.

## ՅԻՍՈՒՍ ԻՐԵՆ ՀԱՄԱՐ Ո՞Վ ԸՍԱՒ ԹԷ ԷՐ

*Որովհետեւ Յիսուս, պանի լաւ ճանչցողներուն վըկայութեան նայելով, անարատ էր. որովհետեւ, ըստ դատաստանի քաղաքակիրթ աշխարհի, կատարելութեան տէր անձ էր. եւ որովհետեւ, ըստ վկայութեան երեւելի անհաւատից իսկ, ինչպէս են Շդրաուս եւ Րընան, անհամեմատ գերազանց եւ պաշտելի անձ էր, պարտինք ընդունել անոր խօսքերն իբրեւ ճշմարիտ։ Որովհետեւ գրեթէ ամենայն ոք կը համաձայնի Րընանի սա խօսքերուն թէ Աստուծոյ որդւոց մեծ գերդաստանին մէջ առաջին կարգը դասելու ենք զՅիսուս, ապա պարտինք հետեւցնել թէ ինչ որ այսպիսի անձ մը ըսած է իրեն համար՝ հաւատարմութեան արժանի է։ Արդ, Քրիստոս իրեն համար ո՞վ ըսաւ թէ էր։ Յիսուս չթողուց որ մարդիկ տարակուսանաց մէջ մնային իր անձին վրայ, կամ անոր բնութեան եւ ծագման վրայ ենթադրութիւններ ընէին։ Հաստատապէս եւ ստուգապէս ըսաւ իրեն համար թէ ով էր։*

1. Յիսուս իրեն համար ըսաւ թէ մարգարէներէն գուշակուած Մեսիան էր։ «Գիրքերը քննեցէք», ըսաւ, «ինչու որ դուք անոնցմով կը սեպէք յաւիտենա-

կան կեանքը ունենալ, եւ բուն անոնք են որ ինծի համար կը վկայեն ։» «Թէ որ դուք Մովսէսին հաւատայիք, ինծի ալ պիտի հաւատայիք, ինչու որ անիկա ինծի համար գրեց» (Յովհ. Ե. 39, 46)։ «Ան ալ ըսաւ անոնց, Ո՞վ անմիտներ ու թուլամիտներ հաւատալու ան բոլոր բաներուն՝ որ մարգարէները խօսեցան։ Չէ՞ որ Քրիստոսի պէտք էր աս չարչարանքները կրել, եւ իր փառքը մտնել։ Ու սկսելով Մովսէսէն եւ բոլոր մարգարէներէն՝ կը մեկնէր անոնց, ինչ որ իրեն համար բոլոր գիրքերուն մէջ գրուած էր» (Ղուկ. ԻԴ. 25-27)։ «Եւ ըսաւ անոնց, Ասոնք են ան խօսքերը որ ձեզի խօսեցայ՝ երբոր դեռ ձեր հետն էի, թէ Պէտք է որ կատարուի ան ամէնը՝ որ Մովսէսի օրէնքին մէջ ու մարգարէներուն մէջ . . . ինծի համար գրուած են» (Ղուկ. ԻԴ. 44)։

Երբ Յիսուս Սամարացի կնոջ հետ կը խօսէր, կինն ըսաւ անոր. «Գիտեմ որ Մեսիան կուգայ, (Քրիստոս ըսուածը,) երբոր ինքը գայ՝ ամէն բան մեզի պիտի պատմէ ։ Յիսուս ըսաւ անոր, Ես ան եմ որ քեզի հետ կը խօսիմ» (Յովհ. Դ. 25, 26)։

Որդի մարդոյ տիտղոսը Հին կտակարանին մէջ Մեսիայի տրուած տիտղոսներէն մին էր, ինչպէս Դան. Է. 13 համարին մէջ ըսուած է. «Գիշերուան տեսիլքներու մէջ կը տեսնէի, եւ ահա երկնից ամպերով մարդոյ Որդւոյն նման մէկը կուգար . . . ։ Ու անոր իշխանութիւն, պատիւ ու թագաւորութիւն տրուեցաւ»։ Յիսուս իրեն աշակերտներուն այս տիտղոսը կոչելով զինք Որդի մարդոյ, եւ յայտնի է անոր իմաստը հետեւեալ համարներուն մէջ։ «Քա-

հանայապետը նորէն կը հարցնէր անոր ու կ՚ըսէր. Դո՞ւն ես Քրիստոսը՝ օրհնեալ Աստուծոյ Որդին։ Եւ Յիսուս ըսաւ, Ես եմ, ու պիտի տեսնէք Որդին մարդոյ Զօրութեան աջ կողմը նստած, ու երկնքէն ամպերովը եկած» (Մարկ. ԺԴ. 61, 62, Մատթ. ԻԶ. 63, 65)։ Քահանայապետը հասկնալով անոր խօսքը գոչեց ըսելով, Հայհոյեց։ Հրեայք ալ հասկցան անոր խօսքը, քանզի անոնք ալ գոչեցին թէ մահապարտ է։ (Մատթ. ԻԶ. 66—68)։

Յիսուս հրատարակեց զինք արդարեւ Մեսիա, բայց ոչ այն Մեսիան զոր Հրեայք կը սպասէին թէ պիտի գար։ Ըստ մոլար կարծեաց Հրէից, Մեսիան պիտի հաստատէր երկրաւոր թագաւորութիւն մը, բայց Յիսուս յայտնապէս ըսաւ թէ իր թագաւորութիւնն այս աշխարհէս չէր (Յովհ. ԺԸ. 36)։ Ըստ ակնկալութեան Հրէից Մեսիան պիտի գար Հրէից ազգն ազատելու, եւ իր աթոռը դնելով Երուսաղէմ պիտի տիրէր ուրիշ ազգաց ի վերայ Հրէից։ Բայց Յիսուս ըսաւ թէ ինք Աստուծմէ ղրկուած է ոչ թէ Հրէաստանի քաղաքական ազատութեանը, այլ բոլոր մարդկային ազգին հոգեւոր փրկութեանը համար։

2. Յիսուս իրեն համար ըսաւ թէ առանց մեղաց էր։

Յիսուս այս բանն ըրաւ այլեւայլ կերպով։ Երբէք չընդունեցաւ թէ մեղաւոր էր։ Այս կողմանէ, այսինքն մեղքէ զերծ եւ ազատ ըլլալու կողմանէ, գերազանց էր Յիսուս քան զմարգարէս, զառաքեալս եւ քան զամենայն սուրբ մարդիկ բոլոր դարուց։ Մարգարէք եւ առաքեալք բոլորն ալ կը խոստովանին թէ անկատար եւ մեղաւոր մարդիկ էին։

Եսայի տեսաւ Տէրոջը փառքը, բայց իսկոյն գոչեց անձկութեամբ. «Վա՜յ ինծի, ահա կը կորսուիմ. վասն զի ես պիղծ շրթունք ունեցող մարդ մըն եմ» (Ես. Զ. 5):

Պօղոս առաքեալ զինք գլուխ մեղաւորաց կը կոչէ (Ա. Տիմ. Ա. 15): Նաեւ կ'ողբայ ըսելով. «Բանզի ինչ որ կ'ընեմ չեմ ճանչնար. չէ թէ ինչ որ կ'ուզեմ՝ ան կ'ընեմ, հապա ինչ որ կ'ատեմ՝ ան կ'ընեմ: Ուստի ես կը գտնեմ օրէնք մը, որ երբ բարին ընել կը կամենամ՝ չարը իմ քովս է: Ի՜նչ խղճալի մարդ եմ ես. ո՛վ զիս պիտի ազատէ աս մահացու մարմինէն» (Հռովմ. Է. 15, 21, 24).

Յովհաննէս առաքեալ կ'ըսէ. «Թէ որ ըսենք թէ Մենք մեղք մը չունինք, ինքզինքնիս կը խաբենք, ու մեր մէջը ճշմարտութիւն չկայ: Թէ որ խոստովանինք մեղքերնիս, հաւատարիմ եւ արդար է անիկա մեր մեղքերուն թողութիւն տալու, եւ մեզ բոլոր անիրաւութենէ սրբելու» (Ա. Յովհ. Ա. 8, 9):

Սակայն Յիսուս երբէք չխոստովանեցաւ թէ ինք մեղաւոր էր, եւ երբէք չաղօթեց Աստուծոյ թողուլ իր մեղքերը: Բոլոր մարդոց համար ըսաւ թէ մեղաւոր են եւ յորդորեց զանոնք ապաշխարել, բայց ինք երբէք չընդունեց թէ մեղանչած էր, կամ թէ կարօտ էր ապաշխարութեան: Յիսուս Քրիստոս երբէք չցուցուց թէ մեղք մը կը տեսնէր իր վրայ: Նաեւ յայտնապէս ըսաւ. «Ձեզմէ ո՞վ կրնայ զիս յանդիմանել մեղքի համար» (Յովհ. Ը. 46): Վկայեց թէ ինք զԱստուած փառաւորած էր երկրի վրայ, եւ կատարած էր Աստուծմէ իրեն յանձնուած գործը (Յովհ. ԺԷ. 4):

Ըսաւ նաեւ թէ ինք միշտ Աստուծոյ հաճելի բաներ ըրած էր (Յովհ. Ը. 29)։

Յիսուս իր զերծ ըլլալը մեղքէ հասկցուց նաեւ այն գործով զոր կատարելու համար ըսաւ թէ եկած էր, այսինքն մարդիկ ի մեղաց ազատելու։ Եթէ մեղաւոր ըլլար, ինչպէս կրնար ազատել ուրիշները մեղքէ։ Եթէ մեղքէ ազատ չէր, ինք կարօտ կ'ըլլար փրկչի։ Բաց անմեղ էակէ մը ուրիշ մէկու մը հնար չէ ազատել մեղաւորները։

3. Յիսուս ըսաւ թէ կարողութիւն ունէր հրաշք գործելու։

Թէ Յիսուս իրեն համար ըսաւ թէ կարողութիւն ունէր հրաշք գործելու ոչ ոք կրնայ ուրանալ առանց ուրանալու Աւետարանին բոլոր պատմութիւնը։ Ըստ վկայութեան Աւետարանին Յիսուս, մինչ կ'ուսուցանէր ժողովուրդն, այնչափ յաճախ ըսաւ թէ կարողութիւն ունէր հրաշք գործելու, որ չենք կրնար Աւետարանին այս վկայութիւնը մերժել առանց մերժելու Քրիստոսի վերաբերեալ միւս բոլոր վկայութիւնները։ Յիսուս իր պաշտօնը սկսելէն քիչ ետքը Յովհաննէս Մկրտիչ իր աշակերտներէն երկուքը ղրկեց Յիսուսի հարցնելու. «Դուն մն ես որ գալու էիր, թէ ուրիշի մը սպասենք։ Եւ Յիսուս պատասխան տալով անոնց ըսաւ, Գացէք պատմեցէք Յովհաննէսին ինչ որ կը լսէք ու կը տեսնէք. կոյրերը կը տեսնեն, կաղերը կը քալեն, բորոտները կը մաքրուին, խուլերը կը լսեն, մեռելները յարութիւն կ'առնեն ու աղքատներուն աւետարան կը քարոզուի» (Մատթ. ԺԱ. 3, 4, 5)։

Յիսուս առաջուց շատ անգամ ըսաւ իր ամենէն մեծ հրաշքը, այսինքն յարութիւնը (Մարկ. Թ. 30,

Ժ. 34), եւ այնպէս յայտնի ըրաւ այս կանխասացութիւնն որ անոր թշնամիներն անոր միտքը հակըցան (Մատթ. Իէ. 63)։ Յիսուս շատ անգամ յիշեց նաեւ իր հրաշալի գործքերն իբրեւ ապացոյց իր աստուածային իշխանութեանը. « Թէ որ իմ Հօրս գործքերը չեմ գործեր, ինծի մի հաւատաք. Հապա թէ որ կը գործեմ, թէ եւ ինծի չէք հաւատար, գոնէ գործքերուն հաւատացէք, որ գիտնաք ու հաւատաք թէ Հայրը իմ մէջս է, եւ ես անոր մէջ» (Յովհ. Ժ. 37,38)։ « Թէ որ ան գործքերը իրենց մէջը ըրած չըլլայի, որոնք ուրիշ մէկը չէ ըրած, անոնք մեղք չէին ունենար. բայց հիմա տեսան ու ատեցին զիս ալ, իմ Հայրս ալ» (Յովհ. ԺԵ. 24)։

Յիսուս ըսաւ թէ երկրի վրայ եւ երկինքն ամէն իշխանութիւն տրուած է իրեն (Մատթ. ԻԸ. 18)։

4. Յիսուս իրեն համար ըսաւ թէ աշխարհի լոյսն էր։

Յիսուս քանի մը ճշմարտութիւններ միայն հրատարակելու համար աշխարհ չեկաւ, այլ իմացուց թէ ինքն իսկ էր ճշմարտութիւնը (Յովհ. ԺԴ. 6)։

Յիսուս զմարդիկ լուսաւորելու համար միայն աշխարհք չեկաւ. իմացուց նաեւ թէ ինք աշխարհի լոյսն էր։ « Ես եմ աշխարհի լոյսը. ան որ իմ ետեւէս կուգայ՝ խաւարի մէջ պիտի չքալէ, հապա կենաց լոյսը պիտի ունենայ» (Յովհ. Ը. 12)։

Ի՞նչ խօսքեր են ասոնք լոկ մարդու մը համար։ Երեւելի գիտուններէն կամ փիլիսոփաներէն մէկը համարձակեցաւ երբէք զինքը աշխարհի լոյսը կոչել։ Սոկրատ, Պղատոն եւ Արիստոտել բնաւ երբէք իրենց աշակերտներուն. Մեզի հետեւեցէք,

վասն զի մենք աշխարհի լոյսն ենք։ Ոչ։ Բայց Յիսուս ըսաւ. «Քանի որ ես աշխարհի մէջ եմ, աշխարհի լոյսն եմ» (Յովհ. Թ. 5)։

5. Յիսուս ըսաւ իրեն համար թէ միակ աղբիւրն էր ամէն քրիստոնէական պտղաբերութեան և ամէն հոգեւոր զօրութեան։

Քրիստոս ըսաւ. «Իմ մէջս կեցէք՝ ու ես ձեր մէջը. ինչպէս որ ճիւղը չկրնար ինքնիրմէն պտուղ բերել, թէ որ որթին վրայ հաստատուած չըլլայ. նոյնպէս ալ դուք չէք կրնար, թէ որ իմ վրաս հաստատուած չըլլաք։ Ես որթն եմ ու դուք ճիւղերն էք. ան որ իմ վրաս հաստատուած է՝ եւ ես անոր վրայ, անիկա շատ պտուղ կը բերէ, ինչու որ առանց ինծի բան մը չէք կրնար ընել (Յովհ. ԺԵ. 4, 5)։

6. Յիսուս ըսաւ իրեն համար թէ աշխարհիս կեանքն էր։

Յիսուս ըսաւ. «Ես եմ կենաց հացը։ Ես եմ կենդանի հացը որ երկինքէն իջայ։ Թէ որ մէկը աս հացէն ուտէ՝ յաւիտեան պիտի ապրի. եւ ան հացը որ ես պիտի տամ՝ իմ մարմինս է, որ ես պիտի տամ աշխարհիս կեանքը համար» (Յովհ. Զ. 48, 51, 52)։ «Իսկ Յիսուս ըսաւ անոնց, Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, թէ որ Որդւոյ մարդոյ մարմինը չուտէք եւ անոր արիւնը չխմէք, ձեր անձերուն մէջ կեանք չէք ունենար։ Ով որ իմ մարմինս ուտէ եւ իմ արիւնս խմէ, յաւիտենական կեանք կ'ունենայ» (Յովհ. Զ. 54, 55)։ «Յիսուս ըսաւ անոր, Ես եմ յարութիւնը եւ կեանքը. ան որ ինծի կը հաւատայ, թէեւ մեռնի՝ պիտի ապրի, եւ ան ամէնը որ կենդանի է ու ինծի կը հաւատայ, յաւիտեան պիտի չմեռնի. դուն կը հաւատաս ասոր» (Յովհ. ԺԱ. 25, 26)։

**7. Յիսուս իրեն համար ըսաւ թէ դատաւոր էր աշխարհի,**

*Յիսուս կ'իմացնէ թէ նորէն պիտի գայ աշխարհ հրեշտակաց բազմութեամբ, թէ բոլոր ազգերը պիտի ժողվէ իր առջեւը, եւ թէ պիտի որոշէ ամէն մարդուս յաւիտենական վիճակը (Մատթ. ԻԵ. 31—46, Յովհ. Ե. 22, 27):*

**8. Յիսուս ըսաւ թէ ինք աշխարհէս վրայ երեւնալէն առաջ կար:**

*Յիսուս ըսաւ թէ ինքն է Որդին մարդոյ որ երկինքէն իջաւ (Յովհ. Գ. 13): Դարձեալ ըսաւ. «Հապա . . . թէ որ տեսնէք Որդին մարդոյ որ ելլէ ուր տեղ որ առաջ էր» (Յովհ. Զ. 63): Նոյն իսկ Շդրաւս կ'ընդունի թէ այս խօսքերը կը ցուցնեն որ Յիսուս կար նախ քան զերեւելն յաշխարհի: Յիսուս ըսաւ նաեւ. «Հօրմէն ելայ՝ ու աշխարհ եկայ. նորէն կը թողում աշխարհը եւ Հօրը կ'երթամ» (Յովհ. ԺԶ. 28): Յիսուս կը յիշէ փառքը զոր կը վայելէր Հօրը հետ աշխարհքս ստեղծուելէն առաջ (Յովհ. ԺԷ. 5): Կ'ըսէ նաեւ թէ ինք է յաւիտենից կար: Յիսուս ըսած էր Հրէից. «Թէ որ մէկը իմ խօսքս պահէ, յաւիտեան մահ պիտի չտեսնէ»: Հրեայք այս խօսքին համար բարկանալով հարցուցին. «Միթէ դուն աւելի մեծ ես մեր հայր Աբրահամէն որ մեռաւ, ու մարգարէներն ալ մեռան. դուն քեզ ով կ'ընես:» Յիսուս ըսաւ անոնց. «Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Աբրահամին ըլլալէն առաջ եմ ես» (Յովհ. Ը. 51, 53, 58):*

*Չըսաւ թէ Աբրահամին ըլլալէն առաջ էի ես, այլ ըսաւ, Աբրահամին ըլլալէն առաջ եմ ես: Սովին կը հաստատէ թէ ինք ուրիշ մարդոց պէս*

ի գոյ եկած չէ , այլ անսկիզբն է եւ անվախճան ։

9. Յիսուս կ'ըսէ թէ ինքն և Հայրը միմեանց յատուկ և առանձին յարաբերութիւններ ունին , և թէ մասնաւոր մտօք մը Որդի Աստուծոյ է ։

Երբ Փիլիպպոս ըսաւ Յիսուսի . « Տէր , Հայրը մեզի ցուցուր , ու հերիք է մեզի . » Յիսուս անոր պատասխանեց . « Այսքան ժամանակ ձեզի հետ եմ , եւ զիս չճանչցար , Փիլիպպոս . ան որ զիս տեսաւ՝ Հայրը տեսաւ , եւ դուն ինչպէ՞ս կ'ըսես թէ Հայրը մեզի ցուցուր » (Յովհ. ԺԴ. 8, 9) ։ Երբ Յուդա առաքեալ հարցուց Յիսուսի թէ ինչպէս զինք պիտի յայտնէր իր աշակերտներուն , Յիսուս անոր պատասխանեց . « Թէ որ մէկը զիս կը սիրէ՝ իմ խօսքս պիտի պահէ . ու իմ Հայրս զանիկա պիտի սիրէ , եւ անոր պիտի գանք ու անոր քովը օթեւան պիտի ընենք » (Յովհ. ԺԴ. 23)։ Մենք, այսինքն Հայրն եւ Յիսուս , անոր պիտի գանք եւ մեր օթեւանը պիտի ընենք , այսինքն օրհնեալ Հօր և Յիսուսի ։ Այսպէս Յիսուս զինք ամենէն մտերիմ կերպով ընկեր կ'ընէ Հօր ։

Յիսուս յայտնապէս կ'ըսէ . « Ես ու Հայրը մէկ ենք » (Յովհ. Ժ. 30) ։ Հրեայք հասկցան անոր խօսքին նշանակութիւնը , եւ քարեր առին զանի քարկոծելու ։ Ինչու համար ։ Վասն զի ըստ կարծեաց Հրէից լոկ մարդ էր , բայց ինքզինք Աստուած կ'ընէր (Յովհ. Ժ. 31—33) ։ Եթէ Հրեայք ուղիղ հասկցած չըլլային Յիսուսի խօսքը , Յիսուս ստուգիւ կ'ուղղէր անոնց սխալը , բայց այնպէս չըրաւ , այլ ընդհակառակն ըսաւ . « Ան որ Հայրը սրբեց եւ աշխարհք ղրկեց , դուք անոր կ'ըսէք թէ հայհո-

յութիւն կ՚ընես՝ Աստուծոյ Որդի եմ ըսելուս համար ։ Թէ որ իմ Հօրս գործքերը չեմ գործեր, ինծի մի հաւատաք. հապա թէ որ կը գործեմ, գոնէ գործքերուն հաւատացէք, որ գիտնաք ու հաւատաք թէ Հայրը իմ մէջս է, եւ ես անոր մէջ» (Յովհ. Ժ. 36—39 ։

Շատ յայտնի եւ ճշմարիտ է որ Յիսուս ընդունեցաւ, դատուեցաւ եւ դատապարտուեցաւ Հրէից ժողովէն, վասն զի իրեն համար ըսած էր թէ աստուածային է ։ Հրէից ժողովոյ անդամները որ զՅիսուս Պիղատոսին բերին՝ ըսին անոր. «Մենք օրէնք ունինք, եւ մեր օրէնքին համեմատ պէտք է որ մեռնի, ինչու որ ինքզինքը Աստուծոյ Որդի ըրաւ» (Յովհ. ԺԹ. 7) ։ Դատին ատենն ալ քահանայապետն ըսաւ անոր. «Կենդանի Աստուծով քեզ կ՚երդմնցնեմ որ մեզի ըսես, թէ դուն ես Քրիստոս Որդին Աստուծոյ» (Մատթ. ԻԶ. 63) ։ Եթէ Յիսուսի վարդապետութիւնն այս մասին սըխալ հասկցուած ըլլար, Յիսուս շուտով կ՚ուղղէր այն սխալը ։ Եթէ լոկ մարդ էր, մանաւանդ, ինչպէս երեւելի անհաւատք անգամ կ՚ընդունին, քան զհասարակ մարդ ամբաւ առաւելութեամբ գերազանց մարդ մը, իսկոյն կ՚ըսէր Հրէից ժողովին. Լոկ մարդ եմ ես, եւ ոչ Որդի Աստուծոյ ։ Սակայն Յիսուս պատասխանեց քահանայապետին. «Դուն ըսիր. բայց կ՚ըսեմ ձեզի, Ասկէ ետեւ պիտի տեսնէք Որդին մարդոյ Զօրութեան աջ կողմը նստած» (Մատթ. ԻԶ. 64) ։ Քահանայապետը հասկցաւ անոր խօսքը եւ իր հանդերձները պատռեց ըսելով՝ «Հայհոյութի՛ւն ըրաւ» (Մատթ. ԻԶ. 65) ։

10. *Յիսուս բոլոր մարդիկ կը հրաւիրէ որ իրեն գան :*

*Յիսուս տգէտներն իրեն կը կոչէ գիտութեան, յիմարներն՝ իմաստութեան, տկարները՝ զօրութեան, մեղաւորները՝ թողութեան, եւ մահուան մօտ եղողները յաւիտենական կենաց համար (Յովհ. Ը. 12, ԺԲ. 46, ԺԶ. 33, Գ. 14—21) : Կը պատուիրէ մարդոց թողուլ ամէն բան, որպէս զի իրեն աշակերտ ըլլան (Ղուկ. ԺԴ. 33) : Կը յորդորէ զմարդիկ սիրել զանի աւելի քան զհայր եւ զմայր, քան զկին եւ զորդիս (Ղուկ. ԺԴ. 26, Մատթ. Ժ. 37) : Կը հրամայէ մարդոց ի պահանջել հարկի մեռնիլ իրեն համար (Մատթ. Ժ. 38, 39) : Կը պատուիրէ ամէն մարդու իր բոլոր վստահութիւնը դնել անոր վրայ, յանձնել զինք անոր կամացը, նուիրել զինք անոր ծառայութեանը, եւ պատուել զանի ինչպէս որ կը պատուեն զՀայր (Մարկ. Ը. 34—38, Յովհ. Գ. 18, 36, Ե. 23) :*

*Արդարեւ կան Աւետարանաց մէջ ուրիշ համարներ ուր Քրիստոս կը ցուցնէ զինք իբրեւ հպատակ կամաց Հօր : Սակայն անոր խօսքերուն մէջ բնաւ հակասութիւն չկայ : Յիսուսի խօսքերէն ոմանք կը վերաբերին այն յաւիտենական եւ փառաւոր վիճակին զոր ունէր Հօրը քով, իսկ միւս խօսքերը կը վերաբերին այն վիճակին զոր ունեցաւ երբ իր երկնային փառքը մէկդի դնելով խոնարհեցաւ, եւ օրէնքի տակ եղողները փրկելու համար օրէնքին հըպատակ եղաւ : Այս մեկնութիւնը կը համաձայնի Հին եւ Նոր կտակարանին բոլոր վարդապետութեանց :*

*Արդ, մինչեւ ցարդ համառօտիւ յիշեցինք պա-*

պահանջումները զոր ըրաւ Յիսուս իրեն համար ։ Յիսուսի այս պահանջումներուն համար ինչ ըսենք ։ Ընդունինք թէ Յիսուս արդարեւ այնպիսի ոք էր որպիսի ոք իրեն համար ըսաւ թէ էր ։ Եթէ այսպէս ընդունինք, անոր աստուածութեան վերաբերեալ խնդիրն արդէն լուծուած է, եւ պարտինք ընդունել թէ Յիսուս արդարեւ Որդի Աստուծոյ էր, մարդկային մեղապարտ ազգին համար աստուածատուր Փրկիչ, ուստի եւ խոստովանելու ենք թէ Քրիստոնէութիւնն իսկապէս Աստուծմէ է ։ Ընդհակառակն, եթէ չենք ընդունիր թէ Յիսուս իսկապէս էր այն զոր իրեն համար ըսաւ թէ էր, պարտինք մերժել զանի բոլորովին ։ Ի՞նչպէս կարելի է որ եւ իցէ կերպով պատուել զՅիսուս, եթէ նա յանիրաւի այնպիսի գերազանց պատիւներ պահանջեց իրեն համար ։ Ի՞նչպէս կարելի է չնչին պատիւ մ'իսկ ընծայել անոր, եթէ իր կարողութեանց եւ իր արժանեաց մասին կամ ինք այնպիսի սխալ բաներ ըսաւ, եւ կամ թողուց որ ուրիշները սխալ բաներ ըսեն ։ Անկարելի է ։ Եթէ Յիսուս լոկ մարդ էր, եւ մարդոցմէ պահանջեց որ զինք պատուեն ինչպէս կը պատուեն զԱստուած, միթէ կրնանք այնպիսին պատուել իբրեւ խոնարհ մէկը ։ Չենք կրնար ։ Այսպիսի պարագայի մը մէջ պարտինք մերժել զանի իբրեւ վատ, խաբեբայ եւ խարդախ եւ որեւիցէ պատուոյ անարժան մէկը ։ Եթէ անոր զարմանալի պահանջումներն անհիմն էին, կրնանք անհամեմատ գերազանց համարել զանի ։ Եթէ այնպէս էր, պարտէինք ըսել թէ անոր յանձնապաստանութիւնն անհամեմատ էր ։ Եթէ Յիսուս ար-

դարեւ չէր լոյս եւ կեանք աշխարհի, եթէ Մեսիա չէր, ոչ Որդի Աստուծոյ եւ ոչ դատաւոր աշխարհի, ինչպէս ինք ըսած էր թէ էր, այս անոր վարդապետութիւնները խաբէական, եւ անոր բոլոր կեանքը նուաստ կեղծաւորութիւն էր ։ Ի՞նչպէս կարելի է այսպիսի մէկը կոչել պաշտելի ։ Սակայն Րընան եւ անոր աշակերտներն ստիպուած են կոչել զանի այսպէս ։ Զեն կրնար ուրանալ Յիսուս Քրիստոսի բարոյական գերազանցութիւնը, քանզի եթէ զայս ուրանան, չեն կրնար բնաւ բացատրել անոր զարմանալի բարոյական ազդեցութիւնն աշխարհի վրայ անցեալ ութեւտասն դարերու մէջ ։ Ստիպուած են նաեւ խոստովանիլ թէ Յիսուս ըրաւ այնպիսի պահանջումներ զոր վերը յիշեցինք, քանզի պատմական փաստերն այնպէս հզօր են որ չեն կրնար մերժել զանոնք ։ Սակայն չեն ընդունիր թէ անոր պահանջումները ճշմարիտ են, ուստի եւ ստիպուած են գովել եւ փառաւորել իբրեւ աննման եւ պաշտելի մարդ զայն, զոր, եթէ անոր պահանջումներն չընդունինք, համարելու ենք իբրեւ ամենէն մեծ խաբեբայ մարդն որ երեւեցաւ աշխարհի վրայ ։

Յիսուս Քրիստոս իր զարմանալի պահանջումներովը կը ստիպէ զմեզ կա՛մ ընդունել զանի իբրեւ աստուածային Փրկիչ եւ կամ բոլորովին մերժել զանի իբրեւ վատ եւ խաբեբայ ։ Բայց զՔրիստոս իբրեւ խաբեբայ մերժել անհնար է ։ Նոյն իսկ Րընան կ՚ըսէ թէ այս բանը անհնար է ։ Րընան կ՚ըսէ թէ Քրիստոսի պաշտօնը պիտի չդադրի, թէ անոր չարչարանքն ազնուագոյն սրտեր պիտի յուզէ, թէ բոլոր դարեր պիտի հրատարակեն թէ մարդոց որդ-

ւոյ մէջ Յիսուսէն աւելի մեծ մէկը ծնած չէ ։ Շդրաւս կ՚ըսէ թէ աշխարհ բնաւ պիտի չմերժէ զՅիսուս ։

Այս այսպէս ըլլալով պարտինք իբրեւ ճշմարիտ ընդունել ինչ որ Յիսուս ըսաւ իրեն համար, եւ ոչ զայն զոր ոմանք անոր նկատմամբ երեւակայած եւ հնարած են, եւ պարտինք հաւատալ թէ նա է աշխարհի աստուածային Փրկիչն ինչպէս ինք ըսաւ ։



# ԳԼՈՒԽ ԺԴ.

## ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԷՐ

Քրիստոս իրեն համար ըսաւ թէ աշխարհ լուսաւորելու համար յերկնուստ ղրկուած աստուածային վարդապետ է։ Մինչ աշխարհի վրայ էր, իր հայրենեաց քաղաքներն ու գիւղերը պտտեցաւ ժողովուրդը սորվեցնելու (Մատթ. Թ. 35), եւ իր կենաց վերջը պատուիրեց իր աշակերտներուն սորվեցնել բոլոր ազգերը (Մատթ. ԻԸ. 19)։ Ուստի ճշմարտիւ գիտնալու համար թէ ով էր Յիսուս Քրիստոս, հարկ է քննել թէ ինչ տեսակ վարդապետ էր եւ ինչ վարդապետութիւն սորվեցուց։ Ով որ այս նիւթը կը քննէ խնամով՝ կը համոզուի թէ Յիսուս Քրիստոս այնպէս տարբեր էր աշխարհիս ուրիշ վարդապետներէն, որ արժանի է կոչուելու աստուածային վարդապետ։

1. Յիսուս տարբեր էր ուրիշ երեւելի վարդապետներէն կերպին կողմանէ որով զինք վարդապետ ըլլալու պատրաստեց։

Յայտնի է թէ հին ժամանակներն ամենէն երեւելի վարդապետներն ինչպէս պատրաստեցին զիրենք վարդապետ ըլլալու։ Անոնք ուրիշները սորվեցնելու սկսելէն առաջ տարիներ անցուցին իրենց ժամանակին ամենէն երեւելի վարդապետներուն

քով։ Սոկրատ Թերեւս քան զամենայն հին վարդապետս աւելի քիչ բան սորված է ուրիշներէն, բայց Սոկրատ նախ ներկայացաւ աշխարհի իբրեւ ուսանող։ Ուրիշները սորվեցնելու սկսելէն առաջ գնաց անոնց քով զորս իրմէն աւելի իմաստուն կը համարէր, եւ սերտ հաղորդակցութիւն ունէր այն ժամանակին հռչակաւոր փիլիսոփայից հետ։ Սոկրատայ համար սա ալ պէտք է ըսել որ, Սոկրատ հանդերձեալ աշխարհին վերաբերեալ ճշմարտութեանց հասու ըլլալու յուսահատելով, այս աշխարհի վերաբերեալ ճշմարտութիւնները միայն սորվեցնելու շատացաւ։

Պղատոն յառաջ քան սկսիլը վարդապետել հրապարակաւ, ութ կամ ինը տարի աշակերտեցաւ Սոկրատայ, եւ իբր տասը տարի օտար երկիրներ պտտեցաւ։ Մեգարայի մէջ Եւկղիդեսի դպրոցին այցելութիւն ըրաւ, յետոյ գնաց Կիւրինէ, Եգիպտոս եւ Սիկիլիա, եւ ապա ստորին Իտալիոյ Յունական քաղաքներուն մէջ սորվեցաւ Պիւթագորեան փիլիսոփայութիւնն, եւ այսպէս պատրաստեց զինք սորվեցնել ուրիշները։

Արիստոտել կարճ ժամանակ մը սորվեցաւ Փոքուն Ասիոյ մէջ, բայց յետոյ գնաց Աթէնք եւ աշակերտեցաւ Պղատոնի, եւ այսպէս պատրաստեց զինք վարդապետ ըլլալու։

Արդ, Յիսուս ինչպէս պատրաստեց զինք աշխարհիս վարդապետ ըլլալու։ Յիսուս Հրեայ էր, եւ Հրեայք նշանաւոր չէին ուսմամբ, եւ ոչ ունէին մըտաւոր բարձր ձիրքեր եւ ընդարձակ հմտութիւն որով միայն կրնային յարմար ըլլալ բոլոր աշխարհ

*ուսուցանելու ։ Յիսուս մինչեւ այն ժամանակը որ սկսաւ հրապարակաւ վարդապետել՝ ապրեցաւ Նազարէթ , որ նշանաւոր էր իր բնակչաց տգիտութեանը կողմանէ , եւ ապացոյց կայ թէ Յիսուս , բաց իւր մանկութեան ժամանակէն , իւր Մնացեալ կենացը մէջ Պաղեստինու սահմաններէն դուրս չելաւ ։ Բայց եթէ Յիսուս ուրիշ երկիրներ գացած ըլլար իսկ , անոնց եւ ոչ մէկուն մէջ կարող պիտի ըլլար սորվիլ այն մասնաւոր վարդապետութիւնները զորս ինք ուսոյց , վասն զի այն բաները չէին ուսուցուեր ոչ Յունաստանի , ոչ Հռովմայ եւ ոչ Եգիպտոսի մէջ ։*

*Այս նիւթը խնամով քննուած է , եւ գիտունք ընդհանրապէս չեն կարծեր թէ Յիսուս Քրիստոս իր վարդապետութիւններէն որեւիցէ մէկն առած է Աթէնքէն , կամ Աղէքսանդրիայէն կամ Հնդկաստանէն , եւ կամ Զրադաշտայ եւ Կոմփուկիոսի աշակերտներէն ։ Նոյն իսկ Րընան կ'ընդունի զայս , եւ չկրնալով մեկնել թէ ուստի էր Յիսուսի զարմանալի իմաստութիւնը , կ'ըսէ , բայց ոչ առանց տարակուսի , թէ թերեւս Յիսուսի վարդապետն էր Հիլլէլ անուն գիտուն Հրեայ րաբունի մը ։ Տոք. Շմէքէլ անուն գիտնական Գերմանացին ցուցուցած է թէ Րընանի այս կարծիքը հաստատող պատմական դոյզն փաստ մ'իսկ չկայ ։ Նաեւ զօրաւոր ապացոյց կայ թէ Յիսուս մինչեւ այն ժամանակը որ սկսաւ վարդապետել , իր կեանքն անցուց Յովսեփայ գործին մէջ ։ Իր վարդապետութեան առաջին տարին գնաց իր ծննդեան քաղաքը , եւ սկսաւ սորվեցնել ժողովրդանոցին մէջ ։ Ժողովուրդը զար-*

մնալով կ՚ըսէր . « Ասիկա ուսկից ունի աս բաները, կամ աս ինչ իմաստութիւն է անոր տրուած , որ անանկ հրաշքներ կ՚ըլլան անոր ձեռքովը ։ Ասիկա հիւսն չէ՞ , Մարիամին որդին , եւ Յակոբոսին ու Յովսեսին եւ Յուդային ու Սիմոնին եղբայրը . ու անոր քոյրերը հոս մեր քովը չե՞ն . եւ անոր վրայով կը գայթակղէին » (Մարկ. Զ. 2, 3, Մատթ. ԺԳ. 54—57) ։ Յիսուսի դրացիներն եւ ծանօթներն ինչու համար կը գայթակղէին անոր վրայ ։ Վասն զի անոր մանկութենէն ի վեր զանի ճանչնալով , գիտէին թէ երբէք բան մը « սորված չէր » (Յովհ. Է. 15) ։ Հասարակ մարդ մը կը համարէին զանի իրենց պէս , ուստի եւ կը զարմանային անոր վարդապետութեանը վրայ ։ Եթէ Յիսուս արդարեւ հիւսնութիւն ըրած չըլլար , անոր դրացիները հիւսն չէին կոչեր զանի ։ Եթէ իր հայրենիքը թողած եւ ուրիշ երկիրներ գացած ըլլար բան սորվելու , անոր դառնալէն ետքը ծանօթք եւ բարեկամք զարմանալով չէին ըսեր . « Ինտո՞ր ասիկա գիրքերը գիտէ, որ սորված չէ » (Յովհ. Է. 15) ։ Ասկէ կրնանք հետեւցընել թէ Յիսուս Նազարէթի մէջ սնաւ եւ մեծցաւ ։

Սակայն այն քաղաքին մէջ ոչ հռչակաւոր դըպրոցներ եւ ոչ անուանի ուսուցիչներ կային ։ Հոն չկային երեւելի մարդիկ որոնց հետ Յիսուս կարենար հաղորդակցութիւն ունենալ , եւ կարենար անոնցմէ առնել օգտակար հրահանգներ ։ Ուստի Յիսուս Քրիստոս առանց գիրքի բաց ի Հին կտակարանէն , եւ առանց երեւելի ուսուցիչներու , ինչպէս պատրաստուեցաւ ըլլալ վարդա-

պետ՝ աշխարհի ։ Զար-մանալի՛ կատարելութիւն ։

2. Յիսուս ուրիշ վարդապետներէն տարբեր էր նաեւ եղանակին կողմանէ որով սորվեցուց աշխարհը ։

ա. Յիսուսի վարդապետութիւնը ուրիշներէն չէր, այլ բուն իսկ անոր մտքէն կը բխէր ։ Յիսուս կ՚ընդունէր Հին կտակարանին վարդապետութիւնները, բայց մեկնութիւնը զոր կու տար այն վարդապետութիւններուն՝ դպիրներէն եւ փարիսեցիներէն տրուած մեկնութեան չէր նմաներ. այն մեկնութիւնը Յիսուսի միայն յատուկ էր ։ Արդարեւ, եթէ փնտռենք հին փիլիսոփայից բոլոր գրուածներուն մէջ կրնանք գտնել բարոյական պատուէրներ նման Յիսուսի պատուէրներուն. բայց երբ ոչ քանի մը բարոյական պատուէրներ, այլ գլխաւոր հոգեւոր ճշմարտութիւնները զորս Յիսուս սորվեցուց՝ կը բաղդատենք բոլոր փիլիսոփայից գրուածներուն հետ ; չենք կրնար անոնց մէջտեղ նմանութիւն մը գտնել ։ Յիսուսի վարդապետութեանց մէջ ոչ իսկ կը գտնենք մարդկային ուսման եւ գիտութեան հետքեր ։ Յիսուս կը խօսէր իբրեւ այնպիսի ոք որ Աստուծմէ եկած էր, եւ պէտք չունէր մարդոցմէ բան սորվելու ։

բ. Յիսուսի վարդապետութիւնն անկախ էր իր դարէն եւ ազգէն ։ Ուրիշ որեւիցէ վարդապետ մը բոլորովին ազատ եղած չէ իր դարուն ազդեցութենէն ; ընդհակառակն ուրիշ որեւիցէ վարդապետ իր դարուն բարոյական եւ իմացական գաղափարաց եւ կարծեաց աւելի կամ նուազ ազդեցութեան ներքեւ գտնուած է . բոլոր վարդապետաց մէջ Յիսուս միայն եղաւ որ իր դարուն սխալանաց, նախա-

պաշարմանց եւ անապաշտութեանց եւ ոչ մին ընդունեցաւ ։ Նոյն իսկ Սոկրատէս մահուանէն քիչ մ'առաջ իր բարեկամներէն խնդրեց իրեն համար աքաղաղ մը զոհել Ասկղեպեայ ։ Սակայն Աւետարանք, որ Հրէաստանի մէջ գրուեցան աւելի քան ութեւտասն դար առաջ, այնպէս ազատ են ամէն տեսակ նախապաշարումներէ ինչպէս ներկայ դարուս փիլիսոփայական գրուածները ։ Ութեւտասն դարուց պատմութիւնը ցուցուցած է թէ Յիսուս Քրիստոս արդարեւ վարդապետ էր ոչ իւր ազգին միայն, այլ եւ բոլոր ազգաց, ոչ իւր դարուն միայն այլ եւ բոլոր դարուց ։ Որովհետեւ այսպէս է, իրաւունք ունինք հետեւցնելու թէ Յիսուսի վարդապետութեանց աղբիւրը բարձր էր քան ազգը եւ դարը յորս ապրեցաւ նա ։

գ. Յիսուս ուրիշ վարդապետներէ տարբեր էր նաեւ այս կողմանէ որ ամենաբարձր ճշմարտութիւնները սորվեցուց ամենապարզ կերպով ։ Ոչ ոք կրնայ ուրանալ թէ Յիսուս բարձր ճշմարտութիւններ սորվեցուց, վասն զի քաղաքակիրթ աշխարհ ութեւտասն դարէ ի վեր կը սորվի զանոնք, եւ նոյն իսկ այս ինն եւտասներորդ դարուս մէջ գիտուն մարդիկ աւելի գիրքեր գրեցին մեկնելու եւ լուսաւորելու Յիսուսի վարդապետութիւնները քան բոլոր Յոյն եւ Հռովմայեցի փիլիսոփայից գրուածները ։ Անցեալ հարիւր տարուան մէջ հարիւրաւոր մեկնութիւններ գրուեցան Աւետարաններուն վրայ, մինչդեռ Պղատոնի, Արիստոտելի եւ այլոց գործքերուն վրայ հազիւ թէ մեկնութիւն մը կը տեսնուի ։ Ինչպէս արդի Գերմանացի իմաստուն մը կ'ըսէ . « Յիսուսի վար-

դապետութիւնները կենդանի եւ յաւիտենական խօսք են ։» Բայց Յիսուս այն մեծամեծ ճշմարտութիւնները սորվեցուց այնպէս պարզ կերպով, որ բոլոր ժողովուրդը կրնար հասկնալ զանոնք ։ Նախնի եւ արդի փիլիսոփաներէն շատերը փոյթ չունին հասարակ ժողովուրդը կրթել, սակայն Յիսուս կը սիրէր հասարակ ժողովուրդն, եւ կը քարոզէր անոնց իր երկնային վարդապետութիւններն այնպիսի կերպով որ կրնային հասկնալ զանոնք ։ Եթէ մէկը Յիսուսի լերան քարոզը կամ առակները բաղդատէ Պղատոնի եւ Արիստոտելի գրուածներուն հետ՝ պիտի համոզուի թէ այսպէս է ։ Լոկ Նազարեթցի մարդու մը որ իբրեւ հիւսն մեծցաւ, ինչպէս հնար էր սորվեցնել այնպիսի մեծամեծ ճշմարտութիւններ որովք դեռ կը զբաղի քաղաքակիրթ աշխարհ, մանաւանդ սորվեցնել այնպիսի պարզ կերպով որ ամէն մարդ կարող է հասկնալ զանոնք ։ Այս հնար էր միայն աստուածային իմաստութեան օգնութեամբ ։

Դ. Յիսուս ուրիշ վարդապետներէն տարբեր էր նաեւ սա կողմանէ որ վստահաբար եւ իշխանութեամբ կը սորվեցնէր ։ Գիտուն մարդիկ ճշմարտութեան վրայ կը խորհէին, կը խօսէին եւ կը վիճէին միայն, բայց Յիսուս ճշմարտութիւնը կը յայտնէր եւ կը հաստատէր ։ Ուրիշները դրութիւններ կը շինէին, փաստեր կը բերէին եւ հետեւութիւններ կը հանէին, բայց Յիսուս ոչ դրութիւն կը ստեղծէր, եւ ոչ փիլիսոփայական փաստեր կը բերէր իր վարդապետութիւնները հաստատելու համար ։ Յիսուս իշխանաբար կը խօսէր ։ Այս կողմանէ կը տարբերէր

*Մովսէսէն եւ ուրիշ մարգարէներէն : Անոնք կը խօսէին յանուն Աստուծոյ, Յիսուս կը խօսէր յանուն իւր : Սովոր էր ըսել. « Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի. » « Լսեր էք որ ըսուեցաւ առջիններուն . . . բայց ես ձեզի կ'ըսեմ » (Մատթ. Ե. 21—44) : Ժողովուրդը կը զարմանար անոր վարդապետութեանը, քանզի կը սորվեցնէր իշխանաբար, եւ ոչ դպիրներուն պէս (Մատթ. Է. 28, 29) : Ով որ անաչառաբար կը նկատէ այն արտաքոյ կարգի եղանակը որով Յիսուս կը սորվեցնէր ժողովուրդը՝ պիտի ըսէ ինչ որ զինք բռնելու համար ղրկուած պաշտօնեաները . « Երբէք մէկը աս մարդուն պէս խօսած չէ » (Յովհ. Է. 46) :*

3. Վարդապետութիւնք զոր Քրիստոս տուաւ՝ առաւել զարմանալի էին քան զեղանակն որով տուաւ զանոնք :

*Մի ըստ միոջէ պիտի չքննենք Յիսուսի վարդապետութիւնները, անոր գերազանց բարոյական հրահանգը, զարմանալի մեկնութիւնը զոր տուաւ քաղաքային, ընկերական եւ ընտանեկան պարտականութեանց, այլ պիտի շատանանք ցուցնելով մեծամեծ հիմնական ճշմարտութիւնները զորս սորվեցուց Յիսուս, եւ յիշել թէ այն ճշմարտութիւններն ինչպէս տարբեր են ուրիշ բոլոր հին իմաստնոց վարդապետութիւններէն :*

*ա. Յիսուս Քրիստոս ուրիշ բոլոր վարդապետներէն տարբեր էր յայսմ որ Նա միայն յայտնեց թէ ամէն մարդ պատուական է* ո՛ր ազգէ կամ վիճակէ և կը- րօնքէ :

*Յիսուս սորվեցուց թէ մարդու մը ազատութիւնն ու յարգը գլխաւորապէս ոչ անոր ազգու-*

թենէն է, ոչ աստիճանէն եւ կարգէն, ոչ նիւթական որպիսութենէն եւ ոչ իսկ անոր գիտութենէն, այլ բուն անոր բնութենէն։ Սորվեցուց թէ մարդուն արժէքը չի կայանար յայնմ զոր ունի, այլ յայնմ որ է, եւ թէ անոր առաւելութիւնը չի ծագիր անոր աստիճանէն այլ բարուց որպիսութենէն։ Սակայն այս ճշմարտութիւնն անատեն որոշուած չէր ոչ Երուսաղէմ, ոչ Աթէնք եւ ոչ Հռոմ։

Հրէից դպիրները կը պատուէին զանոնք միայն որ Հրէից ազգէն էին, իբրեւ որդիք Աբրահամու. բայց Յիսուս ըսաւ անոնց. «Մի սկսիք ձեր ներսիդին ըսել թէ Մենք մեզի հայր՝ Աբրահամը ունինք, քանզի կ'ըսեմ ձեզի որ Աստուած կարող է աս քարերէս Աբրահամին որդիներ հանելու» (Ղուկ. Գ. 8)։ Յոյնք կը պատուէին ուսեալ եւ քաղաքակիրթ մարդիկ միայն, իսկ կ'արհամարհէին ռամիկներն եւ տգէտները, եւ փոյթ չունէին զանոնք լուսաւորելու։ Բայց Յիսուս բանիւք եւ արդեամբք սորվեցուց թէ մարդ մը որչափ եւ ռամիկ եւ անուս ըլլայ, պատկառելի այնչափ մեծ յարգ ունի, որ խնամով եւ յարատեւութեամբ ջանքեր ըլլալու են զանի լուսաւորելու։ Հռոմայեցի օրէնսդիրք չէին պատուեր բոլոր մարդիկ, այլ միայն Հռոմէական քաղաքացիները. բարբարոս կ'անուանէին բոլոր ուրիշ մարդիկ, եւ զանոնք Հռոմայեցւոց գերի ըլլալու միայն յարմար կը համարէին։

Երուսաղէմի, Աթէնքի եւ Հռոմայ բոլոր վարդապետաց մէջ Յիսուս միայն սորվեցուց թէ ամէն մարդ, գերի եւ ազատ, ծառայ եւ տէր, միեւնոյն յարգն ունի։ Յիսուս առաջին եղաւ սորվեցնելու

այն մեծ ճշմարտութիւնը՝ որ այնչափ փառաւոր արդիւնք՝ յառաջ բերաւ անցեալ ութեւտասն դարուց մէջ, այսինքն Յիսուս առաջին եղաւ սորվեցընելու թէ ամէն մարդ անպատմելի յարգ ունի քանն զի հոգի է, վասն զի ունի մարդկային այն բնութիւնն որ ի սկզբան ստեղծաւ ըստ պատկերի Աստուծոյ, եւ որ կարող է բարձրանալ այն աստուածային նմանութեան. ուստի եւ մարդ մը որչափ աղքատ կամ տգէտ կամ նուաստացած ըլլայ, հարկ է որ յարատեւութեամբ ջանացուի զանի ազնուացընելու, մաքրելու եւ փրկելու համար։ Եթէ Յիսուս այս ճշմարտութիւնը միայն սորվեցուցած ըլլար, պարտ էր իրաւամբ պատուել զնա իբրեւ մեծագոյն բարերար մարդկային ազգին։

բ. Յիսուս բոլոր ուրիշ վարդապետներէն տարբեր էր նաեւ յայսմ որ ուսոյց թէ յորում կը կայանայ մարդկային բնութեան պատուականութիւնը։

Յիսուս չարհամարհեց մարմինը անոր զարմանալի կազմութեամբը, ոչ ալ միտքն անոր սքանչելի ձիրքը։ այլ ուսոյց թէ մարդուս գերազանցութիւնը կը կայանայ ի վեր քան զամենայն անոր բարոյական եւ հոգեւոր բնութեանը մէջ։ Յիսուս եկաւ յայտնել մարդոց ինչ որ պարտ էր անոնց գիտնալ, այսինքն՝ թէ մարդ ունի բարոյական բնութիւն։ Եկաւ յիշեցնել մարդոց ինչ որ մարդիկ մոռնալու չէին երբէք, այսինքն՝ թէ մարդ ունի հոգի։

Երբ Քրիստոս երեւցաւ աշխարհի վրայ, այս մեծ ճշմարտութիւնը գրեթէ անծանօթ էր, կամ մոռցուած էր։ Մարդիկ այնպէս զբաղեալ էին հոգ տանել իրենց մարմիններուն եւ մշակել իրենց միտքե-

րը , որ անոնց հոգիները գրեթէ խապառ անտես առնուած էին։ Մարդոց մեծ մասն այնպէս անձնատուր եղած էր իրմէ դուրս բաներու , որ բուն իրեն վերաբերեալ բանին շատ քիչ փոյթ եւ խնամ ունէր։ Փիլիսոփաներէն ոմանք արդարեւ խորհեցան հոգւոյ վրայ , բայց կարող չէին հոգւոյ վերաբերեալ որոշ գիտութիւն մը ստանալ , ուստի եւ անոնց վարդապետութիւնները ապաւորութիւն չըրին ժողովրդեան վրայ , որ կ՚ապրէր այնպէս որպէս թէ հոգի չունէր ։ Քրիստոս եկաւ հանել մարդիկ այս հոգեւոր անզգայութենէն ։ Եկաւ գոչելով, Հոգի՛ն , հոգի՛ն ։ Հըռչակեց հոգւոյն գերագոյն արժէքը , յայտնեց վտանգը որուն նշաւակ եղած էր հոգին , եւ մեծ հոգ ընելով հարցուց . «Ի՞նչ կը շահի մարդ մը՝ թէ որ բոլոր աշխարհը վաստըկի եւ իր անձը կորսնցնէ , կամ իր անձին համար ի՞նչ աղատչէք պիտի տայ» (Մատթ . ԺԶ. 26) ։

Յիսուս Քրիստոս քարոզեց հոգւոյն անմահութիւնը ։ Այս նիւթին վրայ փիլիսոփայք շատ վիճաբանեցան , բայց իրենց վիճաբանութիւններովը չկրցան իրենք զիրենք համոզել , ուստի եւ անկարող էին ուրիշները համոզել ։

Քրիստոս յայտնեց նաեւ ուրիշ ճշմարտութիւն մը ոչինչ ընդհատ կարեւոր եւ զարթուցիչ , այսինքն հոգւոյն պատասխանատուութիւնն առ Աստուած իր բոլոր գործերուն , խօսքերուն եւ խորհուրդներուն համար։ Ամերիկայի երեւելի քաղաքագէտներէն մին , Դանիէլ Ուէպստէր , հարցուելով իր բարեկամներուն մէկէն թէ ամենէն կարեւոր ճշմարտութիւնը որն է , պատասխանեց . Մարդուս պատասխանատուութիւնն առ-

Աստուած։ Յիսուս այս ճշմարտութիւնը սորվեցուց շատ յստակ եւ հաստատուն կերպով։ Միշտ ջանաց տպաւորել մարդոց միտքերուն մէջ թէ ուեզերաց վարիչը կը դիտէ անոնց բոլոր գործքերը, եւ կը քննէ անոնց ծածուկ խորհուրդները։ Սորվեցուց թէ Աստուած ի դատաստան պիտի բերէ մարդոց բոլոր գործքերը, խօսքերը եւ խորհուրդները, եւ թէ մարդոց վերջին եւ յաւիտենական վիճակը պիտի որոշուի այս դատաստանին համեմատ (Մատթ. ԺԲ. 36, ԻԵ. 14—46)։

գ. Քրիստոս բոլոր ուրիշ վարդապետներէն տարբեր էր նաեւ յայսմ որ յայտնեց երկնաւոր Հայրը աշխարհի։

Աշխարհք անատեն Աստուծոյ վրայ բոլորովին տգէտ չէր։ Բայց Աստուածը զոր Յիսուս Քրիստոս յայտնեց՝ չէր Հրէից դպրաց եւ ոչ Յոյն փիլիսոփայից աստուածը։ Հրեայք ունէին Մովսէսի եւ մարգարէից գիրքերն որոնցմէ կրնային տեղեկութիւն առանալ ճշմարիտ Աստուծոյ վրայ, բայց սխալ մեկնութիւններ տուած էին անոնց։ Նաեւ հեթանոս փիլիսոփաներէն ոմանք քանի մը ճիշդ գաղափար առացած էին Աստուծոյ բնութեանը եւ յատկութիւններուն վրայ, բայց անոնց գաղափարները շատ թերի էին, եւ ազգք եւ ազինք ընդհանրապէս հեթանոսական խաւարի մէջ էին, եւ վատթար սնապաշտութեանց տակ կը ճնշուէին։

Սոկրատ խսկ կ՚ընդունէր այն կարծիքը թէ շատ աստուածներ կային, բայց Յիսուս յայտնապէս ըսաւ թէ մէկ Աստուած միայն կայ։ Պղատոն ըսաւ. «Բոլոր իրաց հայրը եւ արարիչը գտնել դիւրին չէ, եւ եթէ գտնուի, անհնար է ամենուն ճանչցնել զանի։» Բայց Յիսուս յայտնեց ճշմարիտ Աստուածն

այնպէս յատակ կերպով որ ամէն մարդ կրնայ ճանչնալ զանի ։

Յիսուս Հրէից դպիրներէն կը տարբերէր նաև յայսմ որ քարոզեց թէ միմիայն ճշմարիտ Աստուածը ոչ միայն Հրէից այլ և հեթանոսաց Աստուած է, և ամենքէն կը պահանջէ հաւասար պաշտօն ։

Աստուած զոր Յիսուս սորվեցուց՝ չի նմանիր ամենեւին Յունաց եւ Հռոմայեցւոց աստուածներուն որ տկար եւ սահմանաւոր էին իբրեւ ղմարդիկ եւ նշաւակ մարդկային կրից ։ Յիսուս բոլորովին կատարեալ Աստուած մը յայտնեց աշխարհի , Աստուած մը որ բոլորովին արժանի է բոլոր աշխարհի սիրոյն , վստահութեանը եւ հնազանդութեանը, Աստուած մը զոր ամէն մարդու սիրտը , միտքը եւ խիղճը սիրով կրնան ընդունել ։ Յիսուս յայտնեց մարդոց ճշմարտութեան , սրբութեան եւ սիրոյ Աստուածը ։

Միթէ հնար էր Հրէաստանի տգէտ մէկ գիւղին մէջ սնած եւ մեծցած Յիսուսին , եթէ լոկ մարդ էր , գերագոյն էակին վրայ յայտնել այնպիսի գաղափարներ որ գերազանց էին քան զգաղափարս բոլոր նախնի փիլիսոփայից , եւ քան զորս բարձր եւ փառաւոր գաղափարներ ստեղծել արդի լուսաւորեալ դարս անգամ կարող եղած չէ ։ Անհնար էր , եւ մենք չենք կրնար բացատրել Յիսուսի զարմանալի իմաստութիւնը , եթէ ոչ իր այս խօսքովը . «Հօրմէն ելայ» (Յովհ . ԺԶ. 28)։

դ. Յիսուս ուրիշ վարդապետներէն կը տարբերէր նաեւ յայսմ , որ յատուկ կերպով յայտնեց աշխարհին սկզբունքը որմէ կը բղխին մարդոց բոլոր նշանաւորութիւնները և շնորհքը ։

Ամէն դարու մէջ շատեր եղած են նկարագրելու

մարդկային ազգին թշուառութիւնները։ Բանաստեղծք ողբագին տողերով նկարեցին մարդկութեան վիշտերը, երգիծաբանք ծաղրեցին մարդկային ազգին յիմարութիւնները եւ մոլութիւնները, պատմագիրք յիշեցին չարիքները զորս անցեալ դարուց մարդիկը կրեցին, եւ քաղաքագէտք եւ բարեկարգիչք քննեցին եւ ցուցուցին ներկայ դարուս չարիքը, բայց Յիսուս անոնց ամենէն կը տարբերի յայսըմ, որ յայտնեց բուն աղբիւրը ուրմէ յառաջ կու գան բոլոր այն չարիք։ Յիսուս թափանցեց մարդկային կենաց եւ հասարակութեանց խորը, եւ տեսաւ թէ զմարդիկ ապականող եւ կործանող չարեաց գլխաւոր աղբիւրը ոչ թէ մարդոց քաղաքական հասարակութեանց կամ ընկերական կարգադրութեանց եւ կամ անոնց արտաքին պարագաներուն մէջ էր, այլ անոնց սրտերուն մէջ էր. Հարուստ եւ աղքատ, գիտուն եւ տգէտ, թագաւոր եւ հպատակ, իւրաքանչիւր մարդու սրտին մէջ էր։ Յիսուս յայտնեց նաեւ թէ այն ամէն չարիք յառաջ կու գան ոչ վասն զի մարդիկ աղքատ կամ տըգէտ են, այլ վասն զի խզած են կապը որ զանոնք կը միացնէր Աստուծոյ հետ, եւ զատուած են անկէ որ աղբիւր է ամենայն բարեաց։

Յիսուս յայտնեց նաեւ սա ահեղ ճշմարտութիւնը թէ մարդիկ ոչ միայն իրենք զիրենք բաժնած էին Աստուծմէ, այլ եւ Աստուծոյ դէմ դարձած էին, եւ այս պատճառաւ անոր արդար դատապարտութեան ներքեւ ինկած էին։ Յիսուսի վարդապետութեանը նայելով կառավարութիւնք հարստահարիչ են, հպատակք՝ ապստամբ, ծնողք՝ դժնեայ,

որդիք՝ անհնազանդ, մարդիկ ընդհանրապէս նախանձոտ, ապաշնորհ եւ արհամարհոտ, վասն զի մարդուս բոլոր բնութիւնն ապականեալ եւ վատթարացեալ է։

Ո՞չ ապաքէն զարմանալի է որ իբրեւ հիւսն մեծցած երիտասարդ մը կարող եղած էր հասկնալ ինչ որ փիլիսոփայք կարող եղած չէին հասկնալ բացայայտ։ Զարմանալի չէ՞ որ նա միայն կարող եղաւ տեսնել թէ մեղքն էր մի միայն աղբիւր բոլոր չարեաց որ կ՚ապականեն, կը ճնշեն եւ կը կորնցընեն զմարդիկ, եւ թէ Աստուծոյ դէմ մեղքը նոյն իսկ մահ է, յաւիտենական մահ, յաւիտենական սատակում։ Մարդկային կարօտութեան եւ թշուառութեան, տրտմութեան եւ վշտաց պատճառին այս զարմանալի, մանաւանդ թէ ահաւոր յայտնութիւնն արդարեւ աստուածային յայտնութիւն է։

Ե. Յիսուս ուրիշ վարդապետներէն տարբեր էր մանաւանդ յայսմ, որ մարդոց յայտնեց թէ ինչպէս կրնան ազատիլ իրենց մեղքերէն և չարիքներէն։ Նա մանաւանդ յայտնեց թէ ինչպէս այն չարեաց բուն իսկ պատճառը կրնայ բարձուիլ ի միջոյ։ Այս մասին ամենեւին չի կրնար բաղդատութիւն ըլլալ Յիսուսի եւ բոլոր ուրիշ հին եւ նոր վարդապետաց մէջտեղ։

Յիսուս իրեն համար ըսաւ թէ այս չարչարեալ եւ կորուսեալ աշխարհի ազատիչն է, թէ Աստուծմէ բաժանեալ մարդկային ազգը նորէն առ Աստուած պիտի դարձնէ, եւ թէ միասնգամ պիտի միացնէ զմարդիկ Աստուծոյ հետ։ Որովհետեւ մարդիկ իրենց մեղքերուն պատճառաւ օտարացած էին Աստուծմէ, Յիսուս Քրիստոս եկաւ մարդոց մեղքը վեր-

ցընելու եւ այսպէս զանոնք հաշտեցընելու Աստուծոյ հետ ։ Սորվեցուց թէ , որովհետեւ մարդիկ ատեակոտ ըրած էին Աստուծոյ արդար օրէնքը , եւ այս պատճառաւ դատապարտուած էին մահուան , անոնց տեղ ինք պիտի կրէր պատիժը , եւ այնպէս ճամբայ մը պիտի բանար որով արդարն Աստուած արդարացնէր անարդարները ։ Սորվեցուց թէ ինք պիտի մեռնէր փոխանակ մեղաւորաց եւ վասն մեղաւորաց, որպէս զի Աստուած ներէր անոնց իրենց մեղքերը ։ Սորվեցուց թէ , որովհետեւ մարդիկ իրենց բնութեան ապականութեանը պատճառաւ հոգեւորապէս մեռեալ էին , պիտի տար անոնց Հոգին սուրբ , որ իւր ամենակալ զօրութեամբը կարող էր փոխել անոնց ապականեալ բնութիւնը, եւ նորոգել զայն յարդարութիւն, եւ այնպէս պատրաստել զայն Աստուծոյ հետ հաղորդակից եւ յաւիտեանս երանելի ըլլալու ։ Յիսուս յայտնեց նաեւ թէ աշխարհք ոչ իմաստութիւն ունէր եւ ոչ զօրութիւն ինքզինք փրկելու, այլ իր ձեռօք միայն պիտի գործուէր ազատութիւն մեղաց ապականութենէն եւ դատապարտութենէն միանգամայն ։ Իմացուց թէ աշխարհ մեռած էր ի մեղս , եւ ինք եկած էր աշխարհի կեանք տալու իւր մահուամբը ։

Ահա այսպիսի վարդապետութիւններ քարոզեց Յիսուս , բայց ուրիշ մէկն այսպիսի վարդապետութիւններ երբէք քարոզա՞ծ էր ի Հռոմ կամ յԱթէնս եւ կամ յԵգիպտոս ։ Նախնի փիլիսոփաներէն ո՞վ սովեցուց այսպիսի բարձր վարդապետութիւններ իւրաքանչիւր մարդոյ , բարբարոսին եւ կրթելոյն , հոգւոյն անմահութեան , պատասխանատուութեան եւ պատուականութեանը վրայ ։ Ո՞վ անկէ առաջ քա-

րողեց այնպիսի ճշմարտութիւններ Աստուծոյ միութեանը, հոգեղինութեանը եւ հայրական սիրոյն վրայ: Ո՞ւր լսուած էր առաջ այնպիսի յստակ յայտնութիւն մարդկային ազգին բոլոր չարեաց գլխաւոր աղբիւրին վրայ՝: Ուրիշ ո՞վ երբէք խորհեցաւ այսպիսի կատարեալ փրկութիւն մը ի չարեաց: Որու միտքն եկաւ երբէք թէ Աստուած ինքնին մարդ պիտի ըլլար չարչարուելու եւ մեռնելու համար փոխանակ մեղաւորաց: Ո՞վ երբէք խորհեցաւ յառաջագոյն թէ մարդոց ապականեալ բնութիւնը կրնար նորոգուիլ եւ վերակենդանանալ Աստուծոյ Հոգւոյն միջոցաւ: Արդարեւ մենք ալ պարտինք ըսել ինչպէս ըսին անոնք որ զՅիսուս բռնելու ղրկուեցան. «Երբէք մէկը այս մարդուն պէս խօսած չէր:» (Յովհ. Է. 46:) Պարտինք հարցունել նաեւ «Ասիկա ուսկից ունի այս իմաստութիւնը:»

Ի՞նչպէս հնար էր Նազարեթի պէս Հրէաստանի աննշան մէկ գիւղին մէջ կրթուած հասարակ մարդու մը վարդապետել ոչ միայն քանի մը սքանչելի բարոյական պատուէրներ, այլ եւ հոգեւոր ճշմարտութեանց դրութիւն մը, ճշմարտութիւններ այնպէս կարեւոր՝ որ դարերով անդադար իրենց ձգած են քաղաքակիրթ աշխարհի ուշադրութիւնը, այնպէս խորին՝ որ ամենէն գիտուն մարդիկ խոստովանած են թէ չեն կարող լիովին հասկնալ զանոնք, եւ այնպէս ազդու՝ որ բոլոր ազգերը կը փոխուին անոնց միջոցաւ: Հնար էր որ այսպիսի իմաստութիւն մը յառաջ գար Նազարեթէն: Ոչ, երբէք հնար չէր: Ուրեմն Քրիստոսի գերբնական իմաստութիւնը կը ցուցնէ թէ Քրիստոս ոչ միայն մարդոյ, այլ եւ Աստուծոյ որդի էր:

# ԳԼՈՒԽ Ժէ

## ՔՐԻՍՏՈՍԻ ՀՐԱՇՔՆԵՐԸ

Յիսուս ոչ միայն ըսաւ իրեն համար թէ որդի է Աստուծոյ, այլ եւ ըսաւ թէ իր գործքերը կը հաստատէին իր աստուածային ծագումը։ Ուստի հարկ է քննել թէ Յիսուս արդարեւ գործեց հրաշքներ։ Եթէ հրաշք չգործեց, պարտինք մերժել անոր խօսքն իբրեւ սուտ, բայց եթէ գործեց, պարտինք ընդունել անոր խօսքն իբրեւ ճշմարիտ։

Արդ, Յիսուս հրաշք գործեց իր աստուածութիւնը հաստատելու համար։ Ողջամիտ մարդիկ կ'ընդունին թէ այս խնդիրը լոկ պատմական է, ուստի եւ պատմական ապացոյցներով ստուգուելու է։ Արդարեւ անտեղի է առանց բաւական պատմական ապացոյցներ ունենալու պնդել թէ Յիսուս հրաշքներ գործեց։ Անտեղի է նաեւ ըսել թէ Յիսուս հրաշք չգործեց, եթէ անոր հրաշագործութիւնը հաստատող ապացոյցներ կան։ Սակայն արդի անհաւատներէն ոմանք կը գործեն այս անտեղութիւնը եւ չեն ուզեր քննել Քրիստոսի հրաշագործութեան պատմական փաստերը։

Շդրաւս կ'ըսէ. « Մենք մէկէն (այսինքն առանց քննութեան) կը մերժենք հրաշքն իբրեւ անկարելի

եւ հակառակ տիեզերքը վարող յայտնի եւ ընդհանուր օրինաց ։» Այս է ահաւասիկ արդի անհաւատից իմաստութիւնը ։

Ուրիշ անհաւատներ որ չեն կրնար ընդունել Շդրաւսի յիմարութիւնը՝ տակաւին կ՚ըսեն թէ հըրաշքներն անհաւատալի են ։

Նաեւ ուրիշ անհաւատներ կ՚ըսեն թէ Յիսուսի գործերն իրօք հրաշք չէին ։ Հիմա քննենք համառօտիւ անհաւատից այս առարկութիւնները ։

Ա. Միթէ հրաշքներն անկարելի՞ են ։

Կ՚ընդունինք թէ քանի մը ենթադրութեամբ հըրաշքներն անկարելի են ։

ա. Եթէ Աստուած չկայ , չի կրնար հրաշք ըլլալ, վասն զի հրաշքը գերբնական ապացոյց է աստուածային զօրութեան ։ Բայց եթէ աստուածային էակ մը չկայ , չկայ նաեւ աղբիւր որմէ կարենայ յառաջ գալ այնպիսի զօրութիւն մը ։ Այս ենթադրութիւնը սակայն չի կրնար ընդունուիլ , քանզի կայ Աստուած մը ։ Անզգամը միայն իր սրտին մէջ կ՚ըսէ թէ Աստուած չկայ ; եւ շատ քիչ մարդիկ կը գտնուին որ խոստովանին թէ այս անզգամութեան տէր են ։ Անթիւ եւ անհերքելի փաստեր կան թէ կայ արարիչ մը , եւ եթէ կայ արարիչ , ինչո՞ւ հրաշքներն անկարելի ըլլան ։ Այն որ ստեղծեց զաշխարհ , պէտք է որ ազատ ըլլայ ընել ինչ որ կ՚ուզէ զայն զոր ստեղծած է ։ Ինչպէս ազատ էր երբ ստեղծեց զաշխարհ , նոյնպէս պէտք է որ ազատ ըլլայ կառավարել զայն իր կատարեալ իմաստութեանը համեմատ ։

Ամենամեծ յիմարութիւն է պնդել թէ Արարիչը

հպատակ է այն բանին զոր ինք ստեղծած է, եւ թէ ստիպուած է հպատակիլ այն բանին յատկութեանց որ բոլորովին կախեալ է անոր կամքէն ։

Յիմարութիւն է պնդել թէ Արարիչը որ ստեղծեց բոլոր մասերը որոցմէ կը բաղկանայ աշխարհս, եւ բոլոր բնական զօրութիւններն որ այն մասանց մէջ կը գործեն՝ չի կրնար ուղղել անոնց ներգործութիւնն իր կատարեալ իմաստութեանը համեմատ ։ Յայտնի է թէ ուրիշ բան մը չի կրնար սահմանաւորել Աստուծոյ գործունէութիւնը, եթէ ոչ նոյն իսկ աստուածային բնութիւնը եւ անոր կատարելութիւնները ։

Բ. Կ'ընդունինք սակայն թէ, թէեւ Աստուած կայ, բայց եւ այնպէս հրաշքներն անկարելի համարուելու են, եթէ կրնայ ապացուցուիլ թէ հրաշքները հակառակ են Աստուծոյ բնութեանը եւ կատարելութիւններուն, վասն զի չի կրնար ենթադրուիլ թէ Աստուած կ'ընէ ինչ որ հակառակ է իր կատարելութեանց ։ Կ'ընդունինք նաեւ թէ կարելի է երեւակայել հրաշքներ որ հակառակ են աստուածային կատարելութեանց, բայց ո՞վ կրնայ ապացուցանել թէ բոլոր հրաշքները հակառակ են Աստուծոյ կատարելութեանց ։ Ոչ ոք ։ Ճշմարիտ է թէ Աստուած ընդհանրապէս իր կատարելութիւնները կը յայտնէ սովորական կամ կանոնաւոր գործողութեամբ բնական զօրութեանց եւ օրինաց որոնց հընազանդեցուցած է նիւթական աշխարհս, բայց մեծ յանդգնութիւն է մարդոց ըսել թէ այս է միակ միջոցը որով Աստուած կրնայ յայտնել զինք, նաեւ աւելի մեծ յանդգնութիւն է ըսել թէ Աստուծոյ

անպատուութիւն է իր զօրութիւնն եւ իմաստութիւնը յայտնել ուրիշ միջոցաւ եթէ ոչ նիւթական աշխարհի սովորական օրինաց եւ զօրութեանց միջոցաւ ։ Մարդոյ անկարելի է ապացուցանել թէ հրաշքները որ Աստուծոյ բարոյական կատարելութիւնները, մանաւանդ անոր սէրն որ առ մարդիկ յայտնելու համար դործուած են՝ հակառակ են Աստուծոյ բնութեանը ։ Ուստի եւ մարդիկ կարող չեն այս կերպով ապացուցանել թէ հրաշքներն անկարելի են ։

գ. Կ'ընդունինք նաեւ թէ եթէ հրաշքները հակառակ են Աստուծոյ յաւիտենական խորհրդոյն, կամ եթէ հրաշքներն այն խորհրդոյն իբր թէ թերութիւնները լեցնելու համար յաւելուած համարուելու են, ան ատեն պարտինք մերժել հրաշքները ։ Նաեւ եթէ հրաշքները նկատենք իբրեւ միջոցներ զորս Աստուած ստիպուեցաւ ձեռք առնել իր յաւիտենական խորհուրդը կատարելու, վասն զի կարող չեղաւ կատարել զայն իր յառաջագոյն կարգադրած միջոցներով, այն է բնական օրինաց եւ զօրութեանց միջոցաւ, ան ատեն ալ չենք կրնար հրաշքներն ընդունել իբրեւ կարելի, վասն զի պարտինք ընդունել թէ Աստուծոյ խորհուրդն բոլոր պարագաներովն ի յաւիտենից կատարեալ էր ։ Բայց ո՞վ կրնայ ապացուցանել թէ Աստուծոյ յաւիտենական խորհրդոյն մէկ մասը չէր գործել բուն այն հրաշքները որ կը պատմուին Աստուածաշունչին մէջ ։ Ոչ ոք ։ Աստուծոյ յաւիտենական խորհրդոյն վրայ մենք այնչափ բան միայն կրնանք գիտնալ որչափ Աստուած հաճեցաւ մեզի յայտնել

իր խօսքին եւ գործքերուն մէջ։ Եւ ի՞նչ ապացոյց կրնանք գտնել Աստուծոյ խօսքին եւ գործքերուն մէջ թէ Աստուած ի յաւիտենից սահմանած էր բնահրաշք չգործել։ Միթէ ունի՞նք այսպիսի ապացոյց մը։ Ոչ. ամենեւին։

Ճշմարիտ է թէ Աստուած, ըստ իւր յաւիտենական խորհրդոյն, ընդհանրապէս կը գործէ բնական օրինաց միջոցաւ, բայց ո՞ւր յայտնած է թէ իր խորհուրդն է երբէք ուրիշ կերպով չգործել։ Ոչ ուրեք։ Ուստի եթէ Աստուած իրեն համար սահման դրած չէ, ո՞վ ի նանիր պիտի ջանայ անոր սահման դնել։ «Ո՞վ քննեց Տէրոջը Հոգին, ու անոր խորհրդակից ըլլալով՝ խելամուտ ըրաւ զանիկա» (Ես խ. 13)։ Եթէ Աստուած ստեղծած է քան զայս նիւթական աշխարհս ազնուագոյն աշխարհներ, այսինքն հոգեւոր էակներ, եթէ ի գործ դրած է օրէնքներ որ փառաւորագոյն են քան զօրէնս որոնց ենթարկած է նիւթական աշխարհ, եթէ անոր խորհուրդն է յայտնել զօրութիւն մը որ փառաւորագոյն է քան զզօրութիւնն որ կը գործէ նիւթական աշխարհի մէջ, եթէ քան ապականացու նիւթական աշխարհիս կարգը պահելու վախճանը շատ աւելի մեծ վախճան մը ունի, այսինքն իմացական էակները յաւիտենական սատակմանէն փրկելու վախճանը, ո՞վ է մարդս որ Աստուծոյ խորհրդին սահման դնէ եւ ըսէ թէ հրաշքներն անկարելի են։ Այսպիսի մտածութիւն մը ոչ միայն յիմարական, այլ եւ ամբարշտական է։

Բ. Միթէ հրաշքներն անհաւատալի՞ են։

ա. Բոլոր հրաշքներն անհաւատալի չեն։

Եթէ հրաշքներու եւ գերբնական յայտնութեանց հաւատալ հակառակ ըլլար մարդկային մտաց հիմնական օրէնքներուն, հրաշքներն անհաւատալի կ'ըլլային. այսինքն եթէ մարդկային միտքն այնպէս կազմուած ըլլար որ ի հարկէ մերժէր ամէն տեսակ հրաշալի յայտնութիւն, ան ատեն հրաշքներն անհաւատալի կ'ըլլային : Մարդկային ազգին պատմութիւնը սակայն կը ցուցնէ թէ մարդուս միտքն այնպէս կազմուած չէ : Սակաւաւոր անձանց կարծիքն այս մասին ինչ որ ալ ըլլայ, ընդհանրապէս բարբարոս եւ քաղաքակիրթ ամէն ազգի մարդիկ հաւատացած են հրաշքներու : Այս հաւաստեաւ կը ցուցնէ թէ այսպիսի հաւատք մը հակառակ չէ մարդկային մտաց :

Մ. Կիզօ, երեւելի Գաղիացի պատմագիրն եւ փիլիսոփան, կ'ըսէ թէ հրաշից կամ գերբնական յայտնութեանց հաւատալը բնական, նաեւ վաղնջուց եւ ընդհանուր է : Սուտ հրաշքներու հաւատալն իսկ կը հաստատէ մարդկային մտաց այս միտումը :

Ուստի իմաստութիւն չէ մէկէն եւ առանց հետազօտութեան մերժել բոլոր հրաշքներն իբրեւ անհաւատալի : Եթէ բաւական ապացոյց կայ, պէտք է հաւատալ հրաշից. եւ որովհետեւ հնարաւոր է Աստուծոյ հրաշք գործել, հնարաւոր է անոր նաեւ հրաշքներուն հետ տալ ամէն անաչառ միտք համոզելու բաւական ապացոյց : Թէ կան բաւական ապացոյց Սուրբ գրոց մէջ յիշուած հրաշքները հաստատելու, այս ուրիշ խնդիր է որ առանձին քննուելու է :

Բ. Բոլոր հրաշքները հաւատալի չեն :

Թէպէտ ստիպեալ չենք մերժել բոլոր հրաշքներն իբրեւ անհաւատալի, ասկէ չի հետեւիր սակայն թէ պարտինք ամէն պատմուած հրաշք ընդունել իբրեւ ճշմարիտ : Անցեալոյն հասարակ դէպքերն անգամ ընդունուած չեն եթէ ոչ պատմական ապացոյցներով հաստատուելով : Սակայն հրաշքներն արտաքոյ կարգի դէպքեր են, ուստի եւ արտաքոյ կարգի ապացոյցներով հաստատուելու են։ Այլ եւ այլ ազգաց եւ կրօնից աւանդութիւնները լի են սքանչելեօք որոնց համար կ'ըսուի թէ գործուած են անցեալ ժամանակներ : Սակայն այս դարուս մէջ այն հրաշքներուն եւ ոչ մին կ'ընդունուի առանց քննադատական հետազօտութեան, եւ անոնց շատերը մերժուած են իբրեւ առասպելական, եւ այս ուղիղ է : Ոչ ոք վախնալու է այսպիսի պատմական խիստ հետազօտութիւններէ, վասն զի այսպիսի հետազօտութեանց արդիւնքը սա է միայն որ սուտ հրաշքները կը մերժուին եւ ճշմարիտները բանաւոր կերպով կ'ընդունուին : Թող մերժուի ամէն հրաշք որ հաստատուած չէ ըստ բաւականին պատմական ապացոյցներով :

Գ. Աւետարաններուն մէջ յիշուած հրաշքները հաւատալի՞ են թէ անհաւատալի :

Այս խնդիրն ապացոյցներով լուծուելու է : Եթէ այն հրաշքները հաստատելու բաւական ապացոյց կայ, ապա հաւատալի են հրաշքները, իսկ եթէ չկայ, անհաւատալի են :

Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքները հաստատող ապացոյցը կրկին է : Նախ, կայ ապացոյց որ նոյն իսկ հրաշքից բնութենէն կը ծագի.

երկրորդ , կայ նաեւ ապացոյց որ կը ծագի հրաշից ականատես մարդոց վկայութենէն ։

1. Ապացոյց որ կը ծագի նոյն իսկ հրաշքներէն ։

ա. Որովհետեւ հրաշքներն աստուածային կարողութեան արտաքոյ կարգի յայտնութիւններ են , պէտք է որ աստուածային յատկութիւններ ունենան , եւ Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքներն ունին այնպիսի յատկութիւններ ։ Այն հրաշքները նշանաւոր կերպով կը տարբերին ուրիշներէ որ հրաշք կոչուած են ։

Որովհետեւ հրաշքներն աստուածային կարողութեան եւ իմաստութեան արտաքոյ կարգի յայտնութիւններ են , պարտինք հետեւցնել թէ անոնք գործուած ըլլալու են , ոչ չնչին եւ աննշան , այլ արտաքոյ կարգի պատճառներու համար ։ Սուրբ գրոց մէջ պատմուած հրաշքները չգործուեցան ընդհանրապէս հասարակ պատճառներու համար , այսինքն լոկ մարդոց զարմանք պատճառելու կամ անոնց հետաքրքրութիւնը յագեցնելու համար , այլ գործուեցան մարդկային ազգին պատմութեան մէջ կարեւոր եւ ծանր ժամանակներ ։ Հրաշքները շատ չեն Սուրբ գրոց մէջ ։ Սուրբ գրոց ամէն երեսին մէջ հրաշքի պատմութիւն չըլլար ։ Հին տնտեսութեան ժամանակ երեւելի անձանց շատերը հրաշք չգործեցին ։ Սուրբ գրոց մէջ յիշուած գրեթէ բոլոր հրաշքները գործուած են Աստուծոյ եկեղեցւոյն պատմութեան հետեւեալ երեք կարեւորագոյն ժամանակները։

Նախ , հրաշքներ գործուեցան երբ Աստուած Մովսէսի ձեռամբ աստուածպետական կառավարութիւն մը հաստատեց երկրի վրայ ։

Երկրորդ , հրաշքներ գործուեցան երբ Աստուծոյ ընտրեալ ժողովուրդը , Իսրայէլացիք , միտեալ էին բոլորովին թողուլ ճշմարիտ Աստուծոյ պաշտօնը եւ կռապաշտութեան յարիլ : Անատեն Իսրայէլի աստուածուրաց թագաւորք ջնջած էին Ղեւտական քահանայութիւնը , մուծած էին սուտ աստուածոց պաշտօնը , եւ շատ քիչ մարդ միայն հաւատարիմ մնացած էր ճշմարտին Աստուծոյ : Այս կարեւոր ժամանակն Աստուած յայտնեց իր փառքը հրաշքներով զորս գործեց , եւ այսու համոզեց ժողովուրդը թէ ինք է մի միայն կենդանի եւ ճշմարիտ Աստուած :

Երրորդ , հրաշքներ գործուեցան այն ժամանակ որոյ համար մարգարէք խօսած էին , եւ յորում կատարուեցաւ մարդկային ազգին պատմութեան մէջ ամենէն մեծ դէպքը . այսինքն այն ժամանակ որ Աստուածորդին մարդ եղաւ , եւ չարչարուեցաւ ու մեռաւ մարդիկ ազատելու համար ի մեղաց : Այս երեք ժամանակներն ալ արտաքոյ կարգի ժամանակներ էին եւ աստուածային զօրութեան եւ փառաց արտաքոյ կարգի եղանակաւ յայտնուիլը կը պահանջէին :

Արդ , Սուրբ գրոց մէջ պատմուած հրաշքները գործուեցան ոչ աննշան պատճառներու համար , ոչ մարդոց հետաքրքրութիւնը միայն գոհացնելու համար , ոչ ի պատիւ միայն այն մարդոց որոնց միջոցաւ գործուեցան , եւ ոչ անհատից կարօտութիւնները միայն լեցնելու համար , այլ գործուեցան ամենակարեւոր պարագաներու մէջ եւ մարդկային ազգին ամենաբարձր օգտին համար , այսինքն երկրի վրայ Աստուծոյ թագաւորութեան

հաստատութեան համար ։ Աստուածային կարողութեան այն արտաքոյ կարգի յայտնութիւնները տեղի ունեցան վասն զի պարագաներն արտաքոյ կարգի էին , եւ այնպիսի արտաքոյ կարգի յայտնութեանց անհրաժեշտ հարկ կար ։

բ. Որովհետեւ հրաշքներն արտաքոյ կարգի ապացոյցներ են Աստուծոյ կարողութեանը , պէտք է որ պատշաճ եւ վայելուչ ըլլան Աստուծոյ յատկութիւններուն ։ Արդարեւ չկրնար ընդունուիլ հրաշք մը որ մարդու մը կիրքը կամ փառասիրութիւնը յագեցնելու համար գործուած է ։ Բայց Քրիստոսի հրաշքները հաւատալի են , վասն զի ամէնքն ալ աստուածավայել են , այսինքն գործուած են ոչ թէ ի նպաստ մարդկային կրից , նախապաշարմանց եւ յիմարութեան , այլ Աստուծոյ փառքը յայտնելու համար ։

Նոր կտակարանին բոլոր հրաշքները բարերար նըպատակաւ գործուած են ։ Բոլորն ալ կը հաստատեն Քրիստոսի սա խօսքը Թէ եկաւ մարդիկ ոչ թէ կորսնցնելու այլ փրկելու ։ Բոլորն ալ կը ցուցնեն այն երկնաւոր Հօրը ստորոգելիքն որ կու տայ արեգական ծագել , անձրեւներուն տեղալ , երկրի պտղաբերել առատութեամբ . այն Հօրը որ անհամար կերպով կը գործէ մարդոց օգտին եւ բարւոյն համար ։

Աւետարաններուն մէջ պատմուած հրաշքները ոչ միայն բարերար այլ եւ հոգեկան նպատակաւ են ։ Անոնք գործուած են ոչ ազատելու համար միայն զմարդիկ մարմնաւոր վիշտերէ եւ նիւթական կարօտութիւններէ , այլ եւ ցուցնելու համար թէ ինչ-

պէս կրնան լեցուիլ անոնց հոգեւոր պիտոյքը ։ Հըրաշքները փառաւոր ապացոյցներ են ոչ միայն Աստուծոյ կարողութեանն, այլ եւ անոր սիրոյն եւ ողորմութեանը. բոլորն ալ գործուած են յայտնելու եւ բացատրելու այն մեծ հոգեւոր փրկագործութիւնը զոր Յիսուս եկաւ կատարել կորուսեալ մարդկային ազգին համար ։

Նաեւ Քրիստոսի հրաշքները բացարձակապէս հարկաւոր էին ցուցնելու համար անոր աստուածային ծագումը ։ Քրիստոս մարդկային ազգը մեղքէ ազատելու համար երեւցաւ իբրեւ մարդ, եւ ըստ երեւութին ամենեւին տարբեր չէր ուրիշ մարդոցմէ, բայց եւ այնպէս ըսաւ թէ Աստուծմէ եկաւ ։ Ամէն մարդ գիտէր թէ Մարիամու որդին էր, բայց Քրիստոս ըսաւ նաեւ թէ Որդի Աստուծոյ էր։ Արդ, ինչպէս կրնային հաւատալ մարդիկ թէ Յիսուս արդարեւ էր ինչ որ կ'ըսէր թէ էր ։ Ի՞նչ ապացոյց կրնար տալ մարդիկ համոզելու ։ Մարդիկ իբրեւ բանաւոր էակներ իրաւունք ունէին պահանջել նշան եւ ապացոյց թէ Քրիստոս Աստուծմէ ղըրկուած էր, եւ ինքն իսկ չպահանջեց որ ժողովուրդն առանց ապացուցի ընդունէր անոր խօսքերը ։ « Թէ որ իմ Հօրս գործքերը չեմ գործեր, ինծի մի հաւատաք. հապա թէ որ կը գործեմ, թէ եւ ինծի չէք հաւատար, գոնէ գործքերուն հաւատացէք » (Յովհ. Ժ. 37, 38) ։

Ուրիշ ինչ կերպով կրնար Յիսուս ապացուցանել թէ աստուածային էր, եթէ ոչ ցուցնելով աստուածային զօրութիւն ։ Ուրիշ որ եւ իցէ կերպով չէր կրնար ընել զայս, ուստի եւ անոր հրաշքները հար-

կուոր էին փրկութեան գործին կատարման համար։ Այս այսպէս ըլլալով, ինչպէս որ հաւատալի է թէ երկնաւոր Հայրը գթաց իր կորուսեալ զաւակաց վրայ, հոգաց անոնց փրկութեան միջոցը, նոյնպէս, եւ հաւատալի է նաեւ թէ տուաւ մարդոց բաւական ապացոյց համոզելու համար զանոնք թէ արդարեւ ղրկեց իր Որդին մարդկային ազգին փըրկութեան համար։

Սակայն այս ամէնը բաւական չէր զմարդիկ համոզելու, եթէ զօրաւոր ապացոյց չըլլար թէ Քրիստոս արդարեւ հրաշք գործեց։ Հիմա համառօտիւ քննենք երկրորդ տեսակ ապացոյցները թէ Քրիստոս հրաշք գործեց։

2. Ապացոյց որ կը ծագի ականատես անձանց վկայութենէն։

ա. Բուն Քրիստոսի վկայութիւնը։

Այս վկայութիւնը համոզիչ է, նախ, վասն զի Քրիստոս չէր կրնար խաբուած ըլլալ իր հրաշագործութեան վրայ։ Քրիստոս գիտէր անտարակոյս թէ արդարեւ զՂազարոս յարոյց ի մեռելոց, թէ քանի մը նկանակաւ հազարաւոր մարդիկ յագեցոյց, թէ կուրաց աչուըները բացաւ, այլովքն հանդերձ։ Կարելի չէ որ Քրիստոս խաբուած ըլլար այս մասին, եւ իր քարոզութեան երեք տարուան միջոցին կարծէր թէ հրաշք կը գործէր, մինչ իրօք բնաւ չէր գործեր։ Այս բոլորովին անհաւատալի է։

Քրիստոսի վկայութիւնը համոզիչ է, երկրորդ, վասն զի Քրիստոս բնաւ չէր ուզեր խաբել զմարդիկ։ Արդէն ցուցուեցաւ Քրիստոսի բարոյական կատարելութիւնը, եւ տեսնուեցաւ թէ բոլոր քաղաքակիրթ աշխարհ կ'ընդունի Քրիստոսի բարոյա-

կան գերազանցութիւնը , եւ թէ արդի անհաւատք անգամ կ'ընդունին թէ Յիսուս իր բարոյական յատկութիւններովը գերազանց է քան զամենայն մարդիկ ։ Ուստի անհաւատալի է որ այնպիսի բարոյական կատարելութեան տէր անձ մը խաբէր ըզմարդիկ , եւ պնդէր ունենալ զօրութիւն մը զոր գիտէր թէ չունէր ։ Այսպիսի մէկն անարգ խաբեբայ մը եղած կ'ըլլար , եւ բոլորովին մերժուելու էր աշխարհէն ։ Ապա ուրեմն պարտինք ընդունել Յիսուսի վկայութիւնն այս մասին , եւ ինչպէս ցուցուցինք նախընթաց գլուխներէն մէկուն մէջ , Յիսուս իր կենացը մէջ շարունակ եւ շատ անգամ ըսաւ թէ հրաշք գործեց , եւ թէ այս հրաշքներն ապացոյց էին անոր աստուածային ծագմանը ։

բ. Յիսուսի հրաշքներն անձամբ տեսնող եւ ի գիր աւանդող անձանց վկայութիւնը ։

Նախընթաց գլուխներուն մէջ ցուցուեցաւ թէ այս վկայք խոհական եւ ուղիղ անձինք էին ։ Նոյն իսկ անոնց գրուածները բաւական ապացոյց են անոնց մտաւոր կարողութեանն եւ անկեղծութեանը ։ Քրիստոսի Աւետարանը մարդոց քարոզելու համար անոնց ըրած ջանքերը , կրած չարչարանքը եւ վընասներն ապացոյց են թէ անոնք խաբեբայ մարդիկ չէին ։ Անոնց չարչարանքն եւ կրած վնասները գէթ անոնց անկեղծութիւնը կ'ապացուցանեն ։ Անհաւատալի է որ աւետարանիչք եւ առաքեալք , որ ամէն բան զոհեցին զՔրիստոս քարոզելու համար , համոզուած չըլլային թէ Քրիստոս արդարեւ գործեց հրաշքները զորս կը պատմեն իրենց գրուածոց մէջ ։

Յայտնի է նաեւ որ այս ականատես վկայք չէին կրնար խաբուած ըլլալ Քրիստոսի հրաշից վրայով, քանզի Քրիստոս ոչ մէկ՝ այլ շատ, ոչ մէկ տեսակ միայն՝ այլ տեսակ տեսակ հրաշքներ գործեց, եւ ոչ մէկ անգամ միայն՝ այլ երեք տարուան մէջ շատ անգամ հրաշք գործեց: Արդ, այս ականատես անձինք կը վկայեն թէ Յիսուս կուրաց տեսնել տուաւ, խլից՝ լսել, կաղաց՝ գնալ եւ համրաց խօսիլ. թէ բորոտները սրբեց, հիւանդները բժշկեց եւ մեռելները յարոյց. թէ կերակրեց հազարաւոր մարդիկ քանի մը նկանակով, եւ թէ մէկ խօսքով հանդարտեցուց մրրիկը: Կը վկայեն թէ Յիսուս այս հրաշքները գործեց ոչ մասնաւոր տեղ մը այլ շատ տեղեր: Կը պտտէր, կ'ըսեն, քաղքէ քաղաք եւ գիւղէ գիւղ, եւ ամէն տեղ հրաշք կը գործէր: Կը վկայեն թէ Յիսուս հրաշքներ գործեց ոչ առանձին տեղ մը, այլ հրապարակաւ, ոչ լոկ իր բարեկամաց առջեւ, այլ եւ ի ներկայութեան իր թշնամեաց որ կարող չեղան ուրանալ անոր հրաշագործ զօրութիւնը: Ուստի եւ անհաւատալի է թէ առաքեալք կրնային խաբուած ըլլալ բոլոր այս հրաշից վրայով:

Նաեւ առաքելոց եւ աւետարանչաց գրուածները Յիսուսի այն հրաշքները գործելէն քիչ ժամանակ ետքը հրատարակուեցան բոլոր աշխարհք, մանաւանդ այն տեղերը ուր գործուած էին այն հրաշքները: Քրիստոսի հրաշքները կը պատմուին այն գրուածոց մէջ ժամանակի, տեղւոյ եւ ուրիշ պարագայից ընդ որովք գործուեցան՝ այնպիսի մանր հանգամանօք որ թշնամիք դիւրաւ կրնային հերքել

զանոնք , եթէ անոնց պատմութիւնը սուտ կամ սըխալ ըլլար ։

Առաքելոց եւ աւետարանչաց վկայութեան արժանահաւատութիւնը կը հաստատուի նաեւ այսու , որ ոչ ոք ցարդ կրցաւ ցուցնել թէ Քրիստոսի ձեռքով գործուած հրաշքները կրնային գործուիլ բնական զօրութեանց միջոցաւ ։ Զարդիս գիտունք նորանոր հետազօտութիւններով ցուցուցած են , թէ շատ բաներ որ ժամանակաւ հրաշալի կամ գերբնական կը համարուէին՝ սոսկ բնական դէպքեր էին ։ Այսպէս գիտունք մեծ ծառայութիւն ըրին աշխարհի , ազատելով զմարդիկ շատ ունայն յոյսերէ եւ սնապաշտական երկիւղներէ ։ Սակայն գիտունք չկըրցան երբէք ցուցունել թէ Քրիստոս կրցաւ իր հըրաշքները գործել բնական զօրութեանց միջոցաւ ։ Արդի գիտունք մինչեւ ցարդ կարող եղած չեն ի ծնէ կոյրի մը տեսնել տալ լոկ անոր աչքին դպչելով , կամ հիւանդ մը առողջացնել լոկ խօսքով , եւ կամ մեռեալ մը յարուցանել ։ Ընդ հակառակն գիտունք կը վկայեն թէ ամենեւին ճանչցուած չէ բընութեան մէջ զօրութիւն մը որ կրնայ գործել այն հրաշքները զորս գործեց Յիսուս ։

Ընթերցողք յիշելու են նաեւ թէ նախընթաց գլուխներէն ոմանց մէջ արդէն երկարօրէն քննուեցաւ եւ ապացուցուեցաւ թէ աւետարանիչներուն վկայութիւնը հերքող հակառակ վկայութիւն մը չկայ ։

Արդ , երբ կը նկատենք ժամանակը յորում գործուեցան հրաշքներն , այսինքն այն ժամանակ երբ աստուածային Փրկիչ մը երեւեցաւ աշխարհի վրայ , երբ կը նկատենք հրաշքներուն յատկութիւնները ,

այսինքն երբ կը նկատենք թէ հրաշքները գործուեցան բարերար նպատակաւ եւ մարդոց կրթութեանը համար եւ հարկաւոր էին Քրիստոսի աստուածային ծագումը հաստատելու , եւ երբ կը նկատենք այն ականատես անձանց վկայութիւնը որոնք չէին կրնար խաբուած ըլլալ այն հրաշից վրայով , պարտինք հետեւցնել թէ Քրիստոս արդարեւ գործեց հրաշքները որ կը պատմուին Աւետարաններուն մէջ, ուստի եւ էր ինչ որ ըսաւ իրեն համար թէ էր , այսինքն Լոյս եւ կեանք աշխարհի ։



# ԳԼՈՒԽ ԺԲ

## ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԳՈՐԾԸ

*Գիտուն Գերմանացի մը Քրիստոսի գերբնական անձ մը ըլլալուն վրայ զօրեղ ապացոյցներ հանած է այն բաներէն զորս Քրիստոս ըրաւ, եւ որ կրնան կոչուիլ Քրիստոսի Նպատակը կամ Խորհուրդը և կամ Գործը ։*

*Այս խորհուրդն այնպէս զարմանալի էր որ անհաւատալի է թէ լոկ մարդ մը կրնար յղանալ զայն, եւ մանաւանդ աւելի անհաւատալի է թէ լոկ մարդ մը, Նազովրեցւոյն Յիսուսի վիճակն եւ պարագաներն ունենալով, կրնար յղանալ այնպիսի խորհուրդ մը ։ Յիսուս իր կեանքն անցուց անշան գիւղի մը մէջ եւ հիւսան մը քով, բայց եւ այնպէս յղացաւ խորհուրդ մը քան զոր մեծագոյնը երեւակայած չէին երբէք աշխարհիս ամենէն հռչակաւոր օրէնսդիրք, փիլիսոփայք կամ աշխարհակալք ։ Ուստի ինչ էր Յիսուսի այս խորհուրդը կամ գործը ։*

**1. Յիսուս եկաւ որ Թագաւորութիւն մը պիտի հիմնէր որուն Թագաւորն Ինք պիտի ըլլար ։**

*Իր այս խորհուրդը հրատարակեց երբ պարագաներն ամենեւին նպաստաւոր չէին այնպիսի ձեռնարկութեան մը յաջողութեան ։ Յիսուս ինքնակոչ ելաւ ասպարէզ այնպիսի ատեն մը երբ որեւիցէ կեր-*

պով երեւելի եղած չէր իր հայրենակցաց մէջ ։ Ժողովուրդը չէր նկատեր զնա իբրեւ ազգին ներկայացուցիչը եւ չէր վստահեր անոր իբրեւ ազգին ազատարարին ։ Ոչ ազգային ժողովոյ մէջ տեղ կամ աստիճան, եւ ոչ իր իշխանութեանը տակ բանակ ունէր, եւ ոչ ալ զօրաւոր բարեկամներու պաշտպանութիւնը կը վայելէր, բայց եւ այնպէս ներկայացոյց զինքն իբրեւ. հիմնադիր թագաւորութեան մը, եւ արքայական պատիւ պահանջեց իրեն համար ։

**2. Յիսուս հրատարակեց թէ իր թագաւորութիւնը պիտի ըլլար հոգեւոր թագաւորութիւն մը ։**

Յիսուս ձեռնարկեց հաստատել, ոչ թէ հասարակ թագաւորութիւն մը, այլ թագաւորութիւն մը որ պիտի տարբերէր ուրիշ բոլոր թագաւորութիւններէ այսու՝ որ պիտի ըլլար բոլորովին հոգեւոր և մարդոց սրտերուն մէջ միայն հաստատուած ։ Յիսուս պահանջեց մարդոցմէ ոչ արտաքին կերպով միայն ճանչնալ իր իշխանութիւնը եւ արտաքուստ միայն հնազանդիլ իր օրէնքներուն, այլ բոլորովին հպատակիլ իր կամացը ։ Յիսուս յայտնեց թէ իր նպատակն էր բոլոր աշխարհի վրայ ոչ քաղաքական այլ հոգեւոր վերանորոգութիւն մը ընել. ոչ նիւթական այլ բարոյական թագաւորութիւն մը, արդարութեան, սրբութեան եւ սիրոյ թագաւորութիւն մը հիմնել ։ Ըսաւ թէ այնպէս մաքուր պիտի ըլլար այն թագաւորութիւնը որ մարդոց բարոյական բնութիւնը փոխուելու էր որպէս զի այն թագաւորութեան հպատակ ըլլային մարդիկ, եւ թէ այնպէս բարձր պիտի ըլլար այն թագաւորութիւնը որ մարդոց սիրտը բոլորովին նորոգուելու էր, որպէս զի մարդիկ կարենային մտան եւ

բաժին ունենալ այն թագաւորութեան մէջ։ Միովբանիւ Յիսուս ձեռնարկեց հաստատել Աստուծոյ Թագաւորութիւնը մարդոց սիրտերուն մէջ ։ Զարմանալի՛ ձեռնարկութիւն ։

3. Յիսուս ըսաւ թէ իր Թագաւորութիւնը տիեզերական Թագաւորութիւն մը պիտի ըլլար ։

Երկրորդ դարուն անհաւատ փիլիսոփան Կեղսոս այս տիեզերական թագաւորութեան գաղափարը ծաղրեց իբրեւ յիմարական գաղափար ։ Սակայն Յիսուս ըսաւ թէ պիտի հաստատէր այնպիսի թագաւորութիւն մը յորում բոլոր մարդիկ միացեալ պիտի ըլլային եղբայրական սիրոյ կապերով եւ ամէնքը պիտի ըլլային հպատակ Հօրն երկնաւորի ։

Միթէ հաւատալի՞ է որ Գալիլեայի Նազարէթ քաղաքը մեծցած լոկ մարդ մը կարենար յղանալ այսպիսի թագաւորութեան մը գաղափարը , կամ ձեռնարկել իրօք հաստատել այնպիսի թագաւորութիւն մը , եւ զինք հրատարակել թագաւոր այն թագաւորութեան ։ Ոչ երբէք ։

4. Յիսուս ըսաւ թէ պիտի հաստատէր ոչ միայն տիեզերական այլեւ մշտնջենաւոր Թագաւորութիւն մը ։

Միթէ Աղեքսանդր Մեծ երեւակայեց երբէք թէ իր մահուանէն ետքն ալ կարող պիտի ըլլար շարունակել երկիրներու տիրել իր զօրաց եւ զօրապետաց միջոցաւ ։ Միթէ երբէք երեւակայե՞ց Կեսար թէ պիտի ըլլար մշտնջենաւոր կայսր Հռոմայ , եւ թէ իր գերեզմանին խորէն պիտի շարունակէր կառավարել զայն ապագայ դարերու մէջ ։ Այժմու թագաւորներէն մին , որչափ եւ զօրաւոր ըլլայ , որչափ եւ սիրելի իր ժողովրդեան , կրնա՞յ յուսալ թէ իր մահ-

*ուանէն եռքը ազգը պիտի պատուէ զնա դարուց ի դարս իբրեւ հոգւոց տիրող Թագաւոր, յաւէտ պիտի տանի անոր աշխարհակալութիւնը եւ պիտի պահէ անոր օրէնքները։ Չկայ երկրաւոր իշխան մը որ ունի այս յոյսը։ Սակայն Յիսուս ձեռնարկեց հաստատել Թագաւորութիւն մը որ երբէք պիտի չլնար, եւ երբէք պիտի չփոխուէր, այլ միշտ միեւնոյն նպատակին պիտի դիմէր, միշտ միեւնոյն օրէնքը պիտի ունենար, եւ բոլոր ապագայ դարերու մէջ կապա հաւատարիմ պիտի մնար Յիսուսի։ Զարմանալի՛ ձեռնարկութիւն։*

5. **Յիսուս բնաւ չէր ուզեր հիմնել, ընդարձակել եւ յաւերժացնել իր Թագաւորութիւնն ահաւոր եւ քաղաքական արտաքոյ կարգի եղանակաւ։**

*Իմացուց թէ պիտի չգործածէր այն միջոցներէն եւ ոչ մին որովք հաստատուեցան երկրաւոր Թագաւորութիւնք։ Պիտի չապաւինէր* **հարստութեան**, *եւ պիտի չփնտռէր օգնութիւն հարուստներէն։ Ինք իսկ աղքատ էր, եւ սիրով կ'ընկերանար աղքատաց հետ։ Անոր առաջին աշակերտներն ալ աղքատ մարդիկ էին։*

*Յիսուս պիտի չփնտռէր նաեւ օգնութիւն փիլիսոփայից* **գիտութենէն**, *եւ ատենախօսաց* **ճարտարխօսութենէն**։ *Չյաճախեց փիլիսոփայից դպրոցները, ոչ ալ անոնց գործակցութիւնը խնդրեց։ Կ'ուսուցանէր հասարակ ժողովուրդն եւ անոնց մէջէն ընտրեց իր պաշտօնեաները։*

*Յիսուս իր Թագաւորութիւնը հաստատելու կամ տարածելու համար ոչ ինք գործածեց* **սուր**, *ոչ ալ իր աշակերտներուն թոյլ տուաւ գործածել։ Ճշմարիտ է թէ անոր հետեւողներէն ոմանք երբեմն սուր*

առին Քրիստոնէութեան համար, բայց այսպիսիք Յիսուսի հրամանին դէմ գործած եղան. Յիսուս ըսաւ. «Ամէն սուր առնողները սրով պիտի կորսուին» (Մատթ. ԻԶ. 52): Վերջապէս Յիսուս ձեռնարկեց հաստատել հոգեւոր թագաւորութիւն մը մարդոց մտաց, սրտերուն եւ խղճին մէջ, եւ ըսաւ թէ այն գործը պիտի կատարուէր հոգեւոր միջոցներով միայն։

**6. Քրիստոսի խորհուրդը կատարեալ էր երբ առաջին անգամ հրապարակեց զայն աշխարհի:**

Քրիստոս չսպասեց փորձ ընել եւ տեսնել թէ իր խորհուրդն ինչպէս պիտի ընդունուէր աշխարհէն: Ժամանակ ժամանակ չփոխեց այն խորհուրդը պարագայից յարմարցնելու համար: Եթէ Յիսուս լոկ իմաստուն մարդ մը ըլլար, ստուգիւ աւելի զգուշութեամբ կը խորհէր թէ ինչպէս յայտնելու էր իւր խորհուրդը: Նախ, չէր խօսէր այնպէս բացարձակ կերպով այն խորհրդոյն վրայ, եւ իր անձը բոլորովին չէր տար անոր։ Երկրորդ, ուշադրութեամբ կը դիտէր թէ ինչպէս կ'ընդունէր ժողովուրդն այն խորհուրդը, եւ կը փոխէր զայն, որչափ հնար էր, յարմարցնելու համար ազգին ոգւոյն եւ բաղձանացը: Իմաստուն բարեկարգիչք միշտ մեղմով յառաջ կ'երթան. կը նկատեն բոլոր արգելքները, պարագաներու կը յարմարին, եւ ատեն ատեն կը փոխեն իրենց գործելուն եղանակը: Նափոլէոն Պոնաբարդ շատ աղէկ կ'ըսէ. «Ո՛ր մարդն է որ տեղի տուած չէ արգելքներու. ո՛ր մարդն է որ պարագաները նկատած չէ, ժամանակին ազդեցութեան տակ երբեք ինկած չէ, եւ սովորութեան զօրութենէն ընկճուած չէ.» «Յիսուս միայն,» կը յաւելու Նա-

թողէին, « Յիսուս միայն էր միշտ միեւնոյն, յանհունս քաղցր, յանհունս հաստատուն ։ »

Արդարեւ Յիսուս տակաւ տակաւ յայտնեց իւր խորհուրդը իւր աշակերտաց, բայց անոր յայտնութիւնները միեւնոյն նպատակին մասունքն էին զոր յղացած էր ի սկզբան, եւ զոր ամենեւին չփոխեց արգելքներու պատճառաւ ։

7. Դիտողութեան արժանի է նախ հանդարտ և վստահ ոգին որով Յիսուս ի գործ դրաւ իւր խորհուրդը ։

Այս կողմանէ մանաւանդ Յիսուս կը տարբերի բոլոր այն մոլեռանդ մարդերէն որ ջանացին զաշխարհ տակն ու վրայ ընել ։

Քրիստոս ձեռնարկեց այնպիսի գործի մը քան զոր դժուարին եւ մեծ երբէք մարդու մտքէ անցած չէր, բայց եւ այնպէս երբէք չաճապարեց ։ Ձեռնարկած էր աշխարհք նուաճել հոգեւորապէս, բայց միշտ ունեցաւ ժամանակ վշտացեալները մխիթարելու, ագէտները կրթելու, եւ օգնելու անոնց որ անոր ձեռնտուութիւնը կը խնդրէին ։ Թշնամիներէ պաշարուած էր որ կը ջանային անոր բերնէն ելած խօսքերով որոգայթը ձգել զանի, եւ անոր բարերարութիւնները կ'ընծայէին Բէեղզեբուղի, բայց նա իւր նպատակին լուռ կատարուելուն նըկատմամբ թեթեւ տարակոյս մը անգամ չյայտնեց ։ Հանդարտութեամբ ըսաւ. կանխաւ թէ իր թշնամիներէն ի մահ պիտի մատնուէր, բայց եւ այնպէս կատարեալ վստահութեամբ խօսեցաւ միանգամայն իւր ապագայ թագաւորութեան վրայ ։

Ընթերցողներէն կը խնդրենք խորհել Յիսուսի այս խորհրդոյն վրայ, նկատել անոր օգտակարու-

թիւնը, ընդհանրականութիւնը եւ հոգեւոր մեծութիւնը. Նկատել նաեւ այն միջոցները որովք ի գործ պիտի դրուէր այն խորհուրդը, եւ թէ որչափ դարեր պիտոյ էին անոր լիուլի կատարմանը համար. Նկատել դարձեալ հանդարտութիւնը եւ վստահութիւնը որովք Յիսուս յառաջ տարաւ իր գործը. ասոնք նկատելէն ետքը թող դատեն թէ հաւատալի է որ Նազարեթի մէջ ապրող լոկ մարդ մը կարենար յղանալ այսպիսի խորհուրդ մը, եւ ներկայացնէր զինք աշխարհի այնպիսի խոնարհութեամբ եւ այնպիսի համարձակութեամբ, մինչեւ իւր մահուան ժամն անգամ ցուցնէր թէ վստահ էր իւր նպատակին յաջողութեամբ գլուխ ելլելուն ։ Այս հաւատալի է ։ Ոչ երբէք ։

Կ'ըսուի թէ եղան մոլեռանդ մարդիկ որ մեծամեծ գործերու ձեռք զարկին ։ Շիտակ է ։ Բայց անոնց ձեռնարկութիւններուն ունայնութիւնը միշտ յայտնի էր անոնց ընդունայն խօսքերէն եւ անոնց ամբարտաւանութենէն ։ Եթէ կը նկատենք Յիսուսի խորհուրդը ուրոյն եւ զատ անոր վարքէն, կրնանք տարակուսիլ այն խորհրդոյն աստուածային ըլլալուն վրայ, բայց երբ անոր գործը կը բաղդատենք անոր վարուցը հանդարտութեան, չափաւորութեան եւ իմաստութեան հետ, կը համոզուինք թէ արդարեւ գերբնական էր այն խորհուրդը, եւ արդարեւ աստուածային ։

Այս համոզումն եւս աւելի զօրաւոր կ'ըլլայ, երբ կը նկատենք թէ անցեալ 1800 տարուան պատմութիւնը Յիսուսի խորհրդոյն կատարման պատմութիւնն է, թէ թագաւորութիւնը զոր Յիսուս խորհեցաւ եւ

ձեռնարկեց հաստատել մարդոց սիրտերուն մէջ՝ հաստատուեցաւ արդեամբ եւ այնպէս ճշդիւ, որ այս 1800 տարուան մէջ բնաւ զօրութիւն մը կարող չեղաւ եղծանել զայն, եւ թէ այս թագաւորութիւնն, թէպէտ անոր թագաւորը խաչուեցաւ 18 դար առաջ, տակաւին կը տարածուի, եւ զՅիսուս ի սրտէ եւ ուրախութեամբ իբրեւ Թագաւոր իրենց սիրտերուն մէջ ընդունողներուն թիւը դարէ ի դար աճելու վրայ է։ Քրիստոսի գործն աստուածային գործ էր, եւ եթէ այս գործը բաղդատուի անցեալ ութեւտասն դարուց պատմութեան հետ, յայտնի կը ցուցնէ թէ Քրիստոս արդարեւ թագաւորաց Թագաւոր էր։



# ԳԼՈՒԽ ԺԹ

## ՔՐԻՍՏՈՍԻ ԽՈՐՀՐԴՈՅՆ ՉԱՐՄԱՆԱԼԻ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

*Նախընթաց գլխոյն մէջ ցուցուցինք թէ Քրիստոսի ձեռնարկութիւնը կամ խորհուրդն ամէն կողմանէ այնպէս տարօրինակ էր որ բուն իսկ այն ձեռնարկութեան կամ խորհրդոյն մէջ կը գտնենք ապացոյց անոր դերբնական յատկութեանը ։ Եթէ անոր խորհուրդն իսկ ապացոյց է անոր աստուածութեանը, եւս առաւել զօրաւոր ապացոյց մը պիտի ըլլայ անոր խորհրդոյն յաջողիլը ։*

*Տեսնենք, նախ, միջոցներն որովք Յիսուս կը յուսար կատարել իւր խորհուրդը. երկրորդ, Յիսուսի խորհրդոյն դէմ մաքառող զօրութիւնները. երրորդ, հետեւանքը ։*

**1. Միջոցներն որովք Յիսուս կը յուսար հիմնել հոգեւոր ընդհանուր և յաւիտենական թագաւորութիւն մը ։**

*Եթէ աւելի քան ութեւտասն դար առաջ Յիսուսի խաչելութեան հետեւեալ օրուան վրայ նայինք անգամ մը, եւ տեսնենք թէ այն ատեն Յիսուսի գործն ինչ վիճակի մէջ էր, եւ Յիսուս ինչ միջոցներ ունէր ընդհանուր թագաւորութիւն մը հաստատելու մարդոց սիրտերուն մէջ, պիտի համոզուինք թէ երբէք ձեռնարկութիւն մը երեւցած չէ այնպէս անյոյս ինչպէս այն զոր Յիսուս յանձն առած էր կատարել ։*

**Յիսուս մեռած էր**, մեռած էր նախատական մահուամբ մը։ Արդարեւ անոր աշակերտները կը մնային, բայց ցրուած, վհատած եւ գրեթէ յուսահատած էին։

**Թուով սակաւ էին**. ուստի միթէ կարելի՞ էր որ անոնց միջոցաւ միլիոնաւոր մարդիկ հնազանդէին անոնց խաչեալ Տէրոջը։

**Հրեայ էին**. ուստի եւ ինչպէս կրնային յուսալ թէ հեթանոսք որ կ՚արհամարհէին զՀրեայս, պիտի ընդունէին անոնց խօսքը։

**Ազգային եկեղեցւէն նզովեալ Հրեաներ էին**, եւ այս պատճառաւ անոնց հայրենակիցները յօժար եւ պատրաստ պիտի չըլլային անոնց քարոզութիւններն ընդունելու։

**Աղքատ էին**. ուրեմն, ուստի՞ կրնային գտնել իրենց գործը յառաջ տանելու հարկաւոր միջոցները։

**Անուս էին**. ուստի եւ ինչպէս կրնային յուսալ թէ քաղաքակրթեալ աշխարհք պիտի ընդունէր անոնց վարդապետութիւնները։

**Զինուորական հանճարէ անմաս եւ պատերազմական միջոցներէ զուրկ էին**. ուստի՞ եւ ինչպէս կրնային յուսալ նուաճել երկրիս մեծամեծ թագաւորութիւնները։

Անոնց համար ուրիշ միջոց չկար ընդհանուր թագաւորութիւն մը հաստատելու, եթէ ոչ պարզապէս քարոզել խաչեալ Յիսուսը։ Ապաքէն, ըստ աշխարհի դատաստանին, մեծ ձեռնարկութիւն մը երբէք ունեցած չէ այսպիսի անբաւական միջոցներ։ Ըստ մարդկային կարծեաց որ եւ իցէ յոյս չկար թէ Յիսուսի ձեռնարկութիւնը պիտի յաջողէր, եւ այս կարծիքն առաւել եւս կը հաստատուի եթէ Քը-

րիստոսի ձեռնարկութեան հակառակող զօրութիւններն եւ նկատենք ։

2. Քրիստոսի ձեռնարկութեան յաջողութեան դէմ հակառակող զօրութիւնք ։

Եթէ աշխարհք սպասէր Քրիստոսի այէս փրկչի մը, Քրիստոսի ձեռնարկութիւնն թերեւս աւելի դիւրաւ կը կատարուէր . բայց Հրեայք այսպիսի փրկչի մը կը սպասէին ։ Ոչ երբէք ։ Հրեայք կը սպասէին Մեսիայի մը որ պիտի ազատէր զանոնք Հռոմայեցւոց լուծէն, պիտի հաստատէր Հրէական փառաւոր թագաւորութիւն մը, պիտի բարձրացնէր Հրէից ազգն ի վեր քան զամենայն ազգս, եւ Հրեայք պատրաստ էին ուրախութեամբ ընդունել այսպիսի փրկիչ մը, բայց բնաւ պատրաստ չէին իբրեւ Մեսիա ընդունել զՅիսուս, որ պատուիրեց անոնց ինչ որ կայսեր էր կայսեր տալ, բնաւ յայտնապէս թէ ինք եկած չէր աշխարհային թագաւորութիւն մը հաստատելու, եւ հրատարակեց զինք իբրեւ բարեբար եւ ազատիչ ոչ Հրէից միայն, այլ եւ հեթանոսաց ։ Հրեայք այսպիսի Մեսիայի մը չէին սպասեր, եւ երբ Յիսուս երեւեցաւ, չէին ուզեր ընդունել զանի ։ Յիսուս այնպէս յայտնի կերպով յանդիմանեց Հրէից դպրաց մոլար ուսմունքն, որ անոնք պատրաստ էին, ոչ թէ պատուել զանի իբրեւ Մեսիա, այլ ամբաստանել իբրեւ հայհոյիչ ։ Այնպէս խստիւ յանդիմանեց Հրէից երեւելիներուն կեղծաւորութիւնն եւ ագահութիւնը, որ անոնք պատրաստ էին զանի, ոչ թէ իբրեւ աստուածային փրկիչ ընդունել, այլ հալածել մինչեւ ցմահ ։ Յիսուս այնպէս ընդդիմացաւ Հրէից ազգային նախապաշար-

մանց, որ ազգն անոր դէմ ելաւ, եւ «Խաչը հանէ զանիկա, խաչը հանէ զանիկա» աղաղակեց, եւ Հրեայք հակառակ կեցան Յիսուսի աշակերտներուն ինչպէս հակառակ կեցած էին նոյն իսկ Յիսուսի: Հրեայք չուզեցին անսալ անոնց որ կը քարոզէին թէ Յիսուս զոր խաչեցին՝ Աստուծմէ անոնց խոստացեալ Մեսիան էր: Պատուիրեցին անոր աշակերտաց այլեւս չխօսել յանուն նորա: ԶՊետրոս եւ զՅովհաննէս բանտը դրին, եւ զՍտեփանոս սպաննեցին քարկոծմամբ: Երուսաղեմի մէջ այնպէս սաստիկ հալածում մը հանեցին որ Յիսուսի աշակերտներէն շատերը փախան անկէ, եւ ուր որ կ'երթային՝ ազգը պատրաստ էր զանոնք քարկոծել եւ սուտ ամբաստանութիւններով Հռոմայեցի կառավարիչները գրգռել անոնց դէմ: Գրեթէ ամէն տեղ ուր որ կ'երթային, կը կրէին բուռն հալածմունք, եւ շատ անգամ կը սպաննուէին դառն մահուամբ: Որովհետեւ Հրէից ազգն եւ անոնց հոգեւոր գլուխներն այս պատճառն հակառակ էին Քրիստոսի վարդապետութեան, ինչպէս հնար էր Քրիստոսի թագաւորութեան անոնց մէջ հաստատուիլ:

Յիսուս պատուիրեց սակայն իր աշակերտներուն երթալ նաեւ ի հեթանոսս: Արդ, տեսնենք թէ հեթանոսք քան զՀրեայս աւելի պատրաստ էին ընդունելու զՅիսուս եւ անոր պաշտօնեաները: Արդարեւ հեթանոս աշխարհ մեծ կարօտութիւն ունէր բարոյական եւ հոգեւոր ազատչի մը, բայց միթէ պատրաստ էր ընդունել զՅիսուս իբրեւ այնպիսի ազատիչ մը: Գիտուն պատմիչ մը ըսած է թէ հեթանոս աշխարհ անատեն երեք դաս բաժ-

նուած էր, այսինքն՝ համարակ ժողովուրդը, որ կը հաւատար թէ բոլոր կրօնքները ճշմարիտ էին, գիտունք՝ որ կը հաւատային թէ բոլոր կրօնքները սուտ էին, եւ իշխանութեան տէր անձինք՝ որ կը հաւատային թէ բոլոր կրօնքներն օգտակար էին կառավարութեանց։ Եթէ Քրիստոսի Աւետարանը հրատարակէր միայն թէ աստուած մ'ալ պէտք էր աւելցնել միւս աստուածոց վրայ, եւ գոհ ըլլար սորվեցնել որ այն աստուածն ալ միւս աստուածոց պէս պաշտուէր, Քրիստոնէութիւնը կրնար անուամբ դիւրաւ ընդունուիլ համարակ ժողովուրդէն, եւ թէպէտ գիտուններէն լռելեայն արհամարհուէր, բայց կը պաշտպանուէր իշխանութեան տէր անձերէ. ուստի եւ Սուրբ գրոց Աստուածը կրնար տեղ մը բանել հեթանոսաց աստուածներուն կարգը։ Բայց Քրիստոս հրատարակեց թէ մէկ Աստուած միայն կայ եւ մէկ Փրկիչ, եւ թէ բոլոր մարդիկ պարտին թողուլ իրենց սուտ աստուածները եւ ճշմարիտ Աստուածը միայն պաշտել, եւ փրկութեան համար Քրիստոսի միայն ապաւինել։ Արդ, հեթանոսք պատրաստ էին թողուլ իրենց բոլոր մոլորութիւնները եւ ընդունել զՅիսուս իբրեւ մի միայն եւ ամենաքաւական Փրկիչ աշխարհի։

Յոյն եւ Հռոմայեցի փիլիսոփայք պատրաստ էին իրենց վարդապետ ընդունել Հրեայ մը որ երբէք տեսած չէր անոնց հռչակաւոր դպրոցները, եւ թերեւս ոչ իսկ սորված էր անոնց փիլիսոփայական մեծամեծ դրութիւնները։ Կիկերոն հրապարակաւ ծաղրած էր հանդերձեալ աշխարհի վարդապետութիւնը։ Յուլիոս Կեսար Հռոմէական ծերակուտին

մէջ յայտնապէս ըսած էր թէ մահուանէ ետքը հոգին գոյութիւն չունի ։ Տակիտոս ուրացած էր Աստուծոյ նախախնամութիւնը , եւ Ովրատիոս ընդունած էր Եպիկուրեան անաստուածութիւնը ։ Այսպիսի մարդիկ պատրաստ էին թողուլ իրենց բոլոր կարծիքներն , եւ իրենց բոլորովին անծանօթ Հրէի մը վարդապետութիւններն ընդունել ։ Մարդկային իմաստութեան եւ գիտութեան պարծանքն եւ դոռոզութիւնն անտարակոյս մերժել պիտի տային Յիսուսի վարդապետութիւնները ։

Կամ հեթանոսաց բարոյական վիճակն այնպէս էր որ ուրախութեամբ ընդունէին Քրիստոսի բարոյական վարդապետութիւնները ։ Արդի պատմաբանք հեթանոսաց բարոյական զեղծումն այնպիսի մութ գոյներով կը նկարագրեն ինչպէս կը նկարագրէ Պօղոս առաքեալ Հռոմայեցւոց թուղթին առաջին երեք գլուխներուն մէջ ։ Ռընան կ'ըսէ թէ Հռոմ անառակութեան եւ անագորունութեան աղբիւր էր , եւ այս բարոյական ապականութիւնը Հռոմէական կայսրութեան մայրաքաղաքին միայն յատուկ չէր , այլ ամէն գաւառ ապականած էր ։ Դարձեալ Ռընան կ'ըսէ թէ Քրիստոսէ ետքն առաջին դարուն կէսն էր արդարեւ հին պատմութեան յոռեգոյն ժամանակներէն մին ։ Այսպիսի ապականեալ ժողովուրդ մը պատրաստ էր ընդունել զՅիսուս որ կը պատուիրէր կտրել նետել որեւիցէ աղտեղի խորհուրդ եւ որեւիցէ զեղխութիւն ։ Ոչ . ընդհակառակն մարդկային սրտին բոլոր ցանկութիւնները պիտի միաբանէին հակառակիլ Քրիստոսի վարդապետութեանց երկնային մաքրութեան ։

Հռոմայեցւոց կառավարութիւնը պատրաստ էր ընդունել զՅիսուս իբրեւ իր Թագաւորը ։ Այն կառավարութիւնն որ զինք պանծանօք կ՚անուանէր տէր աշխարհի, եւ կը պարծէր իր մեծամեծ յաղթութիւններովը եւ տիեզերական իշխանութեամբը՝ պատրաստ էր իբրեւ իրեն հոգեւոր Թագաւոր ճանչնալ իւր արհամարհեալ հպատակներէն մին, որ իբրեւ չարագործ խաչուած էր ։ Հռոմէական կառավարութիւնը կրնար ի սկզբան տալ ոչինչ գրել անոր սակաւաւոր հետեւողները եւ անոնց աննշան եւ տկար ըլլալուն պատճառաւ չհալածել զանոնք, բայց միթէ կրնար անտարբեր կենալ երբ Քրիստոսի հետեւողները զօրացան թուով, եւ ջանացին կործանել հեթանոսաց կրօնական դրութիւնը, զոր կառավարութիւնը հարկաւոր կը համարէր ի պաշտպանութիւն իւր ։ Միթէ Հռոմէական իշխանք պատրաստ էին ընդունել Քրիստոսի վարդապետութիւնները որ խստիւ կը դատապարտէին անոնց ազգային գոռոզութիւնը, անոնց անիրաւ յաղթութիւնները եւ անագորոյն զբօսանքները ։ Ոչ երբէք ։

Պատմութիւնը կը վկայէ թէ հեթանոսք քան զՀրեայս աւելի պատրաստ չէին ընդունելու Քրիստոսի Աւետարանը ։ Երբ Քրիստոսի թագաւորութիւնը հրատարակուեցաւ հեթանոսաց մէջ, եւ անոր յաւակնութիւնը ճանչցուեցաւ, սաստիկ եւ կատաղի հակառակութիւն մը ելաւ անոր դէմ հեթանոսաց մէջ, ինչպէս ելած էր Հրէից մէջ ։ Հեթանոս աշխարհին իմաստութիւնն իբրեւ յիմարութիւն արհամարհեց Քրիստոսի կրօնքն, եւ գիտունք ատճառտանք համարեցան զայն ։ Ապականեալ հեթանո-

սութեան բոլոր կիրքերը միացուցին իրենց զօրութիւնները դէմ դնել անոր, եւ Հռոմէական կառավարութիւնն որոշեց ջնջել զայն։ Քրիստոսէ ետքն առաջին երեք դարուց մէջ Ներոն, Դոմետիանոս, Տրայիանոս. Մարկոս Աւրելիոս, Դեկոս, Վալերիանոս, Դիոկղետիանոս եւ ուրիշ Հռոմայեցի կայսերք շատ ջանք ըրին խափանելու Քրիստոնէութեան ծաւալումը. Այս կայսերաց ժամանակը սոսկալի տանջանք հնարուեցան եւ բազմաթիւ Քրիստոնեաներ կտտամահ սպաննուեցան։ Հռոմէական հզօր կայսրութիւնը շատ անգամ իւր բոլոր զօրութեամբ ջանաց ջնջել Քրիստոնէական հաւատքը։ Առաջին երեք դարուց մէջ յետ Քրիստոսի խնդիր էր թէ արդեօք Քրիստոնեայք կարող պիտի ըլլային այնչափ երկար ատեն դիմանալ որչափ ատեն Հռոմէական կառավարութիւնը կը տանջէր զանոնք։

Պատմութիւնը կը ցուցնէ թէ բոլոր աշխարհք հակառակ էր հոգեւոր թագաւորութեան զոր հաստատելու ձեռնարկած էր Քրիստոս։ Անտաեն Հըրեայք եւ հեթանոսք միաբան զօրութեամբ ընդդիմացան այն թագաւորութեան։ Յունաց փիլիսոփաներն եւ Երուսաղեմի դպիրներն միաձայն աղաղակեցին թէ յիմարութիւն էր Քրիստոսի կրօնքը։ Ջերմ հեթանոսք եւ կեղծաւոր փարիսեցիք միանգամայն հակառակեցան Յիսուսի խորհրդոյն կատարման։ Հռոմայեցւոց ծերակոյտը հաստատած էր Հրէից սինետրիոնին վճիռը թէ Քրիստոնէից կրօնքը ջնջուելու է։ Հռոմայեցի կայսերք եւ Հրէից քահանայապետք միանգամայն պատրաստ էին իրենց բոլոր զօրութեամբ ընդդիմանալ Յիսուսի ձեռնարկու-

Թեան ։ Արդ ինչպէս հնար էր Յիսուսի յաջողել այսչափ իմացական, եկեղեցական եւ քաղաքական զօրութեանց դէմ։ Մարդկօրէն խորհելով անհնար էր ։

3. Քրիստոս կարո՞ղ եղաւ ի գործ դնել իւր խորհուրդը, և արդեամբ հիմնել ընդհանուր հոգեւոր Թագաւորութիւն մը ։

Կարող եղաւ յաջողութիւն գտնել Երուսաղեմի մէջ, ուր Հրէից սինետրիոնը դատապարտած էր զնա իբրեւ հայհոյիչ, եւ Հռոմէական կառավարութիւնը խաչած էր զնա իբրեւ չարագործ։ Այո, անոր մահուանէն քիչ ետքն Աւետարանին քարոզութեամբ միայն բազմութիւնք արանց եւ կանանց, քահանաներէն անգամ՝ շատեր, հաւատացին Յիսուսի, եւ աւելի քան 5,000 անձինք ճանչցան Յիսուս իրենց Տէր եւ Փրկիչ ։ Յետոյ անոր հետեւողները սաստիկ հալածանաց պատճառաւ ստիպուեցան ելլել Երուսաղեմէն, բայց երթալով այլեւայլ տեղեր կը քարոզէին Աւետարանը, եւ անոնց քարոզութեամբը Քրիստոսի Թագաւորութիւնն արագութեամբ տարածուեցաւ Հրէաստան, Գալիլեա, Սամարիա, Փոքուն Ասիոյ գրեթէ բոլոր գաւառները, Յունաստան, Եգէական ծովուն կղզիները, Ափրիկէի ծովեզերքը, Իտալիա եւ մինչ իսկ ի Հռոմ։ Քիչ ժամանակի մէջ Անտիոք, Յոպպէ, Եփեսոս, Կորնթոս, Թեսաղոնիկէ, Բերէա, Իկոնիոն եւ Դերբէ գտնուեցան շատ մարդիկ որ կը ճանչնային զՅիսուս իբրեւ իրենց հոգեւոր Տէրը ։ Անոր հետեւողներ գտնուեցան նաեւ Տիւրոս, Կեսարիա, Տրովա, Աթէնք, Լիւստրա եւ Դամասկոս ։

Այս նիւթին վրայ Հռոմայեցի մատենագրաց վկայութիւնը հաւմոզիչ է ։

*Տակիտոս կը վկայէ թէ Քրիստոնէական հաւատքը տարածուած էր ոչ միայն Հրէաստան, այլեւ նոյն իսկ Հռոմ։*

*Բիւթանիոյ եւ Պոնտոսի մէջ այնչափ շատ մարդիկ ընդունած էին Քրիստոնէութիւնը որ Հռոմայեցի կուսակալը, Պլինիոս, այս մասին գիր գրեց առ Տրայիանոս կայսր, եւ հարցուց թէ ինչ ընել պէտք էր Քրիստոնէական հաւատոյ ծաւալման առաջն առնելու համար։*

*Յուստինոս վկայ յամի Տ. 106 կ'ըսէ. « Չկայ ազգ մը որ չաղօթէ առ Արարիչն յանուն խաչելոյն Յիսուսի։ »*

*Տերտուղիանոս, յետ Քրիստոսի երկրորդ դարուն Քրիստոնեայ մատենագիր մը, այսպէս գրեց Հռոմէական կայսրութեան մէկ կուսակալին. « Մեք, Քրիստոնեայք, դեռ երեկեան ենք, բայց եւ այնպէս կը լեցունենք ձեր բոլոր հրապարակները, ձեր աւանները, քաղաքները, կղզիները, դատարանները, նոյն իսկ ձեր բանակները, ձեր պալատները, ձեր ծերակոյտը, ձեր շուկաները. ձեր մեհեանները միայն թողած ենք ձեզի։ » Նոյն մատենագիրը կ'ըսէ թէ այն ատեն Քրիստոսի թագաւորութիւնը տարածուած էր Սպանիա, Գաղիա եւ Բրիտանիա։*

*Քրիստոնէութեան այս ընդհանուր ծաւալումէն ի հարկէ սա հետեւեցաւ որ կռապաշտութիւնն ինկաւ, անոր աստուածները մերժուեցան եւ մեհեանները թողուեցան, Քրիստոնէութիւնն եղաւ կրօնք Հռոմէական կայսրութեան, եւ Յիսուս Քրիստոս արդարեւ հիմնեց հոգեւոր թագաւորու-*

*թիւն մը Հռոմէական պետութեան երկրին մէջ ։*

*Կը հարցունենք թէ այս բաներն ինչպէս գործուեցան ։ Բռնութեամբ գործուեցան ։ Ոչ ։ Յանուն խաչեալ Փրկչին հեզութեամբ կրելով ամէն տանջանք զոր հզօր կայսրութիւն մը կրնար տալ ։*

*Նենգութեամբ կամ խաբէութեամբ գործուեցան ։ Ոչ , այլ այնպիսի մարդոց հաւատարմութեամբը որ կ'ընտրէին մանաւանդ մեռնել քան խաբել ։ Մարդկային իմաստութեամբ կամ աշխարհային հնարքով գործուեցան ։ Ոչ ։ Քրիստոսի հետեւողներուն միմիայն իմաստութիւնը եւ միմիայն հնարքը կը կայանար յայնմ որ հաւատարմութեամբ քարոզեցին ըզխաչեալն Քրիստոս իբրեւ Աստուծոյ իմաստութիւնը փրկութեան համար ։ Արդարեւ այս յաղթութիւնն ոչ մարդոյ , այլ Աստուծոյ էր ։*

*Իմաստութիւնը , որոյ համար Հռոմէական կայսրութիւնը մերժեց Սոկրատայ , Պղատոնի , եւ Արիստոտէլի վարդապետութիւններն իբրեւ անպիտան , պէտք է որ քան զմարդկային իմաստութիւն աւելի եղած ըլլայ ։ Այն իմաստութիւնն արդարեւ աստուածային իմաստութիւն էր ։*

*Ճարտարխօսութիւնը , որոյ համար նոյն կայսրութիւնը ետ դարձաւ իր ատենաբաններուն ճառերէն, լոկ մարդկային շրթանց ճարտարխօսութիւն չէր , Աստուծոյ ճշմարտութեան ճարտարխօսութիւնն էր ։*

*Ազդեցութիւնը որ մոլեռանդ Հրէին , հեշտասէր Յոյնին եւ հպարտ Հռոմայեցւոյն մէջ ծնաւ սէր առ հեզն եւ անշուքն Յիսուս՝ երկրաւոր ազդեցութիւն չէր այլ երկնաւոր ։*

*Զօրութիւնը որ քան զսուր , քան զխարոյկ, քան*

զվայրի գազանս զօրեղ էր, զօրեղ քան զՀռոմէական կայսրութեան բոլոր զօրութիւնն, արդարեւ Աստուծոյ զօրութիւն էր։

Պատմութիւնը կը վկայէ թէ Քրիստոսի խորհուրդը զարմանալի յաջողութիւն գտաւ անոր մահուանէն ետքն առաջին 300 տարուան մէջ։ Արդարեւ Քրիստոս հոգեւոր թագաւորութիւն մը հաստատեց Հռոմէական կայսրութեան բոլոր երկիրներուն մէջ։ Պատմութիւնը կը վկայէ նաեւ թէ այս դեռ սկիզբն էր ծաւալման Յիսուսի թագաւորութեան։ Այն թագաւորութիւնն երթալով տարածուեցաւ նաեւ Հռոմէական կայսրութեան սահմաններէն դուրս, մինչեւ որ բոլոր Եւրոպա, գէթ արտաքին կերպով հպատակեցաւ Քրիստոսի հոգեւոր թագաւորութեանը։ Յետոյ այն թագաւորութիւնն իր իշխանութիւնը տարածեց անդր քան զովկիանոս մինչեւ Ամերիկա եւ մեծ ովկիանոսի կղզիները, եւ տակաւին կը տարածէ Ափրիկէի վայրենիներուն մէջ եւ մինչեւ Ասիոյ կեդրոնը։

Ճշմարիտ է որ Քրիստոսի թագաւորութեան յառաջդիմութիւնը միշտ միեւնոյն արագութեամբ եղած չէ։ Հզօր զօրութիւններ միշտ ընդդիմացած են անոր տարածմանը, եւ հակառակութիւններն երբեմն այնպէս սաստիկ եղած են, որ անոր տարածումը ժամանակ մը խափանուած է, բայց ժամանակ մը միայն։ Բաց ասկէ, եւ որ քան զայս աւելի ողբալին է, Քրիստոսի հետեւողք միշտ այնպէս ժիր եւ հաւատարիմ գտնուած չեն ինչպէս որ պէտք է։ Երբեմն սնապաշտութիւնք այնպէս տկարացուցին անոնց զօրութիւնը, որ Քրիստոնեայք շատ քիչ

բան կրցան ընել ի նպաստ տարածման Քրիստոսի հոգեւոր թագաւորութեան, երբեմն եւս անհաւատութեան ոգին ժամանակ մը ջլատեց անոնց զօրութիւնները, եւ երբեմն կռուոյ ոգին եւ անոնց ներքին երկպառակութիւններն ի նանիր վատնել տուին անոնց ոյժն եւ ազդեցութիւնը։

Արդ, թէպէտ երբեմն սնապաշտութիւնք Քրիստոսի Աւետարանին փառաւոր ճշմարտութիւնները ծածկեցին, թէպէտ անհաւատութիւնը տարակոյս յարոյց Քրիստոնէութեան աստուածային ծագման վրայ, թէպէտ ներքին վէճեր սպառեցին Քրիստոնէից զօրութիւնը, թէպէտ աշխարհասիրութիւնը շատ անգամ գերի ըրաւ զՔրիստոնեայս, սակայն եւ այնպէս Քրիստոսի թագաւորութիւնը հաստատութեամբ յառաջ գնաց իր թագաւորին մահուանէն մինչեւ ցարդ։ Անկէ ի վեր ամէն դարու մէջ Քրիստոս ընդհանուր հոգեւոր թագաւորութիւն մը հաստատելու խորհուրդը կատարելու վրայ է։ Քրիստոսի տէրութիւնը գէթ արտաքուստ ճանչցողներուն թիւը դարէ ի դար աւելցած է, եւ անոր ճշմարիտ աշակերտներուն բազմութիւնն երբէք այնչափ մեծ չեղաւ որչափ զարդիս։ Հաւատարմութեան արժանի հաշիւներու նայելով, Քրիստոսէ ետքն առաջին դարուն վերջը 500,000 անձինք կային որ կ'ընդունէին զՔրիստոս իբրեւ տէր. երրորդ դարուն վերջը՝ 5 միլիոնի կը հասնէր անոնց թիւը, տասներորդ դարուն վերջը՝ 50 միլիոնի, հնգետասաներորդ դարուն վերջը՝ 100 միլիոնի, եւ հիմա այս թիւը 300 միլիոնի կը հասնի։

Զօրութիւն մը կարող չեղաւ երբէք երկար ատեն

դէմ դնել Աւետարանին հաւատարիմ քարոզութեանը։ Աւետարանն ուր որ հաւատով, աղօթքով եւ սիրով քարոզուեցաւ, ընդունուեցաւ թէ՛ բարբարոս եւ թէ՛ քաղաքակիրթ ազգերէ ։ Ուր որ անկեղծօրէն եւ սրտանց ընդունուեցաւ , քան զամենայն երկրաւոր զօրութիւն գեր ի վերոյ երեւեցաւ։ Ամէն տեսակ զէնք գործածուեցաւ անոր դէմ , բայց ի զուր ։ Անհաւատութիւնը շատ անգամ պարծեցաւ թէ կործանեց այս հոգեւոր թագաւորութեան հիմերը , բայց այս թագաւորութիւնը մինչեւ ցայսօր անսասան կը կենայ ։ Անհաւատութիւնը հազար անգամ հրատարակեց թէ Աւետարանին ստութիւնն յայտնուած է , բայց աշխարհ տակաւին կը հաւատայ Աւետարանին ուրախութեան աւետեացը ։ Փիլիսոփայութիւնը շատ անգամ ծաղր ըրաւ Աւետարանին վարդապետութիւններին իբրեւ յիմարութիւն , բայց Քրիստոնէութիւնը տակաւին կը ցուցնէ թէ ինքն Աստուծոյ իմաստութիւնն է ։

Աւելի քան 1800 տարիներ անցան յորմէ հետէ Յիսուս Նազովրեցի յայտնեց իր աշակերտներուն թէ նպատակ ունէր հաստատել հոգեւոր թագաւորութիւն մը , որոյ հպատակ պիտի ըլլային մարդիկ ամէն ազգէ , եւ որ պիտի տեւէր բոլոր ապագայ դարերուն մէջ ։ Ճշմարիտ է թէ Քրիստոսի խորհուրդը դեռ բոլորովին չկատարուեցաւ , բայց երբ կը նկատենք թէ որ աստիճան տարածուած է Քրիստոնէութիւնը մինչեւ ցարդ , չենք կրնար բնաւ տարակուսիլ ապագային մէջ Քրիստոսի խորհրդոյն լիուլի կատարուելուն վրայ ։ Ուրեմն ձիլ չհամաձայնիր Գաղիացի պատմագրին , Մ. Կիզոյի , որ կ՚ըսէ

*թէ Քրիստոս նուաճեց Յունաստան եւ Հռոմ, նըւաճեց հեթանոսութիւնը, եւ հիմա բոլոր աշխարհ նուաճելու վրայ է։*

*Ընթերցող, եթէ արդարեւ Քրիստոս բոլոր աշխարհք կը նուաճէ, ո՞վ է ուրեմն նա։ Պէտք է որ ըլլայ Թագաւոր Թագաւորաց և Տէր տէրանց։*



# ԳԼՈՒԽ Ի

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ

Նոյն ինքն Քրիստոս ըսաւ թէ ծառն իր պտղէն կը ճանչցուի, այսինքն թէ աղէկ ծառ մը չի կրնար գէշ պտուղ բերել, ոչ ալ գէշ ծառ մը կրնայ աղէկ պտուղ բերել։ Ուրեմն, Քրիստոնէութիւնը դատելու ենք իր պտուղներէն։ Եթէ գէշ պտուղներ բերած է, մերժելու ենք զայն իբրեւ անարգ սնապաշտութիւն. բայց եթէ աղէկ պտուղներ բերած է, հարկ է շնորհակալութեամբ ընդունել զայն իբրեւ աստուածատուր կրօնք։

Ուրեմն, ի՞նչ ազդեցութիւն ունեցաւ Քրիստոնէութիւնը մարդոց վրայ։ Այս հարցման կը պատասխանենք թէ Քրիստոնէութեան ազդեցութիւնը բարի եղաւ, միշտ բարի, և բարի միայն։

Սակայն թերեւս ոմանք ըսեն թէ Քրիստոնէութիւնը դաւանողք ոչ միայն բարի այլ եւ չար գործած են, եւ թէ շատ չարիք գործուած են յանուն Քրիստոնէութեան։ Կ'ընդունինք զայս։ Այո, մեծ եւ ողբալի չարիք գործուած են. անիրաւ պատերազմներ մղուած, անողորմ տանջանք տրուած, եւ գազանային անգթութիւններ գործուած են Քրիստոնէութեան սուրբ անուամբ։ Տխուր ճշմարտութիւն է թէ մարդիկ ջանացած են Քրիստո-

նէութեան սուրբ անուամբ քաղաքական իշխանութիւն յափշտակել, ուրիշներուն խղճին վրայ բռնանալ, ճշմարիտ քաղաքակրթութեան յառաջադիմութիւնն արգելել, եւ բռնութեամբ տիրել ազգաց վրայ։ Այս բոլորը տխուր ճշմարտութիւն է։

Բայց միթէ Քրիստոնէութիւնը պատասխանատու է այս չարեաց համար։ Քրիստոնէական հաւատքը դաւանողներուն մէջ գտնուած են շատ կեղծաւորներ որ բաց իրենց անձին փառքէն ուրիշ նպատակ ունեցած չեն, եւ Քրիստոնէութիւնը դաւանած են սոսկ իրենց շահուն համար։ Այսպիսի կեղծաւորաց չար գործքերուն համար միթէ Քրիստոնէութիւնը պատասխանատու է։

Կը գտնուին նաեւ մարդիկ որ անուամբ միայն ընդունած են Քրիստոնէութիւնն առանց ընդունած ըլլալու անկեղծօրէն անոր վարդապետութիւնները, եւ առանց համաձայնեցնելու իրենց վարքը Քրիստոսի օրէնքներուն եւ ոգւոյն։ Միթէ Քրիստոնէութիւնը պատասխանատու է այսպիսի մարդոց գործերուն համար։

Նաեւ այլք անկեղծաբար ընդունած են Քրիստոնէութիւնը, բայց սխալ հասկնալով անոր վարդապետութիւններն ինկած են մոլորութեանց մէջ։ Սակայն միթէ Քրիստոնէութիւնը պատասխանատու է այսպիսեաց սխալներուն եւ մոլորութեանց համար։

Կան նաեւ ուրիշներ որ ընդունած են Քրիստոնէութիւնը, բայց բոլորովին ազատեղած չեն մարդկային ազգին բնական ապականութեան զօրութենէն, ուստի եւ կատարելապէս ցուցուցած չեն իրենց վա-

րուցը մէջ Քրիստոսի Աւետարանին ճշմարիտ ոգին ։ Միթէ Քրիստոնէութիւնը պատասխանատո՞ւ է ատոնց թերութիւններուն համար ։ Ոչ ։

Քրիստոնէութիւնը պատասխանատու չէ այն բաներուն համար որ անոր վարդապետութեանց հակառակ կը գործուին ։ Քրիստոնէութիւնը. պատասխանատու է այնպիսի գործերու համար · միայն որ անոր վարդապետութիւններուն եւ ոգւոյն համաձայն կը կատարուին ։ Ազդեցութիւնը զոր Քրիստոնէութիւնն ունեցած է , եւ որուն համար պատասխանատու է՝ կրկին է , առանձին կամ մասնաւոր , եւ ազգային կամ ընդհանուր ։ Քրիստոնէութեան ազդեցութիւնը տեսնուած է թէ՛ մարդոց սիրտերուն եւ վարուցը , եւ թէ՛ ազգաց օրէնքներուն եւ հաստատութեանց մէջ . եւ ոչ ոք կրնայ ուրանալ թէ ինչ որ գործուած է Քրիստոսի Աւետարանին վարդապետութեանց եւ ոգւոյն համաձայն՝ օրհնութիւն բերած է մարդոց եւ ազգաց միանգամայն ։

Ա. Քրիստոնէութեան ընդհանուր ազդեցութիւնն ազգաց վրայ ։

Այս խնդիրն ըստ օրինի քննողներէն շատերը համոզուած են թէ այն բաներուն մեծ մասը որ արդի քաղաքակրթութեան պարծանքը կը համարուի՝ Քրիստոսի Աւետարանին արդիւնքն է ։ Արդարեւ երեւելի պատմիչներէն ոմանք կը հաստատեն թէ արդի քաղաքակրթութիւնը , բառին զուտ եւ վսեմ նշանակութեամբն առնուելով , պտուղ է Քրիստոնէութեան , եւ եթէ նկատենք այն տարրներէն ոմանք որ արդի քաղաքակրթութեան փառք ու պարծանք են , մենք ալ պիտի համոզուինք թէ

*այն տարրներուն համար մեծապէս պարտական ենք Քրիստոսի Աւետարանին ։*

*1. Սկսինք յիշեալ տարրներուն առաջնագոյնէն որ է հարստութիւնը ։ Հարստութիւնն ըստ ինքեան բարի բան է, եւ շատ հարկաւոր է որպէս զի ազգ մը բարձրագոյն աստիճանի բարգաւաճման հասնի ։ Ստոյգ է թէ աղքատութիւնը միշտ անպատուութիւն չէ, յայտնի է սակայն թէ առանց հարստութեան ոչ վարժարաններ եւ ոչ համալսարաններ կրնան հաստատուիլ, ոչ դասագիրքեր կը յօրինուին եւ ոչ մատենադարաններ կը բացուին, ոչ ալ անհատ մարդիկ կրնան նուիրել իրենց կեանքն ազգաց ընդհանուր լուսաւորութեան ։ Հարստութիւնն այնպիսի օգտակար վախճաններու կը ծառայէ, որ առանց չափաւոր հարստութեան բարձր քաղաքակրթութեան հասնել անհնար է ։ Այս պատճառաւ արդի քաղաքակրթութիւնն իր նիւթական գանձերուն վրայ կ՚ուրախանայ, եւ յայտնի է թէ Քրիստոնէութիւնը մեծապէս օգնած է հարստութեան աճման ։ Քրիստոսի Աւետարանն, եթէ անկեղծօրէն եւ ի սրտէ ընդունուի, կ՚ընէ զարս եւ զկանայս աշխատասէր միանգամայն ժուժկալ, ուստի եւ մեծապէս կ՚օգնէ նիւթական բարգաւաճում ստանալու եւ պահելու ։ Արդարեւ եղած են հարուստ ազգեր որ Քրիստոնեայ չէին, բայց ասոնք անկարող եղան երկար ատեն պահել իրենց հարստութիւնը ։ Այն ազգերուն անդամները շուտով անձնատուր եղան ամէն տեսակ զեղծմանց, իրենց հարստութիւնը վատնեցին զեղխութեան մէջ, եւ ամօթալի ապականութեան մէջ ընկղմեցան ։ Դարձեալ, մաքուր*

*բարոյականը զոր Աւետարանը յառաջ կը բերէ զայն ի սրտէ ընդունողներուն վարուց մէջ՝ միմիայն ապահով խարիսխ է այն մեծամեծ տնտեսական ձեռնարկութեանց որովք միայն կարելի է յարդիւնս ածել ազգի մը հարստութեան աղբիւրները ։ Մարդիկ իրարու վրայ վստահութիւն ունենալու են որպէս զի կարող ըլլան ընկերութիւններ կազմել եւ իրարու օգնել մեծամեծ ձեռնարկութեանց մէջ ։ Աւետարանը զայն ի սրտէ ընդունողներն ուղիղ եւ արդարասէր ընելով՝ կու տայ այս փոխադարձ վստահութիւնը, եւ այնպէս հնարաւոր կ'ընէ մեծամեծ ձեռնարկութիւնները ։ Ճշմարիտ քաղաքակրթութիւնը սակայն կը պարծի ոչ այնչափ բուն իր հարստութեանը, որչափ զայն ազնիւ եւ գովելի կերպով գործածելուն համար ։ Ճշմարիտ քաղաքակըրթութիւնը կը պարծի մանաւանդ իր բարենպատակ եւ մարդասիրական անթիւ հաստատութեանց համար որ հիմնուած են ամէն տեսակ թշուառաց համար ։*

*Հարստութիւնն օրհնեալ է երբ ազնիւ նպատակներու կը գործածուի. բայց անիծեալ է, երբ մարդիկ զայն կ'ընեն միջոց իրենց հեշտութիւնները յագեցընելու ։ Ազգերը շատ անգամ զեղխութեան միջոց ըրած են իրենց հարստութիւնն, սպառած են ազգին զօրութիւնը, ազգային առաքինութիւնները խանգարած են, եւ այնպէս կործանած են զիրենք ։ Արդի քաղաքակրթութեան հարստութիւնը նախատինք պիտի ըլլար մանաւանդ քան թէ փառք, եթէ մերժէր Քրիստոսի սա երկնային վարդապետութիւնը թէ «Աւելի երանելի է տալ քան թէ առնելը», եւ վատնէր իր հարստութիւնը զեղխութեամբ,*

եւ կամ առ ազատութեան ծածկէր զայն։ Քրիստոնէութիւնն է այն զօրութիւնն որ այսօր ազգերը կը պահէ մեծ հարստութեան վեղծումներէն որով հին դարերու մէջ ազգեր կործանեցան։ Փառք Աստուծոյ, արդի քաղաքակրթութիւնը գամ քան զգամ կ'ընդունի Քրիստոսի վարդապետութիւնը, եւ ամէն երկրի մէջ կը հաստատէ իր բարեսիրական հաստատութիւնները եւ կը բազմացնէ իր օգտակար գործքերը։

Զ. Քննենք արդի քաղաքակրթութեան մէկ ուրիշ տարրը, որ է դաստիարակութիւնը։ Արդի քաղաքակրթութիւնը կը պարծի դաստիարակութեամբ, եւ Քրիստոսի Աւետարանը, երբ որ ուղիղ հասկըցուեցաւ եւ սրտանց ընդունուեցաւ, օգնեց միշտ ազգային լուսաւորութեան եւ մտաւորական զարգացման գործին։ Քրիստոսի Աւետարանն այս բանը կ'ընէ այլեւայլ կերպով։

ա. Աւետարանը միտքը կ'ազատէ այն կրից բռնութենէն որ իմացողութիւնը կը մթացնեն, երեւակայութիւնը կը խանգարեն եւ բոլոր մտաւոր կարողութիւնները կը տկարացնեն։ Երբ հին Յոյնք եւ Հռոմայեցիք ապականեցան, անոնց իմացական կարողութիւնները տկարացան, եւ ուսմանց եւ գիտութեանց մէջ իրենց առաջնութիւնը կորսուին։ Ճշմարիտ լուսաւորութեան եւ մտաւորական զարգացման ամենամեծ թշնամիք են մոլութիւնք, եւ Աւետարանն, որ, երբ ի սրտէ կ'ընդունուի, կ'ազատէ զմարդիկ մոլութիւններէ, ճշմարիտ ազգային լուսաւորութեան հաւատարմագոյն բարեկամն եւ օգնականն է։

*բ. Աւետարանը կ'ընծայէ ամէն մարդու ամենէն մեծ խնդիրներ որ կրնան զբաղեցնել մարդոց մտաւոր կարողութիւնները ։ Կը դարձնէ միտքը դէպ ետ, դէպ ի սկիզբն ժամանակի, երբ Աստուած դըրաւ երկրիս հիմերը. կը տանի նաեւ միտքը յառաջ դէպ այն ժամն երբ այլեւս ժամանակ պիտի չըլլայ ։ Կը բարձրացնէ միտքն այս աշխարհի չնչին հոգերէն եւ անձկութիւններէն եւ ներկայ կենաց կարճատեւ ուրախութիւններէն եւ տրտմութիւններէն վեր, որպէս զի մարդ կարենայ տեսնել Աստուծոյ զարմանալի նախախնամութիւնն անցելոյն մէջ, եւ անոր յաւիտենական նպատակներուն փառաւորապէս կատարուիլն՝ ապագային մէջ ։ Կը տանի միտքը ժամանակաւոր իրաց փոփոխականութենէն յաւիտենական իրաց անփոփոխութեանը, տեսանելի իրաց անկատարութենէն՝ անսահման էակին կատարելութեանը, ստեղծուածներէն՝ առ Ստեղծողն ։ Այսպէս Քրիստոսի Աւետարանը կը զարգացնէ մտքին կարողութիւնները՝ մէջ բերելով քննելու եւ նկատելու մեծամեծ խնդիրներ ։*

*գ. Աւետարանը կը յայտնէ մարդոց անոնց անմահութիւնն, եւ այսպէս մեծ գրգիռ կու տայ անոնց իրենց միտքը զարգացնելու ։*

*Հին կրթեալ ազգերէն ոմանք արդարեւ նշանաւոր եղան մտքի գործունէութեան կողմանէ, բայց այս գործունէութիւնն երկար չտեւեց, եւ չէր կըրնար տեւել առանց մաքուր ազդեցութեան Քրիստոնէութեան ։ Այժմու հեթանոս ազգերը կարող չեն բարձր քաղաքակրթութեան հասնիլ ։ Մինչեւ աստիճան մը կը զարգանան, բայց այնուհետեւ*

կամ կը մնան հոն ուր են, եւ կամ կը սկսին լինալ։ Արդի քաղաքակրթութիւնը Քրիստոնեայ ազգաց մէջ է միայն, եւ եթէ սոնք մերժեն Քրիստոսի Աւետարանը, շատ հաւանական է թէ պիտի կորսուին ընդհանուր ապականութենէն, ինչպէս կորսուեցան հին ազգերը։

Արդի քաղաքակրթութիւնը կը տարբերի հինէն նաեւ այսու որ կը պարծի ոչ թէ գիտութեանց եւ գեղարուեստից քանի մը կեդրոններ ունենալուն համար, այլ մանաւանդ դաստիարակութեան ընդհանուր ծաւալման համար։ Չի պարծիր քանի մը անձանց միայն մտաւորական գերազանցութեան համար, այլ կը պարծի մանաւանդ բոլոր ժողովրդեան ընդհանուր լուսաւորութեան համար։ Արդի քաղաքակրթութիւնը կ'ուրախանայ արդարեւ իր վարժարաններուն եւ համալսարաններուն համար, բայց եւս աւելի կ'ուրախանայ իւր հասարակ դպրոցներուն համար որ իւրաքանչիւր գիւղի մէջ կը գտնուին։ Այս բանին համար մեծապէս պարտական ենք Քրիստոնէութեան, որ, ոչ թէ ազնուականաց միայն, այլ եւ բոլոր ժողովրդեան լուսաւորութիւնը պարծանք կը համարի իրեն։ Քրիստոս հասարակ ժողովրդեան վարդապետ էր, եւ իր աշակերտաց պատուիրեց աշխատիլ բոլոր ժողովրդեան հոգեւոր լուսաւորութեան համար, եւ արդի քաղաքակրթութեան առաւելութիւններէն մին եւս այս է որ յայսմ մասին կը հետեւի Քրիստոսի օրինակին, եւ կը ջանայ ամէն գիւղի մէջ դպրոց բանալ, եւ ամէն ընտանիք գիտութեան գանձին մէկ մասովը հարստացնել։

3. Արդի քաղաքակրթութեան մէկ ուրիշ տարրն

է ուղէայէն հաստատութիւններ ։ Արդի քաղաքակիրթ ազգերն ունին թագաւորներ, թագաւորական ցեղեր, թագաւորական պալատներ, պատրաստ զօրքեր, եւ բրած են արիւնահեղ պատերազմներ ։ Եթէ այս բաներն ըլլային այս ազգերուն փառքն ու պարծանքը, պիտի ըսէինք արդարեւ թէ այս բաներն ուրիշ աղբիւրէ յառաջ կուգան, ոչ թէ Քրիստոսի Աւետարանէն ։ Բայց արդի քաղաքակիրթ ազգերը քիչ կը պարծին այս բաներով, անոնց պարծանքն են մոնաւանդ հաւատարիմ թագաւորներ, իմաստուն օրէնսդիրք, անկաշառ դատաւորներ, եւ մանաւանդ հնազանդ, բարեկշան, հանճարեղ եւ առաքինի հպատակներ ։ Արդի քաղաքակիրթ ազգերն ոչ այնչափ կը պարծին իրենց թագաւորաց հոյակապ պալատներուն համար, որչափ հպատակաց երջանիկ տուներուն համար ։ Արդի քաղաքակիրթ ազգերն ոչ այնչափ կը պարծին պատերազմի յաղթութեանց համար, որչափ կը պարծին խաղաղութեան պտուղներուն եւ օրհնութեանց համար ։ Այս յառաջ կուգայ մեծաւ մասամբ Աւետարանի ազդեցութենէն ։ Այս մասին արդի քաղաքակրթութիւնը մինչեւ աստիճան մը կը համաձայնի Քրիստոսի վարդապետութեանց եւ կը ցուցնէ անոր ոգին ։

Հին քաղաքակիրթ ազգերն անբարոյական էին, ուստի եւ չկրցան երկար տեւել ։ Անիրաւ, միանգամայն անմաքուր էին, ագահ եւ կաշառասէր էին, ուստի եւ տկար էին, եւ շուտով ինկան ։ Արդի քաղաքակիրթ ազգերն աւելի զօրաւոր են քան հիները, վասն զի ըստ մասին ընդունած են Սուրբ գրոց բարոյական սկզբունքները ։ Եթէ բոլորովին

ընդունին այն սկզբունքներն, անատեն այնպէս հաստատուն պիտի ըլլան որ՝ որեւիցէ մարդկային զօրութիւն կարող պիտի չըլլայ կործանել զանոնք ։ Իսկ եթէ, ընդհակառակն, մերժեն այն սկզբունքներն, անոնց կործանումն այնպէս ստոյգ պիտի ըլլայ ինչպէս եղաւ Յունացը եւ Հռոմայեցւոցը ։

Հին քաղաքակրթութիւնն, իր ոգւոյն կողմանէ, անգութ էր ։ Օրէնքները զորս կը հրատարակէր՝ բռնութեան օրէնքներ էին ։ Այս օրէնքներուն նայելով տկարը կը ծառայէր հզօրին, աշխարհակալութեան համար անիրաւ պատերազմներ կ'ըլլային, պատերազմի մէջ բռնուողները կը վաճառուէին իբրեւ գերի, եւ մարդիկ կը բռնադատուէին իբրեւ զազան կռուել իրարու հետ ի զբօսանս Թագաւորաց ։

Քրիստոնէութիւնն եկաւ ջնջել հին քաղաքակրթութեան բարբարոսական օրէնքները, եւ փոխանակ այնց հրատարակել սիրոյ օրէնքը, որուն նայելով զօրաւորին օգնելու է տկարին, լուսաւորեալը կրթելու է չլուսաւորեալը, եւ առաքինին աշխատելու է զմոլին ուղղելու, ինչպէս որ նոյն իսկ Քրիստոս չեկաւ ուրիշներէն սպասաւորութիւն ընդունելու, այլ ուրիշներուն սպասաւորութիւն ընելու ։ Երբ Քրիստոնէութիւնը տիրեց, կրօնական արարողութեանց հետ այլ եւս չկատարուեցան անառակ գարշութիւններ, ոչ ալ սեղանները պղծուեցան մարդազոհերու արեամբ, եւ բանտարկեալք այլ եւս չնետուեցան գազաններու առջեւ, ոչ ալ բռնադատուեցան իրարու հետ մենամարտելով զիրար սպաննել ։

Աւետարանը դատապարտեց Յունաց ամբարտա-

ւանութիւնն եւ Հռոմայեցւոց անիրաւ յաղթու-
թիւնները ։ Հրատարակեց թէ Աստուած մէկ ա-
րիւնէ ըրաւ երկրիս բոլոր ազգերը , եւ թէ մարդիկ
այլ եւս սորվելու չէին պատերազմ ընել ։ Ոմանք
թերեւս հարցունեն . Եթէ այսպէս է , ինչպէս կ՚ըլ-
լայ որ Քրիստոնեայ ազգերն այսչափ պատերազմ-
ներ կ՚ընեն ։ Այս հարցման կը պատասխանենք . թէ ,
այս ազգերը դեռ ըստ մասին միայն ընդունած են
Աւետարանը , եւ ըստ մասին կը մնան տակաւին
հին քաղաքակրթութեան բարբարոս օրէնքներուն
տակ ։ Հետեւեալ իրողութիւններէն յայտնի է սա-
կայն թէ արդի Քրիստոնեայ ազգերը գամ քան ըզ-
գամ կ՚ընդունին պատերազմի նկատմամբ Աւետա-
րանին սկզբունքները ։ Այս ազգերը չեն հաւնիր ի-
րենց այժմու ընթացքին , եւ ամէնքը կը խոստո-
վանին թէ պատերազմը մեծ չարիք է , եւ անոնց
այս համոզումը տարուէ տարի կը զօրանայ ։ Հիմա
կազմուելու վրայ է այնպիսի զօրութիւն մը որ քան
թագաւորաց զինուորական զօրութիւնը մեծ է եւ
հզօր , այն է լուսաւորեալ ժողովրդոց հասարակաց
կարծիքը , եւ այս կարծիքը տարուէ տարի աւելի
ընդդիմութիւն կը ցուցնէ պատերազմի ։ Այժմու
հասարակաց կարծիքը չի հաւանիր երկիրներ նուա-
ճելու համար միայն պատերազմներ ընել , ինչպէս
կ՚ընէին Հռոմայեցի կայսերք ։ Քրիստոնեայ ազգե-
րը համոզուած են թէ ազգաց մէջտեղ ծագած
խնդիրները կրնան լուծուիլ քան զպատերազմ լա-
ւագոյն կերպով մը ։ Վերջին քանի մը տարիներուն
մէջ Եւրոպա քանի մ՚անգամ համազգային ժողով-
ներ եղան միջոց մը գտնել ազգաց մէջտեղ ծագած

դժուարութիւնները լուծել առանց արիւնհեղութեան, եւ այս ժողովներու խորհուրդներն աղէկ ընդունելութիւն գտած են Եւրոպացի եւ Ամերիկացի ազգերէ եւ իշխաններէ։ Քրիստոնեայ ազգերըն երթալով աւելի հոգ կը տանին պատերազմի աղէտները սահմանի մէջ փակել, ջանալով որ պատերազմը կռուող տէրութեանց մէջ մնայ, եւ չեն թողուր որ յումպէտս արիւն թափի եւ կորուստ ըլլայ ընչից եւ ստացուածոց։ Քրիստոնեայ ազգերն այլեւս իրարու գերիներու հետ չեն վարուիր պատերազմի մէջ բռնուողներուն հետ, այլ զանոնք կը խընամեն մարդասիրաբար, եւ որչափ հնար է շուտով ետ կու տան։

Եթէ բաղդատենք անցեալը ներկային հետ, պիտի տեսնենք թէ այս մասին մանաւանդ զարմանալի փոփոխութիւն եղած է ազգաց մէջ։ Հին ազգաց մէջ Տիտոս երեւելի էր իր մարդասիրութեան համար, բայց եւ այնպէս երբ առաւ Երուսաղէմ առաջին դարուն մէջ, քաղաքը քաղցութեամբ պաշտպանողներէն այնչափ մարդ խաչը հանեց որ, ինչպէս կ՚ըսէ պատմիչը, «բաւական փայտ չգտնուեցաւ խաչ շինելու, ոչ ալ խաչերը կանգնելու բաւական տեղ»։ Բաղդատէ այս եւ ինչ որ ըրին Գերմանացիք երբ երկայն պաշարմանէ ետքը Բարիզ քաղաքն առին 1871 ին։ Գերմանական բանակին առաջին գործն եղաւ ոչ թէ չարչարել կամ ըսպաննել, այլ կերակուր հայթայթել քաղքին սովեալ բնակիչներուն։

Եթէ մեզի յիշեցնեն ոմանք այն սոսկալի անգըթութիւնները զորս հասարակականք (գօմիւնիսթ)

*գործեցին Բարիզի մէջ, կ'ըսենք թէ այն բարբարոսութիւններն ընողները կ'ատէին Քրիստոնէութիւնը եւ կ'ըսէին իրենց համար թէ անաստուած են։ Հասարակապետաց օրինակը զօրաւոր կերպով կը ցուցնէ թէ, եթէ այժմու քաղաքակրթութիւնը մերժէ Քրիստոնէութիւնը, կրնայ բարբարոսութեան անդունդը գահավիժիլ չար քան զնախնի հեթանոսս։*

*Արդարեւ Քրիստոնեայ ազգաց պատերազմները նախատինք են այժմու քաղաքակրթութեան եւ հակառակ Քրիստոնէական հաւատոյ, բայց եւ այնպէս յայտնի է թէ Քրիստոնէութեան խաղաղասիրական ազդեցութիւնն երթալով աւելի կը զգացուի եւ անոր մարդասիրական սկզբունքները հետզհետէ աւելի կ'ընդունուին Քրիստոնեայ ազգերէ, եւ պատճառ ունինք յուսալու թէ քիչ ատենէն այնպէս լրովին եւ անկեղծօրէն պիտի ընդունուին, որ ազգերն այլեւս պատերազմ պիտի չսորվին։ Քրիստոնէութիւնն արդէն նուազեցուցած է պատերազմաց թիւը, եւ շատ մեղմացուցած է պատերազմի աղէտները։ Իցէ՛ թէ շուտով եւ բոլորովին ազատէր ամէն երկիր այս սոսկալի հարուածէն։*

*Քրիստոնէութիւնը կռուեցաւ նաեւ գերութեան եւ անոր անգթութիւններուն դէմ։ Այս կռիւն երկարատեւ եւ խիստ եղաւ, բայց Քրիստոնէութիւնը գրեթէ իսպառ ջնջած է գերութիւնը։*

*Քրիստոնէութիւնը վերցուց նաեւ կանանց սեռն այն նուաստութենէն յոր իջուցած էր զնա հեթանոսութիւնը, եւ տուաւ կնոջ այն պատուաւոր դիրքը որ անոր սահմանուած էր Արարչէն։*

Քրիստոնէութիւնն այնպէս զարգացոյց եւ սնոյց ընտանեկան առաքինութիւնները որ տղայք կրնան աղէկ կրթուիլ, եւ այն երջանկութիւնն որ այս առաքինութիւններէն կը բղխի՝ չի կրնար ուրացուիլ։

Քրիստոնէութիւնը հաստատած է անթիւ դարմանոցներ հիւանդաց եւ խելագարաց համար, եւ գրեթէ յանհունս բազմացուցած է իր բարերարական հաստատութիւններն ամէն տեսակ թշուառաց համար։

Իսկ, ընդհակառակն, միթէ Քրիստոնէութիւնը չարիք մը գործած է որեւիցէ անձի, ընտանեաց եւ ազգի։ Սորվեցուցած է երբեք ազգերու կամ անհատներու զիրար ատել, խաբել եւ ջնջել։ Քրիստոնէութիւնը կը պատուիրէ բոլոր մարդոց զիրար սիրել, եւ ընել ուրիշներուն ինչ որ կ'ուզեն որ ուրիշներն անոնց ընեն։ Քրիստոնէութիւնը բազմացուցած է՞ արբեցողութենէ յառաջ եկած անհամար չարիք։ Քրիստոնէութիւնը կը դատապարտէ զանոնք որ իրենց ընկերներուն գինի կը խմցնեն։ Քրիստոնէութիւնը քաջալերած է անառակութիւնը։ Ընդհակառակն, անմաքուր խորհուրդն անգամ կը դատապարտէ։ Քրիստոնէութիւնը խանգարած է ընտանեաց խաղաղութիւնն եւ երջանկութիւնը։ Քրիստոնէութիւնը կը հրամայէ արանց սիրել իրենց կիները, եւ կանանց՝ պատուել իրենց այրերը։ Կը պատուիրէ ծնողաց չզայրացնել իրենց տղայքը, եւ տղայոց կը պատուիրէ մեծարել իրենց ծնողքը։ Քրիստոնէութիւնը հակառակած է երբեք ժողովրդեան մը կամ ազգի մը բարգաւաճման։ Կ'արգելէ մանաւանդ ամէն տեսակ մոլութիւններ որ

ժողովուրդները թշուառ կ՚ընեն , եւ կը սնուցանէ բոլոր այն առաքինութիւնները որովք միայն ժողովուրդք կրնան ըլլալ ճշմարտապէս բարգաւաճ եւ բարենշան : Քրիստոնէութիւնը թոյլտուութիւն կ՚ընէ՞ բռնութեան եւ հարստահարութեան : Ոչ . Նա մանաւանդ կը պատուիրէ թագաւորաց՝ իշխել երկիւղիւն Աստուծոյ , եւ կը յիշեցնէ թէ կայ Թագաւոր մը , որուն թագաւորք ալ համար պիտի տան , եւ թէ անոնց բոլոր հպատակներն որդիք են Աստուծոյ : Քրիստոնէութիւնը կը քաջալերէ՞ առանց պատճառի ապստամբութիւններ եւ յեղափոխութիւններ : Քրիստոնէութիւնը կը պատուիրէ մարդոց հպատակիլ իշխանաց իբրեւ Աստուծմէ կարգելոց : Քրիստոնէութիւնը կը տածէ՞ ազգային հպարտութիւնը , եւ կը սնուցանէ՞ ատելութիւն երկրիս այլեւայլ ազգերու մէջտեղ : Կը ծանուցանէ մանաւանդ թէ բոլոր մարդիկ մէկ արիւնէ են : Քրիստոնէութիւնը կը խրախուսէ՞ պատերազմ՝ եւ արիւնհեղութիւն : Կը պատուիրէ բոլոր մարդոց այլեւս պատերազմ չսորվիլ , եւ կը ծանուցանէ թէ բոլոր մարդիկ եղբայր են , եւ Աստուած ամենուն Հայրն է ,

Արդի քաղաքակրթութիւնը մինչեւ աստիճան մը ընդունած է այս երկնային վարդապետութիւնները , եւ այս պատճառաւ՝ շատ երեւելի պատմիչներ կը հաստատեն թէ ինչ մաքուր եւ բարի բան որ կայ արդի քաղաքակրթութեան մէջ՝ պտուղ է Քրիստոնէութեան :

Բ. Քրիստոնէութեան ազդեցութիւնը մարդոց սրտերուն մէջ :

Քրիստոսի մեծ նպատակը ոչ այնչափ ժողովուրդ-

ներու եւ ազգերու բարեկարգութիւնն էր որչափ իւրաքանչիւր մարդու ազատումը մեղաց ապականութենէն եւ դատապարտութենէն ։ Քրիստոս գիտէր թէ մարդկային ազգը տառապեցնող եւ ապականող չարեաց գլխաւոր աղբիւրը մարդոց նիւթական վիճակին կամ անոնց ընկերական կարգերուն եւ յարաբերութիւններուն կամ քաղաքային վարչութեան մէջ չէր ։ Քրիստոս գիտէր թէ ժողովուրդներ չէին կրնար մաքրուիլ, ոչ ալ ազգերը կրնային բարձրանալ բայց եթէ այն ժողովուրդներն եւ ազգերը բաղկացնող անհատ մարդոց լուսաւորուելով եւ մաքրուելովը ։ Եւ անոր մեծ նպատակն էր լուսաւորել եւ սրբացնել իւրաքանչիւր մարդ ։ Գիտէր թէ չարեաց գլխաւոր աղբիւրը մարդկային սրտին մէջ է, եւ թէ մարդիկ սուտ են, խաբեբայ, հպարտ, չարասիրտ, անձնասէր, ամբարիշտ, ոչ վասն զի աղքատ են կամ հարուստ, այլ վասն զի անոնցմէ իւրաքանչիւրն ունի ապականեալ սիրտ ։ Ուստի Քրիստոս ձեռք զարկաւ փոխել մարդոց սիրտը, փրկել զանոնք իրենց ցանկութիւններուն գերութենէն, կամաւ եւ ուրախութեամբ հնազանդեցնել զանոնք Աստուծոյ օրինաց, եւ նորէն ստեղծել զանոնք ի պատկեր Աստուծոյ, որպէս զի սիրեն զԱստուած իրենց բոլոր սրտով, սիրեն նաեւ իրենց ընկերներն իրենց անձին պէս ։

Մարդոց սրտին մէջ Քրիստոնէութեան ազդեցութիւնը նշմարել արդարեւ դժուարին է, վասն զի այս ազդեցութիւնը մինչեւ աստիճան մը ծածուկ է ։ Քրիստոսի հոգեւոր թագաւորութիւնը դրսուանց երեւցած բաներով չի գար ։ Բայց եւ այնպէս անց-

եալ ութեւտասն դարուց մէջ տուած ապացոյցներ կան Քրիստոնէութեան ազդեցութեան փառաւոր արդասեացը ։ Եթէ կարելի ըլլար մէկտեղ բերել բոլոր այն անձինք որ ուրախութեամբ կը վկայեն թէ Քրիստոսի Աւետարանն իրենց սիրտերուն մէջ եղաւ արդարեւ զօրութիւն Աստուծոյ, ի՛նչ մեծ բազմութիւն պիտի տեսնէինք մեր առջեւ ։ Քրիստոնէութեան ամէն դարէն պիտի գտնուէին շատեր այն բազմութեան մէջ ։ Առաքեալք, հարք եւ մարտիրոսք առաջին դարուց պիտի միացնէին իրենց ձայներն անոնց ձայներուն որ մեր օրերուն մէջ կը հալածուին արդարութեան համար ։ Արդի քաղաքակիրթ երկիրներուն գիտուն եւ ազնուական անձինք հեթանոս երկիրներուն նուաստութենէն եւ ապականութենէն ազատուած մարդոց քով պիտի տեսնուէին ։ Հոն պիտի գտնուէին մարդիկ հիւսիսէն եւ հարաւէն, արեւելքէն եւ արեւմուտքէն, Եւրոպայի համալսարաններէն եւ Ափրիկեցի վայրենիներուն տնակներէն, Ամերիկայի ազատ կառավարութիւններէն եւ Ասիոյ խախուտ թագաւորութիւններէն ։ Յոյնք, Հռոմայեցիք եւ բարբարոսք, իշխանք եւ հպատակք, ամէն դարէ, ամէն երկրէ եւ ամէն աստիճանէ մարդիկ որ անկեղծաբար եւ ի սրտէ ընդունած են Քրիստոսի Աւետարանը, պիտի վկայէին թէ այն Աւետարանն եղաւ զօրութիւն, ճշմարիտ զօրութիւն, գերբնական զօրութիւն անոնց սիրտերուն մէջ ։ Պիտի վկայէին ուրախութեամբ թէ Աւետարանը կատարեց անոնց սիրտերուն մէջ ինչ որ ոչ հարստութիւն, ոչ գիտութիւն եւ ոչ քաղաքակրթութիւն կրնային կատարել, այսինքն թէ

Աւետարանը փոխեց անոնց ապականեալ բնութիւնը։ Հպարտք պիտի վկայէին թէ Աւետարանին ազդեցութեամբ եղան խոնարհ . պղծագործք պիտի վըկայէին թէ նոյն ազդեցութեամբ անոնց սիրտերն այնպէս մաքրուեցան որ կը գարշին իրենց առջի անմաքրութենէն . անձնասէրք պիտի վկայէին թէ Աւետարանով կարող եղան գթած ըլլալ, կռուասէրք՝ խաղաղասէր , եւ ոխակալք ներող ։

Ասոնք ամէնքը պիտի վկայէին թէ Աւետարանին ներգործելովը անոնց սիրտերուն մէջ այլեւս կոյր հետեւողներ չէին սատանային , եւ կամաւոր գերիք մեղաց , եւ թէ՝ այլեւս հաճոյք չէին զգար իրենց ապականութեան մէջ ; եւ ոչ պարծանք կը համարէին իրենց ամօթալի գործերը ։ Ամէնքն ալ պիտի ըսէին թէ իրենց աչուըները բացուած էին տեսնել մեղքին ատելի բնութիւնը , սրբութեան գեղեցկութիւնը եւ ճշմարտութեան ու արդարութեան գերազանցութիւնը , եւ թէ իրենց սիրտերուն մէջ գոյացած էր ատելութիւն ամէն բանի դէմ որ սուտ , անմաքուր եւ անսուրբ է , եւ գերագոյն սէր՝ վասն ճշմարտութեան եւ արդարութեան , եւ ի վեր քան պամենայն վասն Յիսուսի , որ է միմիայն աստուածային Փրկիչ մարդկան ի մեղաց ։

Արդարեւ ամէնքն ալ պիտի ցուցէին թէ այս բարոյական եւ հոգեւոր փոփոխութիւնը դեռ բոլորովին կատարեալ չէր անոնց սիրտերուն մէջ , եւ թէ տակաւին ամբողջապէս ազատուած չէին մեղքին զօրութենէն եւ ապականութենէն , բայց ամէնքըն ալ պիտի վկայէին թէ իրենց սիրտերը դամ քան

*զգամ կը մաքրուէին, թէ անոնց բարքն երթալով կը դառնար ի լաւ անդր, եւ թէ այլեւս չէին տարակուսեր թէ սրբացման գործը տակաւ աւելի հասնէր ի կատարումն ։*

*Անցեալ ութեւտասն դարուց մէջ ամէն տեղէ եւ ամէն սահմանէ մարդիկ այսպիսի վկայութիւններ տուած են ։ Նաեւ այսօր հազարաւոր մարդիկ պատրաստ են վկայելու թէ Քրիստոսի Աւետարանն անոնց համար քան զսրբազան պատմութիւն, կամ վաղեմի աւանդութիւն կամ ազգային հաստատութիւն եւ կամ եկեղեցական ծէսերու դրութիւն յանհունս աւելի է, եւ թէ Աւետարանն անոնց համար զօրութիւն է, միշտ գործօն եւ միշտ հզօր զօրութիւն ։ Թէ՛ Եւրոպայի ազգերէն եւ թէ՛ Ափրիկէի ցեղերէն հարիւր հազարաւոր անձինք փորձիւ համոզուած են որ Քրիստոսի Աւետարանը բուն իսկ Աստուծոյ զօրութիւնն է անոնց սրտերուն մէջ ։ Կան բիւրաւոր մարդիկ որ բաց ի Քրիստոսի Աւետարանէն ուրիշ բանի չեն ընծայեր այն զօրութիւնը որով կարող՝ եղած են դէմ դնել իրենց ցանկութիւններուն եւ հնազանդել Աստուծոյ օրէնքին ։*

*Ամէն ողջամիտ մարդ պարտի հարցնել թէ ուստի՞ եկաւ այն զօրութիւնը որ ոչ միայն նուաճեց Հռոմ, այլեւ ազատեց մեծաւ մասամբ Հռոմի քաղաքացիներն իրենց հպարտութենէն, անգթութենէն եւ անառակութենէն ։ Ուստի՞ եկաւ այն զօրութիւնն որ ոչ մէկ դարու մէջ միայն գործեց, այլ յառաջ տարաւ իր գործը բոլոր դարերու մէջ ։ Ուստի՞ եկաւ այն զօրութիւնը որ միեւնոյն ազդեցութիւնն ունեցաւ ամենաբարձր քաղաքակրթութեան եւ ա–*

մենաստորին բարբարոսութեան մէջ, եւ որ իր հը-
զօր կարողութեամբ կրնայ հանիլ ամենէն բարձր
կարգի եւ ամենէն յետին աստիճան նուաստացեալ
մարդոց։ Ուստի է այն զօրութիւնը որ կրնայ յե-
ղափոխել ազգեր, բարեկարգել ժողովուրդներ, եւ
նորոգել առանձին մարդիկ, եւ որ է միշտ եւ յա-
ւիտեան օրհնեալ իր ազդեցութեան մէջ։ Արդա-
րեւ պէտք է որ այսպիսի զօրութիւն մը Աստուծմէ
ըլլայ։



# ԳԼՈՒԽ ԻԱ

## ԱՊԱՑՈՅՑ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆՆԵՐԷ

*Քրիստոնէութիւնը կը զանազանուի ուրիշ կրօնքներէն նաեւ այնու որ մարգարէութիւններէ եւ անոնց կատարումէն բղխող ապացոյցներով կը հաստատէ իր աստուածային ծագումը ։ Ներկայ դարուս գիտնական մարդիկ կրնան դիւրաւ քննել այս ապացոյցները բաղդատելով Սուրբ գրոց նախնի մարգարէութիւններն անոնց այժմու կատարման հետ , եւ այսպէս կրնան ստուգել Քրիստոնէութեան աստուածային ծագումը ։ Սուրբ գրոց մարգարէութիւնները կ՚օգնեն նաեւ ապացուցանել թէ Հին եւ Նոր կտակարանք միեւնոյն յայտնութեան մասերըն են , եւ թէ երկուքն ալ Աստուծմէ կը բղխին ։*

*Մարգարէութեանց ապացոյցները կրնան բաժնըւիլ հետեւեալ չորս կէտերուն ։*

*1. Սուրբ գրոց մէջ ապագայ դէպքերու վրայ շատ մարգարէութիւններ կը գտնուին , եւ պատմական համոզիչ փաստեր կան թէ այն մարգարէութիւնները դէպքերուն կատարուելէն շատ տարիներ , ոմանք նաեւ շատ դարեր առաջ , հրատարակուեցան ։*

*2. Այն մարգարէութեանց շատերը կը թուէին , ի ժամանակին յորում հրատարակուեցան , այնպէս*

անհաւանական որ լոկ մարդկային հեռատեսութիւնը չէր կրնար անոնց կատարումը կանխատեսել, նաեւ այնչափ շատ էին եւ այնպիսի մանր պարագաներով նկարագրուած էին, որ անոնց կատարումը չկրնար դիպուածով եղած ըլլալ։

3. Մարգարէութեանց շատերն արդէն կատարուած են իրենց բոլոր պարագաներովը, մէկ մասն ալ զորդիս կատարուելու վրայ են։

4. Ապագայ դէպքերն առաջուց գիտնալ ի վեր է քան զկար մարդկային մտաց. ամենագիտին Աստուծոյ միայն է կանխագէտ ըլլալ, ուստի եւ Սուրբ գրոց մարգարէութիւններն ընող մարդիկ, ինչպէս իրենք ալ կ'ըսեն, հարկաւ Աստուծմէ ներշնչեալ ըլլալու էին։

Թէ Հին կտակարանին եւ թէ Նորին մէջ կան շատ մարգարէութիւններ, սակայն այս մարգարէութեանց շատերը կրնան չորս ընդհանուր դաս բաժնուիլ.

Ա. Մեսիային վերաբերեալ մարգարէութիւնք,

Բ. Հրէից ազգին եւ Երուսաղեմի կործանման վերաբերեալ մարգարէութիւնք,

Գ. Քրիստոսի թագաւորութեան տարածման եւ ապագայ փառացը վերաբերեալ մարգարէութիւնք,

Դ. Այլեւայլ ազգերու, քաղաքաց եւ թագաւորութեանց վրայ մարգարէութիւններ։

Ա. Մեսիայի վերաբերեալ մարգարէութիւնք։

ԺԳ. Գլխուն մէջ արդէն տեսանք Մեսիայի վերաբերեալ մարգարէութիւններն եւ անոնց կատարումը։ Հոն տեսանք որ Հին կտակարանին մէջ կային մարգարէութիւնք որ կը վերաբերէին ժամա-

նակին յորում պիտի գար Քրիստոս, տեղւոյն՝ ուր պիտի ծնանէր, ցեղին՝ որմէ պիտի սերէր. մարգարէութիւնք որ կը վերաբերէին անոր գործերուն, չարչարանաց, մահուան եւ յարութեանը. Տեսանք նաեւ որ բոլոր այս մարգարէութիւնք ճշդիւ կատարուեցան Քրիստոսի վրայ :

Բ. Հրէից ազգին վերաբերեալ մարգարէութիւնք :

Այս մարգարէութիւնք կրնան չորսի բաժնուիլ, այսինքն՝ 1. մարգարէութիւնք վերաբերեալ դիպուածոց որ պիտի կատարուէին յառաջ քան զգալուստն Մեսիայի, 2. մարգարէութիւնք վերաբերեալ եղանակին որով Հրեայք պիտի վարուէին Մեսիայի հետ, 3. մարգարէութիւնք վերաբերեալ Երուսաղեմի կործանման, եւ 4. մարգարէութիւնք վերաբերեալ Հրէից վիճակին յետ այնորիկ :

1. Մարգարէութիւնք վերաբերեալ դիպուածոց որ պիտի պատահէին նախ քան զգալուստն Մեսիայի :

Այս կարգի մարգարէութիւններէն պիտի քննենք զանոնք միայն որ կը վերաբերին Բաբելոնեան գերութեան :

Յամին 713 նախ քան զՔրիստոս, Եզեկիայի թագաւորութեան ատենը, Եսայի մարգարէացաւ թագաւորին թէ օր պիտի գայ որ թագաւորին տանը մէջ գտնուած բոլոր բաները եւ ինչ որ անոր հայրերը մթերած էին՝ պիտի տարուէին Բաբելոն, անոր որդիքը գերի պիտի տարուէին, եւ պիտի ըլլային ներքինիք Բաբելոնի թագաւորին պալատան մէջ (Դ. Թագ. Ի. 1—18) : Երեմիայի մարգարէութեան մէջ (Երեմ. ԼԲ. 28) գերչին անունն ալ, այսինքն Նաբուգոդոնոսոր, յիշուած է, նաեւ գե-

րութեան տեւողութիւնը, այսինքն 70 տարի, եւ Հրէից դարձը յԵրուսաղէմ (Երեմ. ԻԹ. 10)։ Եսայեայ մարգարէութեան մէջ յիշուած է նոյն իսկ Կիւրոս թագաւորը, որոյ հրամանաւ Հրեայք պիտի դառնային իրենց երկիրը եւ տաճարը նորէն պիտի շինուէր (Ես. ԽԴ. 28, ԽԵ. 1—5)։ Այս մարգարէութիւնը տրուած էր գոնէ 150 տարի յառաջ քան դիպաց կատարուիլն եւ 100 տարի յառաջ քան ըղծնունդն Կիւրոսի։

Պատմութիւնը կը վկայէ թէ այս մարգարէութիւններուն բոլորն ալ կատարուեցան։ Նաբուգոդոնոսոր առաւ զԵրուսաղէմ եւ Հրեաները գերի տարաւ Բաբելոն, անոնք մնացին գերութեան մէջ իբր 70 տարի, եւ յետոյ Կիւրոս հրաման տուաւ անոնց դառնալ Երուսաղէմ եւ տաճարը շինել։

2. Մարգարէութիւնք վերաբերեալ եղանակին որով պիտի վարուէին Հրեայք ընդ Քրիստոսի։

Եսայի մարգարէ 700 տարի յառաջ քան զգալուստն Քրիստոսի մարգարէացած էր թէ Հրեայք պիտի մերժէին զՄեսիան, եւ ի մահ պիտի մատնէին զնա (Ես. ԾԳ. 8)։ Նաեւ Դանիէլ մարգարէ, աւելի քան 500 տարի յառաջ քան զՔրիստոս, մարգարէացած էր թէ Մեսիան պիտի կտրուէր (Դան. Թ. 26), ժամանակն ալ բացած էր ճշդիւ երբ պիտի կըտրուէր Մեսիան (Տես. Գլ. ԺԳ)։

Այս մարգարէութիւններն այն ատեն շատ անհաւանական էին, եւ գրեթէ անհաւատալի։ Հրեայք պիտի կտրէին Մեսիան որուն այնչափ դարերէ ի վեր կը սպասէին։ Բայց եւ այնպէս կտրեցին, եւ մարգարէութիւնը կատարուեցաւ։

3. *Երուսաղէմի կործանման վերաբերեալ մարգարէութիւններ ։*

*Քրիստոս մարգարէացաւ թէ Երուսաղէմ ընդ հուպ պիտի կործանէր , եւ բոլորովին աւերակ պիտի ըլլար (Մատթ. ԻԳ. 37, 38, Մարկ. ԺԳ. 2, 4, 30)։ Ըստ Յովսեպոսի եւ այլ պատմագրաց Երուսաղէմ առնուեցաւ եւ տաճարը կործանուեցաւ Քրիստոսի մարգարէութենէն իբր 38 տարի ետքը ։*

*Քրիստոս մարգարէացաւ թէ Երուսաղէմ պիտի պաշարուէր զօրօք (Մատթ. ԻԴ. 15, Ղուկ. ԻԱ. 20) ։ Յովսեպոս եւ ուրիշ պատմիչներ կը պատմեն թէ Հռոմայեցի զօրավարը Տիտոս պաշարեց զԵրուսաղէմ ։*

*Քրիստոս մարգարէացաւ թէ Քրիստոնեայք պատեհութիւն պիտի ունենային քաղաքէն փախչելու (Մատթ. ԻԴ. 16—20, Ղուկ. ԻԱ. 20—22) ։ Պատմութենէն յայտնի է թէ Քրիստոնեայք Քրիստոսէ տրուած նշանը տեսնելով խոյս տուին քաղքէն ի Պէլլա , եւ այսպէս ազատեցան ։*

*Քրիստոս մարգարէացաւ թէ Երուսաղեմի բնակիչներն այնպիսի նեղութեան մէջ պիտի իյնային որոյ նմանը տեսնուած չէր աշխարհիս վրայ (Մատթ. ԻԴ. 21) ։ Ըստ Յովսեպոսի , պաշարեալ Հրէից նեղութիւնները սոսկալի էին ։ Յովսեպոս կ'ըսէ . « Աշխարհիս սկիզբէն որեւիցէ թշուառութիւն ոչինչ կը թուի ինձ Հրէից թշուառութեան քով ։ »*

*Քրիստոս մարգարէացաւ նաեւ թէ Երուսաղեմի բնակիչք « բոլոր ազգերուն մէջ գերի պիտի տարուէին » (Ղուկ. ԻԱ. 24) ։ Յովսեփոս կը պատմէ թէ Հռոմայեցիք այն պատերազմին ատեն 97,000 մարդ գերի տարին , եւ անոնք որ 17 տարուընէ վար էին՝*

իբրեւ ստրուկ վաճառուեցան, եւ ցրուեցան Հռոմայեցւոց կայսրութեան բոլոր գաւառներուն մէջ։

Քրիստոս մարգարէացաւ թէ տաճարն այնպէս հիմնայատակ պիտի ըլլար որ քար քարի վրայ պիտի չմնար (Մատթ. ԻԴ. 2)։

Տաճարը հոյակապ շէնք էր, եւ անոր հիմնայատակ կործանման վերաբերեալ այս մարգարէութիւնը բոլորովին անհաւանական կը թուէր։ Հռոմայեցի զօրավարը Տիտոս կ'ուզէր պահել այն շէնքը, եւ շատ անգամ խրատ տուաւ Հրէից անձնատուր ըլլալ տաճարն ազատելու համար աւերումէ, բայց անոնք չանսացին։ Երբ քաղաքն առնուեցաւ, զինուորներէն ոմանք կրակի տուին տաճարը։ Տիտոս ջանաց մարել կրակը, բայց անկարելի եղաւ։ Ետքը, ըստ հրամանի Նորին, տաճարին պատերն քանդուեցան մինչեւ հիմը, այնպէս որ ստուգիւ քարի վրայ քար չմնաց։

Քրիստոս մարգարէացաւ թէ Երուսաղէմ ոտնակոխ պիտի ըլլար հեթանոսներէն մինչեւ որ հեթանոսաց ժամանակները լրանային (Ղուկ. ԻԱ. 24)։ Այս մարգարէութիւնը բառ առ բառ կատարուեցաւ։ Երուսաղէմ այն ժամանակէն մինչեւ ցարդ եղած է կոխան հեթանոսաց։

Ընթերցողք սա ալ գիտելու են թէ Քրիստոսի մարգարէութեանց այս բառ առ բառ կատարումն եղաւ ոչ թէ Քրիստոնեայ այլ հեթանոս զօրաց ձեռքով, եւ պատմուեցաւ ոչ Քրիստոնեայ այլ Հրեայ պատմիչէ մը։ Այսպիսի ապացոյցներ բաւական են ամենէն աւելի թերահաւատ մարդիկ անգամ համոզել թէ Յիսուս գերմարդկային գիտութիւն ունէր։

4. Հրէից ապագայ վիճակին վերաբերեալ մարգարէութիւնք ։

Մովսէս մարգարէացաւ Հրէից ապագայ վիճակին համար. « Պիտի ջնջուիք այն երկրին վրայէն ուր որ հիմա կ'երթաք զանիկա ժառանգելու ։ Եւ Տէրը երկրիս մէկ ծայրէն մինչեւ միւս ծայրը բոլոր ժողովուրդներուն մէջ պիտի ցրուէ քեզ » (Բ. Օր. ԻԸ. 63, 64)։ Այս մարգարէութիւնը ճշդիւ կատարուեցաւ ։ Նախ Իսրայէլի տասն ցեղերը գերի տարուեցան Ասորեստանի թագաւորէն, եւ յետոյ միւս երկու ցեղը գերի տարուեցաւ ի Բաբելոն ։ Գերեալ Հրեաներէն շատերն իբրեւ սորուկ եւ իբրեւ փախստեայ կը գտնուէին Մարապարսկային տէրութեան հեռաւորագոյն գաւառներուն մէջ, Փոքր Ասիա, Հայաստան, Արաբիա, Եգիպտոս, Յունաստան եւ Իտալիա ։ Կիւրոս գերեալ Հրեաներէն շատերը դարձուց իրենց հայրենի երկիրը, բայց յետոյ Հռոմայեցիք նուաճեցին անոնց երկիրը ; եւ անոնք դարձեալ ցրուեցան երկրիս ամէն կողմերը ուր կը գտնուին մինչեւ ցայսօր, ըստ մարգարէութեան Մովսիսի, երկրիս մէկ ծայրէն մինչեւ միւս ծայրը ։

Մարգարէացուած էր սակայն թէ Հրեայք պիտի միայն իբրեւ զատ ժողովուրդ. « Այսու ամենայնիւ երբոր իրենց թշնամիներուն երկիրը ըլլան, զանոնք պիտի չմերժեմ, եւ զանոնք բոլորովին կորսընցնելու' ու անոնց հետ ըրած ուխտս ջնջելու չափ պիտի չզզուիմ անոնցմէ. ինչու որ ես եմ Տէրը անոնց Աստուածը » (Ղեւտ. ԻԶ. 44)։ Ո՞չ ապաքէն զարմանալի է որ, թէպէտ Հրեայք այսչափ դարերէ ի վեր ցրուած են բոլոր ազգաց մէջ, սակայն

*կը մնան ուրոյն ժողովուրդ ։ Իրենց ազգայնութիւնը կորուսած չեն ։*

*Այս ազգին նկատմամբ մարգարէացուած էր նաեւ . « Եւ այն ազգերուն մէջը հանգստութիւն պիտի չգտնես , ու ոտքիդ թաթին հանգչելու տեղ պիտի չըլլայ . եւ հոն Տէրը քեզի դողացող սիրտ , աչքի նուաղում ու հոգիի տրտմութիւն պիտի տայ . եւ քու կեանքդ քու առջեւդ կախման մէջ պիտի ըլլայ , ու գիշեր ցորեկ պիտի վախնաս , եւ քու կեանքիդ վրայ ապահով պիտի չըլլաս . ու սրտիդ ահուդողէն եւ աչքերուդ տեսած բաներէն , առաւօտուն պիտի ըսես , Երանի թէ իրիկուն ըլլար , ու իրիկունն ալ պիտի ըսես , Երանի թէ առտու ըլլար »* (Բ Օր. ԻԸ. 65—67) ։

*Հրէից ազգին տառապանքն այս վերջին* 1800 *տարուան մէջ ի՛նչ ճշդիւ կատարուած կը ցուցնէ այս մարգարէութիւնը ։ Ո՛րչափ ողբալի եղաւ Հրէից վիճակն Եւրոպայի բոլոր կողմերը ։ Ո՛րչափ անարգանք եւ վիշտ կրեցին ։ Ո՛րպիսի արիւնահեղ հալածման նշաւակ եղան ։ Չեղաւ ազգ մը որ քան զՀրեայս աւելի տանջուեցաւ ։ Անգղիոյ մէջ* 1189*ին հալածուեցան անխնայ , եւ* 1290*ին բոլորովին արտաքսուեցան այն երկրէն ։* 1595*ին արտաքսուեցան ի Գաղղիոյ ։ Սոսկալի հալածում կրեցին Գերմանիա* 1348 *էն մինչեւ* 1350 *։ Անոնց չատերը մեռցուեցան Սպանիոյ մէջ* 1392*ին .* 1492*ին* 70,000 *Հրեայ ընտանիք աքսորուեցան այն երկրէն , եւ* 1493*ին* 20,000 *Հրեայ ընտանիք աքսորուեցան Սիկիլիայէն ։ Յաջորդ դարուն մէջ չարաչար հալածմունք կրեցին Գերմանիոյ եւ Իտալիոյ մէջ ։ Հրէից պատմութենէն*

յայտնի է թէ այս մարգարէութիւնը ճշդիւ կատարուեցաւ ։

Մովսէս մարգարէացաւ թէ Հրեայք «զարմանքի ու առակի եւ կատակի ենթակայ» պիտի ըլլային բոլոր ազգաց մէջ ուր Տէրը պիտի ցրուէր զանոնք (Բ. Օր. ԻԸ. 37) ։ Ոչ ոք կրնայ ուրանալ թէ Հրէից վերաբերեալ բոլոր այս մարգարէութիւնք կատարուեցան զարմանալի կերպով ։

Գ. Քրիստոսի Թագաւորութեան ծաւալման եւ փառացը վերաբերեալ մարգարէութիւնք ։

«Պիտի յիշեն ու Տէրոջը դառնան երկրի ամէն ծայրերը» (Սաղմ. ԻԲ. 27) ։

Ոչ ոք կրնայ ուրանալ թէ երկրի ազգերն հիմա տակաւ առ տակաւ Տէրոջը դառնալու վրայ են ։

«Եթէովպիա իր ձեռքերը շուտով Աստուծոյ պիտի երկնցնէ» (Սաղմ. ԿԸ. 31) ։

Ափրիկէ արդէն սկսած է ընդունիլ Քրիստոսի Աւետարանը ։

«Եւ շատ ժողովուրդներ պիտի երթան ու ըսեն, Եկէք, Եհովային լեռը՝ Յակոբին Աստուծոյն տունը ելլենք, որ մեզի իր ճամբաները սորվեցնէ, ու անոր շաւիղներուն մէջը քալենք» (Ես. Բ. 3) ։

Եւրոպայի եւ Ամերիկայի ազգերը մի ըստ միոջէ ըսին զայս անցեալ դարերու մէջ․ Ասիոյ եւ Ափրիկէի ազգերն ալ մի զինի միոյ կ՚ըսեն նոյն խօսքն այս դարուս մէջ ։

«Երկիրը Տէրոջը փառացը գիտութեամբը պիտի լեցուի, ինչպէս որ ջուրերը ծովը կը ծածկեն» (Ամբ. Բ. 14) ։

Աստուծոյ խօսքը թարգմանուելու վրայ է երկ-

րէն բոլոր լեզուներուն, Քրիստոսի Աւետարանը հիմա կը քարոզուի գրեթէ բոլոր ազգաց, եւ երկիրս տակաւ առ տակաւ լեցուելու վրայ է Աստուծոյ գիտութեամբ ։

«Կղզիները անոր օրէնքին պիտի սպասեն» (Ես. ԽԲ. 4) ։

Այս մարգարէութիւնն ի՛նչ զարմանալի կերպով կատարուեցաւ այս դարուս մէջ, մինչ այնչափ կղզիներ կռապաշտութիւնը թողին եւ ընդունեցան Քրիստոնէութիւնը ։

«Դժոխքին դռները անիկա պիտի չյաղթեն» (Մատթ. ԺԶ. 18) ։

Դժոխոց դռներն արդարեւ ջանացին անցեալ ութեւտասն դարուց մէջ յաղթել Քրիստոսի եկեղեցւոյն, բայց չկրցան. բնաւ զօրութիւն մը չեղաւ կարող կործանել Քրիստոսի եկեղեցին ։

«Եւ ուրիշ հրեշտակ մը տեսայ՝ որ կը թռչէր երկնից մէջ. եւ ունէր յաւիտենական աւետիսը՝ քարոզելու բոլոր ազգերուն ու ցեղերուն եւ լեզուներուն ու ժողովուրդներուն որ երկրի վրայ կը բընակին» (Յայտ. ԺԴ. 6) ։

Յաւիտենական աւետիսը, Քրիստոսի Աւետարանը, հիմա կը քարոզուի գրեթէ ամէն լեզուաւ եւ բոլոր ազգաց ։

Կրնայինք ուրիշ շատ մարգարէութիւններ յիշել Քրիստոսի թագաւորութեան տարածման վերաբերեալ, եւ կրնայինք մէջ բերել ապացոյցներ թէ ճշգիւ կատարուած են եւ կը կատարուին ցարդ, բայց ասոր վրայ ընդարձակ խօսել հարկաւոր չենք համարիր ։

Դ. Մասնաւոր քաղաքաց և ազգաց վերաբերեալ մարգարէութիւնք :

Այսպիսի ոչ սակաւ մարգարէութիւնք կան Սուրբ գրոց մէջ, բայց այսպիսի մարգարէութիւններէն պիտի յիշենք հոս Տիւրոսի, Նինուէի եւ Բաբելոնի վերաբերեալ մարգարէութիւնները միայն :

1. Տիւրոսի վերաբերեալ մարգարէութիւնք :

Տիւրոս Միջերկրականի վրայ ամենէն անուանի քաղաքն էր : Այս հարուստ եւ ցոփ քաղքին վրայ մարգարէք շատ բան ըսած են :

ա. Եզեկիէլ մարգարէացաւ թէ Տէրը Տիւրոսի դէմ պիտի բերէր Նաբուգոդոնոսոր Բաբելոնի թագաւորը, որ Տիւրոսի դէմ մարտկոց պիտի շինէր, եւ հողաբլուր պիտի կանգնէր եւ անոր դէմ վահան պիտի վերցնէր (Եզեկ. ԻԶ. 7, 8, 9) : Այս մարգարէութիւնը կատարուեցաւ, երբ Նաբուգոդոնոսոր զՏիւրոս 13 տարի պաշարելէն ետքն առաւ : Փիւնիկեցւոց պատմութիւնը կը հաստատէ զայս :

բ. Եսայի մարգարէացաւ թէ Տիւրոս պիտի մոռցուէր 70 տարի, բայց յետ այնորիկ պիտի հաստատուէր իւր առաջին յաջողութեան մէջ (Ես. ԻԳ. 15—18) : Գիտցուած է թէ Տիւրոսի առաջին կործանումէն ետքը քաղքին բնակիչները գացին կղզի մը իբր 30 ասպարէզ, այսինքն իբր մէկ ժամ հեռու ցամաքէն, եւ շինեցին հոն քաղաք մը որ հարստացաւ եւ զօրացաւ, եւ մեծամեծ բերդերով ամրացաւ : Այս մարգարէութիւնն եղաւ անոր հաստատուելէն աւելի քան հարիւր տարի առաջ :

գ. Զաքարիա մարգարէացաւ թէ Նոր քաղաքը, որ իբր թէ ծովու մէջ շինուեցաւ, հրկիզութեամբ

պիտի կործանէր (Զաք. Թ. 3, 4) ։ Նաեւ Եզեկիէլ մարգարէացաւ թէ Տիւրոսի երկրորդ աւերը պիտի ըլլար հրակով (Եզեկ. ԻԸ. 18) ։ Այս մարգարէութիւնները կատարուեցան անոնց յայտնուելէն աւելի քան 200 տարի ետքը, երբ Աղեքսանդր Մեծ պաշարեց քաղաքը, եւ առնելով այրեց ։ Կուինտոս Կուրտիոս կը հաստատէ թէ այսպէս եղաւ ։

Դ. Եզեկիէլ մարգարէացաւ թէ Տիւրոսի քարերը, փայտերը եւ հողը ջուրը պիտի նետուէին (Եզեկ. ԻԶ. 12) ։ Այս մարգարէութիւնը զարմանալի կերպով կատարուեցաւ երբ Աղեքսանդր, մինչ զՏիւրոս կը պաշարէր, հին քաղքին քարերն եւ փլատակներն առաւ. ծովը ցամաքէն մինչեւ կղզին լեցունելու եւ ճամբայ շինելու ։ Այս գործը շատ դժուարին էր, եւ զօրքը եօթն ամիս զբաղեցաւ այն ճամբան շինելու ։

Ե. Եզեկիէլ մարգարէացաւ Տիւրոսի ապագայ ամայութիւնը. «Եւ քեզ չոր ապառաժի պիտի դարձնեմ. ուռկաններ փռելու տեղ պիտի ըլլաս. մէյմըն ալ պիտի չշինուիս, վասն զի ես Տէրս խօսեցայ, կ'ըսէ Տէր Եհովան» (Եզեկ. ԻԶ. 14) ։ Այս մարգարէութիւնը Եզեկիէլի մահուանէն քանի մը դար ետքը կատարուեցաւ, եւ մարգարէութեան ամբողջ կատարումն եղաւ Քրիստոսի թուականին 1291 ին, երբ Եգիպտոսի Սուլդանն առաւ քաղաքը ։ Անատեն բնակիչներն իրենց նաւերը մտան եւ բոլորովին թողուցին քաղաքը յաղթողաց ձեռքը ։ Տիւրոսի վերաբերեալ այս մարգարէութեան կատարումը կը հաստատեն ճամբորդք, որ կ'ըսեն թէ Տիւրոս աւերակաց կոյտ է միայն ։

Մանարէլ անուն ճամբորդ մը 1694 ին ամբողջ

տուն մը անգամ չկար հոն ։ 1738 ին միայն քանի մը ընտանիք կային հոն ։ Ճանապարհորդ մը կ'ըսէ . «Երբ ծովէն կը մօտենաս քաղքին, անոր հին փառաւորութեններն բան մը չես տեսներ ։ Բոլոր բնակիչներն են քանի մը ձկնորսներ ։» Նոյն հեղինակը կը յաւելու ։ «Ժայռի մը գագաթն դէտ է, տեղ մը ուր ձկնորսք իրենց ուռկանները կը չորցնեն ։» Նոյն իսկ անհաւատ Վոլնէյ, Տիւրոսի հին փառաւորութիւնն անոր այժմու աղքատութեան հետ բաղդատելէն ետքը, կ'ըսէ . «Փոքր գիւղ է իբր 50 կամ 60 ընտանիքէ բաղկացեալ, որ խումբ մը ձկնորսութեամբ կ'ապրին ։» Ուրիշ ճանապարհորդ մը կը նկարագրէ զՏիւրոս իբր «ապառաժ մը ուր ձկնորսք կը չորցնեն իրենց ուռկանները ։»

Այս մարգարէութիւնք տրուեցան երբ Տիւրոս դեռ հոյակապ քաղաք էր, բայց մենք այնչափ դարերէ ետքը կը տեսնենք այն մարգարէութեանց ամբողջապէս կատարումը ։

2. Նինուէի վերաբերեալ մարգարէութիւնք ։

Նինուէ քաղաքն, որ Տիգրիսի արեւելեան եզերքին վրայ շինուած էր, հին Ասորեստանի մայրաքաղաքն էր, եւ իբր 600,000 բնակիչ ունէր ։ Կ'ըսուի թէ Նինուէի պատերը 100 ոտք բարձր էին, շրջապատը 60 մղոն էր, եւ 1,500 աշտարակներով կը պաշտպանուէր, որոնց ամէն մէկը 200 ոտք բարձր էր ։ Այս քաղաքն երկայն ատեն արեւելքին տէր եղաւ ։ Ունէր բազմաթիւ անտառակներ եւ գեղեցիկ պարտէզներ ։ Բնակիչներն հարուստ եւ պատերազմող էին, եւ բարձր աստիճանի քաղաքակրթութեան հասած էին, բայց այս քաղաքակրթութեան հետ կը

*տիրէր նաեւ այն քաղաքին մէջ զեղխութիւն եւ ընդհանուր ապականութիւն ։*

*Նինուէացւոց չարութեան համար Տէրը ղրկեց Յովնան մարգարէն, իբր 860ին նախ քան զՔրիստոս, անոնց ապաշխարութիւն ընելու ։ Անոնք զղջացին մարգարէին քարոզութիւնը լսելով, եւ անոնց պատիժը ժամանակ մը ուշացաւ ։*

*700ին տարիներ նախ քան զՔրիստոս Տէրը ղրկեց Նաւում մարգարէն այս քաղքին կործանումն իմացնելու Նինուէացւոց ։ Այս մարգարէութիւնը կը գտնուի Նաւումի գրքին մէջ ։ Այս գրքին առաջին գլխոյն մէջ Տէրոջը մեծափառութեան եւ անդիմադրելի զօրութեան նկարագիրը կայ . նաեւ նոյն գլխոյն մէջ ցուցուած է Աստուծոյ նպատակը Նինուէ բոլորովին ջնջելու ։ Երկրորդ գլխոյն մէջ նկարագրուած է ապագայ կործանումն որ օտար զօրքերու յարձակմամբ պիտի ըլլար ։ Երրորդ գլխոյն մէջ ալ նկարագրուած է Նինուէի ապագայ ամայութիւնը . նաեւ պատճառները թէ ինչու համար Տէրը պիտի կործանէր զՆինուէ՝ ըսուած են . «Քու գերեզմանդ պիտի ընեմ, քանզի դուն անարգ եղար» (Նաւ. Ա. 14) ։ «Վա՜յ արիւններու քաղաքին, բոլորովին ստութեամբ ու յափշտակութեամբ լեցուն է» (Նաւ. Գ. 1) ։*

*Մարգարէն կը գուշակէ թէ ինչ կերպով պիտի առնուէր քաղաքը . «Բայց ան քաղաքին տեղը յորդահոս հեղեղով բոլորովին պիտի աւրէ» (Նաւ. Ա. 8) ։ «Գետերուն դռները պիտի բացուին . եւ պալատը պիտի փլչի» (Նաւ. Բ. 6) ։ Դիոդորոս պատմիչը կը պատմէ թէ Մարաց եւ Պարսից զօրքով Նինուէի*

պաշարման երրորդ տարին յորդ անձրեւներէ գետը բարձրանալով պարիսպներուն մէկ մասը տարաւ , այնպէս որ թշնամւոյն զօրքը կրցաւ ներս մտնել եւ առնուլ քաղաքը , եւ այսպէս մարգարէութիւնը կատարուեցաւ ։

Մարգարէն կը յիշէ նաեւ թէ ինչ առթիւ քաղաքը պիտի առնուէր . «Քանի որ անոնք փուշերու պէս փաթթուած են , ու իրենց ըմպելիքովը գինովցածի պէս են , բոլորովին չորցած յարդի պէս պիտի այրին» (Նաւ . Ա. 10) ։ Նոյն պատմիչը , Դիոդորոս , կը պատմէ թէ երբ պաշարողք վերջին եւ յաղող յարձակումն ըրին , Նինուէացիք տուած էին զիրենք չուայտութեան եւ արբեալ էին ։

Այս մարգարէութեան երրորդ գլխոյն առաջին համարներուն մէջ նկարագրութիւն մը կայ քաղքին առման , եւ նկարագրութիւնը զոր կ՚ընեն արդի հընախոյզք , որ սկսած են փորել Նինուէի աւերակները , յայտնի կը ցուցնէ թէ բառ առ բառ կատարուած է մարգարէութիւնը ։

Մարգարէն գուշակեց որ քաղաքը պիտի քանդուէր ոչ միայն հեղեղով , այլ եւ կրակով (Նաւ . Գ. 15) ։ Վերոյիշեալ պատմագիրը կը ցուցնէ թէ այս մարգարէութիւնն ալ ճշդիւ կատարուեցաւ ։

Մարգարէացուած էր թէ Նինուէ առնուելէն ետքը պիտի ըլլար «պարապ ու պարպած ու դատարկացած» Նաւ . Բ. 10) ։ «Ու պիտի ըլլայ որ ամէն քեզ տեսնողը քեզմէ պիտի փախչի , ու պիտի ըսէ . Նինուէ աւերակ եղաւ» (Նաւ . Գ. 7) ։

Մարգարէացուած էր թէ Նինուէի աւերումը կատարեալ եւ յաւիտենական պիտի ըլլար . «Եհովային

դէմ ի՞նչ կը խորհիք . բնաջինջ ընողը անիկա է . նե-
ղութիւնը երկրորդ անգամ պիտի չելլէ» (Նաւ. Ա.
9) . «Քու ժողովուրդդ լեռներուն վրայ ցրուեցան ,
ու մէկը չկայ որ զանոնք ժողվէ ։ Քու բեկմանդ ճար
չկայ» (Նաւ. Գ. 18, 19) ։ Ընթերցողք դիտելու են
որ այս մանր պարագաներուն մէջ երեւելի տարբե-
րութիւն կայ Տիւրոսի վերաբերեալ մարգարէու-
թեանց եւ Նինուէի վերաբերելոց մէջտեղ ։ Մար-
գարէից խօսքին նայելով Տիւրոս պիտի նորոգուէր
իր անկումէն ետքը , բայց Նինուէ պիտի չնորոգուէր,
եւ արդարեւ այնպէս եղաւ ։

Նինուէի ապագայ ամայութեան ամենէն մանրա-
մասն նկարագրութիւնը կը գտնուի Սոփոնիայի մար-
գարէութեան մէջ . «Նինուէն աւերակի՝ ու անապա-
տի պէս ջոր երկրի պիտի դարձնէ . եւ անոր մէջը
հօտեր՝ ազգաց բոլոր գազանները պիտի պառկին .
հաւալուսը ու ոզնին ալ անոր խոյակներուն մէջտեղ-
ուանքը գիշերը պիտի անցընեն . պատուհաններէն
ձայն պիտի հնչուի , սեմերուն մէջ աւերում պիտի
ըլլայ . . . ։ Զբօսասէր քաղաքը անիկա է , որ ա-
պահովութեամբ կը բնակէր ; որ իր սրտին մէջը կ՚ը-
սէր թէ Ես եմ ու ինծմէ ուրիշ չկայ . ի՞նչպէս աւե-
րակ ու գազանաց խշտի եղաւ . անկէ ամէն անցնո-
ղը պիտի սուլէ ու ձեռքը պիտի շարժէ » (Սոփոն. Բ.
13-15) ։ Թող ընթերցողը բաղդատէ այս մարգարէ-
ութիւնն ան ատենէն մինչեւ այսօր Նինուէի պատ-
մութեան հետ ։ Պատմութիւնը կը հաստատէ թէ Նին-
ուէի աւերումը կատարեալ էր , Նինուէ բոլորովին
կործանած էր , անոր վէրքերուն բժշկութիւն չկար ,
ինչպէս մարգարէն գուշակած էր , եւ այն քաղաքն

երբէք նորէն չշինուեցաւ։ Անոր նախկին պայծառութեան ուրիշ հետքեր չմնացին՝ բայց միայն անոնք որ աւերակներէն փորուելով կը հանուին, ջրանցքներն որ ժամանակաւ կը ջրէին եւ պտղաբեր կ'ընէին այն երկիրն՝ աւրուած են, եւ թէ քաղքին տեղը եւ թէ շրջակայ երկիրը, մարգարէին գուշակութեան համեմատ, անապատ է գրեթէ միշտ, բաց ի քիչ մը ատենէ տարեկան անձրեւներէ ետքը։ Ղուկիանոս որ Բ. դարուն մէջ կ'ապրէր, կը վկայէ թէ Նինուէ բոլորովին կորսուած է. նաեւ տեղի ճամբորդներ կը հաստատեն թէ անոր աւերումը կատարեալ է, եւ թէ Սոփոնիա մարգարէին գուշակութիւնը բոլորովին կատարուած է։

3. Բաբելոնի վերաբերեալ մարգարէութիւնք։

Բաբելոն հին աշխարհին ամենէն երեւելի քաղաքներէն մին, շինուած էր ընդարձակ եւ պտղաբեր դաշտի մը մէջտեղ, Եփրատ գետին երկու եզերքը։ Հին պատմիչք կ'ըսեն թէ անոր պարիսպներուն շրջապատը 60 մղոն էր, բարձրութիւնը 300 ոտք, եւ լայնութիւնը 75 ոտք։ Բաբելոն Նաբուգոդոնոսորայ թագաւորութեան ատենը հասաւ մեծութեան եւ փառաց կատարը։ Այս քաղաքն անուանի էր գիտութեան եւ վաճառականութեան կողմանէ, եւ կը կոչուէր [illegible], բոլոր աշխարհի պարծանքը։ Իր բնակիչներուն հարստութեան եւ զեղխութեան պատճառաւ եղաւ յետին աստիճան անառակ։ Բաբելոնի բնակիչք Բէլ-Ներոյ եւ ուրիշ աստուածներ կը պաշտէին պիղծ եւ գարշելի արարողութիւններով։

Անոր չարութեան համար Աստուած իր մարգա-

ըներուն բերնով վճռեց ահաւոր կերպով պատուհասել այն մեծ քաղաքը, եւ նոյն իսկ մեր ժամանակին՝ այն մարգարէութեանց զարմանալի կատարումը հաւոզիչ փաստ է թէ այն մարգարէութիւնները գրողներն Աստուծմէ ներշնչեալ մարդիկ էին։ Արդարեւ հնար էր ոչ ներշնչեալ մարդոց գուշակել թէ օր մը Բաբելոն պիտի կործանէր, բայց հնար չէր ոչ ներշնչեալ մարդոց այնպէս մանր պարագաներով եւ ճշգիւ գուշակել անոր կործանումն եւ ապագայ ամայութիւնը։

Բաբելոն առնուեցաւ 538ին կամ 539ին նախ քան զՔրիստոս, բայց Երեմիա իր մարգարէութիւնները խօսեցաւ այս քաղքին վրայ 588ին նախ քան զՔրիստոս, այսինքն 50 տարի յառաջ քան զդէպքը, եւ Եսայի իր մարգարէութիւնները խօսեցաւ 712 տարի նախ քան զՔրիստոս, այսինքն 174 տարի նախ քան զդէպքը։ Յիշենք այս մարգարէութեանց մէկ քանի կէտերը։

Ազգը որ պիտի կործանէր զԲաբելոն՝ յանուանէ յիշուած էր կանխաւ. « Տէրը Մարաց թագաւորներուն հոգին արթնցուց, քանզի Բաբելոնի վրայով խորհեցաւ որ զանիկա բնաջինջ ընէ » (Երեմ. ԾԱ. 11)։

Նաեւ Եսայ. ԽԵ. 1էն կը տեսնուի թէ Կիւրոս անուն զօրավար մը պիտի առնէր այն քաղաքը։ Այս մարգարէութիւնն ըսուեցաւ Կիւրոսի ծնանելէն աւելի քան 100 տարի առաջ, եւ այս կատարուեցաւ երբ Դարեհ եւ Կիւրոս Մարաց զօրքով եկան եւ, ըստ մարգարէութեան Երեմիայի (Ծ. 14), գացին Բաբելոնի վրայ։

Բաբելացւոց երկչոտութիւնը մարգարէացուած

է. « Բաբելոնի զօրաւոր մարդիկը պատերազմելէն դադրեցան, բերդերու մէջ բնակեցան. ուժերնին կորեցաւ, կիներու պէս եղան » (Երեմ. ԾԱ. 30)։ Յոյն պատմիչը, Քսենոփոն, կը պատմէ այս մարգարէութեան կատարումը, ըսելով թէ պաշարեալք առ երկիւղի մնացին իրենց ամրոցներուն մէջ, եւ ամրոցներէն դուրս ելլելով ամենեւին յարձակում չըրին պաշարողներուն վրայ։

Երեմիա մարգարէացաւ նաեւ թէ Բաբելոնի թագաւորին ձեռքերը պիտի թուլնային, նեղութիւնը պիտի պատէր զնա ծննդական կնոջ երկանց պէս (Երեմ. Ծ. 43)։ Կիւրոս հրաւիրեց Բաբելոնի թագաւորը մենամարտութեամբ որոշել պատերազմը, բայց թագաւորը յանձն չառաւ։ Ինչպէս մարգարէն գուշակած էր, Բաբելոնի թագաւորին ձեռքերը թուլցած էին։

Մարգարէն գուշակեց թէ քաղաքը պիտի առնուէր յանկարծ գիշերական հնարիւք, մինչ Բաբելոնցիք անձնատուր եղած էին զուարթութեան եւ արբեցութեան. « Քեզի որոգայթ լարեցի ու բռնուեցար, ով Բաբելոն, բայց դուն չգիտցար » (Երեմ. Ծ. 24)։ « Սուրհանդակը սուրհանդակի հանդիպելու՝ ու լրաբերը լրաբերի հանդիպելու պիտի վազէ՝ Բաբելոնի թագաւորին պատմելու համար թէ անոր քաղաքը մէկ ծայրէն առնուեցաւ » (Երեմ. ԾԱ. 31)։ « Երբոր անոնք գինիէն տաքնան՝ անոնց կոչունք պիտի ընեմ, ու զանոնք պիտի գինովցնեմ, որպէս զի զուարթանան եւ յաւիտենական քունով քնանան ու չարթննան, կ'ըսէ Տէրը » (Երեմ. ԾԱ. 39)։

Այս մարգարէութեան կատարումը հաստատուած է Հերոդոտոսի եւ Քսենոփոնի գրուածներով ։ Ցիշեալ պատմիչք կը պատմեն թէ Կիւրոս , երբ անկարող եղաւ յարձակմամբ առնել քաղաքը , հնարքի դիմեց ; եւ որոգայթ լարեց անոր համար ։ Կիւրոս գաղտնի պատրաստութիւններ ըրաւ Եփրատ գետն որ քաղքին մէջէն կ'անցնէր՝ դարձունել իր ճամբէն, այնպէս որ զօրքը կարենար գետոյն ցամաքեալ անցքէն մտնել քաղաքը ։ Կիւրոսի պատրաստութիւնները յաջողեցան , եւ Բաբելոնացւոց մէկ մեծ տօնին գիշերը , մինչ թագաւորը , բոլոր աւագանին եւ ժողովուրդն անձնատուր եղած էին շուայտութեան եւ արբեցութեան , Կիւրոս դարձուց գետն իր ջըրբանցքէն , եւ այնպէս անցուց անկէ իր զօրքը քաղքին մէջ ։ Ինչպէս մարգարէացած էր Եսայի (Եսայ. ԽԵ. 1), քաղքին դուռները գոց չէին ։ Թագաւորն աղմուկ մը լսելով հարց ըրեց իմանալ թէ ինչ էր աղմուկը ; բայց պալատին դռները բացուելուն պէս իսկոյն Պարսիկները ներս խուժեցին , եւ այն գիշերը Քաղդէացւոց թագաւորը Բաղդասար սպաննուեցաւ ։ Այսպէս ճշդիւ կատարուեցան մարգարէին գուշակութիւնները Բաբելոնի առման վրայ ,

Հիմա տեսնենք Բաբելոնի վերաբերեալ մարգարէութիւններէն ոմանք որ կատարուեցան քանի մը դար ետքը ։

Եսայի մարգարէացաւ . « Ու թագաւորութիւններուն փառքը՝ եւ Քաղդէացւոց փառաւորութեանը պարծանքը եղող Բաբելոնը տապալում պիտի ըլլայ , ինչպէս որ Աստուած Սոդոմը ու Գոմորը կործանեց ։ Հոն յաւիտեան բնակութիւն պիտի չըլ-

լայ, եւ ազգէ ազգ մարդ պիտի չբնակի․ ու հոն Արաբացիք վրան պիտի չկանգնեն, եւ հովիւները իրենց հօտը հոն պիտի չպառկեցնեն. Հապա հոն վայրենի կատուներ պիտի պառկին, ու անոնց տուները ոռնացող անասուններով պիտի լեցուին. եւ հոն ջայլամներ պիտի բնակին, ու հոն այծամարդներ պիտի կաքաւեն ։ Եւ անոր պալատներուն մէջ բորենիներ՝ ու զբօսանոց տուներուն մէջ ճագարներ պիտի կանչուըռտեն » (Եսայ. ԺԳ. 19-22)։

Այս մարգարէութեանց շատը, մարդկօրէն խորհելով, բոլորովին անհաւանական էր անոնց գրըուած ժամանակը ։ Բոլորովին անհաւանական կը թուէր որ Բաբելոն իսպառ ամայի եւ անբնակ ըլլար ։ Անհաւանական էր մանաւանդ որ Բաբելոն անմարդի ըլլար, մինչ անոր տուներն եւ զուարճալի պալատները տակաւին կային ։ Սակայն այս մարգարէութիւնն իրօք կատարուեցաւ ։ Պատմութիւնը կը ցուցնէ որ ժամանակ մը ետքը Բաբելոն դադրեցաւ մայրաքաղաք ըլլալէ ։ Արքունիքը փոխուեցաւ մօտերը շինուած քաղաքները, Սելեւկիա եւ Կտեսիփոն ։ Հարուստ ազնուականք թողուցին իրենց պալատներն արքունեաց ետեւէն երթալու համար, եւ վաճառականք եւ արուեստաւորք գացին անոնց ետեւէն, եւ Բաբելոն գրեթէ անբնակ թողուեցաւ ։ Սակայն քիչեր մնացին հին քաղաքը, այնպէս որ վայրենի գազանք դեռ չկրցան բնակիլ անոնց պալատներուն մէջ, բայց Քրիստոսէ ետքը չորրորդ դարուն մէջ Բաբելոնի պարիսպները նորոգուեցան, եւ քաղաքն եղաւ որսի տեղ Պարսից թագաւորներուն ։ Անատեն տուները լեցուեցան ջայ-

լամներով, եւ վայրի գազաններ կ'աղաղակէին անոր անբնակ տուներուն մէջ։

Սակայն Բաբելոն չմնաց մինչեւ թագաւորական որսի տեղ։ Այստեղ ամենայնիւ հովիւք կարող չէին իրենց հօտերն հոն տանել, վասն զի երբ պալատներն աւերակ եղան, բորեանք եւ գայլք իրենց տեղ ըրին այն պալատներն եւ շտեմարաններն, ուստի եւ հովիւք կը վախնային հոն տանել իրենց հօտերը։ Բայց Արաբացիք որ տեղէ տեղ կը թափառին եւ կը սիրեն վայրի անասուններ որսալ, միթէ պիտի չկանգնէին հոն իրենց վրանները։ Ոչ, այնպէս չըրին, վասն զի կը վախնային հոն քնանալ աւերակներուն մէջ պահուած կարիճներուն եւ թունաւոր օձերուն պատճառաւ։

Մարգարէացուած էր նաեւ թէ Բաբելոնի մէջ ոզնիներ պիտի բնակէին. «Եւ զանիկա ոզնիներուն ժառանգութիւն ու ջրի լճակներ պիտի ընեմ» (Եսայ. ԺԴ. 23)։ Այս եւս կատարուեցաւ։ Այժմ, Բաբելոնի մեծագոյն մասն, ինչպէս կը վկայեն ճանապարհորդք, հիմա ջուրի լճակ է, եւ ոզնիներ կը բնակին հոն։ Տասն դարերէ ի վեր կատարուեցան սա մարգարէութիւնները թէ Բաբելոնի մէջ «Յաւիտեան բնակութիւն պիտի չըլլայ, եւ ազգէ ազգ մարդ պիտի չբնակի. ու հոն Արաբացիք վրան պիտի չկանգնեն, եւ հովիւները իրենց հօտը հոն պիտի չպառկեցնեն» (Եսայ. ԺԳ. 20)։

Արդի ճանապարհորդաց վկայութիւնը կը հաստատէ աւելի քան 2,000 տարի առաջ գրուած մարգարէութեանց այսօր ճիշդ կատարումը։ Երեւելի ճանապարհորդ մը, Մր. Բորդէր, կը գրէ. «Գետեզ-

մանի լռութեան նման լռութիւն մը կը տիրէ Բաբելոնի աւերակներուն մէջ ։» Ուրիշ ճանապարհորդ մը, Մր. Րաւվոլֆ, կ՚ըսէ. « Հին Բաբելոնի սահմաններուն մէջ չկայ տեղ մը ուր մարդ բնակի ։» Մր. Քէբբէլ, ուրիշ ճանապարհորդ մը, կ՚ըսէ. «Ամէն մարդ որ կը տեսնէ այս տեղը, կը յիշէ թէ ինչպէս ճշդիւ կատարուած են Երեմիայի եւ Եսայեայ մարգարէութիւնները ։» Ուրիշ ճանապարհորդ մը, Մր. Միկնան, կը գրէ թէ վայրենի Արաբացիք անգամ չեն համոզուիր գիշերը Թալ Բաբելոնի գըլխաւոր աւերակներուն մօտ ։ Յիշեալ ճանապարհորդը լաւ զինեալ եւ անապատներու մէջ պտտելու վարժ վեց Արաբացիներով գնաց հոն, բայց չկրցաւ համոզել զանոնք գիշերն հոն անցունել ։ Ճանապարհորդք կ՚ըսեն թէ վայրենի գազաններ որջացեալ են այն աւերակներուն մէջ ։ Մր. Բորդէր հոն երեք առիւծ տեսաւ ։

Մարգարէացուած էր թէ Բաբելոն պիտի ըլլար անապատ, եւ պիտի ծածկուէր ջրով ։ Ի՞նչպէս կարելի էր այս երկու մարգարէութեանց եւս կատարուիլ ։ Բայց անոնք կատարուեցան հետեւեալ կերպով ։ Բաբելոն Եփրատ գետին երկու ափանց վրայ շինուած էր, բայց քաղքին մէկ կողմը, գետին մէկ դին, անապատ է, իսկ միւս կողմը որ գետին միւս դին է՝ ջրով ծածկուած է. այսպէս երկու մարգարէութիւնք եւս կատարուած են ։

Մարգարէացուած էր թէ Բաբելոն « Զարմանքի ենթակայ » պիտի ըլլար (Երեմ. ԾԱ. 37) ։ Բոլոր ճանապարհորդք որ այն քաղքին այցելութիւն կ՚ընեն, կը զարմանան անոր աւերակներուն, եւ անոր

համար եղած մարգարէութեանց հիմնոյի կատարման վրայ ։

Պիտի գոցենք այս գլուխը վերոյիշեալ մարգարէութեանց վրայ քանի մը համառօտ դիտողութիւններ ընելով ։

1. Պատմական ապացոյցները բաւական են հաստատել թէ այն մարգարէութիւնները տրուած են դէպքերուն կատարուելէն առաջ ։ Գիտցուած է թէ այն մարգարէութեանց շատերը տրուեցան դարերով յառաջ քան դիպաց կատարումը , եւ անոնցմէ ոմանք կատարուեցան Քրիստոսի ծննդենէն առաջ , ոմանք ալ մեր ժամանակը կատարուելու վրայ են ։

2. Վերոյիշեալ քաղաքաց վրայ մարգարէութիւններն ընդհանուր գուշակութիւններ միայն չեն , այլ շատ եւ մանաւոր պարագաներու վերաբերեալ կանխասացութիւններ են ։ Աւելի քան քսան որոշ մարգարէութիւններ կան Բաբելոնի վրայ միայն ։

3. Այս մարգարէութիւնները հաւանական չէին թուեր մարգարէութեանց տրուած ժամանակը ։

4. Այն քաղաքներէն իւրաքանչիւրին վերաբերեալ մարգարէութիւնք տարբեր են իրարմէ ։ Եթէ Բաբելոնի վերաբերեալ մարգարէութիւնք ըսուած ըլլային Տիւրոսի կամ Նինուէի վրայ , կամ եթէ Տիւրոսի վերաբերեալ մարգարէութիւնք ըսուած ըլլային միւս քաղաքաց վրայ , այն ատեն այն քաղաքաց յետագայ պատմութիւնը չէր կրնար համաձայն ըլլալ մարգարէութեանց հետ ։ Տեղւոյ մը նըկատմամբ ըսուած մարգարէութեան կատարումը միշտ համաձայն եղած է ոչ թէ ուրիշ տեղւոյ մը վրայ ըսուած մարգարէութեանց , այլ այն մարգա-

րէութեանց միայն որ այն տեղւոյն համար ըսուած են ։

5. Այն մարգարէութեանց կատարման վկայած են հեթանոս եւ Հրեայ, նաեւ անհաւատ մատենագիրք, եւս եւ հաւատարմութեան արժանի ճանապարհորդներ ։

Ուրեմն ինչ կը մնայ մեզի հետեւցնել ։ Իբրեւ առողջ մտքի տէր մարդիկ ուրիշ բան չենք կրնար ընել եթէ ոչ հետեւցնել թէ ամենագէտն Աստուած միայն ապագայ դիպաց վրայ այն տեղեկութիւնները կրնար հաղորդել մարդոց, ուստի եւ այն մարդիկ որ յիշեալ մարգարէութիւններն ըրին՝ հարկաւ Աստուծմէ ներշնչեալ անձինք էին ։



# ԳԼՈՒԽ ԻԲ

## ԲՆՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՀԱՍՏԱՏԷ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԾԱԳՈՒՄԸ

*Բնութիւն բառը շատ նշանակութիւն ունի ։ Երբեմն կը նշանակէ միակ առարկայի մը կամ դաս մ'առարկայից յատկութիւնները , զորօրինակ , կը խօսինք լուսոյ կամ ջերմութեան բնութեան վրայ , եւ կամ բուսոց կամ անասնոց բնութեան վրայ ։ Երբեմն բնութիւն բառը կը գործածուի ցուցնելու բոլոր նիւթական աշխարհն , այսինքն անոր գոյացութիւններն եւ զօրութիւնները ։ Բայց երբեմն այս բառը կը նշանակէ ոչ միայն նիւթական այլեւ իմացական եւ բարոյական աշխարհը եւ այն օրէնքներն որոնց ենթակայ է աշխարհ ։ Այս գլխոյն մէջ բնութիւն բառը պիտի գործածենք այս վերջին իմաստով ։*

*Բնութիւնն Աստուծոյ գործն է . գրուած է նաեւ թէ Սուրբ գիրքն՝ Աստուծոյ շունչն է (Բ Տիմ. Գ.* 16) *։ Եթէ այս այսպէս է , ապա այս երկուքը , բնութիւնն ու Աստուծոյ խօսքը , իրարու հակառակ չեն , քանզի մտքի դէմ է կարծել թէ Աստուծոյ խօսքը հակասական է Աստուծոյ գործքերուն ։ Եթէ Սուրբ գիրք ստուգիւ եւ յայտնի հակառակէր Աստուծոյ գործքերուն , պարտ էինք հետեւցնել թէ Աստուծոյ խօսքը չէ ։ Ընդհակառակն ,*

եթէ զարմանալի համաձայնութիւն կը գտնենք Սուրբ գրոց վարդապետութիւններուն եւ այն ճշմարտութեանց մէջտեղ զորս կը սորվինք բնութենէն, այս համաձայնութիւնը հաստատութիւն կու տայ Սուրբ գրոց աստուածային ծագման ուրիշ ապացոյցներուն ։

Բայց Սուրբ գրոց վարդապետութիւնները բնութեան վարդապետութիւններուն հետ բաղդատելէն առաջ, քանի մը դիտողութիւն կ'ուզենք ընել ։

Նախ. Կան ճշմարտութիւններ զորս Սուրբ գիրքէն միայն կրնանք սորվիլ եւ ոչ բնութենէ ։ Եթէ այսպէս չըլլար, Սուրբ գիրքն աւելորդ կ'ըլլար ։ Արդ, մարդիկ Սուրբ գրոց գլխաւոր վարդապետութիւնները չեն կրնար սորվիլ բնութենէ, եւ այս է պատճառը որ Աստուած յայտնեց զանոնք մարդոց մասնաւոր յայտնութեամբ ։ Կան նաեւ ուրիշ ճշմարտութիւններ զորս կրնանք աւելի յարմարութեամբ, աւելի ճշդիւ եւ հաւաստեաւ սորվիլ Սուրբ գիրքէն քան բնութենէ ։ Անկէ չի հետեւիր սակայն թէ բնութեան եւ Սուրբ գրոց մէջտեղ հակառակութիւն կայ ։ Համալսարանի դասատուն չի հերքեր այն բաները զոր նախնական դպրոցի դասատուն կը սորվեցնէ ։ Ստոյգ է թէ առաջինն աւելի բարձր բաներ կը սորվեցնէ, բայց չի սորվեցներ այնպիսի բաներ որ հակառակ են վարդապետութեանց զորս վերջինը կը սորվեցնէ ։ Նոյնպէս Սուրբ գիրքն աւելի բարձր վարդապետութիւններ կը սորվեցնէ քան զորս մենք բնութենէ կրնանք սորվիլ, բայց ասկէ չի հետեւիր թէ Սուրբ գրոց եւ բնութեան վարդապետութիւններն իրարու հակառակ են ։

*Երկրորդ.* Կան ճշմարտութիւններ զորս բնութենէ կրնանք սորվիլ, բայց ոչ Սուրբ գիրքէն: Կան նաեւ ուրիշ ճշմարտութիւններ զորս աւելի դիւրաւ եւ բացայայտ կրնանք սորվիլ բնութենէ քան թէ Սուրբ գիրքէն: Հարկ չէր որ Սուրբ գիրքը յայտնէր այնպիսի ճշմարտութիւններ զորս մարդիկ կըրնան ինքնին սորվիլ բնութենէ:

*Երրորդ.* Կան սակայն ճշմարտութիւններ զորս կրնանք սորվիլ թէ՛ բնութենէ եւ թէ Սուրբ գիրքէն, եւ կրնանք այս ճշմարտութիւնները բաղդատել իրարու հետ եւ տեսնել թէ ինչ նմանութիւն կամ հանգիտութիւն կայ անոնց մէջտեղ: Ուրեմն, բնութիւնն եւ Սուրբ գիրք երկու վարդապետ կոչելով, տեսնենք թէ ասոնք կը համաձայնին իրարու, եւ մինչեւ ուր աստիճան կը համաձայնին:

**Ա. Սուրբ գիրք եւ բնութիւնն երկուքն կը նմանին եղանակին կողմանէ որով կ'ուսուցանեն մարդիկ:**

1. Սուրբ գիրք եւ բնութիւնն երկուքն ալ կը սորվեցնեն շատ բաներ որ էապէս հարկաւոր են մարդուց: Բնութիւնը շատ կանուխ կը սորվեցնէ մանկան շունչ առնել եւ ուտել, կաթ ծծել, քալել եւ խօսիլ, եւս խնդրել ինչ որ հարկաւոր է իրեն: Բոլոր մարդիկ կրնան դիւրաւ սորվիլ բնութենէ ինչ որ պիտոյ է իրենց հանապազօրդ կենաց համար:

Նոյնպէս եւ Սուրբ գիրք յայտնի կը սորվեցնէ մարդոց այն մեծ ճշմարտութիւնները որ բացարձակապէս հարկաւոր են անոնց հոգեւոր կենացը: Սուրբ գիրք յայտնապէս կը սորվեցնէ թէ սուրբ Աստուած մը կայ, թէ բոլոր մարդիկ մեղաւոր են, եւ թէ ամէնքը զղջալու եւ ապաշխարելու են իրենց

*մեղքերէն եւ հաւատալու են Քրիստոսի ։ Սուրբ գիրք շատ որոշ կերպով կը սորվեցնէ բոլոր մարդոց թէ ինչպէս պարտին վարուիլ իրարու հետ, թէ պարտին ոչ թէ զիրար ատել, իրարու նախանձիլ, զիրար խաբել, այլ սիրել զիրար եւ օգնել իրարու ։ Սուրբ գիրք այնպէս բացայայտ եւ որոշ կերպով կը սորվեցնէ ինչ որ իրօք կարեւոր է մարդոց հոգեւոր երջանկութեանը, որ բոլոր մարդիկ կրնան դիւրաւ հասկնալ զայն ։ Այս մասին մանաւանդ իրարու կը նմանին Սուրբ գիրք եւ բնութիւնը ։*

*2. Բնութիւնն աւելի բարձր ճշմարտութիւններ կը յայտնէ անոնց որ փութով կը ջանան քննել եւ գտնել զանոնք ։ Բնութիւնը կը վարձատրէ իր փութաջան աշակերտներն աւելի փառաւոր յայտնութիւններով. որչափ ատեն որ մարդիկ կը ջանան սորվիլ բնութենէ, բնութիւնը միշտ նորանոր բաներ կը սորվեցնէ անոնց ։*

*Նաեւ Սուրբ գիրք այսպէս կ'ուսուցանէ զմարդիկ ։ Սուրբ գրոց մէջ կան միշտ նոր եւ փառաւոր դասեր եւ յայտնութիւններ անոնց համար որ կը ջանան սորվիլ զանոնք ։ Սուրբ գիրք կը շարունակէ երկնային իմաստութեան գանձերով հարստացնել զանոնք որ կը շարունակեն ծածկեալ գանձեր փընտըռել անոր մէջ ։ Ինչպէս բնութիւնը նոյնպէս Սուրբ գիրք անսպառ հանք է, եւ Սուրբ գիրք բընութեան կը նմանի նաեւ սա կողմանէ որ մարդիկ անոր գանձերը սեպհականելու համար աշխատելու են անոր խորը թափանցել ։*

*Եթէ մէկն ըսէ թէ Սուրբ գիրք այնչափ բացայայտ չէ որ ամէն մարդ կարենայ հասկնալ առանց*

ուղղագրութեան եւ առանց աշխատութեան ինչ որ գրուած է անոր մէջ, նոյն առարկութիւնը կրնայ մարդ նաեւ բնութեան համար ընել, վասն զի բնութիւնն ալ ամէն բան պարզ եւ դիւրին ըրած չէ անուշադիր եւ ծոյլ մարդոց համար։ Այս երկու վարժապետք ալ, Սուրբ գիրք եւ բնութիւնն, իրենց աշակերտներէն կը պահանջեն աշխատութիւն եւ ջանք, եւ երկուքն ալ փութաջան աշակերտները կը վարձատրեն։

3. Սուրբ գիրք կը յայտնէ քանի մը ճշմարտութիւններ որոնց չեն կրնար լիովին հասու ըլլալ սահմանաւոր միտք մարդկան, եւ զորս մարդիկ ընդունելու են հաւատքով։ Սակայն այս հաւատքը կոյր կամ մտքի դէմ չէ, այլ հիմնեալ է սա համոզման վրայ թէ կան բաւական ապացոյցներ որ այն ճշմարտութիւնները յայտնուած են նոյն իսկ Աստուծմէ, ուստի եւ իմաստութեամբ կը գործենք երբ իբրեւ ճշմարիտ կ'ընդունինք զանոնք, թէեւ մեր սահմանաւոր միտքերը կարող չեն կատարելապէս հասկնալ։

Եթէ ոք այս պատճառաւ Սուրբ գրոց դէմ առարկութիւն կ'ընէ, առարկութիւն ընելու է նաեւ բնութեան դէմ, վասն զի նաեւ բնութիւնը կը յայտնէ այնպիսի ճշմարտութիւններ որ լի են գաղտնեօք։ Նիւթական աշխարհի զօրութիւններէն եւ օրէնքներէն շատերն այնպէս դժուարաւ կը բացատրուին ինչպէս Սուրբ գրոց մէջ յայտնուած հոգեւոր օրէնքները։ Ուստի եւ անոնք որ կ'առարկեն Սուրբ գրոց դէմ ըսելով թէ կը պարունակէ այնպիսի ճշմարտութիւններ զորս ճշդիւ հասկնալ ի վեր է քան

զկարողութիւն մարդկան, նոյն տկարութիւնն ընելու են նաեւ բնութեան դէմ, քանզի բնութեան մէջ ալ կան նոցին նման ճշմարտութիւններ ։

4. Սուրբ գիրք եւ բնութիւնն իրարու կը նմանին նաեւ սա կողմանէ որ երկուքն ալ իրենց աշակերտներէն խոնարհ եւ հլու ոգի կը պահանջեն ։ Երկուքն ալ կը ծածկեն իրենց իմաստութեան գանձն անոնցմէ որ հպարտ են եւ իմաստուն կը համարին զիրենք ։ Քրիստոս ըսաւ թէ մարդ Աստուծոյ թագաւորութիւնը մտնելու համար փոքր տղու պէս ըլլալու է, եւ Պագոն, որ բնական աշխարհի ամենէն նշանաւոր թարգմաններէն մին եղած է, ըսած է. « Ինչպէս Աստուծոյ թագաւորութիւնը նոյնպէս բնական գիտութեանց թագաւորութիւնը մտնել ուրիշ կերպով կարելի չէ բայց եթէ փոքր տղու մը պէս ըլլալով ։ » Բնական գիտութեանց պատմութիւնը կը հաստատէ այս խօսքին ճշմարտութիւնը ։ Ցորչափ մարդիկ վստահեցան իրենց իմաստութեան եւ մտացածին վարդապետութիւններուն բնական աշխարհի ստեղծման եւ կարգադրութեան վրայ, մոլորութեան մէջ ինկան, եւ շատ անտեղի գաղափարներ ընդունեցան ։ Սակայն երբ յօժար եղան ի բաց թողուլ իրենց անձնական գաղափարները թէ Աստուած ինչպէս ստեղծելու էր զաշխարհ, եւ խոնարհութեամբ սկսան քննել եւ սորվիլ ինչ որ Աստուած իրօք ըրած էր, այն ատեն սկսան ճշմարիտ գիտութիւն ստանալ նիւթական աշխարհի վըրայ, եւ յառաջ երթալ բնական գիտութեանց մէջ ։

Եթէ ոք կ'առարկէ Սուրբ գրոց դէմ ըսելով թէ Սուրբ գիրքը կը պահանջէ մարդոցմէ ի բաց թո-

ղուլ իրենց հպարտութիւնն եւ բարձրամտութիւնը եւ իր վարդապետութիւններն ընդունել խոնարհ ոգւով, նոյն առարկութիւնն ընելու է նաեւ բնութեան դէմ, վասն զի, ինչպէս կ'ըսէ Պօղոս, բընութիւնն ալ նոյն խոնարհ ոգին կը պահանջէ ։

Արդ, վերի ըսուածներէն յայտնի է թէ Սուրբ գիրք եւ բնութիւնն իրարու շատ կը նմանին եղանակին կողմանէ որով կ'ուսուցանեն զմարդիկ ։

Բ. Նոյն իսկ Սուրբ Գրոց և բնութեան վարդապետութիւններուն մէջ համաձայնութիւն կայ շատ բաներու նկատմամբ ։

1. Սուրբ Գիրքին և ոչ մէկ խօսքը հակառակ է բնութեան ։

Ոչ ոք կարող եղած է ցուցնել թէ բնութեան որ-եւ իցէ մէկ վարդապետութիւնը յայտնապէս եւ ուղղակի հակառակ է Սուրբ գրոց վարդապետութիւններուն ։ Արդարեւ երբեմն բնութեան այս ինչ երեւոյթը Սուրբ գրոց այն ինչ վարդապետութեան հակառակ կարծուած է առ ժամանակ մի, բայց այս կարծիքը յառաջ եկած է կամ Սուրբ գրոց վարդապետութեան եւ կամ բնութեան երեւոյթին սըխալ մեկնութիւն տրուելէ ։ Բայց որովհետեւ այս նիւթին վրայ ԺԲ. գլխոյն մէջ բաւական խօսուեցաւ, հոս աւելորդ կը համարինք անոր վրայ երկայն խօսիլ ։

2. Սուրբ Գիրք կը սորվեցնէ թէ Արարիչ մը կայ. նաև բնութիւնը կը սորվեցնէ նոյնը ։

Բնութիւնը քննող որեւիցէ ողջամիտ մարդ չի կրնար ըսել թէ այս զարմանալի աշխարհը գոյացած է առանց Արարչի ։ Եթէ կ'ըսենք թէ դիտակը շինող մ'ունի, որչափ եւս առաւել պարտինք ըսել

թէ մարդուս աչքն, որ յանհունս աւելի զարմանալի է քան զդիտակն, ունենալու է շինող մը ։ Եթէ պարտինք ընդունիլ թէ այլեւայլ գործերու համար գործածուած ճարտար մեքենայք իմացական գտիչ եւ շինիչ մ'ունին, որչափ եւս առաւել պարտինք ընդունիլ թէ մարդկային մարմնոյն զարմանալի գործարաններն ալ ունեցած են իմացական շինիչ մը ։

Երբ գործանոց մը մտնելով կը տեսնենք անոր մէջ տեսակ տեսակ մեքենաներ, եւ կը դիտենք թէ ինչպէս անոնց բոլոր մասերն համեմատ են իրարու եւ գործ յառաջ բերելու յարմար, կը ստիպուինք հետեւցնել թէ միտք մը խորհած եւ կարգադրած է բոլոր այն բաները ։ Ուստի եթէ յիմարութիւն կ'ըլլար ըսել թէ գործանոցին մէջ գտնուած մեքենաներուն բոլոր անիւները, փոկերը եւ ուրիշ մասերը դիպուածով եկած են իրարու քով, եթէ, նմանապէս, յիմարութիւն կ'ըլլար ըսել թէ բոլոր այն խառն յօրինուածը գոյացած է երկաթոյ եւ փայտի եւ մորթոյ բնական յատկութիւններուն գործողութեամբը, եւ թէ գործանոցը երկաթոյ եւ փայտի եւ ուրիշ նիւթոց բնական զօրութիւններուն զարգանալովը միայն յառաջ եկած է, որչափ եւս աւելի մեծ յիմարութիւն է ըսել թէ տիեզերք իր զարմանալի յօրինուածութեամբ, իր մեծամեծ զօրութիւններուն համաձայն գործողութեամբ, եւ անոնց գործակցութենէն յառաջ եկած զարմանալի եւ բարերար արդասեօք, դիպուածոյ գործ է, կամ թէ իմացական էակի մը առաջնորդութեան ներքեւ չգտնուող բնական զօրութեանց արդիւնք է միայն ։ Ասկէ աւելի մեծ յիմարութիւն երեւակայել դըժ-

ուարին է։ Արդարեւ անզգամն է որ կ'ըսէ իր սրտին մէջ թէ Աստուած չկայ : Բնութիւնը կը ցուցնէ թէ Արարիչ մը ըլլալու է , եւ որչափ աւելի արդի հետազօտութիւնք կը յայտնեն բնական աշխարհի մեծութիւնն եւ վսեմութիւնը , նոյնչափ աւելի ապացոյցները կը շատնան թէ կայ Արարիչ մը :

3. Սուրբ Գիրք կը յայտնէ ամենազօր փառաւորեալ Արարիչ մը : Բնութիւնը կը յայտնէ նոյնը :

Բնական գիտութեանց հետազօտութիւնները տրամաբանօրէն կը հետեւցնեն թէ բնական աշխարհի Արարիչը պարտի ըլլալ փառաւորեալ էակ մը , եւ մենք չենք կրնար ուրիշ կերպով բառ պատշաճի նըկարագրել բնական աշխարհի Արարիչը զոր գիտութիւնը հիմա կը յայտնէ մեզի , բայց եթէ այն խօսքերը գործածելով որովք կը նկարագրէ Սուրբ գիրք այն Արարիչը :

Երբ գիտութիւնը դիտակին միջոցաւ կը յայտնէ մեզի անհուն միջոցին բարձրութիւնն եւ խորութիւնը , եւ կը ցուցնէ արեգակները եւ արեգականց դրութիւններն որ կան այն անհուն միջոցին մէջ , մեր զգացումը բացատրելու համար չենք գտներ աւելի յարմար խօսքեր քան հետեւեալներն որ բուն Սուրբ գրոց խօսքերն են . « Աչքերնիդ վեր վերցուցէք ու նայեցէք , տեսէք ո՛վ ստեղծեց . անիկա անոնց զօրքը համրանքով կը հանէ , անոնց ամէնը իրենց անունովը կը կանչէ . իր մեծ իշխանութեամբը ու սաստիկ զօրութեամբը՝ անոնցմէ բնաւ մէկը ետ չը մնար » (Ես . Խ. 26)։ « Ո՞վ քննեց Տէրոջը Հոգին ու անոր խորհրդակից ըլլալով՝ խելամուտ ըրաւ զանիկա » (Ես . Խ. 13) : « Ինքն է երկրիս շրջանին

վրայ նստողը . ու անոր բնակիչները մարախներու պէս են » (Ես. Խ. 22) ։ « Երկինքը Աստուծոյ փառքը կը պատմէ , ու երկնից հաստատութիւնը անոր ձեռացը գործքերը կը ցուցնէ » (Սաղմ. ԺԸ. 1) ։

Երբ գիտութիւնը մանրացուցի միջոցաւ կը յայտնէ մեզի անկող եւ անասնոց զարմանալի կազմութիւնն , այն բաները յօրինողին վրայ չենք կրնար աւելի յարմար կերպով խօսիլ քան զոր կը խօսի Սուրբ գիրք . « Որուն խորհուրդը սքանչելի է , ու անոր իմաստութիւնը գերազանց է . » « Անոր իմաստութիւնը չքննուիր » (Ես . ԻԸ. 29, Խ. 28) ։

Երբ գիտութիւնը կը յայտնէ մեզի անթիւ դարերը որ անցան յորմէհետէ աշխարհք ստեղծուեցաւ եւ հզօր զօրութիւններն որով աշխարհք պահպանուեցաւ եւ կառավարուեցաւ բոլոր այն դարերուն մէջ , անատեն կը ստիպուինք դարձեալ Սուրբ գըրոց խօսքերը գործածել . « Միթէ չգիտցա՞ր կամ չլսեցի՞ր որ յաւիտենական Աստուածը Եհովան , երկրիս ծայրերուն Ստեղծիչը, չյոգնիր ու չթուլնար » (Եսայ . Խ . 28) ։

Սուրբ գիրք եւ բնութիւն միանգամայն կը վկայեն թէ Արարիչը փառաւոր էակ է , եւ միայն կարող մեծամեծ սքանչելիք գործելու ։

4. Սուրբ Գիրք մերժելով բոլոր հին կրօնից կռապաշտութիւնները , եւ այս մասին նախնի փիլիսոփայից կարծիքները , կը հաստատէ թէ Աստուած մը միայն կայ ։ Բնութիւնը կը հաստատէ նոյնը ։

Արդի գիտութեան հետազօտութիւնները , թէ դիտակի եւ թէ մանրացուցի միջոցաւ , երկինքէն , երկրէս , ջուրերէն , բոյսերէն , անասուններէն եւ

*հանքերէն կը բերեն փաստեր , որ կը ցուցնեն թէ բոլոր արարչագործութիւնը մէկ Արարչի մը գործ է , թէ երկինք եւ երկիր եւ անոնց բոլոր մասերը , շնչաւորք եւ անշունչք , բանաւորք եւ անբանք , բոլորը միեւնոյն ընդհանուր դրութեան մասունք են, եւ թէ բոլոր այս մասերը շինուած են իրարու համար եւ իրարու յարմարցուած են ։ Գիտութիւնը կը ցուցնէ թէ զարմանալի համեմատութիւն կայ մարդոց եւ անասնոց մկանային զօրութեան եւ երկրիս մեծութեան մէջտեղ , մարդոց եւ անասոնոց աչքերուն եւ արեգական լուսոյն մէջտեղ , բուսոց կեանքին եւ երկրիս շրջանին մէջտեղ շուրջ զարեգակամբ ։*

*Արդի գիտութիւնը կը ցուցնէ թէ բնական զօրութեանց բոլոր տեսակները հաւանականապէս միեւնոյն զօրութիւնն են տարբեր տարբեր եղանակաւ յայտնուած , եւ բոլորը կը բղխեն միեւնոյն աղբերէ ։ Գիտութիւնը կը ցուցնէ թէ համաձայնութիւն կայ բովանդակ արարչագործութեան այլեւայլ մասանց մէջ , թէ տիեզերաց բոլոր մասերը կը վերաբերին մէկ դրութեան , եւ թէ բոլոր բնական զօրութիւնք կը գործեն կատարեալ համաձայնութեամբ , ուստի եւ պարտինք համոզուիլ թէ անոնց բոլորը կը բղխեն միեւնոյն աղբերէ , եւ են միեւնոյն կառավարութեան ներքեւ ։ Այսպէս բնութիւնը կը համաձայնի Սուրբ գրոց հետ , եւ երկուքը մէկէն կը յայտնեն թէ աշխարհս ստեղծող Աստուած մի միայն է ։*

**5. Սուրբ Գիրք կը սորվեցնէ թէ աշխարհի Արարիչը մեծ-ցոյցով կը կառավարէ զայն ։ Բնութիւնը կը սորվեցնէ նոյնը ։**

*Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ Արարիչը զաշխարհ*

ստեղծելէ ետքը ձեռքէ չթողուց զայն, այլ ընդհակառակն կը շարունակէ խնամել, պահպանել եւ կառավարել զայն ։ Բնութիւնը կը հաստատէ այս վարդապետութիւնը ։

Բնական գիտութեանց հետազօտութիւնները կը ցուցնեն թէ Արարիչը ձեռքէ թողած չէ զաշխարհ, եւ կը հաստատեն թէ աշխարհ ցարդ օրինօք կը կառավարուի, այսինքն թէ աշխարհ դեռ Արարչին կառավարութեան ներքեւ է ։ Բնական գիտութիւնք ամէն օր նորանոր ապացոյցներով կը հաստատեն թէ նիւթական աշխարհի մէջ որ եւիցէ բան դիպուածոյ արդիւնք չէ ։ Յիշեալ գիտութիւնք կը ցուցնեն թէ ոչ հովը դիպուածով կը փչէ եւ ոչ անձրեւը դիպուածով կը տեղայ, այլ թէ հովն եւ անձրեւն եւ նիւթական աշխարհի բոլոր դէպքերը յատուկ օրինաց համաձայն տեղի կ'ունենան, եւ աշխարհի այլեւայլ կողմերը գիտուն մարդիկ դիտարաններ հաստատելով զգուշաւոր քննութիւններ կ'ընեն սորվելու համար թէ որոնք են այն օրէնքները որոնց համաձայն հովը կը փչէ եւ անձրեւը կը տեղայ ։ Գիտունք բոլորովին համոզուած են թէ բոլոր նիւթական աշխարհ ցարդ կը պահպանուի եւ կը կառավարուի օրէնքներով որ իրենց ներգործութեան մէջ կանոնաւոր եւ ներդաշնակ են, ուստի եւ պարտինք հետեւցնել թէ Արարիչը դեռ կը կառավարէ զաշխարհ ։ Այսպէս բնութիւնը կը հաստատէ Սուրբ գրոց վարդապետութիւնը ։

6. Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ Արարիչը ոչ միայն ընդհանուր այլեւ մասնաւոր կերպով կը կառավարէ զաշխարհ ։ Բնութիւնը կը հաստատէ զայս եւս ։

*Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ ինչպէս ամենամեծ դէպքերն Աստուծոյ Նախախնամութեամբ տեղի կ'ունենան, այսինքն թէ անհատներն եւ ազգերը միանգամայն Աստուծոյ Նախախնամութեան ներքեւ են ։ Սուրբ գիրք կ'ըսէ թէ մեր գլխուն մազերն անգամ համրուած են, եւ առանց Աստուծոյ կամաց ճնճղուկ մ'անգամ գետին չիյնար ։*

*Արդի գիտութիւնն իր զարմանալի հետազօտութիւններովը նոյն ճշմարտութիւնն երեւան կը հանէ ։ Գիտութիւնը կը ցուցնէ թէ կառավարութիւնն որոյ ենթակայ է աշխարհ՝ կը տարածուի ամենէն աննըշան ինչպէս նաեւ ամենէն մեծ բաներուն վրայ ։ Գիտութիւնը կը ցուցնէ թէ չկայ որեւիցէ փոքր եւ աննշան բան մը որ օրինաց ենթակայ չէ, եւ կը յայտնէ որ[, թէ՛ աւազի հատն եւ թէ՛ լեռը, թէ՛ խիճն եւ թէ՛ մոլորակը, տիեզերաց ընդհանուր դըրութեան մէջ իրենց յատուկ տեղն ունին ։ Գիտութիւնն ամենափոքր ճճւոյն կազմութեան մէջ կը նշմարէ իմաստութիւն մը որ նման է մարդուն կազմութեան մէջ տեսնուած իմաստութեան ։ Այսպէս բնութիւնը կը հաստատէ Սուրբ գրոց վարդապետութիւնը, ցուցնելով թէ Արարիչը հոգ կը տանի փոքր բաներուն ինչպէս նաեւ մեծերուն ։*

7. Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ Արարչին կառավարութիւնը ոչ միայն նիւթական այլեւ բարոյական է ։ Բնութիւնն ալ նոյնը կը սորվեցնէ ։

*Բնութեան մէջ նիւթէ եւ նիւթական օրէնքէ զատ ուրիշ բան կայ ։ Բնութեան մէջ կայ նաեւ մարդ, որ իւր իմացական եւ բարոյական բնութեամբ նիւթական օրէնքներէ տարբեր օրէնքնե-*

րու , այսինքն բարոյական օրէնքներու ենթակայ է ։

Ամէն մարդ գիտէ թէ ինք նիւթական բնութենէ զատ ուրիշ բնութիւն մ'ալ ունի ։ Ամէն մարդ գիտէ թէ ինք միայն մորթէ , ջիղերէ , մկաններէ եւ ոսկրներէ բաղկացեալ չէ , գիտէ թէ ինք բանականութիւն եւ խիղճ ունի ։ Գիտէ թէ , թէեւ ինք քանի մը մասնաւոր բաներու մէջ կը նմանի ջուրի , քարի եւ ծառի , բայց ուրիշ շատ բաներու մէջ բնաւ չի նմանիր անոնց ։ Ամէն մարդ գիտէ թէ ինք ջուրի եւ քարի պէս բոլորովին նիւթական օրինաց ենթարկեալ չէ , այլ ազատ կամք ունի , ուստի եւ պատասխանատու է ամէն բանի համար զոր կ'ընէ ։ Ամէն մարդ գիտէ թէ բարւոյ եւ չարի մէջտեղ տարբերութիւն կայ ։ Ստոյգ է թէ մարդիկ շատ անգամ կրնան կարծեաց տարբերութիւն ունենալ սա կէտին վրայ թէ ինչ է բարին , բայց բոլոր մարդիկ կ'ընդունին թէ կայ բան որ բարի է , եւ կայ բան որ չար է, եւ թէ ամէն մարդու խիղճը կը հաւանի բարւոյն եւ կը դատապարտէ չարը ։ Թէեւ կրնայ ըլլալ որ մարդիկ չգիտնան կամ սխալ ըմբռնեն թէ ինչ բան բարի է , բայց եւ այնպէս ամէն մարդու խիղճը կը հաւանի այն բանին որ բարի կ'երեւի անոր, եւ կը դատապարտէ այն բանին որ չար կ'երեւի անոր ։

Ամէն մարդ փորձով գիտէ թէ չի կրնար չար բան մ'ընել առանց անոր ցաւալի հետեւանքը կրելու ։ Ամէն մարդ կը տեսնէ որ բարոյական աշխարհը , որոյ մէկ մասն է ինք , այնպէս կազմուած է որ յանցաւորը կը պատժուի ։ Մարդ նոյն իսկ բնութենէն կը սորվի թէ ով որ ոտքի տակ կ'առնէ բարո-

*յական օրէնքն՝ անպատիժ պիտի չմնայ . Թէ ծոյլը , գինեմոլը , ցոփը , նախանձոտն եւ անձնասէրը պիտի հնձեն ինչ որ սերմանած են ։ Ամէն մարդ կը տեսնէ որ ժողովուրդներն եւ ազգերն ալ նոյնպիսի օրինաց ներքեւ են ։ Բարոյական աշխարհի պատմութիւնը կը ցուցնէ թէ ինչպէս որ ամենէն անողորմ անձը չի կրնար խուսափել բարոյական օրինաց ազդեցութենէն , նոյնպէս եւ աշխարհի ամենէն զօրաւոր թագաւորութիւնները չեն կրնար խափանել այն օրէնքները ։*

*Ամէն մարդու խիղճը , փորձառութիւնը եւ դիտողութիւնն , ինչպէս նաեւ ազգաց պատմութիւնը, կը հաստատեն Սուրբ գրոց սա վարդապետութիւնը թէ մարդկային ազգն ենթակայ է բարոյական կառավարութեան մը որ կը տարածուի թէ անհատից եւ թէ ազգաց վրայ ։*

8. Սուրբ Գիրք կը սորվեցնէ թէ հանդերձեալ աշխարհի մէջ մարդոց վիճակը պիտի որոշուի կեանքէն զոր կը վարեն մարդիկ այս աշխարհի մէջ ։

*Բարոյական օրինաց ներգործութիւնները համաձայն են այս վարդապետութեան եւ զօրաւոր կերպով կը հաստատեն զայս ։ Զափահաս մարդոց վիճակը կ՚որոշուի մեծաւ մասամբ կեանքէն զոր վարած են երիտասարդութեան ժամանակ ։ Մարդ մը իր երիտասարդական տարիներուն մէջ ինչ որ կը սերմանէ , նոյնը պիտի հնձէ իր ծերութեան ատեն ։ Եթէ մարդ երիտասարդութեան ատեն իր ստացուածքը շռայլութեամբ կը վատնէ , ընդհանրապէս ծերութեան ատեն նեղութիւն պիտի կրէ ։ Եթէ կանուխ կը զղջայ, թերեւս մասամբ մը ձեռք անցու-*

նէ վատնուած հարստութիւնը. իսկ եթէ կը յարատեւէ իր չռայլութեան մէջ, ժամանակ պիտի գայ որ իր առջի չռայլութեան վրայ պիտի զղջայ, բայց ի զուր: Եթէ արբեցողութեամբ եւ ուրիշ մոլութիւններով իր մարմինը կը տկարացնէ, ընդհանրապէս մարմնաւոր ցաւ պիտի կրէ, եւ թերեւս վաղահաս մահ պիտի ճաշակէ: Եթէ երիտասարդութեան ատեն գէշ սովորութիւններ կը ստանայ, ետքն անոնց դժնդակ ազդեցութենէն պիտի նեղուի: Եթէ երիտասարդութեան ատեն մարմնոյ ցանկութեանց կու տայ զինք, ծերութեան ատեն մարմնոյ ապականութիւն պիտի հնձէ:

Ազգերը նաեւ ենթակայ են այս օրէնքին: Անոնց ապագայն պիտի որոշուի մեծաւ մասամբ այն ընթացքէն զոր ունեցած են իրենց երիտասարդութեան ատենը: Եթէ ազգ մը աշխատասէր, ժուժկալ եւ ողջախոհ եղած է իր երիտասարդութեան ատեն, ապագային մէջ յաջողութիւն պիտի հնձէ, ընդհակառակն եթէ անժուժկալ եւ զեղծ կեանք վարած է, ապագային մէջ ամօթ եւ նախատինք պիտի հնձէ:

Արդ, որովհետեւ Սուրբ գիրք կը յայտնէ որ մեր վիճակը հանդերձեալ կենաց մէջ պիտի որոշուի այս աշխարհի մէջ մեր ունեցած ընթացքէն, թող մէկն առարկութիւն չընէ Սուրբ գրոց, վասն զի յայտնի է թէ այսպիսի խիստ եւ անաչառ օրէնք մը նոյն իսկ հիմա կը տիրէ բարոյական աշխարհի մէջ:

9. Սուրբ Գիրք կը սորվեցնէ թէ մարդկային ազգը ծերացող է: Բնութիւնը նաեւ կը հաստատէ այս ճշմարտութիւնը:

Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ մարդկային ազգը չը

*պահեց իր սկզբնական մաքրութիւնը, այլ ինկաւ մեղաց մէջ, ապականեցաւ եւ եղաւ անսուրբ եւ անձնասէր ։ Այս փորձառութիւնը հաստատելու ի՛նչ զօրաւոր փաստ կայ մարդկային ազգին անցեալ պատմութեան եւ սրտի վիճակին մէջ ։*

*Նախ, ամէն մարդ կը զգայ թէ չէ այնպիսի ինչպիսի պարտի ըլլալ ։ Ամէն մարդ գիտէ թէ միշտ կ՚ընէ ինչ որ ընելու չէր, եւ չըներ ինչ որ ընելու էր ։ Իւրաքանչիւր մարդոյ խիղճը կը յանդիմանէ· եւ կը դատապարտէ զանի իր մեղքերուն համար ։*

*Երկրորդ, եթէ իւրաքանչիւր անհատ անձնասէր, մեղաւոր եւ ապականեալ է, ինչպէս կրնան ժողովուրդք եւ ազգեր, որ այն անհատներէն կը բաղկանան, ըլլալ մաքուր, արդար եւ սուրբ ։ Թող զայս, ամէն կողմէ փաստեր ունինք թէ երկրիս ազգերը հիմա արդարեւ ապականեալ են ։*

*Բոլոր ազգաց օրէնքներն անոնց դէմ վկայութիւն կուտան ։ Որովհետեւ կան օրէնքներ որ ամէն տեսակ ոճիր կ՚արգելեն, կը ցուցնեն թէ կան մարդիկ որ միտեալ են այսպիսի ոճիրներ գործելու ։ Ի՛նչ խիստ օրէնքներ դնել ստիպուած են տէրութիւնք պահելու համար իրենց հպատակները զիրար զրկելէ եւ իրարու վնասելէ ։*

*Արդարութեան ամէն ատեան նոյնպէս վկայ է եւ կը հաստատէ թէ մարդկային ազգն ապականեալ է ։ Ի՛նչ ոճիրներու համար դատապարտուած են մարդիկ, եւ ի՛նչ պատիժներ հարկ է դնել որպէս զի ընկերութիւնը պահուի ։ Ամէն սուր եւ թնդանօթ մէն մի վկայք են մարդկային ազգին ապականութեան դէմ ։ Ի՜նչ զօրաւոր վկայութիւն կուտան*

մարդկային ազգին դէմ միլիոնաւոր զինուորք Եւրոպայի որ արդի քաղաքակրթութեան կեդրոնն է ։ Որ դի որ նայինք, կը բազմանան վկայութիւնք որ կը հաստատեն մարդկային ազգին ապականութիւնը։

Եթէ պատմութիւնը կոչենք ի վկայութիւն, միեւնոյն վկայութիւնը կուտայ ։ Մարդկային ազգին պատմութեան մեծ մասն արդարեւ արշաւանաց, հարստահարութեան եւ անիրաւութեան պատմութիւն է ։ Որչափ անգամ մարդոց հարստութիւնը միջոց եղած է միայն անոնց մոլութիւններն աճեցունելու, եւ ո՛րչափ անգամ մարդիկ իրենց արուեստներն իսկ ծառայեցուցած են իրենց անիրաւ ձեռնարկութիւններուն, եւ նոյն իսկ գիտութիւնը գործածած են ի նպաստ իրենց չարութեան եւ անզգամութեան ։

Ներկայ դարուս մարդոց խիղճն եւ անցեալ դարուց մէջ ապրող մարդոց պատմութիւնը կը հաստատեն մարդկային ազգին ապականութիւնը ։

10. Սուրբ Գիրք կը սորվեցնէ թէ մարդիկ չեն կարող ազատել զիրենք այս ապականեալ վիճակէն։ Աշխարհի ներկայ վիճակը նաեւ կը հաստատէ զայս ։

Ինչպէս որ իւրաքանչիւր անձի խիղճը կը վկայէ թէ իր բնութիւնն ապականեալ է, նոյնպէս եւ ամէն մարդու փորձը կը ցուցնէ թէ ինք անձամբ բաւական չէ իր այս ապականեալ բնութիւնը փոխելու ։ Մարդ կրնայ արդարեւ պահել զինք շատ մոլութիւններէ, կրնայ ազատ ըլլալ շատ չարիքներէ, բայց չկրնար արմատէն խլել իւր միտումն ի չարն ։ Անձնասիրութիւն, փառասիրութիւն եւ հեշտասիրութիւն միշտ կը տիրեն անոր սրտին մէջ, թէեւ մարդ

շատ ջանայ ծածկել զանոնք , կամ խլել զանոնք իր սրտէն ։ Մարդ կրնայ ստանալ մեծ հարստութիւն , բայց այսու չի կրնար յագեցնել իւր ընչասիրութիւնը ։ Կրնայ երեւելի ըլլալ իր գիտութեան համար , բայց սորված չըլլար թէ ինչպէս ազատէ զինք հըպարտութեան եւ նախանձու բռնութենէն ։

Այսպիսի է նաեւ մարդկային ազգին պատմութիւնը ։ Որչափ գուն գործած է մարդկային ազգը բարւոքել իւր վիճակը ։ Երկիրներ մշակած , քաղաքներ շինած , հանքեր բանեցուցած եւ ամէն կարելի կերպով ջանացած է աճեցնել իւր հարստութիւնը , եւ շատ անգամ յաջողած է , բայց կարող եղած չէ իւր հարստութեան միջոցաւ ազատիլ իւր բարոյական ապականութենէն ։ Մարդիկ շատ բան սորված են երկրիս , ծովերու եւ աստեղաց վրայ , բայց պատմութիւնը կը ցուցնէ թէ մարդոց բոլոր գիտութիւնը չկրցաւ յառաջ բերել սրտի մաքրութիւն կամ եղբայրսիրութիւն ։ Մտքի լուսաւորութիւնը յայտնագոյն եւս ցուցուցած է ընկերութեան անկումը , բայց կրցած չէ ցուցնել թէ ընկերութիւնն ինչպէս կրնայ ազատիլ իր բարոյական նուաստութենէն ։ Մարդիկ ազգային կառավարութիւններ հաստատեցին զիրար պաշտպանելու , բայց նոյն իսկ այն կառավարութիւնները շատ անգամ ապականեցան եւ եղան հարստահարիչք ։ Եւ նոյն իսկ այն ատեն երբ կառավարութիւնք ուղիղ եւ ողջամիտ էին , անկարող եղան փոխել իրենց հպատակաց բարոյական բնութիւնը ։ Կրցան աղէկ օրէնքներ դնել , բայց չկրցան արգելել մարդիկ այն օրէնքներըն աւրելէ ։ Կրցան շատ անգամ խափանել ապօ-

րինաւոր գործքեր, բայց անկարող էին դէպ ի չարըն միտումն խլել մարդոց սրտէն։ Պատմաբանք կ'ըսեն թէ քաղաքակրթութեան մէջ ամէն յառաջացում իրեն հետ ունեցած է ապականութեան նոր ցոյցեր։ Վերջապէս, թէ՛ ազգաց պատմութիւնը եւ թէ՛ իւրաքանչիւր անձի փորձը կը ցուցնեն թէ մարդիկ չեն կարող փրկել զիրենք իրենց բարոյական ապականութենէն, եւ այսպէս կը հաստատեն Սուրբ գրոց վարդապետութիւնը։

11. Սուրբ Գիրք կը սորվեցնէ նաեւ թէ պիտի ըլլայ ահաւոր դատաստան մը յորում ամեն մարդ պիտի ընդունի ըստ գործոց իւրոց վարձ կամ պատիժ։ Ամեն մարդու խիղճը նոյնը կ'ըսէ։

Մարդիկ կրնան ջանալ լռեցնել իրենց խղճին ձայնը, կրնան մերժել խղճին ահաւոր ազդարարութիւնները, կրնան լեցունել իրենց ականջներն աւելի ախորժական ձայներով, բայց խղճին ձայնը կ'ըսէ թէ մարդիկ յանցաւոր են առաջի Աստուծոյ եւ թէ իրենց գործերուն համար հաշիւ պիտի տան Աստուծոյ։

Վերը ըսուածներէն յայտնի է որ Սուրբ գրոց վարդապետութիւնները զօրաւոր կերպով կը հաստատուին բնական աշխարհի օրինաց ներդաշնութիւններէն, իւրաքանչիւր մարդոյ խղճէն եւ փորձէն եւ մարդկային ազգին պատմութենէն։ Ուստի եւ իրաւամբ կը հետեւցնենք թէ Սուրբ գիրք յառաջ եկած է Անկէ որ ստեղծեց զաշխարհ, եւ որուն հպատակ են բոլոր մարդիկ եւ բոլոր ազգեր։

# ԳԼՈՒԽ ԻԳ

## ՆՈՅՆ ԻՍԿ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ԿԱՏԱՐԵԼՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՀԱՍՏԱՏԷ ԱՆՈՐ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԾԱԳՈՒՄԸ

Երբ այս նիւթին վրայ կը խօսինք, հարկ է զանազանել Քրիստոնէութիւնը զայն դաւանողներէն։ Քրիստոնէութիւնը դաւանողներուն լաւագոյններն իսկ արդարութեան մէջ կատարեալ չեն։ Քրիստոնէութիւնը յանհունս գերագոյն է քան որեւիցէ հետեւող Քրիստոսի։ Հարկ է նաեւ զանազանել Քրիստոնէութիւնը Քրիստոնէական եկեղեցիէն։ Քրիստոնէական եկեղեցին արդարեւ Աստուծմէ հաստատուած է, սակայն որովհետեւ փչեալ եկեղեցին կը բաղկանայ անկատար մարդերէ, Քրիստոնէութեան բարոյական կատարեալ գերազանցութիւնը չցուցներ աշխարհի։ Սակայն երբ կը զանազանենք Քրիստոնէութիւնը Քրիստոնէական եկեղեցիէն, եւ Քրիստոնէութիւնը կը նկատենք պարզապէս իբրեւ աստուածային յայտնութիւն մը բարոյական եւ կրօնական ճշմարտութեանց, անանկ կերպով կ'ըլլանք հաստատել թէ Քրիստոնէութիւնն ունի այնպիսի կատարելութիւն մը որ կը հաստատէ անոր աստուածային ծագումը։

Քրիստոնէութիւնը հիմնուած է Սուրբ գրոց վը-

րայ իբրեւ Աստուծոյ ճշմարիտ խօսքին վրայ ։ Եթէ արդարեւ Սուրբ գիրք Աստուծոյ խօսքն է, ուրեմն անոր յատկութիւնները համաձայն ըլլալու են անոր աստուածային ծագմանը ։

Ուրեմն քննենք տեսնելու համար թէ Սուրբ գիրք աստուածային յատկութիւններ կը պարունակէ՞ ։

Սուրբ գրոց պարունակութիւնն աւելի մանրամասն քննելէ առաջ, կը հրաւիրենք ընթերցողներն նկատողութեան առնել նախ հետեւեալ կէտերը ։

1. Սուրբ Գրոց մէջ բնաւ սխալմունք կամ մոլորութիւններ չկան ։

Այս կէտին մէջ Սուրբ գիրքը մասնաւորապէս կը տարբերի սրբազան կոչուած ուրիշ գրքերէ, եւ թէ հին եւ թէ նոր փիլիսոփայական բոլոր դրութիւններէ ։ Յիշեալ գրքերն եւ դրութիւններն ինչ ճշմարտութիւններ ալ պարունակեն, ոչ ոք կ՚ուրանայ թէ իրենց մէջ ունին նաեւ սխալներ եւ մոլորութիւններ ։ Յայտնի է թէ Բրահմանութեան եւ Բուդդայութեան կրօնքներուն սուրբ գիրքերը շատ սխալներ կը պարունակեն ։ Յայտնի է նաեւ թէ փիլիսոփայական հին դրութիւններէն եւ ոչ մին մոլորութիւններէ ազատ է ։ Այսօր յիշեալ դրութիւններէն եւ ոչ մին իբրեւ զուտ ճշմարտութիւն կ՚ընդունուի ։ Նոյնը կրնայ ըսուիլ նաեւ փիլիսոփայական նոր դրութեանց համար ։ Յիշեալ դրութեանց հեղինակներն իսկ չեն պնդեր թէ իրենց դրութիւնները մոլորութիւններէ զերծ են, եւ ամէնքն ալ կ՚ընդունին թէ իրենց դրութիւնները դեռ կատարելագործելի են ։ Սակայն որեւիցէ մոլորութիւն մը դեռ գտնուած չէ Սուրբ գրոց մէջ ։

Յայտնի է թէ Սուրբ գրոց թշնամիները շատ անգամ ըսած են որ Սուրբ գրոց մէջ սխալներ գտած են, բայց երբէք կարող եղած չեն իրենց խօսքը հաստատել գոհացուցիչ ապացոյցներով։

Ուրեմն Սուրբ գիրք սա նշանաւոր յատկութիւնն ունի թէ որեւիցէ սխալ մը կամ մոլորութիւն մը չպարունակեր։ Երբ կը նկատենք թէ Սուրբ գիրք կը բաղկանայ պատմական, մարգարէական եւ վարդապետական շատ մը տարբեր գիրքերէ որ 1,500 տարուոյ միջոցի մէջ գրուած են բնական ձրից, դաստիարակութեան եւ արտաքին պարագայից կողմանէ շատ տարբեր մարդերէ, երբ կը նկատենք նաեւ թէ այն գիրքերէն ոմանք աշխարհի մէջ ամենէն հին գրքերն են, եւ թէ շատ սաստիկ եւ մանր քննութեանց ենթարկուած են, բայց եւ այնպէս ոչ մի սխալ գտնուած է անոնց մէջ, ապա իրաւունք ունինք հետեւցնելու թէ Սուրբ գիրք են ոչ սխալական մարդոց այլ անսխալականն Աստուծոյ բանք։

2. Ինչ բարոյական եւ կրօնական ճշմարտութիւն որ կը գտնուի ուրիշ որեւիցէ կրօնական կամ փիլիսոփայական գրութեան մէջ, կը գտնուի Սուրբ գրոց մէջ։

Ոմանք կ'ըսեն թէ նաեւ ուրիշ կրօնքներ ունին ճշմարտութիւններ։ Այո, այնպէս է, չկայ թերեւս աշխարհիս վրայ կրօնք մը որ միայն մոլորութիւն պարփակէ։ Ամէն կրօնք քիչ կամ շատ կը պարունակէ ճշմարիտ սկզբունք, եւ կրօնքի մը ազդեցութիւնը կախեալ է ճշմարտութիւններէն զորս կը սորվեցնէ կրօնքը։ Հին եւ նոր փիլիսոփայական գրութեանց շատերուն համար ալ նոյնպէս կրնանք ըսել։ Սոկրատ, Պղատոն եւ ուրիշ նախնի եւ արդի փի-

Վստափայք կը սորվեցնեն քանի մը ճշմարտութիւններ, բայց անոնք ամբողջ ճշմարտութիւն չեն ։ Քանի մը յարաբերութեանց վերաբերեալ ճշմարտութիւն միայն կը պարունակեն , եւ այս ճշմարտութիւնն ալ չեն սորվեցներ հաստատութեամբ եւ լիով, այնպէս որ մարդիկ կարող ըլլան ընդունել զայն կատարեալ վստահութեամբ , եւ որոյ վրայ կարենան խարսխել իրենց յոյսերը ։

Մինչ մէկ կողմանէ կ'ընդունինք այն ճշմարտութիւնները որ կը գտնուին ուրիշ դրութեանց մէջ , միւս կողմանէ կը պնդենք թէ այն դրութեանց մէջ չի գտնուիր բարոյական սկզբունք կամ կրօնական ճշմարտութիւն մը որ չգտնուի նաեւ Սուրբ գրոց մէջ։

Ո՞ր բարոյական ճշմարտութիւնն է որ հին կրօնից կամ փիլիսոփայական դրութեանց մէջ կայ , եւ Սուրբ գրոց մէջ չգտնուիր ։ Այսպիսի ճշմարտութիւն չկայ ։ Կամ արդի փիլիսոփայութեան հետազօտութիւնները ինչ բարոյական կամ հոգեւոր ճըշմարտութիւններ կրցան յաւելուլ Սուրբ գրոց մէջ յայտնուածներուն վրայ ։ Դարձեալ կը պատասխանենք թէ բնաւ եւ ոչ մի ։ Թէպէտ զարմանալի յառաջադիմութիւն ըրաւ աշխարհք անցեալ ութեւտասն դարուց մէջ , չկրցաւ սակայն գտնել Սուրբ գրոց մէջ չյայտնուած նոր ճշմարտութիւն մը Աստուծոյ եւ անոր ստորոգելեաց վրայ , մարդկային ազգին այժմու բարոյական վիճակին եւ անոր հանդերձելոյն վրայ , մարդոց բարոյական պարտականութիւններուն վրայ առ Աստուած եւ առ միմեանս եւ մարդկային ազգին ազատութեան վրայ զանի ապականող չարիքներէն ։

3. Սուրբ Գիրք կը պարունակէ ոչ միայն բոլոր բարոյական և հոգեւոր ճշմարտութիւնները որ ուրիշ գրոց մէջ կը գտնուին ; կը պարունակէ նաեւ շատ ճշմարտութիւններ որ ուրիշ որեւիցէ կրօնական կամ փիլիսոփայական դրութեան մէջ չեն գտնուիր ։

Սուրբ գրոց գլխաւոր վարդապետութիւնները Սուրբ գրոց միայն սեպհական են ։ Այս գլխաւոր վարդապետութիւնները առնուած չեն ուրիշ որեւիցէ կրօնական եւ փիլիսոփայական դրութիւններէ , եւ ոչ իրենց գլխաւոր կէտերուն մէջ կը նմանին ուրիշ դրութեանց վարդապետութիւններուն ։ Սուրբ գիրք ուրիշ բոլոր գիրքերէն կը տարբերի այսու եւս որ նա միայն կը յայտնէ այն ճշմարտութիւնները որ փորձով հաստատուած է թէ բաւականապէս հարկաւոր են մարդոց երջանկութեանը համար ։

4. Սուրբ Գիրք կը պարունակէ բոլոր բարոյական և հոգեւոր ճշմարտութիւնները որոց կարօտ են մարդիկ ։

Սուրբ գիրք չյայտներ այնպիսի ճշմարտութիւնները զորս մարդիկ անձամբ գտնել կարող են , եւ կամ որոնք մարդոց հետաքրքրութիւնը միայն հանեցնող ճշմարտութիւններ են ։ Կան շատ բաներ զորս կ'ուզենք գիտնալ , բայց զանոնք գիտնալը չօգներ մեր ոչ ժամանակաւոր եւ ոչ յաւիտենական երջանկութեան ։ Սուրբ գիրք այսպիսի ճշմարտութիւններ չյայտներ ։ Քանի մը բաներու վրայ Սուրբ գրոց լռութիւնն արդարեւ այնչափ նշանաւոր է որչափ նշանաւոր են ուրիշ իրաց վրայ եղած յայտնութիւնք ։ Սուրբ գրոց յայտնութիւնները բոլորովին համաձայն են մարդուս բնութեանը եւ վիճակին եւ բուն դարման են անոր կարօտութիւններուն

*Կայ բարոյական կամ կրօնական ճշմարտութիւն մը որ բուն հարկաւոր է մեր հոգեւոր երջանկութեան. եւ Սուրբ գիրք զանց ըրած է յայտնել մեզ զայն :*

*Չկայ եւ ոչ մի :*

5. Սուրբ Գիրք բոլոր փիլիսոփայական գիրքերէն յայտ եւս կը տարբերի, որ մեզի հարկաւոր եւ օգտակար ճշմարտութիւնները կը յայտնէ այնպիսի պարզ կերպով, որ ամէն մարդ կրնայ հասկնալ :

*Ամէն ողջամիտ ընթերցող դատելու է թէ աստուածային ըլլալու չէ՞ այն գիրքն յորում չկայ որեւիցէ սխալ մը, եւ որ կը պարունակէ բոլոր կրօնական ճշմարտութիւնները որ կան ուրիշ կրօնից կամ փիլիսոփայական դրութեանց մէջ, եւ քան զայնս աւելի բարձր ճշմարտութիւններ. կը պարունակէ նաեւ բոլոր ճշմարտութիւնները որ կարեւոր են մարդուս հոգեւոր երջանկութեանը համար :*

*Հիմա քննենք աւելի մանրամասնօրէն բուն Սուրբ գրոց նիւթը, եւ տեսնենք թէ ինչ ապացոյցն կատարեալ յայտնութիւն մ՚է :*

Ա. Սուրբ Գիրք կը յայտնէ մարդոց կատարեալ Աստուած մը։

*Մարդիկ այնպէս կազմուած են որ անոնց բնութիւնը կը պահանջէ գերագոյն էակ մը զոր պաշտեն եւ անոր ապաւինին : Տգիտութիւնը չի կրնար ըզմարդիկ այն աստիճան նուաստացնել մինչեւ չզգալ իրենց կարօտութիւնն Աստուծոյ խնամատութեան, օգնութեան եւ շնորհացը, ոչ ալ գիտութիւնը եւ քաղաքակրթութիւնն այն աստիճան կը բարձրացընեն զմարդ որ այլեւս կարօտ չըլլայ լուսաւորիչ, մաքրիչ եւ փրկիչ Աստուծոյ մը :*

*Սակայն պատմութիւնը կը սորվեցնէ մեզի որ այն*

*իրաց մեծ մասը զօրս մարդիկ պաշտած են իբրեւ Աստուած՝ բոլորովին անարժան էին պաշտօն կամ երկրպագութիւն ընդունելու ի մարդկանէ ։ Յունաց եւ Հռոմայեցւոց աստուածներուն շատերը մոլի եւ պիղծ էին ։ Արդարեւ կը կարծուէր թէ այն աստուածներն ունէին քանի մը առաքինութիւններ , բայց նաեւ մարդկային մոլութիւններ կ'ընծայուէին անոնց ։ Նոյնը կրնանք ըսել նաեւ հեթանոսաց բոլոր աստուածներուն համար ։ Անոնցմէ շատերը բարոյական հրէշներ էին ։ Չենք կրնար պաշտել այնպիսի էակներ առանց նուաստացնելու մեր բնութիւնը ։*

*Անհաւատները նաեւ չեն կրնար յայտնել մեզի որոշ եւ ապաւինութեան արժանի աստուած մը ։ Անհաւատք երբեմն բոլորովին կ'ուրանան Աստուծոյ գոյութիւնը , եւ այսպէս կը զրկեն հոգին այն բանէն զոր մանաւանդ կը պահանջեն հոգւոյն բնութիւնն եւ վիճակը ։ Երբեմն ալ կ'ընդունին թէ կայ Աստուած մը , եւ անուն մը կու տան անոր , բայց միանգամայն կ'ըսեն թէ անծանօթ է եւ չի կրնար ծանօթանալ ։ Ուստի անհաւատութեան աստուածը լոկ անուն մ'է , աստուած մը զոր ոչ ոք կրնայ ճանչնալ կամ սիրել , ոչ ալ կրնայ ապաւինել անոր ։ Բայց Սուրբ գիրք կը յայտնէ մեզ բուն զԱստուած որ է Աստուած անձնաւոր , որ կը տեսնէ զմեզ , կը լսէ մեզի , կը ճանչնայ եւ կը սիրէ զմեզ , եւ զոր մենք կրնանք ճանչնալ եւ սիրել ։ Սուրբ գիրք կը յայտնէ մեզի այնպիսի Աստուած մը որ բոլորովին արժանի է բոլոր մարդկային ազգէն պատիւ , սէր եւ ծառայութիւն ընդունելու , քանզի ի նմա են բո-*

լոր բնական եւ բարոյական կատարելութիւնք ։ Սուրբ գրոց մէջ յայտնուած Աստուածը սուրբ է, եւ ամէն մարդէ կը պահանջէ սուրբ ըլլալ, այնու ամենայնիւ երկայնամիտ է առ անսուրբս ։ Բոլորովին արդար է, բայց միանգամայն գթած եւ ողորմած է առ անարդարս ։ Գիտէ դատել զմարդիկ, բայց եւ այնպէս իր սիրելի Որդին մատնեց ի մահ փոխանակ յանցաւորաց ։ Սուրբ գրոց Աստուածը ճշմարտութեան, արդարութեան եւ սիրոյ Աստուած է, ուստի եւ մարդուն ամենամեծ իմաստութիւնն է անոր ապաւինել, անոր ամենամեծ արտօնութիւնն է սիրել զնա, եւ ամենամեծ փառքն է պաշտել զնա։ Ողջամիտ ընթերցողը թող բաղդատէ հին կռապաշտութեան կամ արդի անհաւատութեան աստուածները մեր Տէր Յիսուս Քրիստոսի Աստուծոյն եւ Հօրը հետ ; եւ ապա թող դատէ թէ Սուրբ գիրք որ կը յայտնէ մեզ այսպիսի Աստուած մը ո՞չ ապաքէն ունի աստուածային յատկութիւններ ։

Բ. Սուրբ Գիրքը կը ճանչնէ զմարդն, կը պատասխանէ աշխարհի վերաբերեալ ամենակարեւոր հարցմանց ։

Բոլոր հին կրօնական դրութիւնք ջանացին բացատրել մարդոց զսկիզբն եւ զվախճան աշխարհի, բայց անոնցմէ եւ ոչ մին յաջողեցաւ յայսմ ։ Հիմա մտացի մարդ մը չընդունիր հին կրօնական դրութեանց ոչ դիցաբանութիւններն եւ ոչ անոնց բարոյական թերի վարդապետութիւնները ։ Արդի գիտութիւնը հիմա կը ջանայ մեկնել աշխարհիս ծագումը, բայց սա եւս կարող եղած չէ յաջողել։ Նոյն իսկ գիտնոց շատերը կ'ըսեն . « Սահմաններ կան ընդ որս անդին չենք կրնար անցնիլ . խնդիր-

ներ կան զորս չենք կարող լուծել ։ » Աշխարհիս ծագման վրայ գիտնոց տեսութիւններուն եւ ոչ մին ցարդ ընդհանուր ընդունելութիւն գտած է ․ իսկ աշխարհիս վախճանին գալով, բոլոր գիտունք կը խոստովանին թէ անկարող են բան մ՚ըսել ։ Բայց Սուրբ գիրք պարզ եւ բանաւոր մեկնութիւն եւ բացատրութիւն կու տայ աշխարհիս վրայ ․ թէպէտ ամէն գաղտնիք յայտնելու չի ձեռնարկեր, բացայայտ պատասխան կու տայ այն հարցմանց զորս մարդիկ իրենց բնութենէն եւ պարագաներէն ստիպեալ են ընել ։

Երբ կը նկատենք նիւթական աշխարհի մեծութիւնը, երբ մանրացուցով եւ դիտակով յայտնուած բաներուն վրայ կը լեցուինք զարմանօք եւ կը հարցունենք․ Ուստի՞ են այս բաները, Սուրբ գրոց առաջին գլխուն մէջ իսկ կը գտնենք գոհացուցիչ պատասխան մեր այս հարցման․ « Սկիզբէն Աստուած երկինքն ու երկիրը ստեղծեց ։ » Մինչեւ ո՛րչափ հեռուն որ հասցունեն մարդիկ իրենց հետազօտութիւնները, եւ նիւթական աշխարհի մեծութեան վրայ ինչ նոր բաներ որ գտնեն, Սուրբ գիրք կը յայտնէ մեզ անհուն զօրութեան տէր Աստուած մը որուն կրնանք իրաւամբ ընծայել բոլոր այն զարմանալի գործերը ։

Երբ գիտութիւնը կը յայտնէ մեզի նիւթական աշխարհի բոլոր մասերուն զարմանալի յարմարութիւնն առ իրերաց եւ առ մարդիկ, զորօրինակ թէ ինչպէս երկնային մարմնոց մեծութիւնը, դիրքը եւ շարժումները, ցամաքն ու ծովը, հողմունք եւ ամպք, բոլորը միանգամայն կը կազմեն կատարեալ

գրութիւն մը, եւ մենք կը հարցունենք, Ուստի՞ է այս կարգադրութիւնը, Սուրբ գիրք կը պատասխանէ այս հարցման, յայտնելով Աստուած մը այնպէս կատարեալ իմաստութեան, ինչպէս է հզօր ի կարողութեան :

Երբ կը հարցունենք. Ուստի՞ են այս բնական օրէնք, այսպէս հաստատուն, այսպէս համաձայն եւ այսպէս բարերար իրենց գործողութեան մէջ. դարձեալ Սուրբ գիրք կը պատասխանէ մեր այս հարցման, ըսելով մեզի թէ ամենազօր եւ ամենիմաստ Արարիչը տակաւին կը վարէ զաշխարհ, եւ թէ անկէ կը բղխէ եւ անով կը պահուի բնական օրինաց այս ընդհանուր գրութիւնը :

Դարձեալ երբ կը նկատենք մարդիկ, այսինքն անոնց բնութիւնը, կարողութիւնները եւ գործքերը, կը լեցուինք հիացմամբ : Թէպէտ մարդիկ կը ծնանին իբրեւ անկարող աղայք, թէպէտ քիչ տարիներ միայն կ'ապրին երկրի վրայ, ընդունակ են սակայն զարմանալի զօրութիւն ստանալու եւ զքանչելի գործեր կատարելու : Թէպէտ մարդս երկրի տոհմերին մէջ փակուած է, բայց եւ այնպէս կը քննէ երկինքը, կը չափէ գիսաւորներն անոնց ընդարձակ շրջանին մէջ, եւ մոլորակներն իբր կշռով կը կշռէ. Թէպէտ մարդ անասնոց չափ տկար է, բայց եւ այնպէս զարմանալի հնարիւք նուաճած է բնութեան բուռն զօրութիւններն անգամ : Երբ մարդոց զարմանալի գործերը կը տեսնենք, կը ըստիպուինք հարցունել. Ով կամ ինչ է մարդս, եւ ուստի՞ է որ այսպէս կ'իշխէ բնական աշխարհի վըրայ, Սուրբ գիրք միայն գոհացուցիչ պատասխան

կուտայ այս հարցմանց ընելով. «Աստուած իր պատկերովը ստեղծեց մարդը։» Կը սորվեցնէ թէ նոյն իսկ Արարիչը տուաւ մարդուս այնպիսի բարձր կարողութիւններ եւ բնական աշխարհքը հնազանդեցուց անոր հրամանին։ Սուրբ գրոց մէջ միայն ըստ բաւականին բացատրուած են մարդոց զարմանալի կարողութիւններն եւ գործերը։

Բայց մարդուս վերաբերեալ ուրիշ հարցում մ՚ալ կայ, որուն պէտք է պատասխանել։ Թէպէտ մարդը զարդարեալ է այնպիսի ձիրքով, շատ անգամ անարդ գործերու կը ծառայեցնէ զանոնք։ Շատ անգամ մարդիկ իրենց կարողութիւնները կը գործածեն ոչ թէ իրարու ծառայելու, այլ իրարու վնասելու եւ զիրար կործանելու։ Մարդկային ազգին պատմութիւնն իր մէկ էջին մէջ մարդոց փառաւոր յառաջադիմութիւնները կը պատմէ, մինչ միւս էջին մէջ կը յիշէ անոնց ամօթալի եւ անպատիւ գործքերը։ Պատմութեան գրեթէ ամէն էջը լի է հպարտութենէ, բարկութենէ եւ հեշտութիւններէ թելադրեալ ոճիրներով։ Ի՛նչ խաբէութիւններ, որպիսի՜ զրկանք գործուած են, ի՛նչ տանջանքներ տրուած են մարդոց։ Եւ ո՛րչափ պատերազմունք աւերած են աշխարհ։ Ի՞նչպէս կրնանք մեկնել այս բաները։ Ստուգիւ այս բաները բնական չեն մարդուս։ Ստուգիւ մարդս ստեղծուած չէ այսպէս ատելու, խաբելու եւ կործանելու իրեն նման մարդիկ։ Ի՞նչպէս ուրեմն կրնանք մեկնել մարդուս խաբէութիւններն, անիրաւութիւններն եւ ընդհանուր ապականութիւնը։ Այս բաները ազնուութենէ յառաջ չեն գար. քանզի ոչ միայն տգէտք այլ

եւ գիտուն մարդիկ իսկ կը գործեն այս չարիքները։ Այն չարիքներն աղքատութեան կամ թշուառութեան պատճառաւ չեն գործուիր, քանզի ազնուական եւ ճոխ մարդիկ եւս կը գործեն զանոնք, ոճիրներ։ Փիլիսոփայութիւնը չի կրնար մեկնել այս բաները, եւ ոչ գիտութիւնը կրնայ անոնց պատճառը ցուցնել։ Սուրբ գիրք միայն կը պատասխանէ մեզի համար այս հարցման։ Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ մարդկային ազգին այժմու բարոյական վիճակը սկզբնական չէ մարդուս, եւ թէ մարդկային ազգն ստեղծուած չէ այսպէս ապականեալ, եւ այսպիսի ոճիրներ գործելու համար։ Սուրբ գիրք կը յայտնէ մեզի թէ մարդ ի սկզբան ստեղծուեցաւ ի պատկեր Աստուծոյ, բայց յետոյ մեղքի մէջ իյնալով ապականեցաւ, եւ թէ այս ապականութիւնն անցաւ բոլոր մարդկային ազգին, եւ ասոր յառաջ եկան այն ամենայն չարիք որ այսպէս սոսկալի կերպով կը տիրեն բոլոր ազգաց մէջ, բարբարոսաց եւ կրթելոց։

Վերջապէս Սուրբ գիրք միայն կը լուծէ մարդկային կենաց առեղծուածը պատասխանելով մարդկային ազգին վերաբերեալ հարցուածոց, եւ Սուրբ գրոց պատասխանը գոհացուցիչ է։ Սուրբ գիրք յայտնելով թէ մարդկային ազգը ստեղծուեցաւ ի նմանութիւն Աստուծոյ, կը մեկնէ մեզի թէ ինչու համար այնչափ մեծամեծ եւ փառաւոր գործքեր կան մարդկային ազգին պատմութեան մէջ։ Նոյնպէս յայտնելով մեզի թէ մարդկային ազգն իր սկզբնական վիճակէն ինկած, եւ այսպէս ընդհանուր կերպով ապականած է, կը մեկնէ մեզի թէ ինչու

համար այնչափ անարգ եւ վատ բաներ գործուած են ։

Որովհետեւ Սուրբ գրոց վարդապետութիւններով միայն կը հասկցուի մարդկային ազգին պատմութիւնը, հարկաւ կը հետեւի թէ այս վարդապետութիւնները յառաջ եկած են Անկէ որ ի սկզբանէ ըստեղծեց եւ առաջուընէ կը վարէ մարդկային ազգը ։

Գ. Սուրբ Գիրք կը յայտնէ մարդոց կատարեալ Քրիստոնէութիւն մը ։

Կատարելութիւնը զոր Սուրբ գիրք կը խոստանայ տալ անոնց որ անկեղծօրէն կ'ընդունին զայն՝ է արդարեւ դարմանալի ազատութիւն, վասնզի ոչ թէ այս կամ այն խեղճ չարիքէ, այլ բոլոր չարիքներէ ազատութիւն է, նա մանաւանդ բուն իսկ աղբիւրէն ուստի այն ամենայն չարիք կը բղխեն, այսինքն մեղքէն ։ Սուրբ գիրք ոչ թէ մասնաւոր կամ ժամանակաւոր, այլ լիուլի, բովանդակ եւ իսպառ ազատութիւն կը խոստանայ ։ Սուրբ գրոց մէջ Աստուած կը խոստանայ ազատել զմարդիկ իրենց գըժուարին դիրքէն՝ ազատելով զանոնք իրենց ապականեալ վիճակէն ։ Կը խոստանայ ազատել զմարդիկ իրենց բոլոր թշուառութիւններէն, ազատելով զանոնք այն մեղանչական միտումներէն յորոց կը բըղխեն անոնց թշուառութիւնները ։ Սուրբ գիրք կը սորվեցնէ թէ մեղքն է պատճառ եւ աղբիւր մարդկային թշուառութեան ։ Սուրբ գիրք կ'իմացնէ թէ մեղքը կը պատճառէ ժամանակաւոր թշուառութիւն եւ յաւիտենական մահ, եւ Սուրբ գրոց մէջ Աստուած կը խոստանայ ազատել զմարդիկ անոնց մեղքերէն, եւ այնպէս իսպառ գոցել թշուառութեան եւ մահուան աղբիւրը ։ Միով բանիւ Աստուած կը

խոստանայ Սուրբ գրոց մէջ այնպէս կատարեալ ազատել զմարդիկ իրենց մեղքերէն, որ մի մեղք անգամ չմնայ աղտոտել սիրտը, տանջել խիղճը եւ կորուսանել հոգին։

Բայց այս ազատագրանէն՝ ուրիշ ազատութիւն մը կատարեալ չէր կրնար ըլլալ. Մարդիկ կրնային տեղէ մը ուրիշ տեղ, նոյն իսկ երկրէս երկինք փոխադրուիլ, բայց այսպիսի փոփոխութիւն մը չէր կրնար ազատել հոգին իր թշուառութենէն, ցորչափ անոր բնութիւնը կը մնար ապականեալ։ Հոգին ինչ որ էր յերկրի, նոյն պիտի ըլլար երբ յերկինս փոխուէր, եւ երկինք հոգւոյն համար տանջանաց տեղ պիտի ըլլար, եթէ անոր ապականեալ բնութիւնը չնորոգուէր։ Հոգին որ դեռ անձնասիրութեան եւ հեշտասիրութեան տակ է, չի կրնար զուարճանալ սրբոց եւ հրեշտակաց ընկերութեան մէջ, եւ ոչ ուրախութեամբ մօտենալ սուրբ Աստուծոյ։ Ապականեալ մարդիկ եթէ փոխադրուին երկինք, պիտի փախչին անկէ իբր տանջանաց տեղէ։ Միմիայն կատարեալ ազատութիւն որ հնար է մարդոց համար՝ մարդկային ապականեալ բնութենէ եւ այն ապականութեան հետեւանքէն, այսինքն՝ արդար դատապարտութենէ ազատումն է։ Այսպիսի ազատութիւն մը կատարեալ ազատութիւն է մարդուս համար. վասն զի տալ մարդիկ կ'ազատէ բոլոր չարիքներէն, եւ բուն այս ազատութիւնը խոստացուած է մարդուս Սուրբ գրոց մէջ։

Նաեւ Սուրբ գրոց մէջ Աստուած կը խոստանայ ապաշխարող մարդոց ոչ միայն փրկել զանոնք կատարելապէս բոլոր չարիքներէն, այլ եւ տալ անոնց կա-

տարբեր երանութիւն : Մարդ ի սկզբան ստեղծուեցաւ ի նմանութիւն Աստուծոյ, եւ այս բարոյական դերագանցութեան մէջ կը կայանար անոր երանութիւնը : Սակայն մարդ ինկաւ մեղքի մէջ, եւ այնպէս կորսնցուց նմանութիւնը, եւ այս բարոյական անկման մէջ կը կայանայ մարդուս բուն թշուառութիւնը : Արդ, Աստուած Սուրբ գրոց մէջ կը խոստանայ ամէն ապաշխարող մարդու վերստին տալ այն բարոյական նմանութիւնն Աստուծոյ, նորէն ստեղծել զմարդն ի սրբութեան եւ փոխել անոր բնութիւնն ի պատկեր Աստուծոյ : Կը խոստանայ բառնալ այն բանը որ կը բաժնէ զմարդիկ յԱստուծոյ, այսինքն անոնց մեղքերը, եւ Յիսուս Քրիստոսով նորէն բերել զանոնք առ ինքն, ընել զանոնք դարձեալ աստուածանման, եւ միւսանգամ հաստատել զանոնք ի սէր եւ ի շնորհս Աստուծոյ, այնպէս որ կարող ըլլան լիուլ եւ ձրի ընդունել անկէ որ ամէն երանութեան մի միայն աղբիւրն է :

Երանութիւնը զոր Աստուած Սուրբ գրոց մէջ կը խոստանայ՝ ոչ այնչափ այն երանութիւնն է որ հաճելի տեղէ մը, այսինքն երկինքէն կը բղխէ, որչափ այն երանութիւնն է որ կը բղխէ ի սուրբ սրտէ : Ուրախութիւնը զոր Աստուած կը խոստանայ՝ մարմնաւոր զուարճութեան ուրախութիւն չէ, այլ սուրբ սիրոյ եւ շնորհալից գործքերու ուրախութիւն : Աստուած Սուրբ գրոց մէջ կը խոստանայ երջանիկ ընել զմարդիկ՝ սուրբ ընելով զանոնք. Երանելի ընել զմարդիկ՝ աստուածանման ընելով զանոնք . բարձրացընել եւ ազնուացնել զմարդիկ՝ միացնելով զանոնք իրեն հետ, անոնց երկնաւոր Հօրը հետ :

բարդութիւն հարկաւոր չէ , քանզի այս օրհնութիւնը կը տրուի մարդոց ուր որ ըլլան , իրենց հայրենիքը , իրենց ծննդեան քաղաքը կամ գիւղը եւ նոյն իսկ իրենց տանց մէջ ։ Երկրաւոր գանձ պիտոյ չէ այն օրհնութիւնը ստանալու համար , քանզի առանց արծաթոյ եւ առանց գնոյ կը տրուի ամէն մարդու ։ Աշխարհային պատիւ կամ աստիճան ալ հարկաւոր չէ այն օրհնութիւնը ստանալու համար , քանզի ամէն մարդու կը տրուի անխտիր առանց աչառութեան ։ Մտքի գիտութիւն կամ բարձր փիլիսոփայութիւն ալ հարկաւոր չէ այն օրհնութիւնը ճանչնալու համար , քանզի տղայք եւ ռամիկ մարդիկ անգամ կրնան հասկնալ Աւետարանի փրկարար ճշմարտութիւնները ։ Բարոյական գերազանցութիւն ալ հարկաւոր չէ այն օրհնութեան արժանաւոր ըլլալու համար , քանզի Քրիստոս չեկաւ արդարները փրկելու այլ մեղաւորները ։

Աւետարանին մէջ յայտնուած օրհնութիւններն ստանալու համար ուրիշ բան չմնար մարդոց ընել , բայց եթէ խոնարհութեամբ , շնորհակալութեամբ եւ ի սրտէ ընդունել զանոնք ։ Այս է բոլորը ։ Այս կը պահանջուի անոնցմէ ։ Եթէ մարդ մը կը փափաքի ճշմարտապէս իր մեղքերէն ազատիլ , անոր ուրիշ բան ընելու պէտք չէ եթէ ոչ թողուլ իր մեղքերն եւ ընդունիլ զՅիսուս Քրիստոս իբրեւ իր փրկիչը ։ Եթէ կը բաղձայ ունենալ սուրբ սիրտ , թող յանձնէ իր սիրտը Քրիստոսի , Քրիստոս կը մաքրէ զայն ։ Քրիստոս մարդոցմէ չպահանջեր իրենք զիրենք փրկել , ինք կը խոստանայ ըլլալ անոնց փրկիչ , մարդոց կը մնայ միայն զիրենք յանձնել անոր հաւատով , եւ

ապաւինել անոր որ գործէ անոնց փրկութիւնը ։ Ո՞վ կարող չէ ընել զայս ։ Ո՞վ այնպէս աղքատ է որ չի կրնար ընդունել ինչ որ Քրիստոս կուտայ իրեն ։ Ո՞վ այնպէս տկար է որ չի կրնար ընդունել զօրութիւնը զոր Քրիստոս կը շնորհէ անոր ։ Ո՞վ այնպէս տգէտ է որ չի կրնար ընդունել զՔրիստոս իրեն վարդապետ ։ Ո՞վ այնպէս մեղաւոր է որ չի կրնար ընդունել Քրիստոսի արիւնը որ ամէն մեղքէ կը սրբէ ։ Ո՞վ այնպէս անսուրբ է որ չի կրնար ընդունել զՀոգին սուրբ որ սիրտը նորոգէ եւ մաքրէ անոր միտքը ։ Ո՞վ այնպէս տկար կամ այն աստիճան մեղաւոր է որ չի կրնար ընդունել զՅիսուս Քրիստոս իբրեւ բարեխնամութեան փրկիչ, եւ յանձնել զինք բոլորովին անոր որ պատրաստ է առաջնորդել եւ պահպանել զնա ։ Ո՞վ անկարող է իր բոլոր վստահութիւնը դնել Փրկչին վրայ որ պիտի ազատէ զնա իր մեղքերէն, պիտի մաքրէ անոր միտքը եւ յաւիտենական կեանք պիտի պարգեւէ անոր ։

Յայտնի է թէ փրկութեան միջոցներն որ ցուցուած են Աւետարանին մէջ մարդոց անձամբ գործածելու համար՝ կատարեալ են, քանզի ըստ ամենայնի յարմար են մարդոց տկար եւ մեղաւոր վիճակին ։

2. Մեղաւորը [illegible] Աստուած [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] ։

Մարդիկ ազատել մեղքէ՝ արդարեւ մեծ գործ է ։ Չենք կրնար երեւակայել աւելի դժուարին գործ մը քան փրկել կորուսեալ հոգիները, ազատել յանցաւորները արդար օրինաց դատապարտութենէն, մաքրել բոլորովին ապականեալ սիրտերը եւ նորէն

կենդանացնել մեղքի մէջ արդէն մեռած հոգիները։ Այսպիսի գործ մը ի վեր է քան զկարողութիւն եւ զիմաստութիւն մարդոց, նոյն իսկ Աստուծոյ կարողութիւնն եւ իմաստութիւնը պէտք է առ այս։ Տես միջոցները որովք ոյժով կատարէ Աստուած այս մեծ գործը։

ա. Կատարեալ բարոյական օրէնք։

Սուրբ գրոց մէջ ցուցուած բարոյական օրէնքին կատարելութեան վրայ արդէն խօսեցանք ԺԱ գլուխոյն մէջ։ Այս օրէնքը զօրաւոր միջոց է մարդոց փրկութեանը։ Կը յայտնէ մարդոց թէ ինչպէս պարտին ապրիլ։ Կը ցուցնէ մարդոց իրենց մեղքերը, եւ կը յայտնէ անոնց թէ ո՛րչափ վար ինկած են։ Այս կատարեալ օրէնքը քան զերկսայրի սուր հատու է, եւ ծակելով կ'անցնի ամէն ծածկոյթները որովք մարդիկ կը ջանան ծածկել իրենց մեղքերն Աստուծմէ եւ աշխարհէ։ Կը պատռէ դիմակը զոր մարդիկ կ'ախորժին կրել. կը յայտնէ անոնց օրինազանցութիւնները եւ մեղքերն, եւ այսպէս կը պատրաստէ զանոնք ուրախութեամբ ընդունել աստուածային Փրկիչը։

բ. Կատարեալ բարոյական օրինակ։

Աւելի բացայայտ ընելու համար այս օրէնքին նշանակութիւնը, լաւ եւս ցուցնելու համար անոր ոգին, Աստուծոյ Որդին մարդ եղաւ, հնազանդեցաւ այն օրէնքին եւ ըստ ամենայնի կատարեց զայն։ Այսպէս Աստուած տուաւ մարդոց ոչ միայն գրաւոր օրէնք, այլ եւ ցուցուց անոնց Քրիստոսի վարուց միջոցաւ, թէ ինչպէս պահուելու էր այն օրէնքը, եւ այսպէս մարդիկ բաղդատելով իրենց վարքը

Քրիստոսի վարուց հետ, կրնան որոշել թէ ճշդիւ կը պահե՞ն այս օրէնքը։ Քրիստոսի կատարեալ բարոյական օրէնքն արդարեւ զօրաւոր միջոց է մարդոց փրկութեան ի մեղաց։ Անոր սուրբ վարքն ունեցած է եւ պէտք ունի մեծ ազդեցութիւն աշխարհի վրայ։ Ծառաներն իրենց անարժանութիւնը հասկցած եւ խոստովանած են անոր կատարեալ արժանաւորութեան միջոցաւ։ Նա դարձեալ ի դար անդադար յանդիմանած է մարդոց անօրէնութիւնն եւ անձնասիրութիւնը։

Մինչ կը սորվեցնէ անոնց թէ ինչպէս ըլլալու են, եւ կը համոզէ զանոնք թէ չեն այնպիսի որպիսի պարտէին ըլլալ։ Ցորչափ մարդիկ իրարու միայն կը նային, կրնան պարծիլ եւ շնորհակալ ըլլալ Աստուծոյ թէ չեն այնպէս չար ինչպէս են ոմանք, վասն զի ամէն մարդ կը գտնէ թէ ուրիշներ ըստ իւր կարծեաց չար են քան զինքն։ Բայց երբ մարդիկ կը նային Քրիստոսի կատարեալ վարուցը, այլ եւս կարող չեն ըլլար անբասիր ընել զիրենք, այլ կը ստիպուին խոստովանիլ առաջի Աստուծոյ իրենց մեղքերնին, եւ ճանչնալ թէ կարօտ են փրկչի մը որ կրնայ քաւել անոնց մեղքերը։

Գ. Կատարեալ Փրկիչ մը։

Որդին Աստուծոյ մարդացաւ եւ մեռաւ ընդ օրինօք, կատարելով օրէնքին բոլոր պահանջները, եւ պատիժները կրեց փոխանակ յանցաւորաց։ Որ արդարն էր՝ չարչարուեցաւ փոխանակ անարդարոց; եւ որ սուրբն էր՝ առաւ անօրինաց դատապարտութիւնը, եւ այսպէս լրնելով օրէնքին անէծքը եւ աշխարհի մեղքերը վերցուց։ Աստուածորդին չարչարուեցաւ փոխանակ յանցաւորաց, ուստի եւ Հայրն

*Աստուած կընայ ներել անոնց որ միամտութեամբ եւ ի սրտէ կ'ընդունին ինչ որ Աստուածորդին ըրած է իրենց տեղ եւ իրենց համար ։ Քրիստոսի հնազանդութեամբ եւ մահուամբ լցաւ Աստուծոյ օրէնքն եւ կատարուեցաւ անոր արդար դատաստանը ։ Քրիստոս կատարեց եւ կրեց ինչ որ կը պահանջէ օրէնքը , ուստի եւ կատարեալ թողութիւն գտնել կարելի է անոնց համար որ ճշմարտապէս կ'ընդունին ինչ որ Քրիստոս կատարած է անոնց տեղ ։ Զարմանալի՛ ազատում Աստուծոյ սուրբ օրէնքին արդար դատապարտութենէն ։*

*Դ. Կատարեալ սրբագործութիւն մը ։*

*Սակայն բաւական չէ որ մարդոց անցեալ յանցանքը միայն ներուած են , եթէ անոնք տակաւին միտեալ են մեղանչելու ։ Հարկաւոր է նաեւ որ անոնց ապականեալ սիրտերը մաքրուին , որպէս զի այն միտումն ի մեղս վերնայ ։ Արդ , մարդոց սիրտերն ինչպէս պիտի մաքրուին ։ Աստուած այս բանին միջոցներն ալ հոգացած է ։ Հոգին սուրբ որ Քրիստոսի միջնորդութեամբ կը տրուի անոնց որ կը խնդրեն զանի , կը նորոգէ անոնց սիրտերը , կը բառնայ անոնց կարծր , անձնասէր եւ չար միտումները , եւ յառաջ կը բերէ անոնց մէջ նոր զգացումներ , արդար փափաքներ եւ սուրբ միտումներ ։ Դաւիթ կ'աղօթէր . «Ով Աստուած իմ , իմ մէջս մաքուր սիրտ ստեղծէ , եւ իմ ներսիդիս ուղիղ հոգի նորոգէ » (Սաղմ . ԾԱ . 10) ։ Աստուած Եզեկիէլ մարգարէի միջոցաւ խոստացաւ . «Ես ձեզի նոր սիրտ պիտի տամ , ու ձեր ներսիդիս նոր հոգի պիտի դնեմ , եւ ձեր մարմիններէն քարեղէն սիրտը պիտի հանեմ , ու ձե-*

զի մարմինեղէն սիրտ պիտի տամ» (Եզեկ. ԼԶ. 26)։ Յիսուս սորվեցուց. «Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի, թէ որ մէկ մարդ մը նորէն չծնանի չկրնար Աստուծոյ թագաւորութիւնը տեսնել» (Յովհ. Գ. 3)։ Նաեւ Պօղոս կը վկայէ. «Եւ դուք որ յանցանքներու եւ մեղքերու մէջ մեռած էիք, ինքը ձեզ կենդանացուց» (Եփես. Բ. 1)։

Հոգին սուրբ այնպէս կը նորոգէ անոնց սիրտերն եւ բարքը որ հաւատով կ'ընդունին զայն, որ կ'ատեն ինչ որ անսուրբ է եւ անարդար, եւ կը սիրեն ինչ որ բարի է եւ սուրբ։ Հոգին սուրբ կը յայտնէ մարդոց զՔրիստոս իբրեւ անոնց ամենապատուական ազատիչը, եւ կարող եւ յօժար կ'ընէ զանոնք ընդունելու զանի իբրեւ իրենց փրկիչը, եւ Աստուծոյ նուիրել իրենց անձերը հաւատով եւ սիրով։ Առաջնորդ կ'ըլլայ անոնց իրենց երկրաւոր պանդխտութեան բոլոր ժամանակը, կը շնորհէ անոնց հոգեւոր զօրութիւն դէմ դնելու համար փորձութեանց, սերտիւ կը միացնէ զանոնք Քրիստոսի հետ այնպէս որ անոնք խալաս ազատին իրենց բոլոր մեղքերէն, եւ կը հաստատէ զանոնք սրբութեան մէջ։

Աստուած արդարեւ տուած է Քրիստոսի Աւետարանին մէջ միջոցներ որ բոլորովին բաւական են ազատել զմարդիկ իրենց կորսուեալ վիճակէն։ Այս միջոցները փորձած են միլիոնաւոր մարդիկ, եւ որոնք որ հաւատարմութեամբ փորձած են զանոնք ըստ պահանջմանց Աւետարանին, կը վկայեն թէ այն միջոցներն աստուածային զօրութիւն ունին։ Անոնք որ այս միջոցներուն զօրութիւնը կ'ուրանան, երբէք ըստ արժանույն փորձած չեն զանոնք։ Այսպիսիք

թերեւս կարդացած են Քրիստոսի Աւետարանը, բայց երբէք համաձայնեցուցած չեն իրենց վարքն Աւետարանին վարդապետութիւններուն։ Այսպիսիք թերեւս ընդունած են Քրիստոնէութիւնն լոկ իբրեւ ազգային կրօնք, բայց երբէք ընդունած չեն զայն իրենց սրտերուն մէջ։ Թերեւս անուամբ ճանչցած են զՔրիստոս, բայց երբէք հպատակած չեն Քրիստոսի կամքին, ուստի եւ երբէք զգացած չեն անոր զօրութիւնն իրենց սրտերուն մէջ։ Բայց անոնք որ անցեալ ութեւտասն դարուց մէջ անկեղծութեամբ եւ ի սրտէ ընդունած են զՔրիստոս իբրեւ իրենց Տէրը եւ Փրկիչը՝ պիտի վկայեն, ինչպէս կը վկայէ առաքեալը, թէ Յիսուս Քրիստոս արդարեւ է զօրութիւն եւ իմաստութիւն Աստուծոյ։

Արդ, յայտնի է թէ Սուրբ գիրք որ կը յայտնէ այնպիսի փառաւոր Աստուած մը եւ կը բացատրէ եւ կը մեկնէ այնպէս պարզ կերպով զաշխարհ, կ'ընծայէ մարդոց կատարեալ փրկութիւն, եւ կը յայտնէ միանգամայն միջոցներն որովք կարելի է մարդոց ընդունել այն փրկութիւնը, այս Սուրբ գիրքը, կ'ըսենք, չկրնար մարդոց գործ ըլլալ։ Նոյն իսկ Քրիստոնէութեան կատարելութիւնն իբրեւ կրօնական դրութիւն զօրաւոր կերպով կը հաստատէ իր աստուածային ծագման պատմական ապացոյցները։



# ԳԼՈՒԽ ԻԴ

## ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Ինչ որ ցարդ ըսուեցաւ համառօտիւ՝ Քրիստոնէութեան աստուածային ծագումը ցուցնող փաստերուն փոքր մէկ մասն է միայն, սակայն կը խնդրենք ամէն ողջամիտ ընթերցողէ դատել թէ այն փաստերը բաւական չե՞ն ցուցնելու Քրիստոնէութեան աստուածային ծագումը։

Այս փաստերը քիչ չեն այլ շատ։ Ոչ թէ մէկ տեսակ են այլ բազմատեսակ, եւ այնչափ բազմատեսակ որչափ նիւթը կը ներէ կամ կը պահանջէ։ Արդարեւ Քրիստոնէութեան աստուածային ծագումը գիտնալու համար լիուամբ պահանջուած փաստ կամ ապացոյց մը չկայ որ ցուցուած չէ։ Այս փաստերն արդարեւ այնպէս զօրաւոր չեն մինչեւ բռնադատել զմարդիկ հաւատալ կամաւ եւ ակամայ. բայց այնչափ զօրաւոր են որ կրնան համոզել որեւիցէ ողջամիտ եւ անաչառ ընթերցող։ Քրիստոնէութիւնը պատմական դէպքերու վրայ հիմնուած է, եւ կան բաւական պատմական ապացոյցներ որ կը հաստատեն թէ այն դէպքերն արդարեւ տեղի ունեցած են։ Պատմական վկաներ ոչ թէ միայն մի՛ այլ բազում են։ Ոչ միայն Քրիստոնեաներէն այլեւ Հրեա-

ներէն եւ Հռովմայեցիներէն կան այսպիսի վկաներ ։ Ոչ միայն բարեկամք, այլեւ թշնամիք կը վկայեն անոր համար ։ Անհաւատք այս վկաները խիստ քննութեան ներքեւ առին, բայց եւ այնպէս չկրցան հերքել անոնց արժանահաւատութիւնը, ուստի են եւ կը մնան անհերքելի ։ Քրիստոնէութիւնը իրեն համար կ'ըսէ թէ ամենագէտ Աստուծմէ յայտնուած է, եւ Հին եւ Նոր կտակարանաց մարգարէութիւններուն զարմանալի կատարումը կը հաստատէ թէ արդարեւ Քրիստոնէութիւնն աստուածուստ յայտնեալ է ։

Քրիստոնէութիւնը կը պնդէ թէ ինք Ամենակարողին յայտնութիւնն է, եւ Հին եւ Նոր կտակարանաց հրաշքները կը հաստատեն նաեւ զայս ։ Քրիստոս կ'ըսէ իրեն համար թէ Որդի Աստուծոյ է, եւ ահա նոյն իսկ անհաւատք ստիպուած են ընդունել թէ արդարեւ Յիսուս կը տարբերի բոլոր մարդոցմէ գերբնական, մտաւոր եւ բարոյական կատարելութիւններով ։ Քրիստոս կ'ըսէ թէ ինք լոյս է աշխարհի, եւ ահա բոլոր ողջամիտ մարդիկ կ'ընդունին թէ երբէք մարդ մը անոր պէս չխօսեցաւ ։

Քրիստոս ձեռնարկեց հիմնել ընդհանուր հոգեւոր թագաւորութիւն մը որ պիտի պարունակէր բոլոր ազգերը եւ պիտի ըլլար մշտատեւ, եւ ահա անցեալ ութեւտասն դարուց մէջ աշխարհիս պատմութիւնը կը ցուցնէ թէ Քրիստոս այս ձեռնարկութիւնը գլուխ հանելու վրայ է ։

Քրիստոս ըսաւ իրեն համար թէ փրկիչ է զմարդիկ ազատելու ի մեղաց որ կը կորսնցնէ զանոնք, եւ

անոնք որ միամտութեամբ եւ ի սրտէ ընդունած են զՔրիստոս փորձով տեսած են որ Քրիստոս է արդարեւ զօրութիւն Աստուծոյ ի փրկութիւն ։

Սուրբ գիրք կ'ըսէ իրեն համար թէ բնութեան Աստուծմէն կու գայ , եւ ահա ճշդիւ քննելով ապացուցուած է թէ արդարեւ զարմանալի համաձայնութիւն կայ բնական , իմացական եւ բարոյական աշխարհիս երեւոյթներուն եւ Սուրբ գրոց վարդապետութեանց մէջտեղ ։

Սուրբ գիրք կ'ըսէ իրեն համար թէ աստուածային յայտնութիւն է , եւ անոր վարդապետութիւնները ճշդիւ հետազօտուելով տեսնուած է թէ Սուրբ գիրք ունի արդարեւ աստուածային յայտնութիւն ըլլալու ապացոյցներ եւ յատկութիւններ ։ Այսպէս ունինք պատմական , գործնական եւ փիլիսոփայական ապացոյցներ ։

Ընթերցողը դիտելու է նաեւ որ , այս այլեւայլ տեսակ ապացոյցներն իրարու հետ այնպէս կապուած եւ իրարմէ այնպէս կախուած չեն որ , երբ մէկ տեսակը բաւական չէ համոզելու , միւս տեսակներն ալ հարկաւ համոզիչ չըլլան ։ Այն ապացոյցներուն շատերն անկախ են միւսներէն , եւ իւրաքանչիւր տեսակ ապացոյց այնպէս զօրեղ է որ , եթէ անհերքելի մնայ , ինքնին բաւական է հաստատել Քրիստոնէութեան աստուածային ծագումը ։ Ուստի երբ կը տեսնենք այսչափ զանազան եւ իրարմէ անկախ ապացոյցներ , անոնց միացեալ զօրութիւնը կ'ըլլայ բոլորովին համոզիչ ։ Ուրիշ ինչ ապացոյց հարկաւոր է ։ Սակայն կը խնդրենք մեր ընթերցողներէն որ չշտապեն այն ապացոյցներով

միայն որ յիշուեցան մինչեւ ցարդ ։ Եթէ ոք այս բոլոր ապացոյցները կարդալէն ետքը տակաւին կը տարակուսի Քրիստոնէութեան աստուածային ծագման վրայ, յառաջ տանի իր հետազօտութիւններն եւ փնտռէ ուրիշ ապացոյցներ զորս գիտուն մարդիկ ժողված են ի հաստատութիւն Քրիստոնէութեան ճշմարտութեանը ։ Այս խնդիրը կարեւորագոյնն է բոլոր խնդրոց որ կը յուզեն մարդոց մտքերը, ուստի եւ կը պահանջէ ճշդագոյն քննութիւններ, քանզի եթէ Քրիստոնէութիւնն արդարեւ Աստուծմէ է, ապա անոր աստուածային ծագման վրայ տարակուսիլ անգամ վտանգաւոր է, նա մանաւանդ Քրիստոնէութեան աստուածային վարդապետութիւնները չընդունել յաւիտենական մահ է ։

Մենք մանր չքննեցինք բոլոր առարկութիւններն որ եղած են Սուրբ գրոց դէմ ։ Առարկութիւն ընել դիւրին է, եւ այնպէս բազմացնել զանոնք որ անոնց պատասխանել անվախճան գործ մը ըլլայ ։ Բայց մենք քննեցինք զօրաւորագոյն առարկութիւնները, եւ ցուցուցինք թէ անոնք հաստատ հիմ չունին ։ Սուրբ գրոց դէմ ամէն առարկութիւն յառաջ կուգայ հետեւեալ քանի մը պատճառներէ, այսինքըն մարդկային մտքին սահմանաւորութենէն կամ մարդոց տգիտութենէն, եւ կամ Սուրբ գրոց կամ բնութեան սխալ մեկնութիւն տրուելէ · բայց ամէն մարդ կրնայ տեսնել թէ այս պատճառներէն յառաջ եկած առարկութիւն մը չկրնար առողջ առարկութիւն ըլլալ ։

Ուստի ոչ ոք պղտորելու է անհաւատից առարկութիւններէն ։ Առարկութիւնք որ մեզի կրնան դըժ-

ուարին թուիլ՝ գիտուն Քրիստոնեաներէ շատ դիւրաւ կրնան հերքուիլ ։ Թող յիշեն նաեւ ընթերցողք , որ բնական աշխարհի ապացուցեալ ճշմարտութեանց դէմ իսկ առարկութիւն կրնայ հանուիլ ։ Ընթերցողք թող քննեն թէ արդեօք անհաւատք կարող եղած են հերքել Քրիստոնէութեան աստուածային ծագման պատմական , գործնական եւ փիլիսոփայական անթիւ ապացոյցները ։ Եթէ Քրիստոնէութիւնը խաբէութիւն ըլլար , ութեւտասն դարուց սրամիտ անհաւատք կրցած պիտի ըլլային անոր աստուածային ծագման ապացոյցները հերքել ։ Եթէ այնչափ նրբամիտ մարդիկ չկրցան ընել այս բանը , ապա կրնանք հետեւցնել թէ այն ապացոյցներն անհերքելի են , ուստի եւ Քրիստոնէութիւնն , ինչպէս որ ինք կը պնդէ , արդարեւ Աստուծմէ է ։ Արդ , անհաւատք կրցա՞ն հերքել այն ապացոյցները։ Համարձակ կը պատասխանենք թէ, Ոչ ։

Ընթերցողներէն կը խնդրենք մանաւանդ որ Քրիստոնէութեան աստուածային ծագման մտօք միայն համոզուելով չշատանան , այլ եւ հաւատով ընդունին զՔրիստոս իբրեւ իրենց աստուածային Փրկիչը , եւ սիրով նուիրեն զիրենք անոր ։ Մտօք միայն համոզուիլ թէ Քրիստոս Որդի Աստուծոյ է , չփրկեր զմեզ յաւիտենական մահուանէ , քանզի դեւք եւս կը հաւատան այսմ ։ Պարտինք արդեամբ հնազանդիլ Աւետարանին պատուէրներուն , պարտինք ընդունել ինչ որ կը սորվեցնէ Աւետարանը , եւ նուիրել զմեզ բոլորովին մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսի ։ Աղօթենք ջերմ եռանդով եւ ստէպ առ Աստուած լուսաւորել մեր միտքերը , յայտնել մեզի

*զՅիսուս Քրիստոս իբրեւ մեր անձին փրկիչը, եւ կարող ընել զմեզ բոլորովին անոր ապաւինելու, որպէս զի մեր մեղքերէն թողութիւն գտնելով հաշտուինք Աստուծոյ հետ, եւ յաւիտենական կեանքը ժառանգենք։*

**Ա Մ Է Ն**

# ԳԼՈՒԽ ԻԳ

## ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ

Ինչ որ ցարդ ըսուեցաւ համառօտիւ՝ Քրիստո-
նէութեան աստուածային ծագումը ցուցնող փաս-
տերուն փոքր մէկ մասն է միայն, սակայն կը խընդ-
րենք ամէն ողջամիտ ընթերցողէ դատել թէ այն
փաստերը բաւական չե՞ն ցուցնելու Քրիստոնէու-
թեան աստուածային ծագումը։

Այս փաստերը քիչ չեն այլ շատ։ Ոչ թէ մէկ տե-
սակ են այլ բազմապիսի, եւ այնչափ բազմապիսի
որչափ նիւթը կը ներէ կամ կը պահանջէ։ Արդարեւ
Քրիստոնէութեան աստուածային ծագումը գիտնա-
լու համար լիուամբ պահանջուած փաստ կամ ա-
պացոյց մը չկայ որ ցուցուած չէ։ Այս փաստերն
արդարեւ այնպէս զօրաւոր չեն մինչեւ բռնադատել
զմարդիկ հաւատալ կամաւ եւ ակամայ, բայց այն-
չափ զօրաւոր են որ կրնան համոզել ուեւիցէ ող-
ջամիտ եւ անաչառ ընթերցող։ Քրիստոնէութիւնը
պատմական դէպքերու վրայ հիմնուած է, եւ կան
բաւական պատմական ապացոյցներ որ կը հաստա-
տեն թէ այն դէպքերն արդարեւ տեղի ունեցած
են։ Պատմական վկաներ ոչ թէ միայն մի՛ այլ բա-
զում են։ Ոչ միայն Քրիստոնեաներէն այլեւ Հրեա-

ներէն եւ Հռովմայեցիներէն կան այսպիսի վկաններ։ Ոչ միայն բարեկամք, այլեւ թշնամիք կը վկայեն անոր համար։ Անհաւատք այս վկաները խիստ քըննութեան ներքեւ առին, բայց եւ այնպէս չկրցան հերքել անոնց արժանահաւատութիւնը, ուստի են եւ կը մնան անհերքելի։ Քրիստոնէութիւնը իրեն համար կ՚ըսէ թէ ամենագէտ Աստուծմէ յայտնուած է, եւ Հին եւ Նոր կտակարանաց մարգարէութիւններուն զարմանալի կատարումը կը հաստատէ թէ արդարեւ Քրիստոնէութիւնն աստուածուստ յայտնեալ է։

Քրիստոնէութիւնը կը պնդէ թէ ինք Ամենակարողին յայտնութիւնն է, եւ Հին եւ Նոր կտակարանաց հրաշքները կը հաստատեն նաեւ զայս։ Քըրիստոս կ՚ըսէ իրեն համար թէ Որդի Աստուծոյ է, եւ ահա նոյն իսկ անհաւատք ստիպուած են ընդունել թէ արդարեւ Յիսուս կը տարբերի բոլոր մարդոցմէ գերբնական, մտաւոր եւ բարոյական կատարելութիւններով։ Քրիստոս կ՚ըսէ թէ ինք լոյս է աշխարհի, եւ ահա բոլոր ողջամիտ մարդիկ կ՚ընդունին թէ երբէք մարդ մը անոր պէս չխօսեցաւ։

Քրիստոս ձեռնարկեց հիմնել ընդհանուր հոգեւոր թագաւորութիւն մը որ պիտի պարունակէր բոլոր ազգերը եւ պիտի ըլլար մշտատեւ, եւ ահա անցեալ ութեւտասն դարուց մէջ աշխարհիս պատմութիւնը կը ցուցնէ թէ Քրիստոս այս ձեռնարկութիւնը գլուխ հանելու վրայ է։

Քրիստոս ըսաւ իրեն համար թէ փրկիչ է զմարդիկ ազատելու ի մեղաց որ կը կորսնցնէ զանոնք, եւ

անոնք որ միամտութեամբ եւ ի սրտէ ընդունած են զՔրիստոս փորձով տեսած են որ Քրիստոս է արդարեւ զօրութիւն Աստուծոյ ի փրկութիւն ։

Սուրբ գիրք կ'ըսէ իրեն համար թէ բնութեան Աստուծմէն կու գայ, եւ ահա ճշդիւ քննուելով ապացուցուած է թէ արդարեւ զարմանալի համաձայնութիւն կայ բնական, իմացական եւ բարոյական աշխարհիս երեւոյթներուն եւ Սուրբ գրոց վարդապետութեանց մէջտեղ ։

Սուրբ գիրք կ'ըսէ իրեն համար թէ աստուածային յայտնութիւն է, եւ անոր վարդապետութիւնները ճշդիւ հետազօտուելով տեսնուած է թէ Սուրբ գիրք ունի արդարեւ աստուածային յայտնութիւն ըլլալու ապացոյցներ եւ յատկութիւններ ։ Այսպէս ունինք պատմական, գործնական եւ փիլիսոփայական ապացոյցներ ։

Ընթերցողը դիտելու է նաեւ որ, այս այլեւայլ տեսակ ապացոյցներն իրարու հետ այնպէս կապուած եւ իրարմէ այնպէս կախուած չեն որ, երբ մէկ տեսակը բաւական չէ համոզելու, միւս տեսակներն ալ հարկաւ համոզիչ չըլլան ։ Այս ապացոյցներուն շատերն անկախ են միւսներէն, եւ իւրաքանչիւր տեսակ ապացոյց այնպէս զօրեղ է որ, եթէ անհերքելի մնայ, ինքնին բաւական է հաստատել Քրիստոնէութեան աստուածային ծագումը ։ Ուստի երբ կը տեսնենք այսչափ զանազան եւ իրարմէ անկախ ապացոյցներ, անոնց միացեալ զօրութիւնը կ'ըլլայ բոլորովին համոզիչ ։ Ուրիշ ինչ ապացոյց հարկաւոր է ։ Սակայն կը խնդրենք մեր ընթերցողներէն որ չշատանան այն ապացոյցներով

միայն որ յիշուեցան մինչեւ ցարդ։ Եթէ ոք այս բոլոր ապացոյցները կարդալէն ետքը տակաւին կը տարակուսի Քրիստոնէութեան աստուածային ծագման վրայ, յառաջ տանի իր հետազօտութիւններն եւ փնտռէ ուրիշ ապացոյցներ զորս գիտուն մարդիկ ժողված են ի հաստատութիւն Քրիստոնէութեան ճշմարտութեանը։ Այս խնդիրը կարեւորագոյնն է բոլոր խնդրոց որ կը յուզեն մարդոց միտքերը, ուստի եւ կը պահանջէ ճշդագոյն քննութիւններ, քանզի եթէ Քրիստոնէութիւնն արդարեւ Աստուծմէ է, ապա անոր աստուածային ծագման վրայ տարակուսիլ անգամ վտանգաւոր է, նամանաւանդ Քրիստոնէութեան աստուածային վարդապետութիւնները չընդունելը յաւիտենական մահ է։

Մենք մանր չքննեցինք բոլոր առարկութիւններն որ եղած են Սուրբ գրոց դէմ։ Առարկութիւն ընել դիւրին է, եւ այնպէս բազմացնել զանոնք որ անոնց պատասխանել անվախճան գործ մը ըլլայ։ Բայց մենք քննեցինք զօրաւորագոյն առարկութիւնները, եւ ցուցուցինք թէ անոնք հաստատ հիմ չունին։ Սուրբ գրոց դէմ ամէն առարկութիւն յառաջ կուգայ հետեւեալ քանի մը պատճառներէ, այսինքն մարդկային մտքին սահմանաւորութենէն կամ մարդոց տգիտութենէն, եւ կամ Սուրբ գրոց կամ բնութեան սխալ մեկնութիւն տրուելէ. բայց ամէն մարդ կրնայ տեսնել թէ այս պատճառներէն յառաջ եկած առարկութիւն մը չկրնար առողջ առարկութիւն ըլլալ։

Ուստի ոչ ոք պղտորելու է անհաւատից առարկութիւններէն։ Առարկութիւնք որ մեզի կրնան դըժ-

ուարին թուիլ՝ գիտուն Քրիստոնեաներէ շատ դիւրաւ կրնան հերքուիլ ։ Թող յիշեն նաեւ ընթերցողք , որ բնական աշխարհի ապացուցեալ ճշմարտութեանց դէմ իսկ առարկութիւն կրնայ հանուիլ ։ Ընթերցողք թող քննեն թէ արդեօք անհաւատք կարող եղած են հերքել Քրիստոնէութեան աստուածային ծագման պատմական , գործնական եւ փիլիսոփայական անթիւ ապացոյցները ։ Եթէ Քրիստոնէութիւնը խաբէութիւն ըլլար , ութեւտասն դարուց սրամիտ անհաւատք կրցած պիտի ըլլային անոր աստուածային ծագման ապացոյցները հերքել ։ Եթէ այնչափ նրբամիտ մարդիկ չկրցան ընել այս բանը , ապա կրնանք հետեւցնել թէ այն ապացոյցներն անհերքելի են , ուստի եւ Քրիստոնէութիւնն , ինչպէս որ ինք կը պնդէ , արդարեւ Աստուծմէ է ։ Արդ , անհաւատք կրցա՞ն հերքել այն ապացոյցները։ Համարձակ կը պատասխանենք թէ, Ոչ ։

Ընթերցողներէն կը խնդրենք մանաւանդ որ Քըրիստոնէութեան աստուածային ծագման մտօք միայն համոզուելով չշատանան , այլ եւ հաւատով ընդունին զՔրիստոս իբրեւ իրենց աստուածային Փրկիչը , եւ սիրով նուիրեն զիրենք անոր ։ Մտօք միայն համոզուիլ թէ Քրիստոս Որդի Աստուծոյ է , չփրկեր զմեզ յաւիտենական մահուանէ , քանզի դեւք եւս կը հաւատան այսմ ։ Պարտինք արդեամբ հնազանդիլ Աւետարանին պատուէրներուն , պարտինք ընդունել ինչ որ կը սորվեցնէ Աւետարանը , եւ նուիրել զմեզ բոլորովին մեր Տէրոջը Յիսուս Քըրիստոսի ։ Աղօթենք ջերմ եռանդով եւ ստէպ առ Աստուած լուսաւորել մեր միտքերը , յայտնել մեզի

զՅիսուս Քրիստոս իբրեւ մեր անձին փրկիչը, եւ կարող ընել զմեզ բոլորովին անոր ապաւինելու, որպէս զի մեր մեղքերէն թողութիւն գտնելով հաշտուինք Աստուծոյ հետ, եւ յաւիտենական կեանքը ժառանգենք։

ԱՄԷՆ